Shirak

# ՇԻՐԱԿ

## ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ ՊԱՏԿԵՐԱՑՈՅՑ

ՀԱՒԱՔԵԱՑ

Alishan, Ghewond, V.

Հ. ՂԵՒՈՆԴ Վ. Մ. ԱԼԻՇԱՆ

ՅՈՒԽՏԷՆ ՄԽԻԹԱՐԱՑ





ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ

ՌՅԼ-1881

# ՅՈՒՇԱՏԱԿ



ՔՐՏՆԱՋԱՆ

ՄՏՈՒԳԱԳՐՈՂԻ

ԱՐՋԱՆԱՑ

ԱԵԽՈՅ ԵՒ ՇԻՐԱԿԱՅ

Հ. ՆԵՐՍԻՍԻ Վ. ՍԱՐԳԻՍԵԱՆ

ՏՐԱՊԻԶՈՆԵՑԻՈՅ

1880

# ՅԱՌԱՋԱԲԱՆ



արադէպ իմն Թերեւս Թուիցի ոմանց հրատարակումն մանրախոյզ տեղագրութեան մասին միոյ փոքու՝ աշխարհիս Հայոց, ի ժամանակիս՝ յորում, ըստ այլ եւ այլ տեսութեանց, ոչ սակաւ բանք եւ հծծիւնք եւ խորհրդական իսկ լռութիւնք լինին զայնմանէ. վասն որոյ կանխեմ ծանուցանել, զի իմ ի բազում ամաց հետէ ձեռն արկեալ էր յընդարձակ աշխարհագրութիւն Հայաստանեայց, եւ դադարեալ ոչ փոքր ժամանակս, ապա անդրէն բուռն հարեալ, ստէպ հարցումն եւ Թախանձանք բանասիրաց ոմանց, եւ յաւէտ հրաման վեհագունի, ստիպեաց տալ ի լոյս ճաճաւ մի զգործոյս։ Ընտրեցաւ ՇԻՐԱԿ գաւառ Այրարատայ, վասն բազմակերպ նոր եւ հին յիշատակաց իւրոց, միանգամայն եւ վասն եռխագոյն մնացուածոց կիսականգուն շինուածոցն եւ արձանագրութեանց [1], զորս առաւելապէս է գտանել աստանօր ի կենսակիր մեռեալն Անի, որ երկակի եւս կերպարանօքն՝ յինն դարուց հետէ՝ առաջին դէմք Հայ երկրի հանդիպի նկատողացն զնոյն. որոյ՝ եւ ըստ բաղդի՝ կային առ ձեռն պատրաստ պատկերք երեւեցուցիչք։

Առ այս Թէպէտ եւ ջան եդի քննել զամենայն գրուած որ զտեղւոյս ստորագրելոյ, որչափ եւ յորչափ եղէ ձեռնհաս, այլ որ զինչ եւ արարի կամ արարից՝ ոչ կարեմ վստահաբանել, որպէս բաղդաւորագոյնք ոմանք, ընդ ազնուագունին ի Պատմիչս մեր (ընդ Եղիշեայ), եթէ, «Ես ինքնին ի տեղւոջն պատահեցի եւ տեսի»։ Ոչ. ես ոչ տեսի իսկապէս զտեղիսն, ուր եւ առաջին տեսարանք մարդկութեան հուչակին, եւ ուր, անդստին ոմն յառաջին պատմագրաց մերոց (փարպեցին) վկայէր, «բազմադիմի յեղափոխութիւնս» եղեալ. որչափ եւս յետ այնորիկ յընթացս չորեքտասան բազմավրդով դարուց՝ մինչեւ ցաւուրս մեր. — այլ ես ի հեռաստանէ եւ արտաքուստ ի ներքս յածիմ ի հայրենիս, եւ կուրօրէն նկարեմ զլոյս. ինքնին խոստովան լինելով, զի եւ ի վերայ ամենայն ջանից եւ խուզարկութեանց, անհնար է արտակացելոյն ճշգրտագրել՝ ըստ լրոց եւ ըստ գրոց [2]. սակայն հարկաւորիմ ասել եւ-զայն, ոչ յանձին ինչ փարաւազս կամ ի ստգիւտ այլոց, զի ի համեմատութենէ այլ եւ այլ գրութեանց ականատեսիցն՝ գտի ոչ սակաւ սխալանս եւ ի նոսին։ Զնոյն իմացի ողջախոհ ընթերցողն իմ եւ զպատմական դիպաց, մանաւանդ զնորոց պատերազմական անցից, եղելոց ի սմին իսկ ի գաւառիս Շիրակայ. զի քան զայլսն՝ դէպք մարտից եւ մարտկաց անագան յոյժ սաուգին, եթէ սաուգիցին բնաւ։ Իմ փոյթ եւ իղձ է ճշմարտութեան. հաւասար պատուելով զառաքինութիւն եւ զքաջութիւն յով եւ յոր կողմն եւ տեսցի, եւ հաւասար ցաւելով ընդ այրեաց եւ աւերած երկրիս, զոր անխտիր կոխէ եւ կոխոտէ ոտն յաղթողին եւ յաղթելոյն. եւ կարծեմ Թէ յայս դէպս ոչ անկցի ընդ մեղադրութեամբ քաղցրուսոյց Փրկչին՝ Հայ մարդ, եթէ ոչ կաքաւիցէ ընդ փողահարին եւ ոչ կոծիցի ընդ ողբացողին։

Տենչալի էր ինձ, այլ գործ դժուարին, զամենայն զհին եւ զարժանայիշատակ տեղեաց պատկերս՝ յանդիման կացուցանել ըստ կարգի ստորագրութեանս. եւ ահա որչափ ինչ կարողութիւն եղեւ՝ ընծայի ի մատենկանս. յորում որպէս տեսանիդ, զմեծ մասն սոցին՝ որպէս եւ զտեղագրութեանս՝ գրաւէ Անի, կենդրոնն այն եւ կուրծք Շիրակայ. զորմէ, եւ ըստ պատշաճին՝ յոլովագոյն գտան գրողք, որպէս մի առ մի յիշեալ է իմ եւ զայցելութիւն եւ զտեսութիւնս նոցին[3]. հուսկ կարգելով ըստ ժամանակին՝ զազգայինն զայն, որոյ վաստակ գեր ի վերոյ տեսանի ինձ քան զյոլովից. զլուսագրող Քիւրքճեան Յովհաննէ ասեմ. յորմէ եւ ինձ մարթ էր օգտիլ եւ ճշգրտագոյնս աւանդել զտեսիլ շինից կամ զաւերակաց քաղաքին. այլ զի անագան եկն ինձ ի ծանօթութիւն, անագանէր եւ թղթակցութիւնն, եւ արդէն մեծ մասն պատկերացս այսոցիկ դրոշմեալ էր ի փայտի կամ յայլ նիւթ, այս պատեհ էանց առ յինէն։ Յառաջ քան զօժանդակութիւն լուսագրութեան, ի տեղագրողս եւ յընդօրինակողս արժանացն՝ սոսկ աչաց զննութեամբ, քաջ ի բաց վերագոյն քան զբնաւս գտաւ կրօնակիցն իմ հանգուցեալ Հ. Ներսէս Վ. Սարգիսեան, որոյ եւ վաղ ուրեմն հրատարակեալ է Տեղագրութիւնն ի փոքր եւ ի Մեծ Հայս. եւ ես զիմս զայս ի յիշատակ երախտեաց նորին նուիրեցի։ Ի լուսանկար արուեստէ՝ միայն Մարմաշինի, Ալեքսանդրապօլի եւ Հառիճայի եկեղեցեաց պատկերքն մուծան աստ. առաջին երկուքն՝ (թիւ 68 եւ 80) Քիւրքճեանին են, երրորդն՝ (թ. 74) ոչ գիտեմ ոյր ուրուք. այլ ամենայն պատկերքն ընտրեցան, ոմանք յԱպլիխայ Գերմանացւոյ գծագրութեանց, եւ յոլովագոյնք՝ ի գրոց Պրոսէի (Աւերակաց Անւոյ), զորս առեալ է նորա յընդօրինակութեանց Յուլիոսի Քէսդնէրի։ Սորա եւ որդւոյ իւրոյ Պետրոսի՝ էին եւ այլ բազում անտիպ գծագիր տեսարանք, հաւաքեալք յերիս պրակս եւ պահեալք ի Թանգարանի Կայսերական Ճեմարանին Պետրպուրկի. որոյ տեսուչք հաւանեցան ազնուապէս երկիցս առաքել ինձ զայնոսիկ եւ թողուլ յընդօրինակութիւն. յոր սակս եւ աստանօր հրապարակեմ խոնարհ շնորհակալութիւն նոցա, որպէս եւ գովութիւն՝ յաջող ջանից գաղափարողացն, սանից Մուրատ-Ռափայէլեան վարժարանաց։ Քաղցրագոյն եւս է ինձ ընդ սոսին յայտ առնել, զի այլ ամենայն հանդերձանք տպագրութեան գործոյս՝ արդիւնք են այլոց եղբարց եւ Հօր Ուխտիս. որոց խնամ առ այս՝ առաւել քան զիմս եղեւ, եւ իղձ էր վայելչագոյնս եւս յարդարել, ի սէր եւ ի հաճոյս հայրենեաց. եւ ոչ անգիտութիւն լաւագունին սահմանեաց յայս չափ, այլ ծանրութիւն ծախուց, յոր չեղեւ ոք արտաքուստ սատար, բաց ի միոյ յայնմանէ՝ զորոյ զանուն ցուցանէ Տեղացոյց քարտն Շիրակայ. (որ զի առաջին փորձ էր օտարազգի վիմագրողի, արգահատելի լիցի ըստ թերութեանցն ինչ)։ Յայտ աստի է՝ զի առանց հզօր սատարութեան ոչ է մարթ ի գլուխ հանել զայսպիսի տեղագրութիւն բովանդակ աշխարհի միոյ մեծի՝ որպիսի Հայաստանս է. եւ համարիմ պարծանս մերազնեայց զօժանդակութիւնն ըստ ձեռին բաւականի, եթէ հաճոյասցի *ճաշակ*աւս այսու գործն։

Իսկ ե՞րբ բովանդակիցի այն. հարցանեն զիս բանասէրք. — առ որս, զի ոչ զանձն իմ խաբել կամիմ եւ ոչ զայլս, պատասխանեմ զխորենացւոյն, (Ա. ե.) «Առաջիկայս մեր երկար է գործ, եւ ժամանակ մահկանացուաց՝ սուղ եւ անյայտ». մանաւանդ որոյ խոնարհեալ հասակ մերձագոյնս նշմարէ զոլորտս յաւիտենից այսորիկ։ Այլ յոր եւ սահման ձգիցի ժամանակն այն՝ ակն ունիմ թէ յառաջածգեսցի եւ հիւսուածն, որչափ կար է եւ պատեհ. եթէ ի հուն հանցէ Տուիչն կենաց եւ ամենայն բարեաց, գոհութիւնք նմա. եւ եթէ ասիցէ՝ Մինչեւ ցայդ վայր, կրկին գոհութիւն առ յինէն. իսկ առ յայլոց՝ յոյս կատարման գործոյն յորոյ եւ է ձեռն. զոր զօրացուսցեն եւ բարգաւաճանք աշխարհագրական գիտութեան ժամանակիս, եւ մերազնեայց հետազօտութիւնք ի կողմանս կողմանս աշխարհին իւրեանց, եւ լուսատիպ նմանահանութիւնք։ Մարթ էր արդեօք ըստ ըղձից ոմանց եւ մասն առ մասն կամ ուրոյն ուրոյն հրատարակել, (որպէս զգաւառս այս Շիրակայ). այլ այդու, զի համառօտ ասացից, կոտորուած լինի գործոյն եւ ոչ կատարած. եւ չէ մարթ պահել զմիութիւն ոճոյ, զոր յեղանակելով յեղանակէ մատենագիրն, եւ ի բովանդակել նիւթոյն՝ մուծանէ ի հարթ հաւասարութիւն. թող զի եւ միշտ պահանջի պատրաստութիւն պատկերաց եւ քարտից, եւ նախապատրաստ հայթհայթիչն հրատարակման։ Վայելուչ է ինձ տեսանել զիսկաճեմ գնացս յորդախաղաց գետոյ, քան յառուս առուս հատանելով սաղապեցուցանել զայն յով եւ պէտ։

Զայս եւս յիշեցուցանել կամ է ինձ, (որում հմուտք պատմութեան աշխարհիս մերոյ ինքնին իսկ խելամուտ լինին), զի իբրեւ 200 գաւառս ունելով Մեծաց Հայոց միայն, եթէ ամենայնն հանգոյն Շիրակայ այսքան յերկարօրէն տեղագրիւր, անհնարին ստուարանայր եւ ծանրանայր գործն. այլ ստուգիւ գրեաթէ երիր մասն ի գաւառացդ՝ սակաւ ինչ ժամանակս եղեալ սեփականութիւն Հայոց, դոյզն կամ հազիւ ինչ ունին յիշատակ ազգային. շատք եւս այնք են որ ցարդ սակաւածանօթք մնան եւ անմատոյցք, յանմատուցից գրաւեալք մարդոց տմարդեաց. սակայն եւ ներհակաբար, եւ ծանուցեալքն ինչ, եւ սոյն իսկ Շիրակ, եթէ մանրագոյն եւս քննիցին ի գիտնոց, քանի՜ երկարագոյնս արդեօք ոչ պահանջիցեն դրուագս բանից, եւ որպիսիս ոչ հանցեն յերեւան տեսարանս, թէպէտ ցանկալիս թէպէտ ցաւալիս։ Ոչ այնքան շէնս սխրալիս ապաքէն գոյ յոյս գտանելոյ, որքան «անքաւութիւնս աւերակաց», ըստ հառաչանաց Գողթնացւոյն Վահանայ. եւ արդարեւ յաւերագրութիւն

քան յաշխարհագրութիւն պարտաւորի արդ Հայաստան. սակայն եւ ոչ ամենայն դաստակերտ նախնեաց հիմնայատակ եւ հետախաղաղ է, կամ ընդ Թլօք եւ ընդ փլօք դերբկաց ծածկեալ. են են եւ առաւել կամ նուազ կանգուն եւ կիսականգուն շէնք, անձայն քարոզք հանճարոյ, հաւատոց, ճարտարութեան եւ մեծագործութեան հարց մերոց, աւանդք սրբազանք, զոր մեզ ներկայիցս պարտք են պաշտել եւ պահել զգուշութեամբ, եւ իբրեւ անդրժելի ժառանգութիւն հայրենատուր՝ փոխանցել առ յետագայս. վասն որոյ եւ որքան հնար է յապահովել զնշխարսն ի ժանեաց ժամանակի եւ յանզգայից աւերածուաց. կարկատել կամ հաստատել զվտանգեալսն եւ զմօտալուտս ի կործանումն. եւ զանհնարինսն ի յարակայել՝ գէԹ լուսատիպ նմանահանութեամբ անմոռաց առնել. եւ մի՛ անփոյԹ եւ անճեպ լինել առ այս. զի որպէս անդադար է ժամանակն, այսպէս եւ սպառիչ օրէնք իւր, որ գրեաԹէ ըստ հին առասպելին՝ աւուր աւուր կլանէ զմասն ինչ ի քարանց անտի՝ կոփելոց քրտամբք եւ արեամբք հարց մերոց եւ բազում արտասուօք ոռոգելոց։ Ահա ի ժամանակի տպագրութեան գրոցս, մինչ դեռ ի միջի մնացորդաց Անւոյ կանգուն եւ բարձրականգուն քան զբնաւս նկատէի եւ գրէի զաշտարակն միջակառոյց, որ բազում փարսախօք ի հեռաստանէ ձգէր զաչս անցաւորաց, եւ բովանդակ դարս ուԹ դիտէր զոր շուրջ զիւրեւն, յետ այնքան դիմակալութեան հարուածոց բնութեան եւ բռնութեան, հողմնահար տապալեալ տարածեալ է (ի 6–18 փեպրուարի տարւոյս), նոր ի վերայ հնոց աւերակ յաւերակս. եւ պակասեաց մի ի կարի նշանաւոր յիշատականոցաց Անւոյ եւ համօրէն աշխարհիս Հայոց։ Ի կորստեան եւ ի նուազութեան բանաւոր կամ գրաւոր յիշատակարանաց, աւերակքդ այդոքիկ են ղախօսիկ պատմութիւնք ազգիս մերոյ, յաճախ ճոխագոյնք եւ միշտ ստուգագոյնք քան զգրուածս վիպասանից։...

Բայց ինձ աւերակ եւ շէն միանգամայն աղօտանան՝ աւաղ հայեցողութեամբ։ Խոստովանութիւն մի կարեւոր է իմ, գուցէ եւ այլուր արտայայտեալ. զի ներքսագոյն նպատակ վաստակոյս՝ ոչ է հայրենասիրութիւնն եւ հայրենագիտութիւն վարկպարազի եւ լոկ երկրաւոր, կամ հեԹանոս եւ հելլենացի. այլ հզօր օժանդակ մի համարիմ զայն ազնուախոհ մտաց՝ ի դրուրդ եւ ի Թռիչս գերերկրեայս. ոչ միայն ինձ՝ ըստ իմուՄս վիճակի՝ անկաւոր, այլ եւ ամենայն յուսողաց ի հանդերձեալսն լաւագոյնս։ « Քո են երկինք եւ քո է երկիր, ո՛վ Տէր. զհիւսիս եւ զհարաւ դու արարեր ». գոչէ աստուածահաճոյ Մարգարէն. իսկ ինքն Աստուած՝ նորին բերանով գոչաւորագոյնս ազդէ. « Երկինք աԹոռ իմ են, եւ » երկիր՝ պատուանդան ոտից իմոց »։ Մասն մի պատուանդանիդ այդորիկ՝ ճանաչեմ ես եւ զհայրենի աշխարհն մեր զՀայաստան. սիրեմ համբուրել ի նմա զառաջին ոտնատեղին. այլ իսկ եւ իսկ վերանկատեալ անտուստ՝ յաԹոռ անդր նորին խնդրեմ զհանգիստ իմ. յայն փափագեմ Թեւակոխել եւ իմոց համակիր հայրենակցաց. յայն անկասկած եւ ի համաշխարհական հայրենիս հայրենեաց, յերանաւէտն ի սիրաշատն Աստուածաստան։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1 Որչափ ինչ գտանեմ արձանագրութիւնս՝ զամենայն կամիմ մուծանել 'ի Տեղագրութիւնս, որոյ և պատուականագոյն մասն համարիմ. զի և առաւել աններծք և անայլայլակք մնան սոքա քան զշինուածս. ըղձալի էր ճշգրտել և զսոսին լուսատպութեամբ, որպիսիք չեն և խականքն ընծայեալք 'ի գրիս. (զոր օրինակ Թիւք 15. 16. 41. և այլն, պատկերաց), այլ նմանահանեալք են 'ի Բէսդներայ: Յառաջ քան զսա Լոդդէն աբ Լավալ փռանկ՝ ընդ այլոց հին քաղաքաց և զԱնւոյ և զայլոց ինչ տեղեաց երկրիս մերոյ հանեալ էր զձև արձանաց, խուրահնար Թղթազանդ նիւթով. այլ ոչ գիտեմ զի եղև և ուր մնաց, հանդերձ տեղագրութեամբ իւրով 'ի Մեծ և 'ի Փոքր Հայս: Պրոսէ աւէ հրատարակեալ իբրև 50 արձանագիրս 'ի Բէսդներայ նմանահանեալս՝ 'ի Կաւկաս ռուս օրագրի 1853 տարւոյ ('ի Թիւս 18-21), զոր իմ չէ տեսեալ. բայց 'ի սակաւուց որ 'ի գիրս նորին զԱւերակաց Անւոյ: Բաղդատելով զզաղափարեալսն 'ի զանազանից՝ ընտրեալ եմ զընթերցուածսն, անփոփոխ պահելով խոպառ զբնագիրն հանդերձ սխալանօքն, հազիւ ուրեք յաւելեալ կէտս յորոշումն իմաստից: Ի մատենիկանս յայսմիկ 300 արձանագրութիւնք են հաւաքեալ. այլ զի՞նչ է այդ առ մայրաքաղաքն Անի և առ ողջոյն Շիրակ: Առ չընդհատել յերկար զիմաստ տեղագրութեանս, ոչ սակաւս յարձանացն՝ մանաւանդ զխանգարսն՝ 'ի ստորև իջից կարգեցի 'ի ծանօթութեան: — Վաւերականք ցանկալիք են և դրամք քաղաքաց կամ տերանց նոցին, այլ ցարդ ոչ յայտնեցաւ Շահանշահից Անւոյ և ոչ մի դրամ. իսկ Յունաց և այլազգեաց ոչ սակաւ գտանին 'ի պեղածսն. յիշեալ եմ 'ի կարգին (յէջ 103) զՃէլայիրեանցն՝ 'ի սմին իսկ յԱնի քաղաքի հատեալս:

2 Դիւրաւ ապրդին սխալանք եւ 'ի գիրս եւ 'ի տարակայութիւնս տեղեաց կամ գիւղից: Զչորեքծագեան կողմանս նշանակեմ յաճախ մէն մի տառիւ. որպէս, Ել. — արևելեան. Մ. — արևմտեան. Հ. կամ Հս. — հիւսիս. Հր. — հարաւ: Հեռաւորութիւնք 'ի հասարակի բացատրին մղոնաւ, որ է աշխարհագրականն, կամ $^1/_{60}$ աստիճանի, և 1854 Զ. իսկ տառս այս Զ նշանակէ Զափ, այսինքն Մետր Փռանկաց. ըստ այսմ և բարձրութիւնք ուրեք Զափաւ, և ուրեք ոտնաչափիւ նշանակին. և Ոտն՝ բարիզեանն է, որ է 0,32484 Զափու միոյ, և փոխադրաբար՝ Զափն է 3 ոտք և $^1/_{12}$ ոտին: Յիշեալն ուրեք փարսախ՝ է 2 $^1/_2$ մղոն:

3 Մատուորական իմն լուսատպութիւնս համարելով զստորագրութիւնս ականատեսից վայրացն՝ մերթ ամբողջ և մերթ քաղուածոյ Թարգմանութեամբ՝ կարգեցի 'ի տեղագրիս, յաւելեալ և զբնագիրսն. և այս, մի՝ զի ճշգրտագոյն ևս ծանիցեն միտք հեղինակացն. և երկրորդ, զի շատք 'ի մատենից նոցին դժուարագիւտք են՝ հաճոյագոյն ընծային բանասիրաց, այլ և անհայագէտ հետաքննից, որոց և պատառիկքն յարգելք են: Զնշանակեալսն համառօտիւ 'ի ստորատս իջից՝ զանուանս և զգործս այցելուաց Անւոյ՝ կարգեցից և աստանօր. որոց առաջին համազգի մեր,


BEDIG PETR. — Cehil-Sutun. (Historiæ Persarum). 1678. Vienn.

TAVERNIER J. B. — Les six Voyages. 1676. Paris, 3 vol.

TOURNEFORT (PITON DE) — Relation d'un Voyage du Levant 1717. Lyon, 3 vol.

GEMELLI-CARERI — Giro del Mondo. 1693-8. Napoli, 6 vol.

KER PORTER — Travels in Georgia, Persia, Armenia, ancient Babilonia, etc. 1822. London, 2 vol.

WILBRAHAM — Transcaucasian Provinces of Russia. 1834, London.

ABBOT KEITH — Notes of a Tour in Armenia in 1837, (XII Vol. Journal of the R. Geographical Society. London).

BORÉ EUGÈNE — Aspect des Ruines d'Ani. (Mémoire dans le *Correspondant*, Revue mensuel, Tome I.er p. 288). 1843.

HAMILTON W. — Researches in Asia Minor, Pontus, Armenia, etc. 1842. London.

KOCH KARL — Reise durch Russland nach dem Kaukasischen Isthmus in den Jahren 1836-8. 1842. Stuttgard, 2 vol.

CREAGH J. — Armenians, Koords, and Turks. 1880, London, 2 vol.

FONTON (FÉLIX DE) — La Russie dans l'Asie Mineure. 1840, Paris.

TEXIER CHARLES — Description de l'Arménie, la Perse, et la Mésopotamie. 1843, Paris. 3 vol. in f.°




# ՇԻՐԱԿ

ՆՇԱՆԱՒՈՐՆ և յոգնայիշատակ՝ գրեաթէ բաց 'ի սակաւուց ոմանց՝ քան զամենայն գաւառս Հայաստանեայց, ՇԻՐԱԿ, գոգջիր 'ի կենդրոնի կայ սեփական աշխարհին իւրոյ Այրարատոյ. սահմանս ունելով՝ յարեւմտից զՎանանդ, 'ի հարաւոյ զԵրասխաձոր, յելից զԱրագածոտն և զայլ ինչ մասունս Այրարատեան Նահանգի, և 'ի հիւսիսոյ զԱշոցք և զՏաշիր Գուգարաց: Եւ է հանգոյն Վանանդայ, և ընդարձակագոյն ևս, դաշտ ծաւալային, իբրև 60 մղոն ընդ երկայնն, և 25 ընդ լայն, աւելի կամ պակաս. ոչ ունելով լերինս, այլ անջատ կոհակս կամ լեռնակս ուրեք ուրեք, և ոչ բարձունս՝ որպիսիք 'ի սահմանածայրսն. վասն որոյ ոմն 'ի մերոց գրչաց ԺԷ դարու՝ Մարտիրոս Ղրիմեցի, զվիճակ Բագրատունի թագաւորաց ասէ լինել 'ի «Շիրակուանայ մեծի դաշտին»:

Յարեւմտեան մասին Շիրակայ 'ի հիւսիսոյ Արփայ ըճի ամբառնայ Քարր լեառն. 'ի հարաւոյ Նորին բացագոյն Գզըլպաշ, 2284 Զ. 'ի հարաւոյ Կարուց գետոյն՝ Գաւազուզու լեառն, 1820 Զ. և 'ի սորին հարաւոյ՝ Մաւրիկ, 1695 Զ: Ի մտից Անւոյ և 'ի հիւսիսոյ Տիկորոյ՝ լերինքն Ալաճա՝ Մեծ 2098 Զ. և փոքր. յորոց 'ի մտից հարաւոյ նշանակելին լեռնակք Չիարէր, Սարը-բէփէ, և Էքիզլէր: Իսկ յարեւելակողմն գետոյն՝ Սուփի ? 2450 Զ. Շիշբէփէ 2287 Զ. յորոյ 'ի մտից կամխուտ 2107 Զ. խոնարհագոյն ընդ հարաւ ընդ մէջ գետոյն և օժանդակին Գարագիլիսէի՝ Գզըլ լեառն, 1803 Զ. այլովք ևս մանումբք:

Ըստ ընթացից գետոյն Արփաչայի կոչեցելոյ յայժմուս, որ 'ի հիւսիսոյ 'ի սահմանակցութենէ Գուգարաց ուղղակի

իջանէ 'ի հարաւ յԵրասխ, յերկուս տրոհի գաւառն, յԱրեւմտեան և յԱրևելեան բաժինս. որք և դիէս այսր դարու (1829-1878) երկուց ինքնակալութեանց ուրոյն վիճակք էին, Օսմաննեանց՝ արեւմտեանն, Շօրէկէլ կոչմամբ, և Ռուսաց արեւելեանն՝ Ալեքսանդրապօլ կոչմամբ. և թէպէտ յետ վերջին պատերազմաց և դաշնադրութեանց բարձաւ քաղաքականդ այդ բաժանումն, և բովանդակ Շիրակ՝ Ռուսաց վիճակեցաւ, այլ ճաշաւոր մնայ տեղագրութեանս գետոյն խորոց։

Գետս այս՝ որ ըստ բնականին քաջանշան կերպարան իսկ է Շիրակայ, սկզբնաւորի 'ի լճակէ միոջէ, իբր ժամաչափ գնացից շրջապատութեամբ, 'ի հիւսիսային ծագս գաւառին, սահմանակից և բնաւորակից լճացն Ջաւախաց գաւառի Գուգարաց, Արփա կոչեցեալ, յորմէ և ինքն 'ի հասարակի Արփաչայ կոչի. թէպէտ ոչ ընդարձակ ինչ է՝ այլ սահմանքն ճախճախուտք են և եղտիւրք. և ընդունի 'ի շուրջակայ լերանց վտակս ոչ սակաւ, յորոց մի Պայըգաւ (Ջուկնջուր)։ Ի սկզբան՝ յարեւմտից յարեւելս ընթացեալ և խառնեալ ընդ Լօրփիւլիւ գետակի՝ 'ի միջոց Խօրթիւլիւ և Շիշթէփէ լերանց, իջանէ 'ի հարաւ, և զնոյն ուղղութիւն պահէ մինչև 'ի թափումն յԵրասխ, կամ սակաւ ինչ յայս և յայնկոյս խոտորելով. յաջմէ կողմանէն խառնի ընդ հզօրագոյն գետոյն Կարուց, և երկոցուն միութեամբ վարարեալ՝ երթայ յապաշխականն յայն հանուրց Արարատեան ջրոց. ընկալեալ նախ զգետակն Շիրակաւանու, որ է ըստ արդեաց Շօրէկելի գետ կամ Գարախանէ, զիջեալն 'ի հիւսիսասահման լերանց անտի, յորոց և այլք օժանդակեն զնոյն. յորս գլխաւոր՝ Մոզուաց գետակն կամ Մօքիւզ. 'ի ստորև՝ գետակն Մաւրիկայ, յորոյ հարաւոյ կայ Անի, միայն պատմական յիշատակաւ հռչակեալ Մաղկոցաձորի վտակաւն փոքու. 'ի հարաւոյ Նշանաւոր օժանդակ է Տեկորոյ գետակն։ Ահաքիկ յաջմէն. իսկ յահեկէն ընդունի գետակս ոչ հզօրս, որպիսի են վտակքն որ իջանեն 'ի Գզըլիւռւ լեռնէ և Կրարիաշ, և այլք։ Ի հասարակի երագ են հոսանք գետոյն, և յախուռն իմն ըստ անուանն Ախուրեան. դիպան 'ի այէտս ջրաղացից, այլ ըմբոստ 'ի կամրջաց, որոց քայքայեալ գլուխք միայն երևին ուրեք ուրեք. բայց ջուրքն բարեհամք են և ձկնաշատ, զոր ծանուցանեն և Շիրակացւոյն Անանիայ թուաբանական հանելուկքն ինչ. որպէս այն զոր ասէն զՄարմէտ քաղաքաւանէ, ուռկանու և թարբխ որսալ անդ, և յուէտ զլոկ ձուկն։

Հասարակօրէն համարի ոմանց Արփայ-չայ՝ հինն Ախուրեան, յելիցն 'ի լճակէն մինչև 'ի մուտն յԵրասխ, որպէս և մեր երբեմն համարեալ էր. այլ արդ գրեմք Ախուրեան՝ զէթ մասամբ՝ զԿարուց գետն, այսինքն զարևելեան մասնն՝ որ 'ի Շիրակ։ Քանզի, նախ, գետն Կարուց մեծագոյն գոլով քան զԱրփա՝ յառաջ քան ընդխառնուրդան, 'ի դէպ է հզօրագունին անուանատու լինել նուագին։ Երկրորդ, յարձանագրի ուրեմն 'ի Հոռոմոսի վանս՝ ասէ Նուիրատուն, տուեալ վանացն մարգ մի « յԱստեղանի, յայնկոյս գետոյն ». չիք երկբայել զի գետ զԱխուրեան իմանայ, իսկ տեղիդ այժմ Աստախան կոչեցեալ՝ (18) կայ յահեկէ Կարուց գետոյն, և այսու դրիւք միայն մարթ է կոչել յայնկոյս՝ նկատմամբ վանացն. ապա թէ ոչ՝ յարևելս Արփայի հարկ էր որոնել զտեղիդ. ուրեմն և այդ Ախուրեան է։ Երրորդ, յընդարձակեալ աշխարհագրութեան ուրեմն Խորենացւոյ՝ ասի. « Վանանդ և Շիրակ 'ի հիւսիս (Երասխայ), յորոց ե» կեալ գետն Ախուրէն հանդերձ Մեծագետովն անցա» նելով յելից կուսէ Մաւրիկոպօլսի... և Մրենոյ », (որ են Մէմրէկ և Ալաման). ուրեմն և ոզջոյն գետն Կարուց, որ 'ի Վանանդ է, Ախուրեան լինի։ Չորրորդ, Ասողիկն պատմիչ յայտնապէս ասէ զԱրգինա աւան՝ ուր կաթողիկոսարանն էր՝ « յեզերս Ախուրեան գետոյ ». և արդ ծանօթ է տեղին յահեկէ Կարուց գետոյն, ոչ սակաւ հեռի յԱրփայ-չայէ։ Այլ թէ զինչ կոչէր առ հինսն գետս Արփա՝ յառաջ քան զխառնուրդն ընդ Կարուց գետոյն, վերոյգրեալդ Մեծագետ թէ այլ անուն, ոչ ունիմ ասել։ Իսկ Ախուրեանդ գրի և Ախորեն առ Նախնիս. 'ի Նորոցս ոմանք պիտակարար Գարէգետ թարգմանեցին, ըստ թուրք նշանակութեան սրտխառն բառի. այլ զոյ և 'ի Սիւնիս գետ Արփա անուն՝ 'ի Վայոց ձոր։

Ըստ հարթութեան գետնոյ իւրոյ ունի Շիրակ և ձիրս արգաւանդութեան, զհռչակեալն 'ի վէպս ազգիս անդաստին 'ի ծագմանէ նորին, և զվկայեալն իրաց և յայժմուս. բայց զի երկիրն ոչ սակաւ բարձր է յերեսաց ծովու, (թէպէտ ոչ Կարնոյ և Բասենոյ չափ), 'ի հարկէ ոչ ունի ընծայել ծառս և բոյսս պտղաբերս. թէ և մարթէր բերել ընդեղէնս և խաւարտս, զորոց անփոյթ լինին բնիկք երկրին 'ի մշակել. այլ զթերի նոցին լնու ազնըւութիւն և առատութիւն գերագունին արդասեաց, ցորենոյ. յոր սակս ասէին Նախնի վիպասանք մեր, եթէ Արամայիս թոռն Հայկայ՝ « զորդին իւր Շարայ գյոլովածին և զշատակեր՝ առաքէ ամենայն աղխիւ իւրով » 'ի դաշտ (այսր) արգաւանդ և բերրի, յորում գնան » ջուրք ոչ սակաւք 'ի թիկունս հիւսիսոյ լերինն՝ որ անուանեցաւ Արագած. յորոյ անուն ասեն և զգաւառն » անուանեալ Շիրակ. վասն որոյ թուի արդարանալ առասպելին՝ որ ասի 'ի մէջ գեղջկաց. Թէ քո Շարայի » որկորն է, ասեն, մեր Շիրակայ ամբարքն չեն »։

Օրինակագիր հեղինակաց Յունաց և Լատինաց անծանօթ թուի գաւառս այս[1], որ քաջածանօթ է առ Արաբացիս. յորոց պատմիչն Պէլածօրի, ժամանակակից Բագրատունի թագաւորաց մերոց, յաւելուածով իմն կոչէ զանունն՝ Սիրաճիթ, سراج تير կամ Սիրաճիթյր։

Զ. Քաջայարմար առասպել Շարայի առաջնորդէ մեզ 'ի պատմական ծանօթութիւն գաւառիս, որ՝ որպէս 'ի վաղնջուց հռչակեցաւ առ մերայինս, յայտ է թէ վաղագոյն և բնակեցաւ և մշակեցաւ, զի լիցի 'ի դաշտ և 'ի

[1] Ստրաբոն, Պտղոմէոս, Մելա, և այլք, յիշեն արդարև զՇիրակ Σιρακηνή, զՇիրակացիս Σιρακοί, Σιρακηνοί, և զդաշտ Շիրակաց Πεδίον τῶν Σιρακῶν, սակայն արտաքոյ մերոյ աշխարհիս. միայն թուեցաւ ոմանց թէ Պտղոմէոս զմերս յիշիցէ Շիրակ, բայց ոչ միաձայնեն ձեռագիրքն յայն անուն։ Իսկ զի յայլևայլ աշխարհս լսի անունդ Շիրակայ, յեզերս Կասպիականին և Մէոտեան ծովուց, 'ի հիւսիսակողմն Կովկասու և անդրագոյն ևս ընդ հիւսիս, ցանկալի էր գիտել և զպատճառն կամ զծագումն նախնական։

դարման յոլովածին նահապետին. որոյ անուն արդարև և ըստ պարսիկ լեզուի տայ նշանակ իմն որկորստութեան[1] ։ Ընդ արգաւանդութեանն յայտ առնէ աւանդութիւնդ և բազմաբնակ լինել գաւառին անդստին 'ի կանուխ ժամանակաց. այլ 'ի հին պատմութիւնս ոչ Շիրակացի և ոչ այլ տոհմ յիշի անդ. կամ, զի որպէս Վանանդ 'ի Բասեանց ազգէ բնակեալ էր, և սա նոյին կամ այլոյ հզօրագունի տոհմի էր կալուած, և կամ զի մերձաւոր գոլով ոստանին Հայոց՝ մասն մի սեփական արքունի Այրարատեան նահանգին համարէր. վասն որոյ և տիրաբար պարգևեաց զայն արքայն Տրդատ՝ Կամսարայ, որդւոյ Պերոզամատ Կարենեանն Պահլաւի, « որ» պէս ազգականի իւրում և մտերիմ հարազատի[2] », յորժամ ընկալաւ զնա 'ի ջրոյ մկրտութեանն որ 'ի ձեռն Ս. Լուսաւորչին. և 'ի մեռանել նորա յետ ութ աւուրց, ժառանգեցոյց զերկիրն՝ հանդերձ հարաւային սահմանակցաւն Երասխաձորով, որդւոյ նորա երիցու Արշաւրի, յորմէ և կոչեցաւ ձորն այն Արշարունիք. այլ Շիրակայ անուն անփոփոխ մնաց, և պայազատքն Կամսարականք՝ նախարար յանուն սորա կոչէին Տեարք Շիրակայ, և ապա Արշարունեաց։ Յառաջ քան զսոսա՝ առ մի նուազ ևեթ գտանեմ զյիշատակ գաւառիս[3], յեւս Ա դարու առ Բ Արտաշիսիւ. առ որով Վիրք՝ որպէս 'ի Վանանդ՝ և այսր 'ի Շիրակ ասպատակ սփռեցին, և Այրաքաջն Սմբատ Բագրատունի սպարապետ Հայոց վանեաց զնոսին։ — Վասն վաղնջուց տոհմակցութեան ընդ արքայազարմ Արշակունեաց՝ քան զյոլովս 'ի տոհմից նախապատիւ եղեն Կամսարականքդ, թէ և յետինք ժամանակաւ. և ոչ միայն նախապատիւք, այլ և բնաւից նախադասք, ըստ վկայութեան Խորենացւոյ, որ զԱրշաւրէ Ա՝ յաւուրս Խոսրովու որդւոյն Տրդատայ, եթէ էր « Գլխաւոր և յոյժ » պատուական՝ յետ արքայի[4] »։ Այլ և յետ դարու միոյ՝ ըստ Գահնամակին Ս. Սահակայ զ'ԺԲ գահն ունին[5]. և 'ի Զօրաբաժնի ազգային բանակին՝ անընդմէջ յետ Գուգարաց բդեշխին դասին, ('ի Հիւսիսային գնդին), 600 զօրականս տալով, որ թուով՝ ոչ հաւասարի այլոց մեծամեծ տոհմից, և յայտ առնէ զնոր ծագումն տոհմին. այլ պատուով և ճոխութեամբ միշտ ընդ ձեռներէց իշխանս են տեարք Շիրակայ. և որպէս թուի՝ առ առաջնով իւրեանց Արշաւրաւ շինեցին (ընդ այլ երևելի տոհմս) և ինքեանք վանս մի յԵրուսաղէմ, Բատիճ անուանեալ։ — Այս Արշաւիր խնամակալ կարգեցաւ յամի 351 մանկանն Արտաւազդայ՝ որդւոյ Վաչէի Մամիկոնեայ, Հայոց սպարապետի, անկելոյ 'ի մարտի. նոյն ինքն առաքեցաւ ընդ այլոց գլխաւորաց յուղարկաւոր Մեծին Ներսեսի ձեռնադրութեան՝ 'ի Կեսարիա։ Եղբայր նորա Ներսեհ (Ա.) առաջնորդ եկաց նախարարացն ապստամբելոց յԲ Արշակայ, որ կամէր վրացի գնդաւ նուաճել զնոսա. « և հզօր մարտի եղելոյ՝ բազումք յեր» կաքանչիւր կողմանցն անկան[6] ». մինչև միջնորդութեամբ Ս. Ներսիսի եկին 'ի հաշտութիւն. այլ Արշակայ քինաթափոյց եղեալ, 'ի հեռանալ հայրապետին՝ ստեաց ուխտին, ագահելով կալուածոց նոցին, և 'ի վրէժ գործոյ Ներսեհի, առաւել քան զայլ նախարարաց՝ « զազգ» ըն Կամսարականաց բառնայր 'ի միջոյ.... և կոչեալ » առ ինքն 'ի կքեալ արքունիսն Արմաւիր, իբր զազգական » իւր՝ 'ի պատճառս պատուոյ մեծարանաց, միահաղոյն » զարս և զկանայս հանդերձ մանկամբք հրամայեաց կո» տորել. և ոչ ոք 'ի նոցանէ ապրեցաւ, բայց Սպանդա» րատ որդի Արշաւրի. քանզի ունէր երկրորդ կին ար» շակունի, (զԱրշանոյշ, այսպէս պատուեալ գոլով) իբր » տրտունջ զհօրեղբօրն իւրմէ եղեալ զՆերսեհէ ». և բնակէր 'ի ժառանգութեան Արշակունեաց 'ի կողմանս Տարօնոյ և Հաշտենից. «այլ լուեալ զբօթն՝ հանդերձ որ» դւովքն Շաւարշաւ և Գազաւռնիւ և բոլոր ընտանեօք՝ » գնաց փախստական 'ի Յոյնս[7] »։ Յայնժամ Արշակ աւանց ակնառութեան գրաւեաց յարքունիս զկալուածս Կամսարականաց, և յաւէտ զԱրտագերս ամրոց։ Ի բա-

1 Ծրա՛շ, լերդ, որկրամոլ։ — Անյարիր են անուանք անձինն և տեղւոյն, Շիրակ — Շարա, կամ անծանօթ մեզ օրէնք նախասկիզբն լեզուիս. այսպիսիք են և այլոց նահապետաց անուանք և որ ըստ նոցանէ տեղեացն՝ անհամեմատք. զոր օրինակ, Արմենակ — Արագած, Արամայիս — Արմաւիր, Ամասիա — Մասիս, և այլն, եթէ ստոյգ ոք և եթէ անստոյգ համարիցի զաւանդեալսն ։

2 Խորենացի, Բ. Ղ։

3 Ջուանշէր, Պատմութիւն Վրաց ։

4 Խորենացի, Գ. Դ։

5 Քանզի յոյժ վրէժխնդիր էին նախնիք մեր պատուոյ և պայազատութեան ազգատոհմի իւրեանց, թագաւորքն՝ թէ բնիկ Հայք և թէ օտարք՝ հրովարտակօք և վաւերականօք սահմանէին և հաստատէին զդասակարգ նոցին կամ զբարձս, այսինքն զառաջինն և զերկրորդ, և որ մի ըստ միոջէ, ըստ այնմ կալ և բազմել յարքունիս և 'ի համաշխարհական հանդէսս. և ոչ էր ումեք օրէն փոխել զկարգն, բայց միայն թագաւորաց իշխողաց էր բարձրացուցանել կամ նուաստացուցանել զտոհմն և զտոհմապետս, 'ի պատիւ կամ 'ի պատիժ։ Խոսրովու և որդւոյ նորին Տրդատայ ասեն հաստատեալ այսպիսի դասակարգս (թուի թէ յետ այլոց հնագունից), որ Գահնամակ կոչին, և առ յետնովս, ասէ Մեսրովպ պատմիչ, 400 բարձս լինել ազատաց Հայոց, յորոց ինքն թուէ 170 միայն, աշխատութիւն համարեալ զբովանդակն կարգել։ Ի ձեռներեց լինել Սասանեանց 'ի վերայ մերազնեայցս՝ նոքա հաստատէին զԳահնամակն. առ որս՝ ասի ('ի Խորենացւոյ) երկիցս գնացեալ Սրբոյն Սահակայ, և տուեալ առնել մասնական կամ բոլորական դասակարգութիւն. զառաջինն՝ առ Արտաշիր թագաւորաւ, (թէպէտ ըստ այժմու ժամանակագրաց՝ առ նովաւ չէր կաթողիկոսացեալ Ս. Սահակ), զերկրորդն առ Բ Վռամաւ, յետ բարձման թագաւորութեան մերոյս։ Զմասն մի այսր Գահնամակի (անուանս 70) գտեալ 'ի հին մագաղաթի՝ հմուտ բանասէրն Մկրտիչ Էմին հրատարակեաց 'ի Մոսկուա. յորում և արդարև ըստ վկայութեան Խորենացւոյ (Գ. ԾԱ) տոհմն Մամիկոնեան գտանի « ունել զհինգերորդ գահ » նախարարացն Հայոց », զոր բարձրացոյց Արտաշիր, և ետ « 'ի » դիւանի իւրում գրել »։ Զկարգեալսն յԱրտաշրէ՝ վերահաստատեաց Վռամ Բ, (Խոր. Գ. ԿԵ), որպէս ցուցանէ իմն և վերնագիր յիշեալ Գահնամակիդ, որ զի աղաւաղեալ է 'ի հնութենէ, ոչ քաջ պարզին բանքն, այլ վերծանին անուանք Արտաշրի և Վռամայ, յորոց անուն, մանաւանդ 'ի յետնոյն՝ մարթ էր Վռամական Գահնամակ կոչել. այլ մեզ սիրելի է Սահակայն. որ՝ ոչ միայն զի պատճառք այնմ եղև, այլ զի, և որպէս ասէն, « հրամանաւ արքայից » արքայի » կնքեաց զԳահնամակն, ընդ Ներսեհի ումեմն, ոչ գիտեմ Պարսկի թէ 'ի տոհմէ Կամսարայ։ Խանգարեալ է և թուական հրովարտակին, մնալով միայն ամսաթիւն, Քաղոց ժէ ։

Իսկ Զօրաբաժինդ է թիւ համարոյ 84,000 մարտկաց 86 տոհմից Հայոց, դասելոց 'ի չորս թևս, շուրջ բոլորեալ զարքունի բանակաւն և զՄարդպետական գնդաւ (Թագուհւոյ), որովք միահամուռ կանոնեալ թիւ զօրուն Հայոց լինէր 120,000 ։ Զայս՝ Անանիայի Շիրակացւոյ ասի ստուգեալ, և հրատարակեաց առ մեզ Շահխաթունեան եպիսկոպոս, 'ի Ստորագրութեան Էջմիածնի, Բ. 58։

6 Խորեն. Գ. ԻԹ։

7 Խորեն. Գ. ԼԱ. բայց Բուզանդ զպարեալն 'ի կոտորածէն զՍպանդարատ կոչէ մանկիկ մի փոքրիկ։ Դիպողագոյն է մանկանդ

ժանել Թագաւորութեանն Հայոց յերկուս, Կամսարականքն ապրեալք՝ առաջնորդք կային բանակի իշխողին յունական մասինն, այսինքն է Արշակայ Գ. և 'ի դնել սորա մարտ ընդ պարսկահայոյն Խոսրովայ Գ, և 'ի պարտիլ, « այն օր ահագին նահատակութիւնս ցուցեալ Գազաւոնի որդւոյ Սպանդարատայ, բազում անգամ դարձեալ յարձակմամբ՝ ցրուէ զհետամուտսն, և տայր պարապ ժամ գնալոյ Արշակայ ». և յետ մահուան Թագաւորին « առաջնորդէր նախարարաց այնր կողման՝ քաջն Գազաւոն », կոմէս պատուանուամբ մեծարեալ 'ի կայսերէ [1]. այլ յետ սակաւուց համախոհիւքն իւրովք գրեաց առ Խոսրով՝ դառնալ առ նա, խնդրելով անյիշաչարութիւն և զհայրենի ժառանգութիւնն. զոր բազում յօժարութեամբ ընկալաւ Խոսրով, և խոստացաւ՝ վասն մայրենի ազգականութեանն՝ գրել և զնա Արշակունի. և աստի թուի գաւառի նոցա Երասխաձորոյ՝ անխտիր կոչիլ Արշարունիք և Արշակունիք: Երախտագէտք արքայաչուք մեծարանացն, 'ի գերութեան Խոսրովու՝ հաւատարմութեամբ հնարեցան երկոքին եղբարքն Շաւարշ և Գազաւոն թափել զնա 'ի Պարսից, « և ոչ աջողեցան, 'ի պարաւանդելոյ ոտից նորա 'ի շղթայս. և հզօր մարտի եղելոյ՝ սպանաւ Շաւարշ ». իսկ զԳազաւոն՝ ընդ Թագաւորին վարեցին 'ի Պարս, « կասկածեալ յառնն քաջութենէ. և զտուն նորա հրամայէ (Թագաւորն Պարսից) ունել յարքունիս, նոյնպէս և զեղբօր նորա Շաւարշայ [2] »: Յայնմ տարաշխարհիկ գերութեան և յԱնյուշն բերդի՝ մեռաւ արժանայիշատակն և տիրասէր այր, քաջն Գազաւոն. իսկ որդի նորա Հրահատ հանեալ 'ի բերդէն՝ առաքեցաւ 'ի գործ մարտի 'ի Սագաստան. ուստի խնդրեաց դարձուցանել զնա Խոսրով՝ 'ի կրկնում Թագաւորութեանն իւրում. այլ ոչ բաւեաց տեսանել, մահուն 'ի վերայ հասանելով՝ յառաջ քան զդարձն Հրահատայ: — Սորա թերևս որդի է [3] Հրաչայի միականչեալ Կամսարականն այն Արշաւիր քաջն, փեսայն, սիրելին և մտերիմն գործակից Մեծին Վարդանայ, որ բազում արութիւնս եցոյց յառաջ և 'ի մեծի ճակատամարտին, յորում դարձեալ անմեկին 'ի նմանէ և նիզակակից կայր 'ի նորին սեփական վերջապահ գնդի. և միայն մահուամբ նորին անջատէր. և կամաւորապէս գնայր տարագիր 'ի Պարս, բերան ամենայն կապելոց նախարարացն կալով 'ի չքմեղս նոցին և 'ի դատապարտութիւն Վասակայ: Յիշին ընդ նմա ընդ առաքինեան 'ի նմին Կամսարական տոհմէ՝ Թաթուլ, Վարձ, Ներսեհ, և Աշոտ [4]: Նոյն Արշաւիր յետ նահատակութեան Սրբոց Ղևոնդեանց, « ջերմ խնդրով . . . (հարցեալ զերանելի Խուժիկն և լուեալ 'ի նմանէ) « պատմեաց մեզ զխօսս իւրաքանչիւր » ուրուք և զվախճան սրբոցն ». և « յամենայն ժամու, » ասէ Փարպեցին, 'ի տուէ և 'ի գիշերի... այն էր նորա » հոգւոյն կերակուր և որոճումն քաղցր. զոր ասէր և ընդ » գուբողայս սաղմոսին միաբանեալ՝ պատմէր անձանձրոյթ հանապազ »: Խոհական զգօնութիւն նորին ամոքեաց զսիրտ վերակացուին Պարսից, որում հաւատացեալ էր Պերոզի զնախարարեանն, և դիւրեաց սոցա, և յետ երկար ամաց արգելանացն դարձոյց 'ի հայրենիսն. ուր խաղաղութեամբ հանգեաւ Արշաւիր երանելին, որպէս միշտ անուանէ զնա ժամանակակից Պատմիչն Ղազար. և արդարև բազում դրուատեաց ճանաչի արժանաւոր, որպէս առաջին արդիւնական այր 'ի Հայս՝ յանիշխանութեանն ժամանակի, յետ Վարդանայ և նախ քան զՄամիկոնեանն Վահան: Եւ որպէս նա առաջնոյն, և որդիք իւր Ներսեհ, Հրահատ և Սահակ (կամ Վահան) երկրորդիս այսմ Մամիկոնենի եղեն յամենայնի մտերիմք, սրտակիցք և բազկակիցք. և անբաւ արութիւնս քաջութեան ցուցեալ, գրեաթէ միայնակ մենամարտելով ընդ բազմութեան պարսկական գնդից՝ ամս ոչ սակաւս, ժուժկալեալ և գերութեան կանանց իւրեանց, հասին ընդ նմին բարեբաղդ յաջողութեան, ազատութեան եկեղեցւոյ և հայրենի ժառանգութեան. որպէս ոճով և մանրամասն պատմէ ականատեսն Փարպեցի, առ որ առաքեմք զսիրողս այսպիսեաց յիշատակաց: Եւ 'ի սմանէ և 'ի միւսսորդւոց բանից յետագայ պատմչաց՝ հաւաստի տեսանեմք յայն ժամանակս և ըզկնի, զերկոսին զայսոսիկ տոհմս՝ զՄամիկոնեան և զԿամսարական՝ լինել յառաջադէմս քան զբնաւ Հայաստանեայս, յոր և առաւել սերտէին ազգախառնութեամբք [5]. Ճենազնեայցն զառաջնութիւն ունելով և զձեռներիցութիւն 'ի Ե և Զ դարս, Պահլաւեանցս՝ զերկրորդութիւն. այլ յ'Էն դարս (Կամսարականս) գտանեմք յառաջնութեան, և նուազեալ զՄամիկոնեանս: Պատճառք մի ևս փայլման Կամսարականացդ՝ էր պատուիլն 'ի դրանէ կայսերաց, անդստին 'ի ժամանակաց Գազաւոնի, կոմսութեան չքով, 'ի վերայ որոյ յաւելուածով՝ պայազատք նոցին կոչեցան Ապոհիւպատք [6] և Պատրիկք. զի որպէս հարք նոցա 'ի դրան Պարսից, և սոքա 'ի Կայսերն՝ բազում պատիւ հարին, և 'ի հեռաւոր աշխարհս առաքինացան 'ի պատերազմունս: — Ոչ գիտեմ, վերոյիշեալն Հրահատ որդի Արշաւրի՝ եթէ այլ ոք է որ 'ի տապանագրին կոչի Պատրիկ, և որդի նորա Արտաւազդ Ապոհիւպատ Պատրիկ: Հրահատն Արշաւրեան երևի յետ մահուան երիցու եղբօր իւրոյ Ներսեհի՝ կալեալ զտանուտէրական բարձն. իսկ երիցագոյն եղբայր նոցա Սահակ [7] որ կարծի կոչեցեալն Վահան 'ի Փարպեցւոյ [8], թուի այլ համանուն Թոռն գոլ. և անճահ յամի 363 մանկիկ լինել Սպանդարատայ՝ որդւոյ այնր Արշաւրի՝ զոր իբր 45 ամօք յառաջ տանուտէրութեամբ մեծարէր Տրդատ:

1 Խորեն. Գ. ԽԶ. ԽԸ:

2 Խորեն. Գ. Ծ:

3 Փարպեցի, ԾԵ:

4 Եղիշէ, Ը. իսկ առ Փարպեցւոյ՝ ըստ այժմու օրինակի գրոցն, առաջինքն կոչին Թաթ և Վարձայ, յետինքն ոչ յիշին:

5 Որպէս յիշեցաւ վերագոյն, Արշաւիր փեսայ էր Ս. Վարդանայ Մամիկոնեայ, առեալ զդուստր նորա Վարդանոյշ, և (որդի իւր) Հրահատ Պատրիկ՝ զՇուշան Մամիկոնեան. իսկ Սմբատ Մամիկոնեան (յելս Զ դարու) առեալ էր կին 'ի Կամսարականաց, վասն այսորիկ որդին իւր և պայազատ՝ կոչէր Վահան Կամսարական:

6 Այս մակդիր հիւպատական պատուոյ Ապոհիւպատ որ դուն ուրեք գտանի, յեղեալ է 'ի լատինականէն ex consulibus մեկնողօրէն, ἀπὸ ὑπάτων, 'ի հելլենականս. յետոյ 'ի գոյական և 'ի նոր պատուանուն փոխեալ ἀπο-ὕπατος. իսկ Անթիհիւպատ, ἀνθύπατος, փոխանակ-հիւպատի՝ յաճախ լսի առ Բիւզանդացիս, և առ մեզ:

7 Յիշէ Անանիա 'ի համարողական առեղծուածսն:

8 Ղազար Փարպեցի, ԼԱ:

ինչ պատիւ և իշխանութիւն ունել, զի ոչ կոչի Տէր Շիրակայ և Արշարունեաց՝ որպէս զկիսներն: Սոցա ազգաբանութիւն մի ըստ միոջէ ճշդիւ գտակաւ ոչ յայտնի, այլ գրեաթէ ցիններորդ դար ոչ պակասեն 'ի գիրս պայազատք տոհմին: Պռոկոպիոս[1] յիշէ և յամի 530 զերեսին եղբարս Հրահատ, Ներսեհ և Սահակ, որք կայսերական գնդաւ մարտ մղէին 'ի Փառանգ, 'ի կողմանս Սպերոյ արևմտեան գաւառի Բարձր–Հայոց, և թափէին զոսկեհանսն 'ի Պարսից: Նոյնք յիշատակին և յամս 547–9 'ի պատերազմունս Իտալիոյ ընդ Տոտիլասայ. յորմէ և գերի վարեալ սպանաւ Սահակ: Ընդ սոյին յիշի և Համազասպ քեռորդի Սիմէոնի զօրապետի Յունաց, և է անշուշտ որդի միոյ յերեցուն եղբարցն. քանզի և առ մեզ յիշի (առանց Թուականի) Համազասպ ոմն Կամսարական Պահլաւունի, որոյ երթեալ յԵրուսաղէմ յուխտ, և շրջեալ 'ի տնօրինականսն, թափեալ էր 'ի ձեռաց պատրիարքացն Երուսաղէմի՝ զվանորայսն Հայոց:

Անանիա Շիրակացի գրէ յառեղծուածսն. «Ի ժամանակի ապստամբութեանն Հայոց 'ի Պարսից (յամի 571), և սպանանելոյն կամսարականին Ջուրակայ զՍուրէն», և ցուցանէ դարձեալ գործակից Մամիկոնենից զԿամսարականս, քանզի այլ պատմիչք՝ Վարդանայ Մամիկոնենի աւեն սպանեալ զմարզպանն զայն: Ի սոյին զարմէ Թուի և Ներսեհ կուսակալն Գառնայ 'ի Միջագետս յետս Զի՞ և 'ի սկիզբն Է դարու[2]: Յետ սորա յամին 636 Տէր Շիրակայ և Արշարունեաց՝ արձանագրի[3] Ներսեհ, և սակաւ ամաք զկնի (652) առանց անուան յիշին ('ի Սեբիոսէ Պատմչէ) Շիրակացի իշխանք՝ ընդ այլոց երթեալ յողջոյն Կոստանդնի կայսեր՝ 'ի Կարին: — Ի վերջ կոյս Է դարու մեծ զովութեամբ յիշեն ժամանակակից և հայրենակից մատենագիրք՝ Անանիա և Փիլոն Շիրակացիք և Գրիգորիս Արշարունի, նախ, զՆերսեհ Կամսարական Տէր Շիրակայ և Արշարունեաց, զոր Յուստինիանոս Բ կայսր՝ եկեալ 'ի Հայս՝ կարգեաց իշխանապետ՝ Կուրապաղատ (Κουροπαλάτης) պատուանուամբ (688–91), որոյ հրամանաւ Փիլոն Թարգմանեաց զեկեղեցական Պատմութիւն Սոկրատայ՝ 'ի հայ բան, ասելով յառաջաբանն. «Ո՛վ Տէր Ներսեհ Կամսարական, Ապոհիւպատ Պատրիկ, որ եկեղեցեաց ես շինող», և այլն: Մի յայնց եկեղեցեաց է Ս. Աստուածածնի եկեղեցին Թալնայ, ուր յիշին և կին նորա Շուշան, և որդին Հրահատ: Անանիա կամ այլ ոք ընդարձակող Աշխարհագրութեան Խորենացւոյն, ասէ 'ի ճառելն զՏրիպոլեան քաղաքաց Ափրիկիոյ, «Որոց իշխանացաւ (երբեմն) իմաստունն Ներսէհ Կամսարական, պատրիկն Շիրակայ և Աշարունեաց տէրն»: Ապա յիշէն զՎահան Պատրիկ Կամսարական, զոր և Պահլաւեան ասէ Գրիգորիս, և նմա ընծայէ զգիրս իւր Մեկնութեան Ընթերցուածոց[4]. կոչէ զնա Տէր, այլ ոչ անուանէ Շիրակայ տէր, և Թուեցուցանէ (գէթ 'ի վերջէ) հրաժարական կենսս վարել նորա. քանզի, «Թողեալ »քո, ասէ, զերկրաւոր Թագաւորիս զընդարձակ ճանապարհ, երկնաւորին նեղ ճանապարհաւ 'ի յերկրի »զինաւորիս. Թէպէտ աղաւնոյ ստացեալ՝ դադարեա յանապատիդ. դոյզն օթևան ունելով. յորում նստիս լռիկ »միայնացեալ 'ի բազմազբաղ կենցաղավարութենէս, »ակն ունելով Քրիստոսի գալստեանն», և այլն: Եւ այլուր դրուատելով, «Ո՛վ անձն մեծախորհուրդ և զարմանալիդ հանճարով. քանզի զքեզ գիտեմ լուծ իմաստութեան՝ կշռել իւրաքանչիւրոց զարժանն, ըստ իմաստի »և ժամանակի»: Դարձեալ. «Վասն զի այր ես մեծ և »ողջախոհ մտօք, պսակեալ ծերութեամբ և իմաստութեամբ, իբրև Թագաւոր յԱստուծոյ 'ի ժամանակիս 'ի »միջի մերում»: Եւ դարձեալ. «Դու, տէր, ես երագասիրտ, և ողորմ բանից սովորական... ո՛ խոհեմագոյն »դու և իմաստուն տէր»: — Դուստր այսր Վահանայ Պատրիկի Շուշան անուն «զխոստովանող անուն ժառանգեաց, վասն Քրիստոսի Աստուծոյ չարչարեալ 'ի Խառան Միջագետաց[5]», յամի 706–7, «յորում' արար »զնաւակատիս եկեղեցւոյն Վարդանակերտի՝ Գագիկ »Կամսարական»: — Առ միով 'ի յետին յիշեցելոց իշխանացս Շիրակայ՝ յապստամբելն Հայոց 'ի չարաչար նեղչաց ոստիկանաց Արաբացւոց, յետ հռչակաւոր պատերազմին Վարդանակերտի (702), Կամսարականք՝ Վանանդացի դրացեօք իւրեանց՝ հարին զՄահմէտ Իպն-Օքբայ ոստիկան կամ հարկահան կեղեքիչ. այլ 'ի նուաճել անդրէն Արաբաց զՀայս՝ յայտ է թէ ոչ անվտանգ թողին զՇիրակացիս. նա մանաւանդ յիշէ իսկ ոմն պատմիչ (թէ և ոչ յանուանէ), թէ յամի 705 «զՇիրակայ »տէրն տարան յԱսորիս». թերևս նոյն ինքն Վահան Կամսարականն էր, հանդերձ խոստովանող դստերբն՝ Շուշանաւ: — Յետ իբր 30 ամաց յիշի, առանց անուան՝ Տիկինն Շիրակայ գաւառի, որ երկուցեալ 'ի վրէժխնդրութենէ Արաբացւոց, ստիպեաց զՍ. Վահան Գողթնացի՝ մեկնիլ երթալ 'ի սահմանաց իւրոց, ուր դեգերէրն յուխտս և 'ի վանորայս՝ ճգնութեամբ: Մերձ 'ի վախճան Ը դարու յիշի միւս ևս Ներսեհ Կամսարական, որ ընդ այլոց ազատաց 'ի գործ մարտի վարեալ ընդդէմ Խազրաց և Հոնաց՝ անդր քան զՊահակն Ճորայ, և վըտանգեալ 'ի տօթոյ ամարայնոյ՝ մեռաւ յամի 784: Յայսմ հետէ ոչ ևս գտանի 'ի գիրս անուն տանն Կամսարականաց և տերանց Շիրակայ. որք 'ի հակիրճ յիշատակէ աստի մերոյ ճանաչին արք մեծարգոյք, ոչ միայն քաջութեամբ և բարեպաշտութեամբ, այլ և իմաստասիրութեամբ և աշխարհաշինութեամբ. և Թուի վասն այն խուսելով յաղմկէ և 'ի բռնութենէ Արաբացւոց, գաղթեալ յարևմուտս կոյս 'ի յունականն բաժին, վաճառելով ան-

1 Պռոկոպիոս յերկոսին ևս Պատմութիւնս իւր՝ Պատերազմաց Պարսից և Գոթաց, սոէպ յիշէ զերեսին եղբարսն, կոչելով Ναρσῆς, Ἀράτιος, Ἰσάκης. զորոց տես և 'ի Ջամչեան Պատմութեան Հայոց, Բ: Մարթ է սոցա լինել որդիս Արշաւրի. այլ ոչ և զկնի յիշեցելոցն 'ի նոյն պատմչէ՝ երկուց եղբարց Ներսեհի և Սահակայ, յորոց առաջինն մեռաւ 'ի Հայս 'ի մարտի ընդդէմ Պարսից, յամի 543, երկրորդն 'ի սահմանս Հռովմայ՝ 'ի Տոտիլայ 'ի մահ վարեցաւ 'ի վրէժ մահուան զօրավարի իւրոյ Ռոտրիկայ վիրաւորելոյ 'ի Սահակայ:

2 Լը Պօ, ժ. Lebeau, Hist. du Bas-Empire, x. 166. 259. 322. 417.

3 Արձանագիր գմբէթի եկեղեցւոյն Ալամանայ. (տ. յէջ 125):

4 Ասողիկն փոխանակ Վահանայ՝ Ներսեհ կոչէ զխնդրող գրոցն:

5 Այս ինչ գրի յաւարտ գաւազանի եպիսկոպոսաց Կամսարական տանն. և երևի հանդիպեալ իրացս յետ այրման ազատացն Հայոց 'ի Նախճաւան քաղաքի, յամի 705:

դարձօրէն զերկիր իւրեանց՝ զԱրշարունիս և զՇիրակ՝ տերանց Բագրատունեաց, որք յ'Ը դարու սկսան պայծառանալ և նախաձեռնել 'ի Հայս։

Նախ Աշոտ Մսակեր և Շապուհ եղբարք որք գանձագին արարին, իբր յամի 783 զՇիրակ [1], և յետ նոցա որդիք նոցին և թոռունք՝ շինեցին կամ նորոգեցին անդ բազում աւանս զԱխուրեան գետով, ընդ որս և զամուրն Անի, և 'ի նոյնս փոխեցին զաթոռնիս իւրեանց 'ի Կոգովտէ, ուր էր առաջին ոստան նոցա՝ 'ի բերդն Դարիւնից, թողլով և զոստանն Կամսարականաց զՄարմէտ, այն է Երուանդաշատն հին։ Ի ժառանգութեան տոհմին Բագրատունեաց՝ Շիրակ բարգաւաճեալ շինութեամբք և ամենայն պայծառութեամբ՝ գլեաց զամենայն Հայաստանեօք. մինչև յելս կոյս Թ դարու՝ խափանեալն 'ի 460 ամաց հետէ թագաւորութիւն Հայոց՝ վերանորոգեալ հաստատեցաւ անդ. և 'ի միւսում դարու արքայական աթոռն եղաւ յԱնի։ Այլ յետ կիսոյ ԺԴ դարու՝ լռելեայն իմն և յանզգաստից ամայութեամբ զարմանալւոյն Անւոյ, ամայացան և Շիրակ և ամենայն սահմանք իւր, և անկան ընդ հասարակաց բաղդիւ Հայաստանեայց՝ 'ի յետին դարս. յարշաւանաց անտի Լէնկթիմուրի, Թուրքմանաց, Շահաբասայ 'ի սկիզբն ԺԷ դարու, Օսմանեան Սուլտանաց (յամս 1630, 1635) մինչև յարշաւանս Ռուսաց 'ի մերում ժամանակի, յորում Ախուրեանն գետ սահման կարգեցաւ ընդ մասն նոցին և ընդ Օսմանեանցըն. որք թէպէտև միացեալ են արդ, այլ՝ որպէս վերագոյնդ ծանուցաք, պատշաճ համարիմք տեղագրութեանս՝ պինդ ունել զառաջին բնական բաժանումն գաւառիս յերկուս վիճակս, Ա. Արեւմտեան Շիրակ կամ Շիրակաւան, Բ. Արեւելեան Շիրակ, կամ Ալեքսանդրապօլ։ Զի թէպէտ կամայական սահմանք փոփոխեցան և փոփոխին, այլ յարափոփոխն 'ի բնէ ալեօք Ախուրեան՝ անփոփոխ անջրպետ կայ աստանօր անդնդախոր և անմկանդ յատակաւն. հանգոյն յուսոյ հայրենեաց 'ի խորութեան սրտի, զորոյ զվերին երեսս ծփեցուցանեն բաղդք բռնաբարոյք։

[1] Ի ճահ գայ թուականդ և երթալոյ վերջնոյ Ներսեհի կամսարականի 'ի մարտ. և թերևս 'ի մահուանն՝ որդի կամ ժառանգ իւր վաճառեաց զհայրենիսն։ — Զայսու իսկ ժամանակաւ, ըստ նորայայտ և ոչ աներկբայ գրուածի իրիք ցեղաբանութեան Կամսարականաց, (յորոց սերեալ ցուցանէ զազնուական տոհմն Ալլահվէրտեանց՝ որ արդ 'ի Կ. Պօլիս), յամի 789 խոյս տան Կամսարականք Բասենոյ՝ տեարք Բողբերդի, յերեսաց Արաբաց, և երթան 'ի Շաղագոմ՝ 'ի բերդն Վարայր-վայրի, զոր անդստին 'ի Դ դարէ առեալ էին 'ի պարգև 'ի կայսերէ, 'ի ժամանակի կոտորածի տոհմին իւրեանց՝ յԱրշակայ, ընդ նմին և զՆերաշխուտ գեօղ, զայժմեանս Խաշուտ 'ի Թորթում. և երբեմն զօրացեալ տիրեին և կողմանց Սպերոյ. սերունդք նոցա 'ի կէս ԺԷ դարու գաղթեցին 'ի Կարին, և անտի 'ի Կ. Պօլիս։ Ըստ այսմ գրուածոյ 'ի Կամսարայ Նահապետէ տոհմին ցայժմեան յետին սերունդս Ալլահվէրտեան տոհմի՝ 40 ազգք լինին, զորս և յանուանէ կարգէ. բայց զի ուրեք ուրեք յերկար միջոցք են ժամանակի, փոխանակ 40ից պահանջին իբրև 50։




Գաւառացոյց Այրարատ աշխարհի.

# Ա

# ԱՐԵՒՄՏԵԱՆ ՇԻՐԱԿ

## ՇԻՐԱԿԱՒԱՆ



ԱՀՄԱՆԱՒ ընդարձակագոյն է այս մասն Շիրակայ քան զԱրեւելեանն, այլ նուազեալ 'ի շինութենէ և 'ի բնակչաց. գեօղք և հանգրուանք հարիւրիւ չափ ընդ մեծ և ընդ փոքր նշանակին 'ի սմա, իսկ բնակիչք՝ յետ վերջին պատերազմաց, համարեցան 'ի Ռուսաց՝ ընդ բնաւ 26810 ոգիք, յորս Հայք 11561. մինչ քառապատիկ աւելի է բնակիչ միւսոյ մասինն։ — Ի գլուխ վիճակիս՝ 'ի հիւսիսակողմն՝ առ Արփայ[1] լճաւ և զեզերբք վտակաց որք թափեալ 'ի նոյն՝ յորդեն և գործեն զհամանուն գետն, նշանակին մանր գեօղք կամ հանգրուանք. և են, ըստ ընդարձակ աշխարհացոյց տախտակաց, նախ 'ի Հս. բնաւից՝ Պաչ-կէօլ (Գլուխ-լճի). 'ի Մ. Նորին Սկօկիւտլիւ (Ռււաենուս)[2], և 'ի Հր. Գէօրք-Գիլիսէ (Փառաւոռն-եկեղեցիք), որոյ անուն հետաքննելի կացուցանէ զտեղին։ — Ցարեւմտակողմն լճին երկու գեօղակք են Գալալա անուամբ. յԵ. Հ. Խօրքիւլիւ. յոր անուն միւս եւս գեօղիկ բացագոյն յարեւելս կոյս, և 'ի միջոցին Կիւարչանի? (Կիւվէրճին? Ազամի)։ — Մերձագոյն 'ի լճէն յԵ. կուսէ Թէփէ-քէնտ. յելից նորա Տիզ, (որք Թարգմանին Բլրագիւղ և Դաշտագիւղ կամ Հարթ գիւղ)։ Ի հարաւակողմն լճին եղտիւրք են և ճախճախուտք և մարգք՝ անուանեալ Սարը-չայըր. նոյնպիսի վայրք և յարեւելակողմն. ուր ոչ հեռի 'ի գետոյն՝ Գարագալէ (Սեաւ բերդ) փոքր շինավայր, քննելի վասն նշանակի անուանն։ Ի հարաւոյ սորին մերձ 'ի գետն ամբառնան լեռնաբլուրք Եուրդ-պաչ և Եիւզլիւ կամ Եիւզլիւ-բէլիւ, յորոյ գագաթան երեւին և մնացուածք հին բերդի։

Ցելից կուսէ լեռնաբերդիս առ գետովն նշանակի գեօղ չէն՝ Ամասիա հին անուամբ. և ըստ նմանէ 'ի հարաւ իջանելով՝ ըստ ընթացից գետոյն, Գարաչանդա կամ Գարաչամ. — Մաղարաւըգ (Քարայրիկ). յորոյ Մ. ամբառնոյ Զալպաչ լեռնակ. և 'ի նորին հարաւոյ բարձրագոյն քան զայն Գզըլ-պաչ (Կարմիր սար), 2284 Զ. ունելով յարեւելեան ստորոտն զմեծ գիւղն Ջագմագ։ — Ի Մ. հարաւոյ սոցին Գզըլ-դաչ (Կարմիր քար) կամ Գզըլճա գիւղ. յորոյ Հս. Խաչխաչ հանգրուան. և 'ի Մ. մերձ 'ի գետն՝ Կիւլլիւ պուլագ (Վարդաղբիւր), գեղեցիկ՝ այլ քայքայեալ եկեղեցեաւ։ Ի Մ. Հր. սորա Գարա-Մէհմէտ։ Եւ դարձեալ ընդ հարաւ գնալով ըստ գետոյն, մինչև 'ի խառնուրդս Շիրակայ գետոյն, Օձագըլ կամ Ողջ-օղլու, Պաճօղլի, Օձագ-գուլու կամ Օձագ-գալէ հանդէպ Ալեքսանդրապօլի, զոր շինեցին Մշեցիք գաղթեալք յերկրէ իւրեանց յամի 1856, նեղեալք 'ի Քրդաց. և էին երկոտասան տունք՝ յանցանել ընդ այն Էպպօթի Անգղիացւոյ[3] յամի 1837. իսկ յետ վերջին պատերազմին (1877) Ռուսք արկին անդ կամուրջ փայտեայ յերթևեկ բերդաքաղաքին իւրեանց։ — Մօլլա-Մուսա, գեօղ մեծ 'ի ստորոտ ցածուն բլրոյ. ուր զառաջինն բանակեցաւ Լօռիս Մէլիքով սպարապետ, անցանելով ընդ զինուորական կամուրջ՝ արկեալ ընդ մէջ Պայինտուր գեղջ և Շիրակաւանի, յամի 1877 'ի 24 ամսեան ապրիլի։ — Գարագիլիսէ, և յարեւմտից նորին Վարդանլը։ Ի՞ցէ՞ արդեօք սա Վարդանակերտն, զորոյ եկեղեցւոյն նուակատիս կատարէր Գագիկ Կամսարական յամի 706։

4. Ցարեւմտեան հիւսիսակողմն վիճակիս 'ի սահմանակցութեան Ջարիշատայ և Կարուց, ուր երկու գետակք՝ Գարախանէ և Մազիւզ, այն է Մոգուաց գետն, գործեն զգետն Շիրակայ, Շօրէկէլ-չայ, 'ի վերնակողմանս ա-

[1] Կարծեմ յանուն լճիս և սահմանացն՝ երբեմն ԱՐՓԱԼՀԳ կոչեցեալ 'ի Թուրքաց, զի յետ այսպիսի վիճակ 'ի պատմութեան Օսմանեանց, որպէս և Աէֆա ճայըր 'ի սահմանս Չըլտըրայ, որ է առել սաւէն 'ի Հ. Շիրակայ. և յայտ է որիշ լինել յԱրփաչայերէ՝ որ 'ի կողմանս Սաորին Բասենոյ։ Արփա՝ գարի նշանակէ 'ի Թուրք լեզու. ցորենաշատն Շիրակայ չէր անդէպ և քաջ գարեբեր լինել։

[2] Ուր ուրեք 'ի փակագծի դնեն հայերէնքդ տածկանուն տեղեաց՝ մեր թարգմանութիւնք են և ոչ հին հայ կոչումն, թէ և Թերևս ոմանք այնպէս իսկ կոչէին, այլ մեզ չեն եկեալ 'ի յայտ։

[3] Էպպօթ, K. E. Abbot, Notes of a Tour in Armenia.

ռաջնոյն (որ արեւմտագոյնն է), նշանակին հանգրուանք կամ ամայացեալ գեօղք Խպիչ գալէսի ?, Կարչ կամ Քարչ. յորոց Հր. Գանիրամ լեառն: Իջանելով ընդ հարաւ, յանձուկ ձորահովտի Գարախանայ՝ Չալալդիւր ? և Թէփէքէօյ, փոքր գեօղք կամ հանգրուանք: — Սոսկերտ նշանաւոր հին հայկազնեան կոչմամբ, որոյ հաղորդ երեւի և վերոյիշեալդ Ամասիա, զի կրեն զանուանս նահապետաց ազգիս, մին զերրորդին 'ի Հայկայ և միւսն զհինգերորդին (Սօս): — Ի Հր. նորին Թուզլա, որ թուի չէն փոքրիկ, որպէս և որ 'ի ստորեւ՝ Աղրանտոքէն, Ալաձա-մէձիտ, և Գարախանէ՝ որ թուի սակաւաչէն, այլ կարեւոր տեղի վասն կցուածոյ ճանապարհաց առ նմին:

Ի ձորահովտին Մոգուաց՝ 'ի վերնակողմանն՝ են հանգրուանք Ծանի-չայիր, Մէյիտ-խարապա ?, 'ի ստորեւ յՆ. Սօսկերտի՝ Ճէպէձի, յորոյ Հր. Սէյտի կամ Սէյիտղի. և խոնարհագոյն ևս Մօքիզ կամ Մէքիզ, յորոյ անուն և գետակն, վասն որոյ և թուի 'ի հնումն նշանաւոր ինչ տեղի լինել. յարձանագիրս Բագնայրի 'ի սկիզբն ԺԳ դարու յիշատակի Մոգուաց կողմամբ, ըստ ուղղականին թերեւս Մոգոյս կոչելի, որպէս և Մոգոյքն (Ծղկոյ գաւառի Սիւնեաց). էին առա կալուածք Խաւռազայ ուրումն իշխանի, զորս կին նորա նուիրէ Ս. Աստուածածնի վանաց Բագնայրի[1]: — Ի Հր. սորին առ գետակցութեամբ Գարախանէի կայ մեծագոյն գիւղ Գզըլչաղչազ, բնակեալ երբեմն 'ի Թուրքաց, Պարսից և Հայոց, որոց կառուցեալ էր անդ փոքր բերդ կամ աշտարակ 'ի պաշտպանութիւն յերեսաց ասպատակաց, իբր յամի 1710, և էին առ նովաւ հանքային թթուաջուրք[2]. այժմ միայն Հայք բնակեն 'ի նմա տունք իբր 60, գաղթեալք 'ի Բամբակայ, յԱլաշկերտոյ, և այլուստ. բնակարանք նոցա քարաշէնք են, իսկ եկեղեցին փայտայարկ՝ այլ քարահիմն: Ի նուաճել Ռուսաց զարեւմտեանն Շիրակ, յամի 1877, աստ հաստատեցին զաթոռ վարչութեանն: Յետ անցելոյ դարու (1798) Դաւիթ և Յովհան որդիք Գէորգեայ ԺԲ վերջնոյ թագաւորի Վրաց, օգնութեամբ Լեկաց գնդի հարին աստանօր զզօրս կուսակալին Կարուց, և կողոպտեցին զսահմանն[3]:

5. Յետ միութեան երկոցուն գետակացս, Շիրակայ գետ ընդունի յաջեկէն, որ է յարեւելից կուսէ, այլ ևս վտակս. որոց արեւմտագոյնն ունի 'ի հիւսիսոյ հանդէպ Ճէպէձեայ զՏալավէր գիւղ կամ Թախաւէր, ըստ աշխարհացոյց տախտակաց. 'ի Հր. սորա հանգրուանք Աղպուլաղ, Նոպա-քէօյ, Աղըերի, և Մեծ և Փոքր Համիտլի. և մերձ 'ի խառնուրդսն 'ի գետն Շիրակայ՝ Օղուզլի գիւղ. յորում բերդանման սաղաշէն հին եկեղեցի քառակուսի 30 ոտնաչափ, բարձր և թանձր որմովք, ունելով դուռն նեղ 'ի հարաւոյ կուսէ, և 'ի վերայն ծակ մի կամ խորշ փոքր, և պատուհան ընդ տանեօքն քարամբք խցեալ: Ի յետին ժամանակս թուի այսպէս արարեալ յամուր ապաւինի փոխելով զշինուածն. վասն որոյ և բերդ անուանէ զայն ոմն 'ի մերայոց տեղագրաց: — Յետ խառնրդոյն՝ յաջեկէ, որ է 'ի Հս. գետոյն, կայ Տգնիս ըստ արձանագրութեանց, իսկ յայժմուս անուանեալ Թիքնիզ գիւղ, յորում հին շինուած մի, զորմէ գրէ Հ. Ներսէս Սարգիսեան, « Ժամու հեռի 'ի Շիրակաւանայ. թէպէտ » և չունիցի գիւղս 'ի նշխարաց նախնեացն հնութեանց, » այլ քառորդաւ ժամու հեռի 'ի նմանէ ակներեւ ցուցանէ ամենեցուն՝ բերդ մի հոյակապ, առ եզերբ բարձր » դաշտավայր բլրին, որ տարածեալ ձգի մինչեւ ցՇիրակաւան: Նիստ ամրոցիս գեղեցկադիր յայժ և բարձրահայեաց՝ դիտէ զամենայն արեւելակողմն դաշտին Շիրակայ, և մասամբ իմն զաջ և զահեակ այնր կողման: » Քառակուսի ձեւով ամփարձեալ բերդին՝ ահեղ իմն տեսիլ ցուցանէ, ութ աշտարակօք 'ի չափ բարձրութեան » ահագին պարսպացն, չորից յանկիւնսն կալով և չորից » առ 'ի կողաց իւրաքանչիւր: Ներքին կողմն բերդին » յերիս կարգս բաժանեալ, կամարակապք են իւրաքանչիւր, և կամարք այլ 'ի վերայ նոցա, զի կրկնայարկ է » շինուածն. սակայն վերնոյն առհասարակ կործանեալ՝ » կիսաւեր կայ և ստորինն, որմակամարացն ևեթ մնալով: Պարիսպք բերդիս ուրեք ուրեք քայքայեալ են, և » կոփածոյ քարանց երեսաց նոցին տարեալ 'ի բաց. յորս » կայր երբեմն և հայ արձանագիր՝ վկայեալ յականատեսից, այլ արդ ոչ ևս: Շուրջ զբերդաւն այլ պարիսպ » ածեալ է խոնարհագոյն »: Ի հարաւոյ արեւելից գեղջն կայ բերդդ այդ, 'ի 1535 Ք. բարձու լեռնակի, և աւանդի մեհենատեղի լինել 'ի հնումն: Յամին 1807 Կուտովիչ զօրավար Ռուսաց առ Տիգնիսաւ եհար զբանակ Եուսուֆ փաշայի Կարնոյ՝ մինչչեւ հասեալ էր նմա յօգնութիւն Ապպաս Միրզա արքայորդին Պարսից[4]:

Խոնարհագոյն ևս յՆ. Հր. Տիգնիսայ մերձ յանկիւն կցուածոյ երկոցուն գետոցն՝ Շիրակայ և Արփայի՝ կայ գիւղն Արալըխ, (թերեւս 'ի պատճառս միջանկեալ դրիցն կոչեցեալ այսպէս). զորմէ ասէ վերոյիշեալ Հայրս. « Ի » գիւղս այս ամրոց մի կայ քառակուսի, կողմանցն միայն » կանգուն գոլով ցարդ, այլ 'ի ներքս չիք ինչ, և է 'ի » դաշտավայրի: Ի խանգարեալ արձանագրին որիշ վերծանի անունս Հազարբէկ, և թուական զայս ձև օրի-

Ի
» նակի ՇԺՆ: Առընթեր դրանն կայ վէմ մի մեծ և 'ի
Թ

» վերայ թուական ՌՀԷ »: Առաջին թուականն ընթեռնլի է ըստ իս, Ի ՇԺՆ, թվ. որ է 1066 ամ փրկչին, թէ չիցէ ՉԺՆ (1266), զի 'ի նոյն ամս (1269) յիշատակի յարձանագրութիւնս Հոռոմոսի վանաց Հազարբէկ ոմն որդի Թայիկի, որպէս տեսցի 'ի կարգին, յէջ 28.

6. Հուպ 'ի խառնուրդս գետոյն, յաջմէն՝ որ է 'ի Մ. և յարտաքին արմկան Շիրակայ գետոյն՝ կայ գլխաւոր չէն բովանդակ վիճակին, որում տայ զանուն իւր, որպէս և գետոյն, ՊԱՇ-ՇՈՐԷԿԷԼ 'ի Թուրքաց կոչեցեալ, և է ըստ մեզ ՇԻՐԱԿԱՒԱՆ և ԵՐԱԶԳԱՒՈՐՍ: Ըստ ոճոյ շինութեան քաղաքաց նախնեաց մերոց՝ անկ էր նմին լինել 'ի ներքին կամ յաջեկէ կողմանն, որ է բուն անկիւն կցուածոյ երկոցուն գետոցն, 'ի ստորեւ քան զԱրալըխ, և թե-

1 Տես յարձանս Բագնայրի, յէջ 116:

2 Էպպօզ:

3 Պրոսէ, Պատմ. Վրաց, Բ. Բ. 266:

4 Ֆոնթօն, Fonton, La Russie dans l'Asie Mineure. 101.

րեա այնպէս էր, և գետոյն Շիրակայ փոխեալ է զընթացսն. քանզի դիւր դաշտավայր է գետինն յաւանէ աստի մինչև ցմիւս գետն: Ոչ միայն նշանաւոր շինութեան՝ այլ և հեթանոսական հնութեան ցոյցս տայ Երազգաւորքդ անուն, և թերևս յայն սակս 'ի քրիստոնէական դարս առաւել ընտրեցին զՇիրակաւանն կոչումն, որպէս լսի և յ'Է դարու առ Սեբէոսի. յիշէ սա յամի 580 զօրավարին Պարսից մեծի Պահլաւն ապետի՝ հօր Վստամայ և Վնդոյի՝ յաղթութեամբ հարեալ աստ զՅոյնս. ուրանօր դարձեալ յետ ոչ բազում ամաց 'ի սկիզբն Է դարու դիմեցին Պարսք 'ի վրէժ սպանման կայսեր Մօրկայ՝ 'ի վերայ Յունաց՝ դադարելոց 'ի Շիրակաւան, ուստի խոյս ետուն տքա անցեալք ընդ գետն՝ 'ի Դաշտն Ակռանիս: Ըստ այժմեան դրից աւանին, գետն յիշեալ՝ Ախուրեան կամ Կարուց գետն է, և երկուստեք նորին դաշտավայրք, որոց մասն կամ բոլոր՝ այդու անուամբ կոչիւր: Յետ Ը դարու կամ 'ի սկիզբն Թ^ն պայծառացաւ աւանս այս՝ ոստան եղեալ Բագրատունեաց, մանաւանդ յորժամ հասին յիշխանապետութիւն Հայոց և 'ի թագաւորութիւն. հայր առաջնոյ թագաւորին՝ Սմբատ Ապլաբաս՝ համարի յումանց 'ի պատմչաց մերոց շինող հոյակապ եկեղեցւոյ « մեծապայծառ զարդու », յամին 834. բայց այլք ոչ զայս յիշեն, այլ զշինեալն 'ի թոռանէ նորին՝ Սմբատայ Ա թագաւորէ, որ հաստատեաց աստ զարքունիս իւր, ուր և մնաց ցաւուրս Բ Սմբատայ. զայսմանէ ասէ Ուռպելեանն յողբս Վաղարշապատի.

« Քանզի աթոռ նոքա արկին
Ի Շիրակայ տանն 'ի յԱնին,
Յերազգաւորս մեծ աւանին »:

Իսկ Վարդան՝ կոչէ զայն, « Նախագահ թագաւորացն » Բագրատունեաց, մինչդեռ չև էր ընդարձակ շինեալ » քաղաքն Անի »: Վասն որոյ ողջոյն դարս աստ կատարէին ամենայն հանդէսք արքայավայելք և ընտրութիւնք կաթողիկոսաց, որպէս յանուանէ յիշին Զաքարիայն (յամի 854), Վահանայ (966), և այլոց. վասն որոյ և տեղին՝ որ առ հինսն գեօղ միայն կոչիւր, որպէս և յարձանսն ներքոյ գրեալս՝ Գեղ Շիրակայ, յետոյ եղև մեծ քաղաքագեօղ [1]. այլ նսեմացաւ 'ի պայծառութենէ բազմաշէնն Անւոյ: Ի շինուածս իւր յիշատակին արքունի ապարանք Սմբատայ Ա, որոյ ոչ նշմարին հետք, որպէս մնան դաստակերտին նորոյ եկեղեցւոյն մեծի, յանուն Փրկչին. զորմէ ականատես շինութեանն յետ Թ դարու՝ Յովհաննէս կաթողիկոս գրէր, 'ի բոլանդակելն յամի 897-8. « Ըստ օրինակի կարգաց աստուածայնոց՝ զնորայն նաւակատիս պատուեալ, բարձրացուցանէին 'ի պաշտօն » ցնծութեան. և չքնաղ և երևելի զարդուք ոսկեհամուկ » հանդերձանաց, և 'ի շղաշատեռ առագաստից զնա » պճնեալ պայծառացուցանէր, և կամար ևս 'ի համակ ոսկւոյ » ականակապ յարդարեալ և 'ի քրիստոսական տրապիզին եդեալ ածեալ »: Յետ դարու միոյ Ասողիկ նովին պանծաբանութեամբ նշանակէր, եթէ « Շինեաց զԱմենափրկիչ եկեղեցին յԱւանին Շիրակայ, զմբէթաւորեալ » բարձրագոյն յօրինուածով, կոփածու քաղաքորմով »: Իսկ Նոր տեղաքնին մեր [2], որոյ չափեալ և հանեալ է զյատակագիծ եկեղեցւոյն, ասէ. « Այդ եկեղեցի է անշուշտ որ ցարդ կանգուն կայ, մի 'ի փառահեղ եկեղեցեացն գաւառին Շիրակայ, մեծատարած և բարձր, » անսիւն քառակամար. յորոյ վերայ ամբառնայր կաթողիկէն՝ որ արդ կործանեալ է. մատուռնս կրկին



1. Եկեղեցի Շիրակաւանի:

» ունելով երկուստեք խորանին, ըստ ձևոյ այլոց եկեղեցեաց: Զշինութիւն եկեղեցւոյն թէպէտ և առաջնոյն Սմբատայ ընծայեն, յամին 897, սակայն չիք նորա » յիշատակարան. զի յետ ժամանակաց աւերեալ՝ ընդ » նմին կորուսեալ է և նախկին արձանագիրն, և ապա » վերստին նորոգեալ 'ի Գնելոյ, որպէս պատմէ այլ » արձանագիր: Յիշեալ արձանագիրդ ուրեք ուրեք խանգարեալ և ջնջեալ՝ կայ յարտաքին հարաւային որմն » եկեղեցւոյն, այսպէս ».

1 Յովհաննէս կաթողիկոս:

2 Հ. Ներսէս Սարգիսեան:

*. . . . Ես Գնել չինեցի զԹագաւորաքն(ակ եկեղե)ցիս զոր ի մեղաց մերոց քակել աւերեց...աց իսկ ես տեսի զպանդխտութիւն տեղոյս իւ . . . հոգոյ պահուստ էր մեծաւ յուսով տուո . . . . . գործոյս միջնորդութեամբ տեառն Բարսղի եպիսկոպոսի և յաւագութեանս Անոյ[1] սուլտանին. և այս գործոյս պատճառ Շիրակաւանեցիք եղեն քահանայք և տանուտէրք... արդ աւագն ոք ? որեամբ ջանք եդին և կատարեցին զսա :*

*Ցիշատակ Սուլտանին աւագին Անոյ՝ ցուցանէ զԲարսեղ լինել Ա. եպիսկոպոս քաղաքին, որ յետոյ կաթողիկոսացաւ, որով և վերանորոգութիւն եկեղեցւոյն յելս ԺԱ. դարու: Երկու արձանք ևս են առ առաջնոյն՝ գրեալ յամս **1228** և **1231** առ բարգաւաճութեամբ Վրաց, 'ի ձեռն Խոցադեղ և Մկրտիչ վիմակոփչաց, և յիշխանութեան Աթաբէկ Իւանէի և Շահնշահի եղբօրորդւոյ նորին, որք շնորհեն Շիրակունեայց ազատութիւնս 'ի բաժից ջրաղացից և այլոց ինչ, և պատճառ շնորհին ասեն լեալ զձեռնաւորն (արհեստաւոր) Գուրգէն որդի Ցխատի, որ երևի գոլ ազգաւ Վրացի[1]: Քայքայումն եկեղեցւոյս և կործանումն գմբեթին ասի հանդիպեալ 'ի սկիզբն դարուս՝ ումբակոծութեամբ Ռուսաց, զի անդ ապաւինեալ Լազիկացի Թուրքաց, չելանէին արտաքս. Թուի և վերնատան լինել յարևմտակողմն եկեղեցւոյն, զի կան սանդուղք քարեայք 'ի ստորև, և դռնակ մի երևի 'ի վերոյ:*

*Ցարևելից կուսէ մեծի եկեղեցւոյն ամրաոնայ գեղեցկադիր բոլորշի բլուր, և 'ի գագաթանն եկեղեցեակ մի յանուն Ս. Աստուածածնի, որոյ արդ միայն խորանատեղին կանգուն կայ, և ըստ բաղդի վէմ արձանի որ 'ի Հ. կողմանն էր՝ Թէ և անկեալ, սուղ ինչ պակաս անթերի պահէ զգրուածն, և Թուի գրեալ 'ի ժամանակի վերոյգրելոցն, և զԻւանէի կամ Զաքարէի անուն նշանակել տառիւքն... Իի. յորում յայտ առնեն Խաչուտ և Մխիթարիչ տանուտեարք Շիրակաւանի և այլք հանդերձ քահանայիւք, վերանորոգեալ զտեղին և հաստատեալ կրօնաւորս 'ի նմա, և յամենայն ազգ հարկաց և բաժից ազատ կացուցեալ զսպասաւորս եկեղեցւոյն[2]: Իսկ 'ի Հ. մեծի եկեղեցւոյն 'ի ծայր սարահարթի քարափան՝ կայ մատուռն կիսափուլ, անգիր և անծանօթ, որպէս ասէ վերոյիշեալ տեղագիր մեր: — Արժանի քննութեան են և հին գերեզմանք 'ի հարաւոյ կուսէ Շիրակաւանի, պէսպէս հայկական ձևովք, յորոց մին բոլորաձև որպէս երկանաքար մեծ և Թանձր. և խաչվէմ մի՝ այսու արձանաւ և Թուականաւ **1272** ամի.*

**Սուրբ Նշան Աստուած Բանին**
**Եւ** *ծրարող քաւից գանձին,*
**Յ***ահեղ աւուրն աներևլին*
**Լ***եր բարեխաւս* **Մ***ենկանս և* **Գ***եչիս և* **Մ***ամուզիս :*
**Ի** *Թու.* **ՉԻԱ.** *ամէն. յիշեցէք ի* **Ք***րիստոս :*

[1] Ի. Թ. ՈՀԷ շնորհիւն Աստուծոյ ես Աթաբէկ Իւանէ եւ խոշակս Վրաց եւ Հայւոց Թագոհի վասըն յերկար կենդանութեան հարազատաց մերոց Մանդատորթա խուցէս Շահնշահի եւ Ամիր սպասալար Աւագին Թողաք զդեղիս Շիրակա զապուռիշի եւ զջրսահին բաժն յորդեցէ յորդիք ազատ ի բաժէն. արդ եթէ ոք յետ մեր ի մեծամեծաց կամ ի փոքունց զգիրս հրամանաց մերոց խափանել ջանա յաստուածային փառացն եւ ՅԺԸ հայրապետացն նզովեալ եղիցի ի մահ եւ ի կեանք. իսկ հաստատողքն վարձս բարեաց ընգալցին ի Քրիստոսէ Աստուծոյ մերո. ամէն. Այս բանիս պատճառ Գաւրգէն եղեւ Ցխատին որդին ձեռնաւորն. — Խոցադեղ գրիչ.

Ի Թւ ՈՁ կամաւն Աստուծոյ ես Աթաբակ Իւանէ եւ խոշակս վերայիշխող տանս Վրաց եւ Հաոց եւ նովին(?) Թագոհի վասն խնդրելոյ ի Քրիստոսէ Աստուծոյ մերո զբազում կենդանութիւն հարազատաց մերոց Մանդատորթա խուցէս Շահնշահի եւ Ամիր սպասալար Աւագ...ք զխարաճ ջաղջաց վերի Շիրակ... էին գեղացիքս եւ զհարկ բերդին.. ազատեցաք յորդեցէ յորդիք ի զա.... արդ եթէ ի մարդկանէ ոք խափանեսցէ ի բարձրելոյն Աստուծոյ նզովեալ եղիցի եւ վարձս չարիս Յուդաի եւ զկաենի ընգալցին. իսկ հաստատունք յաստուածային զաւրացն աւրհնեալ եղիցին ամէն. — Մկրտիչ գրիչ.

[2] ... ամենակալին Աստուծոյ եւ հրամանաւ պարոնացն .... էի եւ ՍաԹլմշին մեք Շիրակվանիս տանուտէրքս Խաչուտս եւ Մխիթարիչս եւ քահանայքս եւ այլ մեծ եւ փ .... ուբ եկաք ի դուռն Սուրբ Աստուածածնիս որ ի շատ ժամանակաց ի մԹան էր... ծագեալ ի սիրտս մեր խորհուրդ բարի

Ար ստս խաչվիմին կայ ուրոյն տապան առաջնոյն յե֊ րիցն յիշեցելոց 'ի խաչվիմին, այսու արձանագրաւ.

## Զվախճանեալս ի տիս տղաութեան Մենիկ աղախին Քրիստոսի եւ ա...եսին (աՄՈՒՀԻՆ) քահանաի յիշեցէք ի Քրիստոս ։

Ցուցանեն արձանքդ յետ վաղավախճանն Մենկան Թաղեալ անդ Գեղ կամ Գեչ և Մամուզ. և յամենեցուն յիշատակ յետոյ կանգնեալ զխաչվէմն։ Ցոլովից և հնագունից ևս յիշատակաց գոյ ակն ունել 'ի Նախադաւ կայանից աստի Թագաւորաց և իշխանաց Բագրատունեաց։

7. Սակաւուք հեռի 'ի Շիրակաւանէ կայ բերդ մի փոքր Քէչի-գուլէսի կոչեցեալ (Այծից աշտարակ). զոր կարծեմ ամրացուցեալն 'ի Ֆէհրատ փաշայէ յամի 1583, ընդդէմ Պարսից։ Ցիշի բերդ Շիրակաւանի և յամին 1553, յորում օԹագայեաց Իպրահիմ Վէզիր Սուլդան Սուլէյմանի։ — Միջոց Տգնիսայ, Շիրակաւանի և ստորին մասին գետոյ Նորին, որպէս և Ախուրեան գետոյն 'ի Մ. և 'ի Հր., ցամաքակղզի իմն է կամ եռակողմն, զորոյ անկիւնս գործեն Շիրակաւան, Եըլանլը և Արգինա, ոչ սակաւ ընդարձակ, Թերևս մասն վերյիշեալ Ականից դաշտին, ուր ոչ Նշանակի բնաւ ոչ չէն ոչ աւեր տեղի. սակայն անմարԹ է այնպիսւոյ կարևոր վայրի առկաան առաջնոյն և ոչ հեռի յերկրորդ 'ի բուն մայրաքաղաքէն Թագաւորաց, չունել կամ չծածկել հետս շինուածոց, որք եԹէ ոչ գտցին՝ հարկ է այլոյ մեծի իմն պատճառի լինել անշինուԹեանն։ Այժմ միայն յեզերս գետոցն սակաւ շինավայրք երևին. յորոց սակի են, 'ի հարաւային սահմանաց անտի Զարիշատայ սկսեալ, առ Կարուց գետովն՝ յահեկէն, Կէչլու գիւղ, որոյ անուն և դիրք և Նշանակք ճանապարհաց՝ յայտ առնեն զի հուն անցից է անդ ընդ գետն. և այս Թուի հունն ընդ որ էանց Դուռնըֆոր (15 յուլ. 1701) գալով 'ի Կարուց և 'ի Փերկիտայ և գնալով ընդ հիւսիսակողմն 'ի Տփղիս. և ասէ զայն օժանդակ Արփա-չայի (Arpagi կոչելով), և յառաջելով ընդ հիւսիս՝ 'ի Նմին աւուր եգիտ տեսակ մի մեծածաղիկ Փղենիկ (Elephas Orientalis), քրքմագոյն, և գեղեցկագոյն 'ի բոյսս Արևելից համարեցաւ, և յերկար ստորագրէ, հանդերձ պատկերաւս [1]։ Սուղ հեռի 'ի Կէչլուէ յ'Ե. Հր. առ գետեզերբն Նըշանակի փոքրիկ չէն և բերդ Քիւհնէ-Գարախանէ։ — Խոնարհագոյն հանդէպ Գզըլչաքչաք գեղջ (4) ՃաՄՈՒՉԼՈՒ (Գումշուտ) գեօղ մեծ, առ որով բերդ կամ աշտարակ շինեալ 'ի քարանց Անւոյ, 'ի պաշտպանուԹիւն յերեսաց Քրդաց. որպէս ասէ Անգղիացին Նըպըռդ, որ էանց ընդ այն յ' 19 մայիսի, 1837, և զբնակիչսն խառն՝ Թուրք,



2. փղենիկ — Elephas (Rhinanthus) Orientalis.

սահմանեցաք ի դրան սորա . . . կրաւնաւորս եւ զայս արծան անջինջ հաստատեցաք. որ ով եկեղեցոյս դրանս կա եւ սպասաւորէ սմա Թէ աբեղա եԹէ միակեց Թէ շատ տաւար ունենան եԹէ քիչ Թէ շատ վաստակ ցանեն եւ Թէ քիչ ոչ շարիատ ոչ համարելէ ոչ սուսոնի ոչ եզին Թաղար ոչ մեծ չար ոչ փոքր հետ եկեղեցոյս սպասաւորացս ոչ ումխաւսք չլինի. Թէ ով ոք մին ի մերոց կամ յաւտարաց զմեր հաստատեալ կտակս խափանէ եւ յեկեղեցոյս սպասաւորացս հարկաւ իրք ուզէ Թէ շատ եԹէ քիչ։ գ ։ սուրբ ժողովոցն որոշեալ լիցի մասն իւր բաժին զՅուդային զկաեննին.... իսուրն զխաչահանուացն առցէ. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ .

[1] Վասն պատիճաձև ծըլի ծաղկին՝ Փիղ կոչեցին բուսաբանք, ըստ այնմ և մեք փղենիկ. և է տեսակ ՔԹածաղիկ ազգի, Rhinanthus, յատկաբար կոչեցեալ Rhinanthus Orientalis (ՔԹածաղիկ արևելեան), 'ի Փռանկաց՝ Cocrète orientale. գեղեցկագոյն և մեծագոյն է

Պարսիկ և Հայ կոչէ, որպէս և զԳզըլչագչագի։ Բայց յետ նուաճման Կովկասու բնակեցան աստ Եզերացիք կամ Օսեդք, զորս 'ի յետին պատերազմին (1877) վարեցին Ռուսք իբրև լրտեսս Օսմանեանց՝ 'ի Ջարիշատ, և զգեօղն յաւեր դարձուցին [1], և անցին ընդ գետն 'ի կողմն Կարուց։ — Սուղ ինչ 'ի բացեայ 'ի Հր. նորին կայ Շահնիլէր կամ Շահնատար հայաբնակ գիւղ։

8. Ցարևելից սորին ամբառնայ երկարանիստ լեռնաբլուր, գրեթէ ընդ զանձուկ միջոց երկոցուն գետոցն Ախուրենի և Շիրակաւանի, որք մերձեցեալ յիրար՝ գործեն զլեզու կամ զկիրճ ցամաքակղզւոյն՝ զոր 'ի վերդ յիշեցաք, յարևմտեան եռանկեանն, հազիւ կիսով փարսախաւ տարանջատք 'ի միմեանց։ Ի մերձագոյն կիտի անդ նոցին առ եզերբ Ախուրենոյ Կարուց՝ կայ անշքացեալ գիւղիկն՝ երբեմն գիւղաքաղաք Արգինա, զոր միշտ Մեծն Արգինա անուանէ ոմն 'ի պատմչաց մերոց [2], որպէս Թուի վասն հռչականուն վանացն և վարդապետարանի, որոյ սկզբնաւորութիւն չէ ինձ յայտ. էր անդ և խաչ մի ուխտական։ Նշանաւոր տեղի լեալ է 'ի հնումն յաւուրս պայազատութեան Կամսարականաց՝ ընդարձակ և ամուր բերդաւ, անդստին 'ի Զ դարէ. զի յամին 603 յորժամ Պարսք զհետ պնդէին բանակի Յունաց չուելոց 'ի Շիրակաւանէ (6), բնակիչք շրջակայ կողմանց գիւղորայից ապաւինեցան 'ի բերդ անդր, և պատեհ առեալ՝ ընդ ամրութեան նորին, որպէս Թուի, և զանձկութիւն գետամիջացն՝ ընդ որ հարկ էր անցանել պարսկական գնդիցն, « ելեալ անտի բազմութեան մանկտւոյ զերան-
» դեաց և սրիանաք (?), 'ի վերջոյ նոցա գործեցին մեծ օ-
» ճիռ մխասուց, և թողին վիրաւորս, և առեալ զառ և
» զաւար և զկապուտ՝ գնացին 'ի բերդն իւրեանց »։ Այլ Պարսից դարձ արարեալ յաղթութեամբ՝ « իբրև տեսին
» զեղեալ չարութիւնն՝ համագունդ արշաւեալ 'ի բերդն
» և առեալ զնա, զբազումս սրով սատակեցին. և բա-
» զումք զահավէժ լինէին յահէ անտի. և կէսքն ելեալ
» ընդ դուռն որ բանայր 'ի կողմն գետոյն՝ փախստական
» գնացին. և զայլսն ամենայն 'ի գերութիւն վարեցին։
» Եւ գերեցան յաւուր յայնմիկ 'ի բերդէն յայնմանէ [3]
» գեօղք ԼԳ. և զամենայն նոյնպէս 'ի գերութիւն վարե-
» ցին. և ժողովեալ զամենայն զառ և զաւարն զաւառին,
» և զօրն դարձան և գնացին յԱտրպատական [4] »։ — Յետ այսորիկ ոչ յիշի Արգինա 'ի վէպս՝ ցդարս երիս և աւելի, այլ Թուի յ' Թ դարու 'ի հաստատել Բագրատունեաց զոստան իւրեանց 'ի Շիրակաւան՝ փոխադրեալ և կաթողիկոսաց զաթոռն 'ի մեծ վանսն Արգինայ, որ յանմիջեալ Նիստ կաթողիկոսաց անուանեցաւ իբրև դար մի, մինչև ցփոխադրութիւնն յԱնի։ Անանիայ Մոկացւոյ կաթողիկոսի՝ որ 'ի կէս Ժ դարու եկաց՝ Թուի արարեալ անդ շինութիւնս, ուր և Թաղեցաւ իսկ. այլ քուերորդի նորա և յաջորդն՝ Խաչիկ Ա (972-990) « Նորոգեաց ըզ-
» տուն կաթողիկոսարանին... 'ի գիւղաքաղաքին Արգի-
» նայի, յեզերս Ախուրեան գետոյ, 'ի հանգստարանի
» Տեառն Անանիայի Հայոց վերադիտողի. և 'ի նմին գիւղ
» շինեաց զկաթուղիկէ եկեղեցին վիմարդեան կոփա-
» ծոյիւք, հաստահեղոյս արձանօք, գմբեթարդ խորան
» երկնանման. հանդերձ ևս երեք եկեղեցեօքն նոյնաձև
» հրաշատեսիկ չքնաղագեղ յօրինուածովք. և զարդա-
» րեաց մեծապայծառ ծիրանածաղիկ ոսկեթել անկուա-
» ծովք. 'ի զարդ ոսկւոյ և արծաթոյ, և ամենազարդ
» պայծառութեամբ ջահաբորբոք լուսաւոր անօթոց։ Այլ
» և զաստուածախօս կտակս յոլովակի ստացեալ զգիրս
» սուրբս... հանդերձ ամենայն վարդապետացն հայ-
» նիւք [5] »։ Մեծ ճարտարապետն Հայոց Տրդատ շինեաց զայս հրաշատեսիկ կաթուղիկէ, որպէս յետոյ և զԱնւոյն։ Իսկ ինքն Խաչիկ կաթողիկոս 'ի վախճանելն յամի 990 « դնի յիւրում հանգստարանի, ըստ հիւսիսոյ կուսէ եկե-
» ղեցւոյն Արգինայի, զոր ինքն շինեալ էր »։ Եւ յետ բառնալոյ աստի կաթողիկոսական աթոռոյն՝ ոչ նուազեցին վանական և վարդապետական շնորհք Արգինայի ցորչափ 'ի շինութեան կայր երկիրն. զի 'ի կէս ԺԱ դարու յիշի ընդ իմաստուն վարդապետս Հայոց՝ և « Տէր Ներսէս 'ի
» Բագրևանդ գաւառէ՝ իշխան Հայոց... այր կորովի և
» յոյժ հանճարեղ, բանիբուն և իմաստասէր, ունեալ 'ի
» մեծն Արգինա, հասեալ ամենայն շնորհաց աստուած-
» եղէն կտակարանացն », և այլն [6]։ — Զայժմեան վիճակ այսպիսւոյ քաջանշան տեղւոյ այսպէս ստորագրէ մերս Սարգիսեան. « Աւանացեալ առ Բագրատունեօք Ար-
» գինա և պայծառ եկեղեցեօք պերճացեալ, արդ մի
» 'ի հասարակ գիւղիցն է տաճկաբնակ սակաւաթիւ
» տամբք, 'ի մեծի դաշտավայրի, ժամու հեռի 'ի Թիք-
» նիզայ, բլրոց բարձանց կալով 'ի Թիկանց նորա յա-
» րևմտից։ Նախնի մատենագրացն յիշատակք զշինուա-
» ծոյ Արգինայի սակաւք են, հայրապետանոցն և ե-
» կեղեցիք, զորս՝ Խաչկայ կաթողիկոսի ասէ շինեալ
» Ասողիկ. զեկեղեցեացն բազում՝ գովասանութեամբ
» խօսի, հրաշատեսիկս և չքնաղագեղս ասելով յօրի-
» նուածովք։ Զերիցն 'ի դոցանէ չունիմ ինչ ասել, ո-
» րոց կմախք հազիւ տեսանին զերեսօք գետնոյ. միումն
» ևեթ կոփածոյ քարանցն խսպառ քանդեալ՝ իբրև մոր-
» թեղերծ եղելոյ՝ անյայտացեալ ձևումն արձանացեալ կայ։
» Սակայն մեծն այն 'ի չորիցն՝ կաթողիկէն անուանեալ,

յազգի իւրում, և ցարդ չէ ուրեք այսպիսի երևեալ որպէս ուր եգիտն Դուռնըֆոր. ըստ նմանէ ստորագրեն զայն յերկարօրէն բուսաբանք. մեզ չատ լեցի բան սորին իսկ գոողի ծաղկին աստ 'ի Փերկիտ. La plus belle plante que le Levant produise; c' est une espèce d'*Eléphant* à grande fleur, dont la trompe est courbée en bas. — Tournef. Lett. XVIII. և այլոյ բուսաբանի. C' est une plante remarquable par la forme singulière de ses fleurs... Cette belle plante croit dans le Levant. Եւ միւսոյ. On ne connait encore que de nom le Rhinanthus Elephas rapporté de l' Orient par Tournefort. C' est une très belle plante, aux fleurs larges, de couleur safran, et dont la lèvre inférieure imite en quelque sorte la trombe d' un eléphant, d' où lui est venu le nom scientifique qu' elle porte.

1 Փորձ, Գ. Ե։ Այլք գրեն՝ բարեկամութեամբ ընկալեալ զնոսա հայրենակցաց իւրեանց որ 'ի բանակին Ռուսաց. և զՇահնիլէր գիւղ քանդեալ, վասն փախչելոյ անտի ոմանց 'ի բնակչացն։

2 Մատթ. Ուռհ. 'ի ՆԻԵ թուակ։ Առ Սեբիոսի Եփէնս գրի։

3 Թերևս պակասի բառ 'ի բանից, շուրջ կամ բաց 'ի բերդէն։

4 Սեբիոս։

5 Ասողիկ, Գ. ԼԱ։

6 Նոյն Ասողիկ։

» զոր շինեալ ասէ նոյն մատենագիր՝ վիմարդեան կոփա֊
» ծոյիւք, հաստահեղոյս արձանօք, գմբէթարդ խորան
» երկնանման, հիւսիսային որմոյն ևեթ հանդերձ կիսա֊
» մասամբն արևմտեան կողմանն կանգուն կացեալ, բա֊
» ւական լինի զարթուցանել զհաճոյական ախորժակ
» հնասիրին՝ ընդ վսեմութիւն ձևոյն, և անմահ կարդալ
» զձեռն ճարտարապետին իւրոյ Տրդատայ, որ նախ հիմն
» արկ սմին, և յետ այնորիկ կաթողիկէին Անւոյ։ Տա֊
» րածութեամբ շատ փոքր է սա քան զնա, այլ հոյակա֊
» պութեամբն ոչ այնպէս։ Արձանագրին՝ որ 'ի վերայ
» արևմտեան դրանն՝ խապառ խանգարեալ, թուական
» մի ևեթ նշմարի 'ի նմա ՆԿԱ (1012)։ Կայր և այլ
» տող մի արձանագիր յորմն անդ հիւսիսոյ 'ի ներքին
» կողմն, այլ առ տեղւոյն բարձրութեան անվերծանելի
» մնաց։ Կաթողիկոսունք երկու Անանիա և Խաչիկ սա֊
» տանօր թաղեցան, որոց ցանկալի էր արդեօք շիր֊
» մացն անարատ կալ ցայսօր, այլ ոչ գիտեմ ո՛ր կատա֊
» րած եհաս նոցա։ Ի կողմն արևմտից 'ի մէջ ձորոյն
» երևին և այլ ևս քարակոյտք աւերակաց. և առ ա֊
» փամբ սևպացեալ բլրոցն՝ աւերակ ամրոցի։ Իսկ հայ֊
» րապետանոցին՝ և ոչ հետք նշմարին »։

9. Իբրև ժամու 'ի Հր. Արգինայ առ նովին գետեզերբ կայ Փիրաղի կամ Փիրվաղի գիւղ հայաբնակ և հին բերդ, առ որով և հուն անցի գետոյն. իսկ անտի 'ի վայր ցխառնուրդս նորին ընդ Ախուրենոյ և հուպ անկեան կցուածոյն՝ կայ Աստախանէ, փոքրիկ բերդաւ, որ ըստ դրիցն թուի ոչ աննշան լինել տեղի 'ի հնումն, և յարձանագիրս կոչի Աստեղանի (18)։

Ցաժմէ Ախուրենի (Կարուց գետոյն) սկսեալ յարևմտից կուսէ 'ի սահմանակցութենէ Վանանդայ և Զարիշատի, հուպ 'ի Մէճիտլի և 'ի Մուրատպէկ գեօղս երկրորդին, առ գետեզերբն կան երկոքին գեօղք Շիրակայ Փերկիտ Մեծ և Փոքր, սակաւուք հեռիք յիրերաց. 'ի Մեծն՝ կայ շինուած մի բերդանման կամ իջևան, 25 Զ. յերկայնն և 21 'ի լայն, վեցեքումբ բոլորչի կամարակապ ցածուն աշտարակօք, չորք յանկիւնս և երկու 'ի կողմանսն, ունելով և դուռն 'ի միում կողմանցն, և առ երի յորմն խաչքանդակ. այլ մեծ մասն պարսպին խանգարեալ անկեալ է 'ի վաղուց հետէ, զի և 180 ամօք յառաջ կիսաւեր եգիտ զայն Դուռնըֆոր (14 յուլ. 1701), որ Պարկէդ կոչէ զտեղին և գեօղ մեծ, և վկայէ վայելուչ լինել շինուածոյն մինչ կանգուն կայր [1]։ Ոմանք յայժմեայցս աւանդեն զայն լինել եկեղեցի հոյակապ Ամենափրկիչ անուն։ Են 'ի Փերկիտ և քարաշէն աղբերք կամարակապք։ Զվայրօքս դադարեցաւ 'ի միջօրէի, վերյիշեալ բուսաքնին ուղևորն Փռանկ, 'ի գեղեցիկ հովտի միում կիսով փարսախաւ 'ի ստորև Փերկիտոյ, որպէս ասէն, ուր 'ի միջի այլոց ոմանց սակաւագիւտ բուսոց եգիտ և տեսակ մի նոր Փենուհա ծաղկան (Betonica Orientalis), զորոյ և զսերմն տարեալ աճեցոյց յարքունական դրախտին Բարիզու. և նշանաւոր համարէր վասն կէս ոտնաչափ երկայնութեան, այլ բթաչափ նեղութեան տերևոցն. զորոյ և զձևդ գծագրէ։

Իբրև ժամու հեռի յարևելից Փերկիտայ առ գետովն կայ գեօղն Ճարձագըլ կամ Ճարձ-օղլու։ — Աստի երկու փարսախաւ հեռի ընդ արևելս՝ մերձ 'ի գետեզրն՝ Գաղաչի փոքր գեօղ, յարևմտից Կէչիտ գեղջ նախայիշելոյ։ Աստուստ գետն Կարուց թողեալ զարևելեան ընթացսն խաղայ ընդ հարաւ արևելախառն 'ի Ճամուշ֊



3. Փենուհա արևելեան (Betonica Orientalis).

լու (7). որոյ հանդէպ և մերձ՝ յայսմ յաջակողման կայ լեռնակն Գարագափուշլու, որ թուի այսպէս կոչեցեալ վասն աւերակ բերդի միոյ։ Աստի և անդր ընդ երկայնաձիգ սահման ընթացից գետոյն՝ չկան առ նովաւ մինչև ցխառնուրդսն ընդ Արփայի՝ գեօղք կամ շէնք, բայց միայն իբրև երկու փարսախաւ 'ի վերայ խառնրդոցն՝ Աղուզուլ կամ Ախուզուլ, յերկուս բաժանեալ 'ի գետոյն Կարուց, մին Վերին կոչի և բնակեալ 'ի Հայոց,

1 On campa . . . auprès de Barguet, gros village, dont le château à moitié démoli paroit avoir été bien bâti dans son temps.—Tournef. XVIII.

միւսն Սոորին՝ բնակեալ 'ի Թուրքաց. և 'ի հարաւոյ նորա, կիսով փարսախաւ հեռի 'ի գետոյն և հանդէպ Աստեղանոյ՝ Եշլանըր (Օձուտ) Թուրքարնակ։ Ի միջոցի երկոցուն սոցա իբր կիսաժամու գնացից տարածութեամբ տեղւոյ՝ երևին գերեզմանք բազումք գետնաթաղք և անգիրք. և համօրէն անշէն ամայութիւն վայրացն ընդ բազում ասպարէզս՝ արդարև գերեզմանական լինի տայ երևոյթ և զգացումն։

10. Հեռանալով 'ի գետոյն՝ 'ի հարաւոյ Փերկիտ գիւղից, ժամու 'ի բացեայ կայ լճակ մի՝ որոյ ոչ նշանակի անուն. ընդ մէջ սորա յէլից կուսէ, և Գարագափուլու լեռնաբլրոյ՝ կայ Պալտըրլուն կամ Նարտիլուն գիւղ հայաբնակ 30 տամբք. և յարևելից նորին ամայի գեօղատեղի՝ Հին Պալտըրլուն կոչեցեալ, աւերակ մատրամբք և գերեզմանօք, և 'ի մերձակայ ձորակի այլ գիւղատեղի ամայի, Միատուն անուն։ Ի հարաւոյ սորա լեռնակն Գաբագուզու 1820 Զ. բարձր. յորոյ արևմտեան ստորոտս փոքր գիւղն Խնձուտ։ — Իբր մղոնաւ և կիսով հեռի յարևմտից սորա և մղոնաւ 'ի հարաւոյ Պալտըրլունոյ և երկու մղոնաւ 'ի Հր. Նլից լճակին՝ կայ Քիւրէկ-տէրէ կամ Քիւրիւք-տէրէ գեօղ. երբեմն խառն բնակութեամբ 'ի Հայոց և Թուրքաց. նշանաւոր վասն մեծի ճակատամարտի յետնոյս ընդ Ռուսաց՝ 'ի ժամանակի Ղրիմական մարտից ('ի 6 օգոստ. 1854). յորում սպարապետ ռուսական բանակին էր հայազգին Բեհբուդով, որ և 'ի նոյն սահմանս իբր 666 ամաց զկնի Զաքարեանց՝ զօրավարեալ տարաւ զյաղթանակն[1]։ Զայս տեղի ընտրեաց իւր բուն բանակի և Լոռիս Մելիքով, միւս ևս հայազգի զօրավար, 'ի մարտս 1877 ամաց, յամսեան յուլիսի, յետ առ ժամ մի բառնալոյ զպաշարումն Կարուց, սփռեալ զԹևան 'ի լեռնաբլուրս որք երկուստեք գետոյն Մաւրիկայ։

11. Գետակս այս որ յոմանց Մէզրէ գրի՝ իջեալ 'ի լեռնակաց անջրպետաց Վանանդայ և Շիրակայ, համանման ձևոյ մեծի գետոյն Կարուց և զուգահեռական, ըստ նըմին յարևմտից յարևելս դիմելով աղեղնաձև պատեալ զհիւսիսիւ, իբր չորիւք մղոնօք 'ի հարաւոյ խառնրդոց Ախուրենի ընդ Արփայի՝ Թափի և ինքն յԱխուրեան, քերեալ զՄաւրիկաւ՝ զորոյ կրէ զանուն. ուր ամբառնայ լեռնաբլուր գլխաւոր 'ի հիւսիսակողմանն՝ որ է յահեկէ՝ Գարայալ. իսկ 'ի հարաւոյ՝ (յաջմէն) Գըզըլ-թէփէ (Կարմիր սար) և Խուչ-թէփէ (Նռագագաթն), յորս 'ի յետին մարտին ամրացան Ռուսք, որպէս և յոր 'ի հարաւոյ նոցին՝ յոստս անջատս Աչուձա լերանց՝ 'ի Նալ կամ Նալպանտ-թէփէ և 'ի Մաղարա՛ըդ-թէփէ՝ Թուրքք, առաջնորդութեամբ սպարապետին՝ Մուխթար փաշայի։ « Անկինս
» այս երկրին Հայոց (գրէ ոմն 'ի պատմչաց յետին պատե-
» րազմաց) անհնարին ցամաքուտ է, գրեաթէ խպառ
» անջրդի, անբոյս՝ անդալար. լերինքն 'ի հազարաւոր ա-
» մաց հետէ ջնջեալք յանձրևաց, գիծս համանմանս ըն-
» ծայեն աչաց՝ գոգջիր երկրաչափական ճշգրտութեամբ,
» զոր ոչ ուրեք հատանէ բոլորաձև գագաթն ծառոյ. և
» դաշտք՝ յորոց լերինքն վերամբառնան, որպէս կղզիք 'ի
» ծովէ, բազում այն է՝ զի միապաղաղ երևութանան
» աչաց, որպէս ջուրք ծաւալեալք »։ Թուի 'ի վաղուց ժամանակաց, նախ բնութեան և ապա բռնութեան մարդկան՝ ամայացուցեալ զվայրքս, զոր առաւել ևս տըխրեցուցին ստէպ պատերազմունք Ռուսաց և Թուրքաց 'ի մեր ժամանակս. և 'ի յետնում նուագի՝ զամիսս երիս, 'ի կիսոյ յուլիս ամսոյ ցկէս հոկտեմբերի, որպէս յիշեցաք ուրեք և յիշեսցուք 'ի ստորև, յետ նշանակելոյ զքիրս գիւղորայից հովտիս և զսակաւ յիշատակս նախնեաց։

Ցարևմտեան հարաւակողմն Գարայալ լեռնաբլրոյ և

1 « Ցառաջնում անդ ցայգուն (գրէ ոմն 'ի Թղթակցաց Դայմզ լրագրի, որ անդ յօսմանեան բանակին ականատես գտաւ իրացն),
» խաղաղ էր գիշերն և երկինք անամպ, լուսին պայծառ և հեզա-
» ճեմ, գեղեցիկ իբրև զմի 'ի նկարուց Սալվատոր Ռոզայ։ Ցայսմ
» կողմանէ սահմանին՝ ընդ երկայն և ընդ լայնասփիւռ չարս սպի-
» տակ և կանաչ վրանաց Թուրքաց՝ տարածանէին այսր անդր դալա-
» բաբոյս լեռնաբլուրք անջատք 'ի դաշտակողմն, որ տանի 'ի Կարս,
» և առ ստորոտով միոյ 'ի նոցանէ՝ նշմարի կիսամասնեայ բանակ
» Թշնամեաց։ Բացագոյն 'ի հեռաստանի կանգնէին սպիտակ աշտա-
» րակք Կիւմրոյ, աղօտ աղօտ երևեալք 'ի միջօրեայ լուսնին, մինչ-
» դեռ անդրագոյն ևս երկուստեք նոցին՝ ձիւնագագաթն լեռնակք
» Վրաց խիրտ և խրոխտ կերպարանօք վերամբառնան 'ի պարզուած
» անմիթար երկնից։ Առանց և փոքու իրիք ճգան 'ի ճարտար գրչու-
» թիւն կամ 'ի գեղայօրէն նկարագիր, կարեմ ասել համաստեաւ,
» զի դուն ուրեք էր իմ տեսեալ չքնաղ շքեղերևոյթ լուսնատեսիլ
» տեսլարանի՝ պէս գունակ ամին, որոյ խաղաղական վերին երեսք
» յետ սակաւու միոյ վեր 'ի վայր ամբոխելոց և մթագնելոց էին մա-
» հասփիւռ որոտմամբք պատերազմի »։ Ի հասարակ գիշերի խաղաց բանակն օսմանեան 33000 արանց ընդ հեծեալ և ընդ հետևակ, որոյ զօրագլուխ էր Զարիֆ փաշայ, ընդ այս կողմն՝ 'ի վերայ Ռուսաց. սոցա բուն բանակին էր 'ի Հաճիվէլի գեօղ 'ի հարաւոյ Քիւրէկտէրէի, իբրև երկու փարսախաւ և կիսով բացագոյն. և էին նոցա վերջապահօք հանդերձ՝ իբրև 20000 զօրականք, աւելի կամ պակաս*. բայց յառաջեալ և նոցա ընդ հիւսիսի կոյս՝ կալեալ էր վայր դիպան. յորմէ՝ զառաջինն ընդ առաւօտն՝ դրդուեցուցին զնոսա Թուրքք յանդուգն յարձակմամբ, կշռակի ռմբաձգութեամբ, և զաջ Թև նոցա ընկրկեցին 'ի ստորոտս լերանցն, և անտիևս 'ի բաց մղէին. և Թերևս յաջողեալ էր նոցա գործն, եթէ՝ որպէս ասեն, գունդն որ 'ի վերայ բլրոյ միոյ 'ի պահ կայր՝ հասանէր 'ի դէպ ժամուն և ձեռն տայր 'ի սպառ վանել զԹշնամին. որոյ՝ յետս ընկրկեալ՝ ձախոյ Թևովն մրցէր ընդ աջակողմանն Թուրքաց՝ հրացանօք և տիգօք։ Այլ յորժամ զմեծամեծ հրանօթսն Թօթափել սկսան Ռուսք, արագացի գունդն՝ որոց առաջնորդէր Ռէսիւլ փաշա՝ 'ի փախուստ դարձաւ. զհետ նոցա և հեծեալքն և Պաշըպօզուգք. յորոց զմասն մի յետս դարձուցեալ Խուրշիտ փաշայի (որ աջոյ Թևին առաջնորդէր), կալաւ դարձեալ զբարձունսն՝ յորմէ վանեալ էին իւրքն. և թէպէտ բազում անդուլթիւն արութեան եցոյց նա հետևակագնդաւն, և Դահիր փաշա՝ քաջաձգութեամբ հրանօթոց, այլ քանզի այրուձին 'ի փախուստ դարձեալ և խուճապեալ էր՝ ոչ կարացին զդէմ ունել Ռուսաց. սոքա հալածեալ զձախ Թև Օսմանեանց՝ հարդան եստուն բովանդակ բանակաւն 'ի վերայ աջոյն՝ և ստիպեցին յետս նահանջել, յետ հնգից ժամուց բուռն մարտի՝ 'ի Կարս։ 1200 արք անկան յՕսմանեանց կուսէ 'ի մարտին և 1800 վիրաւորեցան**, 2000 գերի վարեցան, և 6000 դասալիքք ցրուեալ վատնեցան կամ անյայտ եղեն։ Ոչ պակաս քան զ3000 ասեն և զանկեալս և զվիրաւորս Ռուսաց. որք հրոյ ճարակ տուեալ միայն զսահմանս դաշտին՝ յետս դարձան, լքեալ զբանակատեղին, Թէրևս և զպատեհ՝ վաղագոյն առման Ղարսայ՝ 'ի տագնապի և 'ի սրտաբեկութեան Օսմանեանց. և վասն այսորիկ մեղադրեցաւ Բեհբուդեանն 'ի հմտից արուեստին. բայց այլք այլովք պատճառօք անմեղադիր առնեն։ Արդ զի գլխաւոր խառնուրդ մարտին և ճայթիւն 140 հրանօթոց յերկոցուն կողմանց՝ մերձ յայս գեօղ եղև, վասն այնորիկ և յանուն նորին կոչեցաւ Քիւրէկտէրէի պատերազմն։

* Կովկասեան Կաղանդացոյց 36000 ասէ զՌուսս, 60000 զԹուրքս ։

** Ըստ ոմանց ընդ անկեալ և ընդ վիրաւոր 4600 ։

յարևելից Նշաննի լերանց՝ կայ փոքր գեօղն Ճամուչպօղաճ (Գոմշախեղդ). իսկ յեւլից հարաւոյ լեռնակին փարսախաւ հեռի և առ ականքք վտակի փոքու՝ որ թափի 'ի գետակն Մաւրիկայ, Ուղուզլու գեօղ, նշանաւոր հին շինուածով մեծի և հոյակապ եկեղեցւոյ, որոյ գմբեթ ամբառնայ 'ի վերայ բոլորապարոյր թևոց կամարաց, արտաքուստ քառակուսի երևելով. և առ երի խորանին ունի երկուստեք մատրունս կամ աւանդատունս կրկնայարկս. ունի և կըրկին արձանագիրս արտաքոյ 'ի հարաւակողմանն, յորս ոչ հին անուն գեղջն յայտնի և ոչ ստոյգ թուական շինութեան, այլ շինողն՝ Հասան Գնթունի որդի Խական, և թուի Հասանն յիշատակեալ յաւուրս Սմբատայ Ա, յեւս Թ դարու, և ասէ այսպէս.

Ես Հասան որդի Խականայ գնթունո յաւեժաբար ըղձացեալ փափաքմամբ յաւրինել տեղի ապաւինի ի հանդերձեալսն վասն յաւգնահամբար ու բազմամեղ անձին իմո յաւժարութեամբ սրտի իմոյ խորհեցա շինել զեկեղեցիս զայս նախաւրինակ վերին Երուսաղեմի ողորմութեան:

Երկրորդ արձանն յայտնէ զժամանակ նորոգութեան եկեղեցոյն յամի նոր հազարեկին, 1001, և զնորոգողն.

Ես Աշոտ իշխանաց իշխան որդի Գէոր(գայ)... առն քաջի եւ պատերազմողի հաւատարիմ եղեալ տանս հայոց աւի բարձ եւ պատիւ ի Աշոտոյ շահնշանէ եւ ի յորդոց իւրոց Սմատա եւ Գագկա եւ յամենայն թագաւորաց. տեսի զմայր քաղաքիս եւ... արի Աստուծոյ զապականումն նորոգեցի ՆԾ ամի պարթեւիս. ի գալ միւս ամի եհաս ինձ հրաւէր ի վերին արքունի կամեղս ինձ խաչ:

Մայրաքաղաքդ յիշեալ՝ զմայր եկեղեցին նշանակել թուի ըստ երկրորդ և խանգարեալ բառին՝ ռաձարի, յայտ է թէ վերջին բանն յաւելեալ է յետ մահուան նորոգողին, առ որոյ յիշատակէ և խաչվէմ կանգնեալ: Մի 'ի հնագոյն և 'ի կանգուն գեղեցկաշէն եկեղեցեաց է սա, եթէ յետին պատերազմունքն խնայեցին, և արժանի մանր քննութեան ըստ ճարտարապետական մասանց: — Իբրև երկու մղոնաւ յարևելից գեղջս առ նովին վտակաւ յաջմէն՝ կայ Համզաքիւրեկ կամ Համզաքերեկ գիւղ, որոյ բնակիչք խառն էին, իսկ առաջնոյն՝ Հայք միայն:

Ի գլուխ գետահովտին Մաւրիկայ որ 'ի Հ. ստորոտս Ալաճա լերին (63) կայ Պուշանըգ գեօղ փոքր. յորմէ իբր երկու փարսախաւ հեռի առ գետեզերբն՝ Հաճի-վէլի, և 'ի սմանէ իբր երկու մղոնաւ՝ նոյնպէս ընդ գետեզրն իջանելով՝ Սուպօղաճ, երկոքին ևս վկայք անցից յետին պատերազմաց. և առաւել քան զնոսին որ 'ի Հ. Ե. Սուպօղանայ և 'ի Հր. Ուղուզլեայ 'ի միջավայր արևելադէմ ընթացից գետակին, եռամասն գեօղն կամ երեք գեօղք Պաշ, Օրթա և Օձագ (Վերին, Միջին և Ստորին) Քէոսիկ-լէր անուանեալ, երկուք յահեկէ և մին յաջմէ ջրոյն. որք եթէ արդ սակս պատերազմաց Ռուսաց և Թուրքաց աւերակ եղեն, թուի թէ և իբր 1300 ամաք յառաջ նոյնպիսի անցս կրեալ էին, տեղի կռուոյ մեծի եղեալ Պարսից և Յունաց. զի իբրև տաքս յետինքս՝ յամի 603 խոյս տուեալ 'ի Շիրակաւանէ (6) անցեալք ընդ գետն, զհետ նոցա անցին և Պարսք ընդ Արգինա (8), և պատահեցան միմեանց 'ի Գետիկ գիւղ. ուր « Բաղխեալ պատերազմաւ՝ փախստական լինէր զօրն Յունաց առաջի նոցա. » իսկ նոցա զհետ մտեալ՝ կոտորեցին զբազումս 'ի դաշտսն » և 'ի ճանապարհայն ցիր և թաւալ կացուցանէին. և » սակաւ մնացեալք փախստեայ գնացին. իսկ նոցա ժողովեալ զառ և զաւար՝ գնացին 'ի բանակն իւրեանց[1] »:

12. Փարսախաւ 'ի ստորև յաջմէ գետակին կայ Պայրախտար գիւղ, հայ և թուրք բնակչօք, և բերդ փոքր առ նմին. սուղ ինչ 'ի բացեայ կայ սա և 'ի Մ. կուսէ խառնըրդոց վտակին Ուղուզլեայ 'ի Մաւրիկ: Իսկ առ խառնըրդովքն և արտաքոյ անկեան նոցին 'ի Հր. որ է յաջմէ, կայ Կարմիր-վանք գիւղ, զոր Թուրքք Գըզըլ-գիլիսէ կոչեն. ուր կանգուն կայ գեղեցիկ գմբեթաւոր եկեղեցի և անխանգար՝ յառաջ քան զպատերազմունսն, չգիտեմ զկարգ այժմ. զոյգ աւանդատունս կամ մատրունս ունելով ոչ միայն առ խորանաւն, այլ և 'ի հանդիպոյ՝ յարևմտից կուսէ՝ առ դրանն, առ որով 'ի վերայ դրան միոյն կայ արձանագրեալ յամի 1228.

ՈՀԷ. Շնորհիւն Քրիստոսի ես Տալիթա ձեռն ետու մատուանս. ըսպասաւորք....

[1] Սեբիոս:

Քանզի անսովոր է շինութիւն մատրանց յարեւմտակողմն և առ դրան եկեղեցւոյն, մարթ է համարել յետոյ յաւելեալ, և զբուն շինուածն՝ վաղագոյն քան զայն թուական։ Եւ արդարև 'ի վերայ դրան միոյ յաւանդատանցն կայ խանգարեալ արձանագիր, յորում վերծանի անուն Բարսղի Ճոնի, յորոյ անուն և վանքն կոչի 'ի տեղացեաց։ Ճոնդ այդ՝ որ ընտրութիւն արար Շարականաց հրամանաւ Ներսեսի Գ., էր 'ի կէս Է դարու, և ըստ Վարդանայ (ԼՁ) « առաջնորդ Սուրբ ուխտին՝ որ Դպրեվանքն կոչեցաւ ». այս ուրեմն է հռչակեալն այն մենաստան, որ ընդ Հոռոմոսին վկայի լինել 'ի Շիրակ, և զոյգ նմին և Կամրջաձորոյ և այլոց՝ շինեալ յառաջին կէս Ժ դարու, առ Աբաս Թագաւորաւ, որպէս վկայեն ամենայն պատմիչք և ժամանակագիրք, սկսեալ յԱսողկայ, և Դիւանք Սանահնի վանաց, և նոյն ինքն Վարդան. ապա յայտ է թէ անդստին յ'Է դարէ կայր մենաստանն և նորոգ հաստատեցաւ 'ի Ժռ, և թէ յայնժամ կոչեցաւ այսպէս թէ յառաջն՝ ոչ է յայտ։ Ցարձանս Յովհաննավանից գրեն Վահրամ և Թայիկ ամուսին իւր՝ յամի 1218 ընծայեալ նըմին « զԴպրավանաց այգին »։

Իբր կիսով մղոնաւ 'ի բացեայ յելից Կարմիր վանացս և գետակին, յահեկէն, կայ անուանատու Նորին փոքրիկ գեօղն Մաւըրկ, Մէվրէկ ըստ Թուրքաց կամ բնակելոցն 'ի նմա Պարսից և Հայոց, 'ի գոգս քարաբլրոց. յորոց 'ի միումն կայ կիսափուլ եկեղեցի չափաւոր մեծութեամբ, և սիւն մի միայն կանգուն մնացեալ և բառք ինչ արձանագրին...

Հասարակացն ի սմա . . . մի :

Ցետին տառքդ մի եթէ թուական իցեն՝ ցուցանեն զ' 771 ամ Քրիստոսի։ Կայ և այլ թերատ և անթուական արձան, որ և նորագոյն թուի, այսպէս.

Շնորհիւն Աստուծոյ եւ ողորմութեամբ նորին շինեցաւ, բաժանեալ յերկուս ... արդեամբ եւ շնորհիւ .... աւգուտ հայկազեան տոհմին :

Ի ստորև գոյ և մատուռն փոքրիկ, այսու արձանաւ.

Շնորհիւն Քրիստոսի ես Յոհաննէս երէց որդի Հայրապետ քեհին եւ կենակից իմ Բախտաղէկ շինեցաք զեկեղեցիս ի վերա սուրբ Աստուածածնին. աղաչեմ յիշեսջիք ի Տէր Յիսուս .

Ոճ բանիցս ցուցանէ ԺԵ կամ ԺԶ դարու գործ։ Ի քառաժայռսն գոն անձաւակերպ փապարք և ձիթահանք 'ի նոսին յարդարեալք, և ուրեք գուբք կամ շտեմարանք, յորս գտաւ և ցորեան ածղացեալ, յամի 1867, և թոնիր կամ փուռն առ եկեղեցեաւն։ Ի ներքոյ վանացն կան և հին գերեզմանք, յորմն միոյն՝ որ մատրանաձև է՝ գրեալ.

Շնորհիւն Աստուծոյ ... Հայրապետի կերակցին ? ես Պետրոս շինեցի գերեզման :

Ի Հր. գեղջն ամբառնայ բարձրագոյն կատար լեռնակաց զ' 1695 Զ։ Ցանուն Մօրկայ կայսեր անշուշտ կոչեցեալ է տեղիս. առ որոյ վրէժ մահուան՝ Խոսրով Բ Պարսից արքայ երախտընկալն՝ յարոյց պատերազմ ընդ Յունաց, որպէս և մղեալն 'ի վերոյիշեալն Գետիկ. գոյ և այլ Մէվրէկ գեօղ 'ի Շիրակ՝ 'ի հարաւակողման գաւառիս. այլ գլխաւոր սա թուի ինձ, և քաղաքացեալ յանուն կայսերն՝ ՄԱՒՐԻԿԱՊՕԼԻՍ կոչմամբ, քանզի 'ի սորա անուն կոչի և գետակն, և զի մերձ է 'ի Շիրակաւան՝ գլխաւոր շէն գաւառին 'ի սկիզբն պայազատութեան Բագրատունեաց, որ և թուի փոխանակեալ զայս՝ զորմէ բանքս են՝ յետ անշքելոյ իւրոյ. քանզի Մաւրիկապօլիսս այս կոչէր և ՇԻՐԱԿԱՇԱՏ, յայտ է թէ յառաջ քան զանունն զանուն և զնորոգութիւն 'ի կայսերէն. ապա և սա իսկ է բուն շինագլուխ համօրէն գաւառին Շիրակայ և տուն հայկազնեանն Շարայի, ցարդ անծանօթ մնացեալ։ Աստի մինչև 'ի բերան գետակին յԱխուրեանն, առ Ղէղան գեօղիւ արևելեան Շիրակայ, չկայ շէն տեղի, ոչ առ եզերբն և ոչ երկուստեք 'ի հովտին, բայց միայն բացագոյն յարևմտակողմն իբրև փարսախաւ 'ի Հր. Պայրախտարայ՝ յամայութեան, Գարագալէ (Սեաւ-բերդ) գիւղիկ։

Ի հարաւոյ հովտին Մաւրիկայ՝ է փոքրագոյն ևս հովիտ վտակի միոյ, որ երևի կոչեցեալ 'ի Նախնեաց յանուն Հոռոմոսի վանաց, որ և 'ի Հր. ստորոտից Ալաձայ լերին իջեալ՝ առ մենաստանաւն (Խօշավանք) թափի յԱխուրեան. 'ի գլուխս նորին յարևմտակողմն՝ կան փոքր գիւ-

ղակք՝ Կիւլլիճէ և Շամի. ընդ մէջ սորա և Հաճիլէլեայ՝ Քէրխանա. յելից սորա առ վտակաւն՝ Տայճալըգ. 'ի սորա Եւ. Հր. Ճալա հայաբնակ. զորոյ գետնափոր տունս յիշէ Ճեմէլլի իտալացի ուղևոր, որ անդ ագաւ ('ի 25 մայիսի 1694), և Chialà կոչէ զգիւղն[1]: Ցելից սորա Արազ-օղլու: Ընդ մէջ սորա և Ախուրեան գետոյ ամայի վայրք են, յորս հարկ էր լինել գիւղորայից, որպիսի է ամայացեալն Ջօրլու:

13. Զոր մինչև ցայս վայր տեղագրեցաք՝ մարթ է կոչել Հիւսիսային Շիրակ (արևմտեան մասին), և որ ինչ ստորի 'ի խոնարհ մինչև յԵրասխ՝ Հարաւային, ուր Թագաւորաբնակ տեղիքն և հանգստարանքն են. առ որս մատիցուք ընդ հուպ, ակն արկեալ միանգամ ևս 'ի վերջին տեղագրեալ վայրսն, որ արիւնըռուշտ Թատր եղեն յետ առաջնոցն՝ և նորոց պատերազմաց, երկոցուն ինքնակալութեանցն տիրողաց երկրիս մերոյ և ազգիս: — Ի 14 յուլիսի (1877) բաղխեցան զառաջինն հակառակամարտքն 'ի Քիւրէկ-տէրէ (10), և յ'18 ամսոյն 'ի Պաշ-Քէտիկլէր (11), ուր Եգերացիք և Քուրդք յետ հզօր դիմակալութեան՝ յետս նհանջեցան. Ռուսք տիրեցին Սուպօղան գեղջ, և մերձեցան 'ի Հաճի-վէլի. այլ 'ի մուտս գիշերոյն դարձան 'ի բանակ իւրեանց առաջնորդութեամբ Լօրիս Մելիքովի, կորուսեալ երկոցուն ևս կողմանցն մէն իբրև արս 100: Ի 25 նորին ամսոյ Մուստաֆա փաշա հրամանաւ Մուխթարայ էանց ընդ Ախուրեան 'ի սահման Ռուսաց, 'ի կողմանս Պայանդուր գեղջ, որք առ արգելուլ զդարձ նորա՝ դիմեցին 'ի կողմանս Ալտեղանոյ (9) և Արազօղլուի. դիմեաց անդր և Մուխթար՝ անցեալ ընդ Ճալա, և զերծոյց զնոսա: Իսկ որ յետ այսոցիկ եղեն մարտք պատերազմաց ցառումն Ղարսայ՝ Վանանդայ գաւառի վիճակին, և անդ են յիշեալք:

14. Ոչինչ ընդհատ 'ի հովտաց վերջին յիշեալ գետակացս՝ ամայի և սակաւաբնակ է համօրէն որ 'ի հարաւոյ նոյին մասն արևմտեան Շիրակայ, այն՝ որում հարկ էր բարգաւաճագոյն յոյժ լինել. և էր իսկ աներկբայապէս 'ի միջին դարս, վասն շուրջ պատելոյ զաթոռանիստն Բագրատունի Թագաւորաց մերոց և զհայրապետական աթոռն. այլ յետ վերանալոյ անտի երկոցուն զահոյիցն 'ի ԺԱ դարու, և մանաւանդ յետ տիրապետութեան աւերածու Թաթարաց՝ յ'ԺԳ-ին, տակաւ անշքեցեալ, և որպէս զարդիս և 'ի նախնագոյն դարս կոխան ոտից լեալ պատերազմողաց և աւարառուաց, այնքան նուազեալ է 'ի շինութենէ, զի հազիւ քանեակ մի գեօղից նշանակլին 'ի լայնատարած սահմանի անդ՝ որ ընդ մէջ տեղագրեալ վայրացս, և ընդ մէջ Վանանդայ, Երասխաձորոյ և Ախուրենոյ յարևելից: — Յետ ասպատակութեան Թաթարաց և Թուրքմանաց, Պարսից և Թուրքաց, ընդ սոցա իշխանութեամբ Քուրդ ազգատոհմ մի Խարուն-օղլի կոչեցեալ՝ յերկուց և կէս դարուց հետէ իբրև ստացուած ունէր զԱնի և զսահմանս նորին պայազատական ժառանգութեամբ առեալ 'ի պարգևի յՕսմաննեան սուլտանէն: Իսկ յայժմուս 'ի նուաճման Ռուսաց՝ յուսալի է շինութիւն առնուլ երկրին, և յայտնել մանաւանդ փափագատենչ մնացորդաց շինուածոց նախնեաց հողաթաւալ ծածկեցելոց 'ի սփիւռս տխրալի դաշտին, զոր ոչ առնեն ուրախ և գնացք գետոց. քանզի գրեաթէ 'ի Մաւրիկայ գետակէն մինչև 'ի Տիկորն, բաց 'ի փոքուէ վըտակէ Հոռոմոսին՝ այլ ոչ նշանակլի յամենայն սահմանին, զոր խուլ և խորախաղաց կարկաջանաքն կտրէ Ախուրեան՝ յարևելեանն Շիրակայ. և այն ևս մասն ոչ աւելի ինչ քան զայս ունի շինութիւն:

Գետս այս երկակի ընդդիմակ յիշատակաց՝ թէպէտ 'ի սկզբանէն իսկ միշտ խոտորկոտոր ընթանայ իջանէ 'ի հարաւ, այլ ևս աւելի 'ի վայրաց անտի ուր դադարեաց տեղագրութիւնս՝ և 'ի վայր, մերթ գոգանալով ընդ արևելս և ցամաքակղզեակս գործելով, և մերթ ընդ արևմուտս՝ յառաջեալ և անդրէն ընկրկեալ, արմկունս և լեզուս ցամաքի երևեցուցանելով: Այսպիսի իմն փոքր ցամաքակղզեակ ձևացուցանէ սուղ ինչ 'ի Հ. խառնրդոց վըտակին, առ որով են Ճալա, Արազօղլի և այլք, և Խօշավանից, հանդէպ Գըըլգիլիսէ գեղջ արևելեան Շիրակայ. զոր և իսպառ կղզիացուցեալ է ձեռն մարդկան՝ քաղաքորմով և դրամբ պարսպեալ զբոլանդակ ցամաքաբերանն, որ է հիւսիսայինն կողմն, յանդորրութիւն շինին պարփակելոյ 'ի նմին, որ արդ կոչի Տայլար, և հարկ է թէ կարևոր և ամուր իմն տեղի էր յառաջագոյն. որոյ միակ նշանակ մնայ եկեղեցին հնաշէն միջակ մեծութեամբ, ըստ սովորական ձևոյ, կաթողիկէիւ և կրկնայարկ աւանդատամբք առ խորանաւն երկուստեք. իսկ 'ի վերայ դրանն՝ որ է 'ի հարաւոյ, կայ քանդակ երկուց առիւծուց, և 'ի միջի նոցա նապաստակք կամ եղջերուք երկու[2]: Բայց տեղին ամայի է, լքեալ 'ի բնակչաց, որք 'ի սկզբան դարուս՝ զգուշացեալք յասպատակէ Լեկաց՝ չուեցին գնացին 'ի սահմանս Երևանայ և Գեղաքունոյ. և արդ կալուած է Խօշավանից, խոտամարգ և անդաստան: Զայս եկեղեցի՝ եօթնախորան կոչէ Սարգիս Վ. Ջալալեան[3]. գուցէ իցեն երկու երկու ևս մատրունք առ դրանն. և 'ի վերայ հիւսիսային որմոյն նշանակէ զարձանս կամ զմասն արձանի գրեալ 'ի սկիզբն ԺԳ դարու.

Եղեւ այս ի հայրապետութեան տեառն Բարսղի եւ ի տէրութեան վանացս քրիստոսասէր պարոնացս Գրիգորի Հէճպին եւ Սմբատայ եւ եղբարց իւրեանց, եւ ի տէրութեան քաղաքիս եւ բոլոր երկրիս մեծ Հայոց Քրիստոսի մեծ պարականացս Զաքարի եւ Իւանէի, որոց հօվանի լիցի սուրբ Երրորդութիւնն:

1 Pernotammo nel casale di Chialà, composto di poche grotte. — Gemelli, Giro del Mondo, II. 6.

2 Այսպէս կարծէ Նեգեննիա Պոռէ փանէկ:

3 Ջալալեան, Բ. 26:

Իբր մղոնաւ 'ի Հր. Տպլարայ և « քառորդաւ հեռի 'ի » Հոռոմոսի վանաց, 'ի վերայ արահետ ճանապարհին են » կրկին աշտարակք առընթեր միմեանց, քառակուսի » ձևովք, և 'ի գագաթունսն բոլորաձև գմբէթիւ ատար- » տեալ. 'ի մէջ նոցա սենեակք կան, և քարեղէն աստի- » ճանք անցանելոյ 'ի ստորնոյն 'ի վերինն, և 'ի վերնոյն' » յաշտարակէ յաշտարակ, կամարաձև քարակերտ ան- » ցիւք, որ արդ քայքայեալ է: Պէսպէս զրոյցք են և զոցա-



4. Խօշուան:

» նէ, ոմանց ասելով եթէ զանգակատունք էին հրաւի- » րելոյ զաւազանին 'ի խորհուրդ. յայս կարծիս են որ » զնշխարատուն վանացն' Դատաստանարան ասեն. և » այլոց' թէ զբօսարանք իցեն թագաւորին, որ նստեալ 'ի » վերին կողմն' կայր 'ի զնին զինուորական գնդիցն, որք » մի առ մի անցանէին ընդ կամարաւն: Արձանագիր » կայր յարևմտից կուսէ միոյն, այլ եղծեալ խաւսւ: Խօ- » շուան զսա կոչեն, որ զոյգ նշանակէ 'ի վրացի լեզու. և » աստի Խօշավանք զՀոռոմոսի վանն [1] »: Ի հարաւոյ կուսէ միոյ յաշտարակացն է դռնակն 12 աստիճանօք ելանելի 'ի սենեակն. և 'ի հիւսիսային որմն յիշատակա- րան Թուականաւ 1102 ամին.

## ՇՄԱ. ես Խաչատուրս գրեցի:

15. ՀՈՌՈՄՈՍԻ ՎԱՆՔ կամ ԽՕՇԱՎԱՆՔ. կիսաժամաւ հեռի կայ 'ի Հ. Մ. Տպլարայ և ժամու յՆ. Հ. Անոյ, յընդարձակագոյն բլրաձև բարձրաղիր ցամաքակղզւոջ Ախուրենի, որոյ երես ընդ Հ. Մ. բացեալ է 'ի դաշտա- վայրն, յորմէ գայր վտակն Հոռոմոսի գետ կոչեցեալ 'ի հնումն' թափել յԱխուրեան [2], և յիշի դժպհի գրա- ւոր աւանդութեամբ. եթէ, յաւուրս Անւոյ 'ի Սելջու- կեան Թուրքաց' յամի 1064, այնքան սաստիկ եղև կո- տորածն, զի « արիւն' զերեք տարեկան տղայն տարաւ » 'ի Հոռոմոսի գետն ձգեց [3] »: Զայս անուն ընկալաւ վանքս 'ի սակս կրօնաւորացն Հայոց' 'ի Հոռոմոց [4] տա- նէն զերծելոց այսր, յառաջին կէս Ժ դարու, որոց առաջնորդ գոլով Յովհաննէս ոմն վարդապետ շինեաց 'ի դիպան տեղւոջս զմենաստանն, յաւուրս Աբասայ Թագաւորի, իբր յամս 935-40, վասն որոյ և ոմանք նմին Թագաւորի ընծայեն զշինութիւնն. այլ մերձա- ւորն ժամանակաւ պատմիչ, Ասողիկն, ասէ յայտնա- պէս, թէ « Ի գաւառին Շիրակայ' Հոռոմոսին կոչեցեալ » վանք' շինեցաւ 'ի ձեռն Յովհաննիսի, որ էր զարդա- » րեալ յամենայն առաքինութիւնս, և առաւել յողոր- » մածութեան զարդս. վասն զի ողորմածութեամբ և » առաքինութեամբ բաշխէր, մինչև 'ի զգեստուցն իւ- » րոց մերկանայր զամենայն 'ի բաց, յորժամ աղքատաց » հանդիպէր. և անցաւորաց և ճանապարհորդաց հանգըս- » տարան պատրաստէր զտեղին, մինչև հանգչել իբր » յիւրեանց տան' ամենայն օտարաց, որ մինչև ցայսօր » երևի նոյն ողորմածութիւնն 'ի տանն յայնմ »: Կարևոր նշանակի արժանի համարիմ 'ի բանի պատմչիդ' զհան- գստարանն ճանապարհորդաց, որք ոչ միայն ցաւուրս նորա յետ կէս դարու աւպնջականէին զօտարս, այլ և ցարդ նշմարին յետ իբր հազարամեան դարու. և զի առ այս հարկ էր զատուցանել տեղի և կամ իջևանս առ- անձինն, կրկին պարսպօք պատեալ են վանքն. արտա- քինն' ըստ օրինակին Տպլարայ' խաղաւ զատուցանէ զայն 'ի դաշտէն և կղզիացուցանէ, մեծաշէն դրամբ հաղորդելով ընդ ներքս և ընդ դուրս, գեղնագոյն կո- փածոյ քարամբք կերտեալ. 'ի դրանէ անտի այլ քա- ղաքորմն ձգեալ է ընդ հարաւ, և 'ի նմին է ներքին դուռն բուն մենաստանին. 'ի միջոցի կրկին պարսպ- պացդ' յարևմտակողմն է վայելչաշէն Հանգստարանն այն անցաւորաց, որ և յարձանագրի ուրեմն սարըն- չախանց կոչի, և այժմիկ Թուրքարէն քէրվանսէրայ. առ որով 'ի յետին ժամանակս' տունս բնակութեան հաստատեալ էր գեղջկաց. այլ յետ գաղթելոյ նոցին 'ի Ռուսս' այժմ միայն տունք սակաւաւոր, իբրև հնգե- տասան: Երկուստեք ('ի Հ. և 'ի Հր.) յորմունս անդ իջևանատանն' աշտարակաձև բոլորակ տեղիք են վա- ռարանաց կամ մարոց' որպէս կարծին, և կցին ընդ իրեար կամարօք, ընդ որովք սենեկաձև կայարանք, այլ արդ կիսակործան կան. և ոչ միայն 'ի հնումն, այլ և 'ի յետին դարս ապաւէնք էին կարաւանաց' 'ի Պարսս երթևեկաց, և առ վանիւքն անցանէին ընդ կամուրջ քարաշէն' այժմ կործանեալ, և կամաւ. սակաւուք 'ի

1 Հ. Ներսէս Սարգիսեան, Տեղագր. 168:

2 Թուի թէ այժմ ոչ ժամանէ վտակն յԱխուրեան, զի ոչ յաշ- խարհացոյցս նշանակի և ոչ յայլոց յիշի:

3 Դիւանք Աղթամարայ:

4 Յարձանագրի ուրեք (ՈՂՁ), կոչի և Հոռոմի վանք, եթէ չիցէ պակաս գրուածն:

բացեալ՝ հաստատելով Ռուսաց զգուշարան և նոր հուն անցից։ Ըստ սմին օրինակի անչքեցեալ էր և մենաստանն, որոյ վայել էր ոչ նուազ քան զիջևանատունն հոյակապ լինել, այլ ոչ ժուժկալեաց բռնութեանն՝ որ զքաղաքն իսկ մտակայ անբնակ արար. սակայն և 'ի վերջ կոյս երկոցուն յետին դարուց նորոգեալ եղև 'ի բնակութիւն միանձանց. և 'ի սակս գաղթին 'ի Ռուսս դարձեալ ամայացեալ, միւսանգամ յետ վերջին պատերազմաց (1877-8) վերանորոգեալ հաստատի 'ի բնակութիւն թեմական հոգևոր տեսչի Կարուց։ Բայց 'ի վաղեմի և չքնաղակերտ շինուածոցն՝ սրբազնագոյնքն կան տակաւին ըստ բաւականին կանգունք և վկայք մեծագործութեան Թագաւորաց և իշխանաց Բագրատունեաց և այլոց տոհմից, միանգամայն և յետին հանգստարանք նոցին. որպէս ցուցանեն արձանագիրք Թագաւորացն և կաթողիկոսաց և վանահարց անդստին յառաջին կիսոյ ԺԱ դարու ցկէս ԺԴին. այլ զի չիք յիշատակ առաջնոյ շինողին Հոր Յովհաննու՝ դարու ևս յառաջ, թուի զդաստակերտ նորա զեկեղեցին փոխանակեալ այժմուս՝ որ Յովհաննու արքայի շինած է, և անուանատուին խորում Ս. Յով-




5. Հոռոմոսի վանք։

հաննու նուիրեալ։ Ի դէպ է կարծել եթէ նախաշէնն այն եկեղեցի խանգարեալ իցէ յամի 982 յԱպլհածայ Դէյլմաստիկ Պարսիկ ամիրայէ, սաղրանօք Մուշեղի Թագաւորեցելոյն 'ի Կարս, առ քինու եղբօր իւրոյ Սմբատայ Բ. որ, «եկեալ զՀոռոմոսի վանքն այրեաց, և զփրկա-
»կան նշանն որ 'ի վերայ սրբոյ Շողակաթի գմբէթին
»կանգնեալ էր, ձողանօք 'ի վայր բերէր... և 'ի վերայ
»նորա չարժեալ ցասումն Աստուծոյ՝ դիւահար լինէր.
»և... (յետոյ) յիւրոց ծառայիցն խեղդամահ լինէր 'ի
»քաղաքին Ուխթեաց[1]»։ Ահա նշանակէ բանս և զանուն հնոյ եկեղեցւոյն այնորիկ լինել Շողակաթ։ Այժմեան Թագաւորաշէն եկեղեցին յերկուս տրոհեալ է, 'ի գաւիթ և 'ի տաճար. գաւիթն կամ ժամատունն փոքր ինչ ընդարձակ է քան զտաճարն և յոյժ հրաշակերտ. երկոտասան սիւնք ոլմայեցք և չորք 'ի միջի՝ ամբառնան զմբէթ մեծ և սինազարդ, յորում է և զանգակատունն. և բոլորակ մասն նորա 'ի վերայ ինուեց նրբին սեանց, և զանգակաց տեղիք 'ի նմա։ Կամարք չորից սեանցն որ

1 Ասողիկ, Գ. ԺԲ։

*ընդ կաթողիկէիւն՝ բրգաձև հաւաքին, և են մեծամեծ գեղաքանդակ վիմաք կերտեալ. միատամնի են և սիւնքն բոլորչի ձևով, ոչ բարձունք՝ այլ գեղեցիկ խարսխաք և խոյակաք. յիւրաքանչիւր 'ի սեանց ձգին կամարք առ իրեար, ՚և չորիս կողմանս զատուցանեն, որոց միջին վայր յարկին մեծատաշ քառակուսի քարամբք է ամփոփեալ, և անխախուտ մնացեալ իբրև միապաղաղ բռնեալ որմն: իսկ տաճարն անսիւն է, և 'ի չորից կողմանց ունի կամարագօտիս, յորոց վերայ ձգի այլ կամարագօտի մանեկաձև բառնալով զմեծ կաթողիկէն, յարդարեալ երկայնաձև լուսամուտք, խաչ երկաթի կրելով 'ի գագաթան. մի միայն ունի սեղան, և մատրունս երկուստեք: Աւանդէ ոմն յանցեալ դարու գրչաց՝ քառասուն սեղանս պատարագի լինել 'ի Խօշավանս. Թուի թէ զհամօրէն որ 'ի շրջապատի պարսպաց վանացն էին եկեղեցիք և մատրունք՝ իմանայր յայն թիւ: Ամենայնիւ բարեձև է եկեղեցին, բայց միայն պակաս 'ի լուսոյ, որպէս և 'ի հասարակի ամենայն հին եկեղեցիք: Բազում են 'ի նմին գերեզմանք անգիրք և անյիշատակք. իսկ արձանագիրք յոլովք 'ի ներքոյ և արտաքոյ. յորս նշանաւոր է յիշատակն Յովհաննու արքայի՝ յամի 1038, 'ի վերոյ աւագ դրանն, օրինակ զայս.*

**Ի ՆՁէ** *Թուականիս Հայոց եւու ես Յովաննէս Շահանշահ որդի Գագկա շահանշահի զիմ այգին որ ի Կողբ յիմ եկեղեցիս ի սուրբ Յովաննէս զոր շինեցի ի վանսս Հոռովմոսի հանդերձ ժամատամբս եւ հարիւր բեռն աղ յամենայն ամի ազատ յամենայն չարէ ի հայրապետութեան տեառն Պետրոսի եւ յառաջնորդութեան ուխտիս հաւր Յովաննիսի. արդ եթէ ոք զկնի մեր հակառ կա այսմ գրոյս եւ իմ պարգեւացս պարտական լիցի մեղաց իմոց առաջի Աստուծոյ եւ ՅԺԸ հայրապետացն որ ի Նիկիա նզովեալ եղիցի ի կեանս եւ ի մահ. իսկ որ հաստատուն պահեն զգիր արձանի ընծայիցս աւրհնեսցին ի Քրիստոսէ:*

*Ցիանիւ չափ ևս արձանագրութիւնք են, 'ի տաճարին և 'ի ժամատանն, 'ի ներքոյ և արտաքոյ, զորս կարգեմք 'ի ստորև, առ 'ի չընդհատելոյ ընդ երկար զոճ տեղագրութեանս[1]. և յայտնի ժամանակ գրութեանցն 'ի ՈԻԳ Թուականէ ժամանէ 'ի թիւն ՉՁԵ, այսինքն յամէ Տեառն 1174 ցամն 1336. խտագոյն կամ յաճախագոյն յիշեալ ժամանակն է ԺԳ դարն, 'ի սկզբանէն ցամն 1280, յետ որոյ պակասեն արձանք ցկէս դար, և ապա 'ի վեր երևի յետինն, ՉՁԵ, որ և մի 'ի վերջին յիշատակարանաց Շիրակայ է: Արձանագրողքն են, ոմանք՝ առաջնորդք վանացն, որպէս Մխիթար, Պետրոս, Անդրէաս. ոմանք աշխարհական տեարք տեղւոյն, և յոլովք՝ նուիրատուք յամենայն դասակարգէ մարդկան, յարանց և 'ի կանանց. յորոց ոչ սակաւք աւանդեցին և զմարմինս իւրեանց ընդ հովանեաւ հաւատարիմ որմոցն. այլ բաց 'ի վեհագունէն այլքն առհասարակ անարձանագիր են:*

1 Ցաջմէ ճակատու եկեղեցւոյն.

✠ Շնորհիւն Քրիստոսի ես հեճուպ Գրիգոր եւ Սմբատ եւ իշխանս հաստատեցաք ի մեր սեփհական ուխտս որ ոչ պատրոն եւ ոչ ճորտ ի վանքս աղունձ աղան. եթէ ոք զգիրս զայս պատրոն կամ հայր լուծանէ նզովի յԱստուծոյ եւ յամենայն սրբոց.

Ի Թվ. ՈՂՁ անուամբն Աստուծոյ եւ Շահընշահի ողորմութեամբն ես.. անագովլէս որդի Սմբատա եւու ի Դրասպարի զԳիշկոյն տունն իւր հողովն ոնց Գիշուկն ունեցեալ է Հոռոմի վանիցս սուրբ Յովանիսի հայրենիք վասն իմ հաւր հոգոյն Սմբատա զոր յառաջ միաբան էին լեալ ազատ ի կ... Թաէ եւ յամէն չարէ ոչ իմ եղբաւր ոչ իմ որդոյն ոչ ինչ հաշիւ չկայ. իշխանութիւն սուրբ Յովանիսի սպասաւորքս ունին. յառաջնորդութեան տէր Բարսղի որդո Ամիր Երկաթա. փոխարէն հատուցին միաբանքս զսուրբ Գրիգորի շաբաթն աւրն յամենայն եկեղեցիս պատարագ առնել իմ հաւրն Սմբատա. ով զայս գիրս խափանէ նզովի յԱստուծոյ եւ յժԸ հայրապետացն. որք հաստատուն պահեն աւրհնին յԱստուծոյ եւ յամենայն սրբոց ամէն.

Ցահեկէ ճակատուն.

ՈՁ. Շնորհիւն Քրիստոսի ես Ասլանս որդի Շերանկանն եւ զիւգակից իմ Աստւշիս տուաք զմեր գանձագին հայրենիքն զԳոդեցն զկէս դանգն իւր հողովն եւ ջրովն ի սուրբ Յովաննէս յառաջնորդութեանս տէր Բարսղի արհիեպիսկոպոսի որդւո Ամիր Երկաթա եւ սպասաւորք սորա փոխարէնս հատուցին մեզ ի տարին: դ: պատարագ կատարել զբ ինձ Ասլանիս եւ բ Աստւշաhին. եթէ ի մերոց կամ յաւտարաց գյիշատակս մեր խափանէ նզովի յԱստուծոյ. հաստատ պահողքն աւրհնին ի Քրիստոսէ.

*Ի Հարաւոյ տաճարին և բեմին որմակից է Տապանատունն մեծագործ, թէպէտ և ցածուն և անսիւն. յարկն կամարաձև գործեալ է, որմունք 'ի մեծամեծ սրբատաշ քարանց՝ ծածկեալ խուռն և չքնաղ քանդակօք. արևելակողմն համակ խաչվիմօք զարդարեալ, ուր կայ և բեմ և վէմ պատարագի. արձանագիրն[1] յայտ առնէ զի շինեաց զսա Խութլու խաթուն դուստր Բուզուքանայ 'ի հայրապետութեան տեառն Սարգսի, իմա յեպիսկոպոսութեան Անւոյ 'ի սկիզբն ԺԴ դարու. նոյն և զերիս մատունսն 'ի վերայ նորին, որք են փոքունք յոյժ և որմակիցք միմեանց. միջինն ունի և կաթողիկէ; այսինքն գմբէթ կոնաձև, յորում գրեալ է.*

***Տէր Աստուած ողորմեա Բուզուքանա ի միւսանգամ քո գալստեանդ. ամէն :***

Ի սոյն ամի ես Խոսրով որդի Վարհմա լաւեցո եւ զիւգակից իմ Շուշիկ տուաք զմեր գանձագին հայրենիքն զՔարհատին դանկն իւր հողովն եւ ջրովն ի սուրբ Յովաննէս եւ հատուցին մեզ ի տարին։ գ։ պատարագ։ բ։ ինձ եւ։ բ։ Շուշկան եւ։ բ։ Վարհմա. եթէ ոք զարծանս մեր խափանէ նզովի յԱստուծոյ կատարողքն աւրհնին ի Քրիստոսէ.

Ի սոյն ամի ես Կազերս որդի Սուկատին եւ մայր իմ Մամիկս տուաք զմեր երկու տունն ի սուրբ Յովաննէս եւ առաք պատարագ ի տարին ք̅ աւր ա̅ ինձ եւ մին իմ մաւրն. կատարիչքն աւրհնին ի Քրիստոսէ.

Ես Շուշիկս զիւգակից Խոսրովու ետու զիմ տներն ի սուրբ Յովաննէս եւ առի ինձ պատարագ ի տարին աւր մին. կատարիչքն աւրհնին ի Քրիստոսէ.

Ես Բարդուղիմէոս աբեղա փարբեցի ետու զիմ գանձագին այգին որ ի Փարբի է ի վանացս ի հիւրատունս եւ նոքա հատուց ինձ պատարագ ի տարին աւր...

Կամաւն Աստուծոյ ես Քոթիթ ձոնս եւ կենակից իմ Շահմամս տուաք Ջուի դանկն իւր հողովն եւ ջրովն ոնց բնական լեալ է ի սուրբ Յովաննէս եւ ե... շինած տներս ի սուրբ Յովաննէս եւ սպասաւորք սորա հատուցին մեզ ի տարին զ̅ պատարագ մին ինձ Քոթթին ք̅ Շահմամին մին Վարդանա ք̅ Սար. եթէ ոք ի մերոց կամ յաւտարաց զգիրս մեր խափանէ ելցէ ի կենացն Աստուծոյ կատարիչքն աւրհնին ի Քրիստոսէ.

Ես Իգնատիոս որդի Աքեղին եւ կենակից իմ Մամեր տուաք զմեր հայրենիք կէս դանկն ի Մարագի ի սուրբ Յովաննէս եւ սոքա ետուն մեզ պատարագ ի տարին ք̅ աւր. ա̅. ինձ եւ. ա̅. Մամերոյն. թէ ի մերոց կամ այլ ոք զգիրս մեր խափանէ նզովի յԱստուծոյ.

*Ի Հարաւոյ եկեղեցւոյն արտաքուստ 'ի բարձու.*

Ի ՈԻԳ. Թուիս Հայոց ի հայրապետութեան Նահանգիս մերում տեառն Բարսղի ես Նուաստս Պետրոս երէց եւ իմ եղբաւրորդիքս Ջազատ Յուսիկս եւ Սիմեոն տուաք զմեր հայրենի այգին որ ի Փարբի որ կոչի Խանիկշտէ ի սուրբ եկեղեցիքս Հոռոմոսի վանացս ի յառաջնորդութեան Խաչատրոյ եւ խընդրեմք ի սպասաւորաց սրբոցս։ դ. աւր պատարագել զՔրիստոս յամենայն ամի զՀոգւոյն գալըստեանն զշաբաթն եւ... Նիափ մի անուն... եւ մի իւր իրիցակնոջն... ի մերոց կամ յաւտարաց...

Շնորհիւն Քրիստոսի ես Գրիգոր որդի Բախտիարին ետու ընծա ի սուրբ Յովանէս։ բ։ տուն եւ ի վերեւն։ գ։ կողպակ զոր իմ հալալ արդեամբ շինել եմ յիշատակ ինձ եւ զաւակի իմո Աւաք խաթունին եւ սպասաւորքս փոխարէն հատուցին յամենայն ամի։ գ։ աւր պատարագ։ ա։ ինձ եւ։ բ։ Աւաք խաթունին.

*Ի Հիւսիսոյ եկեղեցւոյն արտաքուստ.*

Ի ՈԽԷ Թւիս ես հայր Մխիթար սատարութեամբ Սարգսի կրաւնաւորի եւ կամակցութեամբ սուրբ միաբանացս զԱկանց ջուրն զոր մեր հին Թագաւորացն կարի յոյժ ջանացեալ եւ ոչ ժամանեցին բերել Աստուծոյ կամաւքն մեծ ծախիւք եւ աշխատութեամբ ածաք զջուրս ի Հոռոմոսի վանքս եւ հաստատեցաք յամենայն ամի պատարագել զՔրիս-

---

[1] ... Ի հայրապետութեան տէր Սարգսի եւ ի տէրութեան վանացս Գրիգորոյ Սմբատա Վահրամա.. եղբարց իւրեանց ես Խութլու խաթունս դուստր Բուզուքանա շինեցի զիմ նախնեաց.. տապանատունս եւ զերեսին եկեղեցիս ի վերա սորա աւանդեցի ի սուրբ ուխտս զիմ մաւ... գեաւղն զՇաւթա յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց յառաջնորդութեան հաւր... եւ փոխարէն հատուցման ընկալա յամենայն շաբաթ զշաբաթն աւուրն . . . ն յիմ յերեսին եկեղեցիսս իմ մաւրն Բուզուքանա եւ իմ քոյրոջն Նուսաթէ... Թլու խաթունիս անխափան կատարեսցեն եւ յամենայն ամի ծ̅ պա... ա եւ Տուղտէ. արդ եթէ ոք զգրեալս խափանէ կամ Թերի կա. . . պարտական է առաջի Քրիստոսի կատարիչք գրոյս աւրհնին յԱստուծոյ եւ յամենայն սրբոց. . . Անդրէաս վարդապետս ամենայն եղբարբքս գրե. . . եւ թէ համէ ի վանացս փոխելով կամ ծախելով չունի թող . . .

*Ի հանդիպոյ սոցա 'ի հիւսիսոյ ելից տաճարին կայ մատուռն եկեղեցաձև, զոր Հարսնատուն կոչեն այժմ. և 'ի վերայ նորա մատրունք փոքրունք երեք, որպէս 'ի հանդիպոյն. այլ յառաջ քան զսակաւ ամս կործանեալ են սոքա, և մասն մի ստորին մատրանն միայ խորանաւն և կիսով կաթողիկէին. և մի միայն թուական 1305 ամի, և անուն մի աւեթ, որ է այս.* ՁԾԴ. Տէր Դաւիթ։

*Աւրնթեր տապանատանն կայ այլ մատուռն փոքր, և կամարաշէն սենեակք միջնադրամբք. երկուստեք սորա են Սառնատունք, բացուած կամ բերան ունելով 'ի վերուստ, և մին 'ի կողմանէ ևս, ուր և արձանագիր Նորոգողի եկեղեցեացս Խաթունի' դստեր Հեճուպ Վահրամայ, անթուական, այսպէս.*

***Քրիստոս Աստուած, ի քո մեծի ծագման լոյսո նորոգեա զհոգի Խաթունին դստեր Հեճուպ Վարհամա որ մեծ յուսով եւ բազում արդեամբք վերստին նորոգեաց զեկեղեցիքս. եւ զի ոչ ունելով մարմնաւոր զաւակ ստացաւ իւր ժառանգ եւ յիշատակ զսուրբ Յովանէս ի...***

տոս յանուն աշխատաւորաց ջրիս ի տաւնի տապանակին գ. աւր. արդ եթէ ոք ի մեծաց կամ ի փոքունց հակառակ կա ջրիս կամ գրիս զաւծին զկայեննին զխաչահանուացն զանէծսն առցէ եւ հայր որ զատ ի վանացս անդաստանացս այլ ուրեք ջուր տա ընդ կապանաւք է. եղեւ այս ի հայրապետութեան տեառըն Բարսղի եւ ի տէրութեան վանացս քրիստոսասէր պատրոնացս Գրիգոր հեճպին եւ Սմպատա եւ եղբարց իւրեանց եւ ի տէրութեան քաղաքիս եւ բոլոր երկրիս մեծ հայոց Քրիստոսի մեծ զաւրականացս Զաքարէի եւ Իւանէի որոց հովանի լիցի սուրբ Երրորդութիւն.

Ի ՈԾԵ թւիս ես Զաքարիայ շահնշահ որդի Սարգսի զաւրապետ Հայոց եւ Վրաց քակեցի զջաղացն որ յԱկանս հակառակ ջրիս շինած էր եւ վերստին հաստատեցի զջուրս ի վանքս Հոռոմոսի վասն արեւշատութեան ինձ եւ եղբաւր իմոյ Իւանէի եւ յիշատակ ծնաւղաց մերոց. արդ եթէ ոք հակառակ կայ ջրիս եւ յափշտակել ջանա ի վանացս եւ կամ դարձեալ շինէ զջաղացն զաւծին զկայեննին զՑուդային զխաչահանացն զանէծսն առցէ եւ մի գտցէ մասն եւ ողորմութիւն ի Քրիստոսէ Աստուծոյ. հրամանակատարքն աւրհնեսցին ի սուրբ Երրորդութենէն.

Ես Սարգիս կրաւնաւոր գնեցի հող ի փարպի եւ հայր Մխիթար միաբանաւքս այգի արկին եւ ի Խանիկշտի մեծ այգին բոլորեցաւ. պատարագի Քրիստոս ի տաւնի քառասնիցն բ. ա Սարգսի ա Վարդանա. կատարիչ գրիս աւրհնին յԱստուծոյ.

զՑոլսէս յիշեա ի տէր

Ես Խէտէնեկս որդի Ալուզի եւ ամուսին իմ Մարջան տուաք ի սուրբ ուխտս զԹէզանո շամբն որ գետն ի մէջն կու անցանէ որ Իշխանն մեզ էր տուել. տէր Բարսեղ եւ այլ եղբարքս սահմանեցին զտաւն սուրբ Կարապետին բոլոր յեկեղեցիքս պատարագել զՔրիստոս որչափ մեք կենդանի ենք Իշխանին եւ Խորիշահի կատարեն եւ յետ ելից մերոց ի մեր յանուն կատարեն ի տաւնի Նաւասարդի. եթէ ոք զմեր նուէրքս ի սուրբ ուխտէս հանէ եւ կամ զժամն խափանէ դատի յԱստուծոյ. կատարիչք գրիս աւրհնին ի Քրիստոսէ։ ամէն։ ՈՂԴ

Թվ ՉԻԲ. կամաւն Աստուծոյ ես Բլ Հասան հեքիմ որդի Զաքարիաի հեքմին ապաւինեցա ի սուրբ Ցովաննէս եւ ընծա յԱպրնուց ձորին սաղնդեւլէր (?) իմ հայրենս շինեցի դ դանկն ջաղաց ետու յուխտս. փոխարէն հատուցին ե աւր պատարագ ի տաւնի Զաքարիաի բ Զաքարի ա Շուշկան ա Ջալալին ա իմ պապին Բլ Հասնա։ յետ ելից ինձ առնեն.

Իսրայէլ գրիչ

*Ի գաւիթին կամ 'ի ժամատանն յորմունս շուրջանակի, 'ի կամարսն և 'ի վերնախարիսխսն.*

Ի Թւ ՈԽԴ յառաջին ամի կաթողիկոսութեան (*կաթող". բառդ կրով լցեալ էր*) տեառն Բարսղի եւ ի տէրութեան վանացս Գրիգորոյ եւ Սմպատա եւ եղբարց իւրեանց որոց աւգնական լիցի Քրիստոս Աստուած. շնորհիւն Աստուծոյ ես Նուաստ հայրս Պետրոս սուրբ ուխտիւս հաստատեցաք եթէ ոք ի սուրբ միաբանացս փոխի ի Քրիստոս պատարագ մատուսցուք հաւրն դ խ եւ ամենայն եղբայր մի աւր պատարագ։ եւ որ չկարէ Ժ կանոն աղօթք արասցէ. եթէ ոք յայս կարգելոցս պակասեցուսցէ խղճի եւ մեղաց պարտական է առաջի Աստուծոյ։ աշխարհական հաքեղայի բ խ.

Ի ՈԾ թւիս ի տէրութեան երկրիս Զաքարիայի ես Տիգրան ծառա Աստուծոյ եւ հաւատարիմ իմ պարոնին Զաքարիաի միաբանեցա սուրբ ուխտիս եւ ետու զիմ զջաղացն որ ի կորդո շինեալ էի ի Գիլձորին հիմնակից է Ներքի դեհն Գունիճանց յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց եւ յանուն իմ պատարագի Քրիստոս։ Ժբ։ ի տաւնի սուրբ մարգարէին Երեմիաի անխափան մինչեւ ի ծագումն Որդոյն Աստուծոյ կատարիչք գրոյս աւրհնեսցին յԱստուծոյ.

ՈԾ կամաւն Աստուծոյ ես Խաչեղբայրս եւ իմ որդիս Աւետիսս միաբանեցաք սուրբ ուխտիս եւ

*Աւընթեր ներքնադրան վանացն է Նշխարատունն զար֊մանալին, երիւք քարեայ սենեկօք միջնադրամբք հաղոր֊դելովք ընդ իրեար. միջին սենեակն որ մուծանէ 'ի գա֊ւիթն՝ բաժանեալ է յերկոտասան կողմնական մասունս նոյնքանեօք սեամբք և կամարօք. միջնավայրն գմբե֊թունակ էր, այլ կործանեալ այժմ՝ պրշակօքն զմայլե֊ցուցանէ զտեսողսն, զի յոյժ ճարտար են քանդակքն: Կից 'ի սա և 'ի գաւիթն՝ կայ անձկավայր մթին սենե֊կաձև տեղի: Երկրորդ սենեակն փոքր քան զառաջինն ունի կամարագօտիս 'ի չորից կողմանց, որք աղեղնաձև հաւաքին ընդ մէջ յարկին՝ և քառակուսի լուսանցոյց թողուն բաց: Երրորդ սենեակն աքանչելի ևս է. սիւնք երկոտասան յորոց չորք 'ի միջի և ութ 'ի կողաց՝ կամա֊րօք խառնեալ ընդ իրեար՝ բաժնեն զյարկն առաստա֊ղաձև սալարկեալ սրբատաշ քարամբք, և միջնավայր նորին խուռն քանդակօք դրուագեալ. յարևելեան որ֊մոյն փորեալ է գոգ դարանաձև լայն և ցած, և այլ խորան քարակերտ ագուցեալ 'ի նմա [1]: Կարծէ ռամիկն թէ առաջին սենեակն խորհրդարան էր թագաւորին և երկոտասան խորհրդակցացն, երկրորդն վճռոյ տեղի, և*

տուաք զմեր հայրենիքն զՄարանից մարգիկն ի վանքս. սպասաւորք սորա կատարեն ի տարին: զ: աւր ժամ: բ: ինձ: բ: Աւետ: ա: Սիստին: ա: եղ֊բարց...

Ի ՈԾ Թւիս շնորհիւն Աստուծոյ ես Գրիգոր որդի Հասանայ որդւոյ Իշխանին ետու զիմ գանձագին գեւղն զերգս ի մեր սեպհական ուխտս ի տիեզե֊րահռչակ վանքս վասն արեւշատութեան որդւոյ իմոյ Ամիր Հասանա եւ վասն յիշատակի հոգւոյ իմոյ եւ ամուսնոյ իմոյ Խաթունին յառաջնորդու֊թեան Մխիթարայ. պարտական են սպասաւորք Հո֊ռոմոսի վանացս մինչ ի գալուստն Քրիստոսի յա֊մենայն ամի. ա: խ: պատարագ առնել(ի) ինձ Գրի֊գորոյ եւ ի ամուսնոյ իմոյ Խաթունին. մարդ մահ֊կանացու որ զմեր յիշատակս խափանէ մեղաց մե֊րոց պարտական է առաջի սոսկալի բեմին Քրիս֊տոսի. կատարիչք գրելոցս աւրհնեսցին ի Քրիս֊տոսէ.

Շնորհիւն Աստուծոյ ես տէր Գրիգոր որդի Ապու֊ղամրի արհեպիսկոպոս մայրաքաղաքին Անո ետու ի սուրբ Յովանէս ընծա զիւր գեղջէիցն զԱկնաց եւ զՇավթաի եւ զԱղբնագեղի զժողովրդութիւնն յառաջնորդութեան Անդրէաս վարդապետին միա֊սիր(?) եւ սպասաւորք սորա առնեն ի տարին բ ժամ Մամուզ (?) որ հաստատուն պահէ աւրհնեսցի ի տեառնէ իսկ հակառակն որոշեսցի յԱստուծոյ ամէն.

Թւ ՈԿՁ ես Խուլանդ Ամիր սուլտանս վասն իմ արեււոյս եւ իմ որդեացն ետու վանացս մարգ յԱստեղանի յայնկոյս գետոյն:. Ես Սուրհաւս վասն իմ հոգւոյս ետու զճարպկանց մարգն յԱրվաշ եւ ես Թաղեցա ի տեղս. յամենայն ամի պատարագ տաւ֊ցեն ինձ գ:. Ես Սմբատ ետու զՄարանց մարգի զկէսն եւ ես Թաղեցա ի վանքս ի տարին պատա֊րագ ինձ ժ:. Ես Յոհաննէս Թադէոսի որդի ետու զջաղացն ի Գլիձորին զմիջի ակն եւ ես Թաղեցա ի վանքս. խնդրեմ պատարագել զՔրիստոս ի տաւնի սուրբ Գրիգորի ժե:

Կամաւ մարդասիրին Աստուծոյ ես Վարդաճիժ Վարդեանց ապաւինեցա ի սուրբ ուխտս ետու զիմ գանձագին կուղպակն եւ ի Ներքեւն տակառք ի յԱնի ի վերի փողոցին քանեկից է Տիգրանա. յա֊ռաջնորդութեան հաւր Գրիգորիսի սրբասիրի. պա֊տարագեսցի Քրիստոս ի տարին դ աւր զբն ինձ եւ բ զիւգակցին իմոյ Տիկնոջն. կատարիչքն աւրհնեալ եղիցին ի Քրիստոսէ. ի ՈԿԼ Թւ.

Զեղբայրոսս յիշեցէք ի Քրիստոս

Ի Թւ ՈՀԷ ✠ կամաւ ամենակալին Աստուծոյ այս մեր գիր յիշատակի է հեճուպ Գրիգորոյ որդո Հասանա եւ եղբայրորդեաց իմոց եւ Իշխանիս որդո Քրդլին եւ եղբայրորդեաց իմոց տերանց սուրբ ուխ֊տիս վանացս Հոռոմոսի որ հաստատեցաք արժա֊նագրով. պատրոն ով լինի այս տեղոյս ի յարանց կամ ի կանանց ով կաշառաւք հայր դնէ այնպի֊սին Նզովս առցէ զՑուդային զաստուածավաճա֊ռին եւ զկաենին զեղբայրասպանին. եւ հայր եւ այլ գործաւորք որ կաշառք տան յայտնի կամ ի ծա֊ծուկ յերկնաւոր Հաւրէն եւ յժը հայրապետացն եւ յամենայն սրբոց անիծեալ եղիցի յոգի եւ ի մար֊մին. եւ հայր որ ի վանիցս հաց ծախէ կամ ի վանիցս իրացս խորէ Նզովեալ եղիցի մահով եւ կենաւք. ով հակառակ կայ այս բանիս ի պատրոնաց կամ ի միաբանիցս կամ ի ջնջել ջանա զայս գիրս եւ ինքն ջնջեսցի ի դպրութենէ կենացն. կատարիչքն աւր֊հնեալ եղիցին յԱստուծոյ ամէն. արդ եթէ մեծ եւ եթէ փոքր կարծիս առնու թէ հայր կամ այլ գոր֊ծաւոր կաշառք է տվել եւ վրէժխնդիր չլինի վե֊րագրելոցս Նզովիցս տէր է ամէն:

Զխոցադեղ գրիչ յիշեա ի տէր.

ՈՀԸ շնորհիւն Քրիստոսի ես Վասակ որդի Դաւ֊թի թոռն Կիւրիկէի արքայի տէր Նորբերդի խոս֊տովանող Քրիստոսի միաբանեցա սուրբ ուխտիս եւ ետու ի սուրբ Յովանէս ընծայ զիմ գանձագին ծիթահանքն որ ի վանացս գնեցի վճռամբ եւ ամե֊նայն ամրութեամբ յառաջնորդութեան տեառն Բարսղի որդւոյ Ամիր Երկաթայ եւ փոխարէն ինձ հատուցին զտաւն սրբոց Վարդանանց յամէն ամի բոլոր յեկեղեցիսս. զպատարագն որչափ ես կենդանի եմ Վարհամայ եւ Թամարին առնեն եւ յետ վախ֊ճանին իմոյ ինձ. արդ կատարիչք գրիս աւրհնին ի Քրիստոսէ եւ հակառակն որոշի եւ զանէծս կայե֊նի եւ զՑուդայի եւ զնեռինն ժառանգէ մարդ ո ոք եւ իցէ եւ մի լիցի Թողութիւն յաւիտեան ամէն.

1 Վասն այսր սենեկի տես Նալեանն (Յակոբ պատրիարք).

«Աւելին մուտքերին, սրբատաշ քարամբք շինեցեալ է փոքր խորան»:

*երրորդն՝ երդմանց. բայց որպէս յարձանագրութեանցն գուշակի՝ էին սոքա պաշտպանք նշխարաց սրբոց, սպասուց եկեղեցւոյ և գրենոյն. 'ի յետին ժամանակս, աւաղ, 'ի գոմս խաշանց կարգեալ: Վաչէ և Մամա խաթուն կին նորա կանգնեալ են զառաջին սենեակն յամի 1229, որպէս ցուցանէ արձանագիրս որ 'ի վերայ դրանն.*

*ՈՀԸ ✠ Շնորհիւն Քրիստոսի ես Վաչէ որդի Սարգսի եւ ամուսին իմ Մամա խաթուն դուստր Ապուսերհին շինեցաք զՆշխարատունս ի վանքս Հոռոմոսի յառաջնորդութեան տեառն Բարսղի որդո Ամիր Երկաթայ եւ տվաք ընձա գրատա... զմեր գանձագին այգին ի յԱւշական ժամո համար եւ նշխարի եւ այ... տուաք եկեղեցոյս (սպ)ասք եւ երկու ւքշոց արծաթի. եւ փոխարէն հատուցին մեզ միաբանքս յամէն ամի յամենայն եկեղեցիքս ի նոր կիւրակէին պատարագել զՔրիստոս. զայգին փակակա(լ)ն հոգա և գինոյն իշխանութիւն ունի որ ի մեր պատարագի յաւրն հասարակաց սէր առնէ. արդ կատարիչք գրիս ա(ւր)հնին ի Քրիստոսէ. իսկ եթէ ի մերոց կամ յաւտար(աց ոք զ) կտակս մեր խափանէ մեղաց մերոց պարտական լիցի առաջի Աստուծոյ:*

**Թւ ՈՁԳ** շնորհիւն Քրիստոսի ես Զմրուխտ խաթունս աղախին Քրիստոսի յուսալով յողորմութիւնն Աստուծոյ ետու ի սուրբ ուխտս ի վանքս Հոռոմոսի ի սուրբ Յովանէս ակն ի մին ջաղաց բոլոր ի Կարմնջին ձորին որ Աբելեանց կոչի զոր այրն իմ աստուածասէրն Սմբատ յիւր կենդանութեանն ինձ հայրենիք էր տուեալ ես յիմ կենդանութեանս սուրբ ուխտիս հայրենիք հաստատեցի յառաջնորդութեան տեառն Բարսղի որդւոյ Երկաթայ եւ սպասաւորք սուրբ ուխտիս փոխարէն հատուցին մեզ յամենայն ամի պատարագել զՔրիստոս աւր. ԺԵ. ինձ խաթունիս. ԺԵ. առն իմոյ Սմբատայ. Ժ. աւր մաւրն խորիշահի եւ. Ե. իւր հաւրն Քրդին. արդ եթէ ոք ի մեծամեծաց կամ ի փոքունց զմեր նուէրս հանէ ի սուրբ ուխտէս կամ ծախելով կամ գրաւական դնելով կամ զմերս ամն? պակասեցուցանեն: յԺԸ հայրապետացն նզովեալ եղիցի մահով եւ կենաւք իսկ որք հաստատուն պահեն աւրհնին յԱստուծոյ ամէն.

**ՈՂԵ** կամաւ բարերարին Աստուծոյ ի Թագաւորութեանս Հայոց եւ Վրաց Դաւթի եւ ի սպասալարութեան Շահնշահի որդո մեծին Զաքարի եւ յառաջնորդութեան տեառն Բարսղի արքեպիսկոպոսի որդո Ամիր Երկաթա ես Աշոտ դսեղեցի որդի Գեւորգէ Թոռն Աշոտո միաբանեցա սուրբ Յովանիսի ի նեղ եւ ի չար ժամանակիս յետ կործանման Տաթարին մինչ էր վանքս ի նեղութեան ետու զամենագով աւետարան եւ: Դ: եզն: Գ: կով: Դ: էշ: Բ: ձի եւ այլ զինչ Աստուած պատրաստէ. ես տէր Բարսեղ եւ Սարգիս վարդապետս եւ այլ եղբարքս ընգալաք զնա իբրեւ զմի ի պատրոնաց մերոց եւ փոխարէն հատուցաք յամէն ամի զկնի Նոր կիրակէին աւր պատարագեալ զՔրիստոս յանուն Աշոտո որչափ կենդանի է իւր ծնողացն յետ ելից յաշխարհէս Աշոտո կատարենք. որ հաստատուն պահեն աւրհնին յԱստուծոյ եւ որք խափանեն զՅուդայի առցէ եւ զկայէնի յԺԸ հայրապետացն որոշեալ եղիցի մահովն եւ կենաւք. ես Կիրա հետ իմ պարոնին Աշոտո միաբանեցա սուրբ ուխտիս յանուն իմ պատարագի Քրիստոս ի տարին աւր մի.

**Ի Թ. ՈՂԹ** կամաւն Աստուծոյ ես Աւէտիս վարդապետ առաջնորդ սուրբ ուխտին Սանահնին ազգաւ ի մայրաքաղաքէս Անո միաբանեցայ սուրբ ուխտիս Հոռոմոսի վանաց սուրբ Յովանիսի եւ ետու ընձա յառաջնորդութեան տեառն Բարսղի արհեպիսկոպոսի որդոյ Ամիր Երկաթա. փոխարէն հատուցին ինձ տէր Բարսեղ եւ այլ միաբանքս կատարեն ի տաւնի սուրբ խաչին: Գ: աւր ժամ: Բ: աւրն Աւէտիս վարդապետին: Ա: Ոտնամուրին. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ ամէն.

Զաւրութեամբն Աստուծոյ ես Շերանիկս զաւրացա ի զինուորութեան եւ արդ անկեալ կամ ի վանքս առաջի սուրբ խաչիս Քրիստոսի զի ողորմեսցի ինձ Քրիստոս Աստուած. ետու զիմ գանձագին այգին ի Ծմակին յանուն իմ պատարագի Քրիստոս Զ̄ ի տաւնի խաչգիւտին: ես Մարիամ զուգակից Շերանկանն ետու ի սուրբ Յովաննէս զԱկնաց կէս դանգն իմ գանձով գնած. յանուն իմ պատարագի Քրիստոս: Զ̄.

Շնորհիւն Աստուծոյ ես Սռլիւծս որդի Աստուածատրո միաբանեցա սուրբ ուխտիս եւ ետու ի յԱնո բուն փողոցին զիմ գանձագին կուղպակն որ շինեցի: Ներքի դեհն քանակից է Աւետեացն: Բ: կուղպակի կտերն մէկն ի վերա կուղպակին է եւ մէկն իւրենն դիմաց որ դաղլայն է ներքեւ. վասն յիշա-

Զերկրորդն շինէ Առիւծ Հոգևորեանց յամի 1277 'ի ձեռն կարնեցի Ֆրեր վարպետի, որպէս և արձանագրէն.

**Թվ ՉԻԶ ✠ կամաւն Աստուծոյ ես Առիւծս հոգեւ... Սարգսի որդիս եւ կենակից իմ Սէդա շինեցաք ի մեր հալալ արդեանց զնշխա(րա)տունս ի մեր ժամատան դուռս յիշատակ ծնողաց մերոց եւ ս.. զոր ի կա.. Աստուծոյ կարողութեամբ վարպետ Ֆրերս Կարնոյ քաղաքացի[1]:**

16. Բազմաթիւ արձանագիրքդ և սակաւ ինչ յիշատակք մատենագրաց, զատ 'ի նշանակեալ հասից, կալուածոց և պարտուց պատարագաց հռչակաւոր վանացս Հոռոմոսի, զորս բանաւէր վերծանողին թողումք քննել, ցուցանեն ևս զի տեղին երբեմն ընդ արքունական հովանաւորութեամբ գոլով՝ էանց 'ի ժառանգութիւն այլոց իշխանաց. կամ զի շուրջ սահմանօքն գնեալ էր նոցա, և կամ զի տապանատուն էր տոհմի նոցին. և գլխաւոր տեարք՝ որ և պատրոնք կոչին տեղւոյն, են 'ի զարմէ իշխանաց Խաչենոյ կամ 'ի տոհմէ Քուրդ իշխանի, յետ ԺԲ և ցկէս ԺԳ դարու, որպէս Հեճուպ Գրիգոր, Սմբատ և Իւխան, եղբարք և եղբօրորդիք նորին, որոց բազում արձանք են տրից և վճռոց. երբեմն արգելուն աղալ աղունձ 'ի վանսն. երբեմն ('ի 1228) նզովս դնեն տերանց տեղւոյն եթէ կաշառօք կարգեսցեն վանահայր. ուր նշանակի և այն՝ զի և կանանց օրէն էր ժառանգութեամբ ստանալ զտէրութիւնն կամ զպատրոնութիւն. առ որովք և վանահայրն Պետրոս (1195) միաբան հաւանութեամբ ուխտին՝ հաստատէր սահմանս պատարագաց վասն հօր և միաբանից վանացն վախճանելոց: Ի սկիզբն ԺԳ դա-

տակի զուգակցին իմո Համաւորին յանուն մեր պատարագի Քրիստոս: բ: Աստուածածատրո: բ: վահրըմա... բ: Համաւորին՝ կատարիչքն աւրհնեալ եղիցին յԱստուծոյ.

Ի յԱրուճ փոքր այգիք են վանացս եկեղեցպանին: Քաւշուտին Լապաստակայն Հանկանն Առեւծկանն Աղպետեանցն Թուխայրեանցն խաչեղբաւրն. եւ պատարագի Քրիստոս յանուն սոցա ի խաչին ուԹաւրէքն ի. ես Արշաւիր աշտակեցի ետու զիմ հայրենի... զԱւռուտն զի յիշեսցեն զիս առաջի զենմանն Քրիստոսի: ես Քաւշատս ետու զիմ ծաղկոցի կէսն զխոսրովեանցն գ: ես Խաչիկ երէց միաբանեցա եւ ետու զծաղկոցին...

Հոռովմոսին վանացս հայրենիք որ ի քաղաքին այս են Գեորգ. ծեր երէց վանացս ետ հայրենի տներն մաւտ ի կարուց դուռն սուրբ Ստեփանոս ընդդէմ եւ այլ արդիւնք ետ եւ առ զիւր տաւնին պատարագն ը: Գիւտիկ կրաւնաւոր ետ զիւր հայրենի տունն ի Քարափնն եւ առ զխաչգիւտին պատարագն ը: Վարհամ ետ կուղպակ ի դարբնո փողոցին մաւտ ի սուրբ Գրիգորն եւ պատարագ մատչի յանուն նորա բ: Աբրահամ ետ պարտէզ բերդին առաջի հայրենիք է անուն... պատարագ ը: ես Սապիս ետու զիմ հայրենիք տներն... Իգածորին դրան վանացս ասպնջականոց... պատարագեն զՔրիստոս գ:

Ես Սարգիս էրէց որդի Պետրոսի փարպեցի ետու զիմ գանձագին այգին ի վանս Հոռոմոսին սպասաւորք սրբոց կատարեն յամեն ամի զտաւն սուրբ Սարգսին պատարագել զՔրիստոս: բ: ժամ: ա: ինձ եւ: ա: կենակցի իմոյ Քէմէի.

.... ս ծեր երէց շինեցի զսուրբ եկե .... սցի ի նմա Քրիստոս յանուն միաբա .... ենի տներն եւ զծիԹահանքն.... պատարագեսցեն զՔրիստոս Ժ.... ծնողացն.. մ եղբաւրն Շնաւորին..... ես Շահ... իմ հայրենիք կուղպակն եւ զսրահն.... եւ մտից կուսէ պատարագեսցեն զՔրիստոս.... եւ ա իմ եղբարցն Կարապետին պարկա.... սուրբ Գեորգա ի հարաւո կուսէ ... ընկերին ...

Թվիս Չ կամաւն Աստուծոյ ես Առիւծս հոգեւորեանց եւ ամուսին իմ Սեդա միաբանեցաք սուրբ Յովանիսի յառաջնորդուԹեան տէր Բարսղի բերի զջուրս զոր ՏաԹարովս խուպանեալ էր եւ տվի ընծա զհայրենի զիմ կուղպակն որ ի կաւշկակարոցին քանակից է վերի դեհն Տիգրանա ներքին սլքերոյն եւ զպահէզն ի Քեղուտի նորիցիս կանգնեցի. եւ փոխարէն հատուցին մեզ սպասաւորք սուրբ ուխտիս յամէն ամի ի խաչին ուԹաւրացն: ժբ: աւր ժամ: դ: աւրն ինձ: բ: Սեդաի: բ: իմ հաւրն Սարգսի: բ: իմ մաւրն Հռիփսիմի: ա: ՆուրսԹէ: ա: Գրիգորոյ. էԹէ ոք զմեր յիշատակս խափանէ դատի յԱստուծոյ եւ ուք հաստատ պահեն աւրհնին ի Քրիստոսէ ամէն.

Չ. կամաւն Աստուծոյ ես Յովանէս մականուն Ցխիկ միաբանեցա սուրբ ուխտիս յետ աւիրման ՏաԹարիս վանացս ջաղացնիս աւեր եւ գրաւական էր: խ:

1 Աբէլ վարդապետ՝ քննող վանացս յամի 1851, յիշէ և հին եկեղեցի մի իբրև 'ի Մխ (791 Թուին Քրիստոսի) կանգնեալ, քառակուսի և անգմբէԹ, բոլորշի ունելով լուսանցոյց 'ի ձեղուանն ամբարձելոյ 'ի վերայ չորից միասաանի սեանց. և ժամատուն քառակուսի կամարակապ անսիւն 'ի Թուին ՉԻԶ (1277) առ նմին: Կարծեմ Թէ եկեղեցիս այս է մատուռնն յիշեալ 'ի մեր Սարգսեան վարդապետէ առ տապանատամբն. իսկ ՉԻԶ Թուականաւ արձան գտանի 'ի վերայ միջին սեննկի նշխարատանն:

րու Գրիգոր արքեպիսկոպոս Անւոյ՝ տայ իբրև հոգևոր վիճակ վանացն զժողովրդութիւն գեօղից ինչ Նորին, որոց գլխաւոր է Ականց, ուստի վանահայրն Մխիթար յամի 1198 մեծ ծախիւք և աշխատութեամբ բերէ ջուր 'ի վանսն, զոր առաջին Թագաւորացն ջանացեալ և ոչ էր յաջողեալ։ Իսկ մեծն Զաքարէ յամի 1206 քակէ զջաղացն որ հակառակ ջրին շինեալ էր, զի անարգել գայցէ 'ի վանսն. այլ յասպատակի Թաթարաց՝ որ արեամբ լուացին զԱնի, վնասեցաւ և վանքս Հոռոմոսի, և ջուրն խուսպանեալ, և ջաղացքն աւեր և գրաւական եղեն, զորս Թափեալ դարձուցանեն 'ի վանսն՝ Առիւծն Հոգևորեանց և Ցխիկն Ցովհաննէս. և այլ բարեպարիշտք յաւելուն տուրս 'ի պայծառութիւն տեղւոյն. յորոց մի և Թայիկ Թագուհի դուստր Շարապշահի (1269). իսկ քառասուն ամաւ յառաջ (1229), Վասակ՝ Թոռն Կիւրիկէի Թագաւորի Նոր բերդի՝ տուեալ էր վանացն զՁիթահանսն։ Առ սոքօք և 'ի զարմէ արքայազանց Արծրունեաց՝ Խեղենեկ որդի Ալուզի տայ կալուածս զԹիզանոյ Շամբ, ընդ որ անցանէր գետն (Ականց ?)։ Իսկ յամին 1274 այլ ոմն ազնուատոհմ, Ուքան Քարիմատենց, մտանէ 'ի ժառանգութիւն տեղւոյն, զի առէ զկէս վանացն գնեալ (յառաջին տերանցն) և տուեալ ընծայ եկեղեցւոյն։ Ցետ ամենեցուն յամի 1336, Աթապէկն Վահրամ որ Պատրոնաց պատրոն կոչէ զանձն, Թոռնորդի մեծին Զաքարիայի, զտուրս նախնեաց իւրոց Թափեալ՝ տայ անդրէն 'ի վանսն, այլ ևս յիւրմէն յաւելլով։ Բայց Թուի Թէ ոչ ընդ երկար յետ այնր 'ի վայելման և 'ի շինութեան եկաց տեղին, քանզի չիք այլ արձանագիր կրսեր Թուականաւ քան զայն. և հանգոյն քաղաքին Անոյ երևի Նմին աղէտալից և Թաքուն արկածի պատահեալ, աւերեալ, խոպանացեալ և լքեալ. մինչև յետ երից դարուց և կիսոյ, (յամի 1685) ըստ արձանագրին,

**Ի ՌՃԼԴ** *Թուաբերութեանս Հայոց նորոգեալ պայծառացաւ Թագաւորաշէն մեծասքանչ Հոռոմոսի վանքս ձեռամբ Դանիէլ վարդապետի տիգրանակերտեցո եւ իշխանութեամբ տեղւոյս Խալթուն օղլի իշխանաց իշխան Մուստաֆա աղայի. եւ զի ունէր ժամանակս ոչ սակաւ աւերի լցեալ աղպով եւ հողով զոր տեսեալ վերոգրեալ Դանիէլ վարդապետին եռաց ի հոգի իւր. եւ էարկ զանձն ի չարչարանս ի դառն ժամանակիս որում ազգս Հայոց յոյժ էին չքաւորեալք եւ իշխանութիւն Տաճկաց զօրացեալք, բազում աշխատութեամբ եւ ջանիւ լուսաւորեալ մաքրեաց զվանքս սուրբ Ցովանէսի ի տղմուտ եւ ի զազիր մԹնազացութենէ վասն յուսոյն որ առ Աստուած. Արդ որ կարդայք յիշեցէք ի Քրիստոս։*

դահեկան ետու եւ զջաղացն Թափեցի. եւ այլ ետու զիմ մարտիրողոք որ իմ հալալ արդեամբք գրեալ էի եւ փոխարէն հատուցին սպասաւորք սուրբ եկեղեցոյս ի տարին։ Ե։ աւր ժամ Ղազարու տաւնին։ Դ։ ինձ։ Ա։ իմ եղբաւրն Խաչատրո կատարիչք գրիս աւրհնին ի Քրիստոսէ ամէն.

**Թվ ՉԲ** կամաւն Աստուծոյ ես Ցոհաննէս արքաուն որդի Ապրկան եւ ամուսին իմ Մուլուքան միաբանեցաք Հոռոմոսի վանաց սուրբ Ցովանիսի եւ տվաք։ Բ։ տուն իմ գանձագին որ Ակուրնաց կոչի. եւ այլ տվի յամեն տարի որչափ կենդանի եմ։ Ե։ դահեկան ծիԹագին եւ առաջի տարին տվի։ Խ։ կապիճ ցորեն սերմա. եւ առաջնորդ վանացս տէր Բարսեղ եւ էլ միաբանքս փոխարէն հատուցին ինձ յամէն ամի։ Ժ։ աւր պատարագ զտաւն խաչգոյտին։ Գ։ աւր իմ հաւրն Ապրկան։ Գ։ մաւրն ՍԹերհէն։ Բ։ Ցովանիսի։ Բ։ Սմբատա. եւ յետ ելանելոյ յաշխարհէս։ Ե։ աւր ինձ Եհանիսի եւ։ Ե։ ամուսնոյ իմոյ Մուլուքին. որ զյիշատակս մեր հաստատ պահեն աւրհնին յԱստուծոյ եւ որ խափանեն կամ զտներն ծախեն մեր մեղացն պարտական է ամէն.

**Ի Թուա. ՉԷ.** ես Մկրտիչ աբեղա որդի Ռասւին եւ իմ հոգեւոր եղբայրս Գրիգոր քհ շինեցաք վերըստին զընծանամնին յԱրուճ եւ ի փարպին ✠ սրկաք նորք։ սպասաւորքս հատուցին մեզ ի տարին։ Դ։ պատարագ։ Բ։ Ռատին։ Բ։ Խոցադեղին եւ յետ ելից մերոց մեզ առնեն. կատարիչքն աւրհնին ի Քրիստոսէ.

**ՉԺԵ** Շնորհիւն Աստուծոյ ես Մամուկսթի դուստր Վարհմա ետու ի սուրբ Ցովաննէս ի մեր տապանատունս զԵղանց մարգ ի Բովաչորու կարմնջէն ի Վաղաւերու ճամբահն յԱնու հողէն ի Վաղաւիրուն։ Բ։ աւերկուլն. որ ի տարին Զ աւր պատարագել ըզՔրիստոս։ Ա։ ինձ։ Ա։ կուրապաղտին։ Ա։ Ասիրոցին։ Ա։ Արտամշին։ Ա։ Վարհամծին։ Ա։ Գոհար խաթունին կատարիչք գրիս աւրհնին ի Քրիստոսէ.

Սիմէոն գրիչ.

**ՉԺԵ.** կամաւքն Աստուծոյ ես Ալէքս որդի Ղազարա եւ ամուսին իմ Մլըքսթի միաբանեցաք սուրբ Ցովանէսի եւ գնեցի կուղպակ ի Ծուազուկակին եւ ետու ընծա ի սուրբ ուխտս եւ սպասաւորքս փոխա-

Ցետ դարու միոյ յամի 1788 վերստին նորոգեալ է զտեղին Յովհաննէս եպիսկոպոս Շամբեցի, ածեալ ջուր 'ի Մաւրիկայ վտակէն. և դարձեալ նսեմացեալ, յաւուրս մեր անդրէն լոյս տեսանէ, և ակն ունիմք յաւէտ պայծառանալ, փոխանորդարան իսկ յայժմուս կարգելով վիճակին Կարուց, ուր արժանն խնդրէ և հաստատութիւն վարժարանի կամ վարդապետարանի, ըստ առաջին կարգին: Զի և յայսմ մասին ընդ հռչակաւոր վանորայս դասիւր և սա անդստին 'ի հիմնարկութենէն. և յետ ոչ բազմաց՝ անտի ընծայեալ Թուի Սարգիս Ա. 'ի կաթողիկոսութիւն. քանզի յամի 972 ընդ ժողովեալսն ընդդէմ Վահանայ կաթողիկոսի՝ յիշատակի Սարգիս հայր վանաց Հոռոմոսին. և վասն կաթողիկոսին Սարգսի ասի 'ի վախճանին (յամի 1021) աստ թաղեալ, վասն որոյ և նոյն վերոգրեալն Թուի: Ի կէս կամ 'ի վերջ կոյս ԺԲ դարու աստանօր ասի վարժեալ և Մխիթար Անեցի բազմահմուտն, որոյ սակաւ ինչ 'ի գրուածոցն եհաս առ մեզ: Ցեւս այնր դարու և 'ի յաջորդին գտանեմք յիշատակ նաև Գրատան վանացն, զոր ցուցանէ Թերատ բաւ արձանագրի նչխարատանն չինելոյ 'ի Վաչէէ, և ողջոյն իսկ գիրս գրեալ 'ի վանս աստ և հասեալ առ մեզ. որպէս ցուցանէ և մասն յիշատակարանիդ, այսու ձևով [1].

Գրեցաւ [illegible] այս երկնաբարբառ աւետարանս . ի թուին Հա
յոց . ի ՈԼ ի տիեզերահռչակ վանս Հոռոմոսի ընդ
հովանեաւ [illegible] Յովաննիսի . ի հայրապետութեան տեառն Բարսղի,
և յառաջնորդութեան ուխտիս Խաչատրոյ, և ի հոգևոր
տեսչութեան կարապետի ծերացելոյ իմաստութիւք ի Քս, և ի
[illegible]
Ամէն։

րէն հատուցին յամէն ամի: ժե: աւր պատարագ: ե: աւր ինձ Ալէքսիս: ե: աւր իմ կենակցին Մլըքսթէն: գ: Աւետիս իրիցս: ա: Ղազարա իմ հաւր: ա: Վարդէտիկնա հետ այսո . . յիշատակ իմ որդւյն . . պարոնն յոյս ունիմ ի Քրիստոս որ . . . . զգրեալ . . կատարիչք գրոյս աւրհնին ի Քրիստոսէ.

1 Որ է աւետարանի գրելոյ յամի 1181. « Ի Թուիս Հայոց 'ի » ՈԼ 'ի տիեզերահռչակ վանս Հոռոմոսի, ընդ հովանեաւ սուրբ » Յովաննիսի, 'ի հայրապետութեան տեառն Բարսղի և յառա» ջնորդութեան ուխտիս Խաչատրոյ, և 'ի հոգևոր տեսչութեան » Կարապետի՝ ծերացելոյ իմաստիւք 'ի Քրիստոս », և այլն: Գրիչն ասէ զանձնէ և զգրչութենէն. « Անքատացեալս յամենայնի Յովան» նէս, չհամարեալս յորդիս եկեղեցւոյ, հրամանաւ Վարդանայ ե» րէց եղբօր իմոյ և ուսուցչի, և սատարութեամբ կրտսեր եղբօր » աշխարհավարի՝ Գրիգորոյ, արինաթաթախ մատամբս՝ զոր յա» ղագս մեղաց իմոց վիրաւորեցաւ, գրեցի խոշորութեամբ, յան» պատկանաւոր և 'ի չնչին նիւթի աստ »: Սորին Յովհաննու գրած է և Վեցօրէից գիրք Բարսղի, յամի 1187, « որոյ յիշատակարան հրատարակեցաւ 'ի Մասիս լրագրի *, և յորում ընդ վերյիշելոյ « մեծարգոյ և հռչակաւոր աանն Աստուծոյ Տեառն Բարսղի » յիշէ և զեղբօրորդի նորա « սատուածարեալ մանկագոյն քահանայ Սարգիս », և զեղբայր իւր Վարդան՝ միայնաւոր կոչէ: — Ցարձանագրի 1246 ամին ընթեռնումք, զի Աշոտ Դսեղեցի տայ զատ յայլոց տրից՝ և զամենագով Աւետարան մի, որոյ Թէ որպիսի ինչ էր գովութիւն ոչ գիտեմ. բայց ընթեռնումք 'ի յիշատակարանի այլոյ յոյժ գեղեցկագիր և նկարազարդ աւետարանի՝ գրելոյ յամի 1225, Թէ « Հոռոմոսի վանացն ոսկէտուփ աւետարանն և այս՝ մի գրչի է » գրած ». և գրիչն է Իգնատիոս ոմն: Իւ յայլում արձանագրի յամի 1251, ասէ Նուիրատուն Յովհաննէս Ցխիկ. « Իւ այլ ետու » զիմ Մարտիրոզըք, (Վկայաբանութեանց գիրք), որ իմ հալալ » արդեամբ գրեալ էի »:

* Թիւ 39 1853 ամի:

*Ի Վանահարց հռչակապանծ վանացս յարձանաց և այլուստ ծանօթք են ինձ [1] ստորագրեալքս, յորս յե֊տինքն առաջնորդք էին և վիճակին Կարուց.*

936 *Յովհաննէս հիմնադիր վանացն.*
972 *Սարգիս (Թոռի կաթողիկոսն).*
986 *Սողոմոն.*
1013 *Անանիա [2].*
1036 *Սարգիս և Գէորգ.*
1038 *Յովհաննէս.*
1174–81 *Խաչատուր.*
1195 *Պետրոս.*
1198–1201 *Մխիթար.*
1229–53 *Տէր Բարսեղ [3].*
1218 *Գրիգորիս.*
1222 *Անդրէաս.*
1246 *Սարգիս.*
1269 *Յովսէփ.*
1336 *Ստեփանոս.*
1685 *Դանիէլ Տիգրանակերտցի.*
1751–5 *Եղիա վարդապետ Ալաշկերտցի [4].*
1788 *Յովհաննէս Շամբեցի եպիսկոպոս.*
. . . *Աւետիք եպիսկոպոս.*
1829 ? *Ստեփանոս եպիսկոպոս Ջախալեան.*

*Ի միջոց ժամանակին որ 'ի կիսոյ ԺԱ դարու ցչորրորդ֊քառորդ ԺԲ*, յորում ոչ առաջնորդք յիշին վանացն և ոչ մի արձան յիշատակի գրեալ, հանդիպեալ են հրա֊շալի այլայլութիւնք սահմանաց դրից վանացն և պատո֊ղին զնովաւ Ախուրեան գետոյ, կարևոր տեղագրու֊թեամբ, ըստ պատմութեան Գետարգել խաչին՝ զոր պա֊հէր Հայրն Ատոմ 'ի Խուարաձոր Արշարունեաց, ուստի անցեալ 'ի Շիրակ, յԱնի, ապա եկն այսր « Ի Հոռոմոց » վանքն. և էր վանքն այն, ասէ (պատմիչն), 'ի Խորուձոր » 'ի վերայ բլրի միում, զորով շուրջ բակ առեալ պատէր » մեծ գետն Ախուրեան. և գետն այն բազում ցաւս և » վտանգս հասուցանէր վանացն. զի յորժամ արեգակն » յամառային տեղին հասանէր՝ չոգեալ չողանայր վանքն » 'ի տապոյ արևուն. իջանէր 'ի քարանձաւսն, և օդք » խորշակայինք և զազրահոտք և ցաւաբերք 'ի գետոյ » անտի փչէր ընդդէմ վանացն՝ 'ի չորից կողմանց։ Զոր » տեսեալ երանելոյն Ատոմայ՝ զվտանգ վանացն և զնե֊» ղութիւնն, առեալ զսուրբ Նշանն և ել 'ի բարձր 'ի » տեղի մի 'ի վերայ վանացն. և կացեալ յաղօթս՝ տա֊» րածեաց զԳետարգել սուրբ Նշանն ընդդէմ լերինն, և » ասաց. Տէր Աստուած զօրութեանց, աղաչեմ զքեզ, » արա զօրութեամբ Գետարգել սուրբ Նշանիս, պա֊» տառել լերինս այսմիկ, և գնասցէ ջուր գետոյս այսո֊» րիկ՝ 'ի մէջ լերինս, զառ 'ի վայր հոսելով. և գետս այս » որ գնայ ընդ հիւսիսի, դառնայ անդրէն Թափրնթաց » ընդ հարաւ։ Եւ իբրև կատարեաց զբանս աղօթիցն, » յանկարծակի մեծապէս որոտմամբ պատառեցաւ վէմն,

ՉԺԲ ողորմութեամբն Աստուծոյ ես Թաիկ Թա֊գոհի դուստր Շարապշահին ետու ի Հոռոմոսի վան֊քըս զԱբէլի ակն որ ի Դվնա դռանն զոր իմ որդին Հազրպէկն ի Գարեգոյնէն գրաւկնեց ⁝ է ⁝ ճ ⁝ սպի֊տակ ⁝ ը ⁝ ճ ⁝ սպ ⁝ ի վերա խարճ արար որ եղաւ ⁝ ռ ⁝ շ ⁝ սպ ⁝ եւ սպասաւորք սուրբ ուխտիս հայր Յուսէփ Սիմէոն փակակալ եւ այլ միաբանքս փո֊խարէն հատուցին։ բ։ աւր պատարագ զՀոգոյն գա֊լուստն։ ա։ Թաիկանն։ ա։ Հազրպէկին. կատարիչք գրիս աւրհնին ի Քրիստոսէ եւ որ խափանեն դա֊տին ի Քրիստոսէ.

ՉԻԹ կամաւն Աստուծոյ ես Մասքաս դուստր Ասղաւին եւ Թոռն Տիգրանայ ետու զիմ հայրենի բաժինք գեղն գձոխքագոն ի սուրբ Յովանէս ի յի֊շատակ ինձ եւ որդոյ իմոյ Սարգսի եւ սպասաւորքս հատուցին տարին։ ե։ պատարագ։ բ։ ինձ։ գ։ Սար֊գսի. եթէ ոք զնուէրքս մեր հանէ ի վանացս յժր հայրապետացն նզոված է.

*Ի մէջ տաճարին 'ի վերայ որմաւեանն հիւսիսոյ.*

ՉՁԵ շնորհիւ Աստուծոյ եւ ողորմութեամբ ես վ.արհամ աթապակ պարոնաց պատրոն որդի իւա֊նի Թոռն մեծին Շահնշայի որդի ամիր սպասալար Զաքարիայի վասն արեւշատութեան իմոյ հայրա֊զասւ եղբարց կենդանեաց եւ հանգուցելոց պարոն Շայնշի Աղբուղին եւ Արտաշիրին Զազին եւ սիրե֊ցել եղբարցս Պիմին Աղբուղին Ավագ Սարգսի Ի֊մնայի Պանուսի մեծի եւ փոքու վասն յուսուն իմոյ առ Քրիստոս տվի սուրբ Յովանէս ոխմ յիշատակ հոգոյ իմոյ զոր յառաջն մեր նախնիքն եւ էլ պարո֊նայքն տվել էին եւ գրով հաստատել ես վերստին հաստատեցի զՄերանց . . . ու զԳանձայհանքն ու զՋողքայգոմն իրենց հանդայվարաւքն հողով եւ ջրով ու։ դ։ կոքարովն. արեւելից դեհն մեծ շահր֊ուէն Մասթարոյ. արեւմտից դեհն ջրհորն. հիւսոյ դեհն Խայչով փարախն. հարավոյ դեհն Աբեղին ջրդիրն. ոչ ոք կայ հակառակ կամաւոր գրուս ոչ ավագաց ոչ յազատաց ոչ ի քրիստոնէից եւ ոչ յայլ֊ազգեց. ով որ զմեր հրա(մա)նս խափանել ջանայ ամենայն հաւատ նալաթ է մեր մեղացն եւ մեր ազ֊գին առաջի Աստուծոյ պարտական է. եւ սպասաւորք սուրբ Յովանիսի հատուցին ամէն ամի Ժ աւր պա֊տարագ։ ե։ ինձ։ ե։ իմ նախնեցն. ի տէրութեան վ.արհամա... յառաջնորդութեան հաւր Ստեփա֊նոսի .

*Ցայս վայր են արձանք եկեղեցւոյ Հոռոմոսի վանաց։*

[1] *Յիշատակարանք գրոց և արձանագրութիւնք։*

[2] *Որ և եպիսկոպոս Արշարունեաց և Ճակատուց։*

[3] *Սա Թոռի միանգամայն արքեպիսկոպոս Անոյ և տէր վա֊նացս Հոռոմոսի։*

[4] *Գրէ զմանէ Յակոբ Նալեան. « Լուսաւորեալ հոգի Եղիա » վարդապետն Ալաշկերտցի՝ լաւապէս նորոգեաց. բայց անբաղդն 'ի « Լեզկւոց հրացանիւ հարեալ վախճանեցաւ 'ի մօտակայս, ՌՄԴ » (1735) Թուին. զի էր այր ձիավարժ և տիգաւոր, որ զերեք հա֊» րիւրս 'ի նոցանէ միով մկրախիւ խոյս տուեալ արարեալ էր, և նոքա » Թիւֆենկի բերեալ սպանեալ էին. և յետոյ զղջացեալ վասն » անգիտութեամբ հարկանելոյն, զի շատ հաց կերեալ էին 'ի ձե֊» ռացն. զի էր այր հիւրընկալ քաղցրաբան, լսխոհն։։*

» և լեառնն ընդ մէջ բաժանեցաւ յայսկոյս և յայնկոյս » կանգունս վաթսուն. և էանց գետն ընդ մէջ լերինն՝ » զառ 'ի վայր կոյս, սաստիկ թափընթաց: Իսկ բնա֊ » կիչքն վանացն իբրև տեսին սքանչելիսն, մեծաւ գո֊ » հութեամբ փառաւորելով զՔրիստոս Աստուած, և » երկիր պագին Գետարգել սուրբ Նշանին: Եւ յետ այս » սոսկալի սքանչելեացս՝ առեալ սուրբ հայրն Աստմ » զսուրբ Նշանն Գետարգել, և գնաց դարձեալ 'ի վանքն » Խառարաձոր »:

17. Արտաքոյ վանացս քարընկեցիւ հեռի յարևելից՝ կայ մատուռն, և առ նմա դամբարան կիսաւեր. ոչ գի֊տեմ սամ թէ այլ չիրիմ է զոր ասեն Սմբատայ Թագա֊ւորի լինել. կայ անդ միւս ևս չիրիմ 'ի վերայ երեցուն թանձր մեծամեծ վիմաց ամբարձեալ արկղաձև, կող֊մունք նորա միաստանի քարամբք, այլ այժմ լցեալ խըր֊ճով, 'ի վերայ քարանցն քանդակեալ են կամարաձև սիւնազարդ խորշք, յորոց մի մասն միայն կանգուն կայ, և զայս միայն գրուած ունի. Եղբայրիկն կանոն խաչիս, որպէս է տեսանել յայսմ պատկերի [1]: — Անդր քան զսա մերձ յԱխուրեան ձոր կան կրկին սենեակք, մե֊նաւորի բնակարան: — Առ երի վանացս աւանդեն առ֊նել զհանդէս զօրաց մերոց Թագաւորաց:



6. Մահարձան 'ի Հոռոմոսի վանս:

Ի հիւսիսոյ Հոռոմոսի վանաց, հազիւ քառորդաւ ժա֊մու հեռի, 'ի ձորադաշտակի ուրեմն կայ Հանգստատուն Բագրատունի Թագաւորաց. երկու եկեղեցիք են անդ գեղեցկաշէնք, փոքու իւիք զանազանեալ մեծութեամբ, յորոց մեծն կոչի Սուրբ Գէորգ, իսկ փոքրն կարծի Ս. Մինաս, երկոքին ևս մասն համարին Հոռոմոսի վանաց: Անխուն են եկեղեցիքն, այլ ունին գեղեցիկ [2] գմբէթս 'ի վերայ կամարաց չորեցուն կողմանցն: — Առ անկեամբ արևելից հարաւոյ եկեղեցւոյ Ս. Գէորգայ իբր երկու Զ. տարակաց կայ յիշատակարան փեմական և սրտառուչ. երեք տախտակաձև վէմք 'ի վերայ իրերաց ատիճան գործեն. և 'ի վերայ նոցա չիրիմ որոցաձև, և 'ի հարաւոյ կողմանէ փորագրեալ [3], Աշոտ Թագաւոր Հայոց: Չիք ոչ մատուռն և ոչ գմբէթ 'ի վերայն, այլ հազիւ հետք

1 Թուի պակասել Զ տառի բառիդ (կանոն). և խաչն բար֊ձեալ է:

2 Ոչ միայն գեղեցկութեամբ ձևոցն զարմանալիս աստ Դիւփէ փաւնկ զգմբէթս եկեղեցեացն, այլ և ճարտարութեամբ կեր֊տուածոյն, զի չէ գործ դիւրին 'ի միում անդ գմբեթի զերիս տար֊րական ձևս երկրաչափութեան զուգաւորել, զկոն, զգլան և բոլ֊գունտ. Le style original de ce monument, sa conservation parfaite, au milieu de tant de ruines, en font une des plus grandes curiosités de la ville d' Ani. Ce n' est pas seulement l' élégance des formes qu' il faut admirer, mais l' habilité avec laquelle l' appareil a été tracé. Les architectes comprendront la difficulté de couvrir chaque chapelle par un cône oblique pénétrant un cylindre, et formant dans l' interieur une voûte sphérique ; c' est-à-dire, que les trois formes élémentaires de la géométrie, le cône, le cylindre et la sphère, concourent au tracé de l' appareil ». — TEXIER, l' Arménie, I. 150.

3 Բազմաց յայց ելեալ սխրալի յիշատակարանիս՝ պէսպէս ընդ֊օրինակեալ են զարձանն. ոմն լոկ Աշոտ Թագաւոր, ոմն Մեծն Աշոտ Թագաւոր Հայոց. ոմն Թուականաւ ՆԿԶ Աշոտ Թագաւոր Հայոց. ոմն Աշոտ Ողորմած Թագաւոր Հայոց. իսկ զպատկերս այս (որ յէջ 31) գծագրեալ յօտարազգւոյ՝ հաւատարմագոյն համարիմ, թողլով որ֊պէս գծեալ էին՝ զառաջին եղծեալ տառն, որք թուին ՆԽԶ. Թ. այսինքն 977 ամ մահուանն: Ստուգեսցէ լուսագիր պատկեր:

կամարի միոյ նշմարին. որպէս զի Մնայ արդ 'ի սպառ 'ի բացօթեայ վայրի, կափարչաւն ևեթ հովանացեալ, յա- մենավսեմ պարզութեան, մի 'ի փառազանցն Բագրա- տունեաց, և որպէս համարի սիրելագոյնն Թագաւորաց Անոյ, Ողորմածն Աշոտ։ Ի սնարս Նորին կայ այլ շիրիմ փոքր արկղաձև, թերևս զուգակցի Նորին Խոսրովանոյշ դշխոյի։ Բազում եկեղեցեաց և մատրանց աւերակք են և հիմունք առ ոտքօք և առ եկեղեցեօքն։ Արձանագիրքն ցուցանեն զի զեկեղեցիս այս Ս. Գէորգայ շինեաց Գա- գիկ Ա. յելս Ժ կամ 'ի սկիզբն ԺԱ դարուն. և է ար- ձանագիր Նորա արդարև արքայապատիւ թելադրութիւն՝ վսեմական և մաղթողական, այսպէս.



7. Ս. Գէորգ. — Հանգստարան Գագկայ Ա.։



8. Յատակագիծ Ս. Գէորգայ։

Ով հռչակաւոր դու եւ մեծանունդ ի վկայս Սուրբ Գէորգիոս աւգնեա բարեխաւսութեամբ Գագկա Շահայնշահի շինողի զվկայարանս զայս քոյով անուանակոչութեամբ ի քոյդ յուսակնեալ բարեխաւսութիւն. զի ընկալցի զողորմութիւն ի Քրիստոսէ Աստուծոյ յանվախճան արքայութեանն ընդ ամենայն արդարացեալսն ապաշաւանաւք հասանել լուսոյ փառաց որդւոյն Աստուծոյ ի վերջնում գիշերին ի ծագել մեծի եւ աներեկ առաւաւտին այցելութիւն գտանել առաջի բեմին եւ անաչառ դատաւորին. աղաչեմք։

Արժանի յիշատակաց է և արձան որդւոյն Գագկայ՝ Յովհաննու Սմբատայ՝ հռչակելոյն իմաստասիրութեամբ քան թէ քաջութեամբ, յամի 1036, փորագրեալ 'ի ճա- կատ եկեղեցւոյն, յարևմտից կուսէ. որ է այս.

Ի ՌՈՋԺ ղըմլիադի[1] լինելութեան արարածոց ՄԿ ղըպիադի Աստուծոյ մարմնանալո եւ ի ՆՁԵ ԹԱ.Հ ես Սմպատ շահնշահ որդի Գագկա շահնշահի եւտու զիմ գեղս զՍահառունիս ի մեր հանգստարանս Թագաւորաց ի տիեզերահռչակ վանսս Հոռոմոսի վասն մեր մեղաց Թողութեան եւ գրեցի ի սուրբ Գորգ յամենայն տարի Դ քառասունք Գագկա եւ ի վախճանիլն իմ Բ ինձ եւ Բ Գագկա մինչ ի գալուստ Տեառն վկայութեամբ Տեառն Պետրոսի Հայոց կաթողիկոսի եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս Հաւր Սարգսի եւ Գէորգա. արդ եթէ յառաջնորդաց եւ ի սպասաւորաց սուրբ եկեղեցոյս յայս յիշատակէս խափանէ մեղաց մերոց պարտական է առաջի Քրիստոսի. արդ թէ ոք ի մեծաց կամ ի փոքունց ի մերոց կամ յոտարաց հակառակ կա եւ յապշտակէ զգեղն կամարան եւ փնդկան զրկեալ լիցի նա ի Քրիստոսէ որպէս զուդա աստուածասպան որոշիցի ի սուրբ Երրորդութենէն եւ ի Քրիստոսի սուրբ նշանէն կապեալ եղիցի կենաւք եւ մահուամբ եւ ամենայն մեղք եւ անէծք յադամա մինչ ի գալուստն Քրիստոսի ի նմանէ խնդրեսցի. հաստատուն է թէ Աստուած կամի: ✠ Թովմաի է գ.



9. Գերեզմանն թագաւորին Աշոտոյ Ողորմածի († 977):

Գեղեցիկ է դարձեալ և արձանագիր տեառն Անանիայ եպիսկոպոսի Արշարունեաց և երբեմն առաջնորդի վանացս Հոռոմոսի, և է գրեալ 'ի վերայ դրան աջակողմեան աւանդատանն, այսու օրինակաւ.

Աստուած է ի սմա. Շնորհին Աստուծոյ ես Տէր Անանիա շնորհին Աստուծոյ Աշարունեաց եւ Ճակատոց այրարատեան գաւառի եպիսկոպոս զմտաւ ածեալ հանապազ զվանս սրբոյն Յոհաննու թէ մեծ շահ է յաս-

[1] Ըլըմլիադըք 1616 (քառիցս կրկնութեամբ Թուականին) ընծայեն զ6466 ամ արարչութեան աշխարհի, ըստ Անդրէասայ ժամանակագրութեան. իսկ 260 քառապատկեալ՝ արտադրէ զ1040 ամ Քրիստոսի, որ ըստ դիոնիսեան հաշարակ այժմու համարողութեան՝ լինի 1036-7 ամն, համեմատ Հայ Թուականին նշանակելոյ, ՆՁԵ:

տուածային խորհուրդսն յիշել զգնացեալսն կարգեցի ամ ըստ ամէ անխափան զզատկի մեռելոց աւուրս (Ժ)ամն յամենայն եկեղեցիսս յանուն առաջնորդաց հարցն սրբոց եկեղեցւոյս կատարել եւ զայլ աւուրսն մինչեւ ցնոր կիւրակէն ամենայն հանգուցելոց որ են ի սուրբ ուխտիս յանուն նոցա. զի մեր միշտ զյիշատակս նոցա ի մտի ունելով եւ կատարելով առաջի զենլոյն Քրիստոսի նոքա ի մեզ հայեսցին .... ունելով բարեխաւսութեամբ աղաւթից իւրեանց որ զկեանս մեր խաղաղացուսցեն քաղաքավա .... ի հաճոյսն Աստուծոյ հայեցեալք յեւս գնացից նոցա նմանողս լինել հաւատոց նոցա. արդ ես շնորհելովն Աստուծոյ ի ժամանակս իմոյ առաջնորդութեանս կա(րգե)ցի դուք որ զկնի մեր յաջորդէք զպաշտաւնս ...

Գոյ և արձանագիր Մարտիրոսի ուրումն որ պատարագս կարգէ վասն հոգւոյ որդւոյ իւրոյ Գէորգայ, այսպէս.

Շնորհիւն Աստուծոյ ես Մարտիրոս ետու զիմ կուղպակն ի տիեզերահռչակ վանս Հոռոմոսի վասն հոգոյն Գէորգի որդո իմո եւ արձանագրեցի ի սուրբ Գէորգ յամենայն ամի ⁝ գ ⁝ աւր ժամ Գէորգա զվարդեւարին հինգշաբաթ ուրբաթ եւ գշաբաթ եւ յետ փոխելոյն իմ առ Քրիստոս ինձ առնեն. արդ եթէ ոք զընծայեալս որոշէ կամ զգրեալս ոչ առնէ որոշեսցի ի փառացն Աստուծոյ.

Ի վերայ փոքրագոյն եկեղեցւոյն (Ս. Մինասայ) հնագոյն ևս Թուականաւ արձանք գրեալ կան. մին արտաքուստ 'ի հարաւոյ կուսէ, յամին 986, Զուտասայ ուրումն. որ զհայրենի այգի իւր նուիրէ վանացս, վասն հոգւոյ ծնողաց իւրոց, և վանահայրն Սողոմոն կարգէ նմա քառասունս պատարագաց, այսպէս.

Յանուն Աստուծոյ. Ի ՆԼԵ թուականիս Հայոց ետու ես Զուտաս զիմ հայրենի այգին զՀոռոմդեան որ ի Մրեան ի Հոռոմոսի վանս ի հայր Սողոմոն վասն իմ ծնողաց հոգեւոց. որ հակառակի նզովեալ լիցի յԱստուծոյ կենդանոյ. եւ ես հայր Սողոմոն պարտական եմ յիմ ժամանակս ի տարոջն ա̈ խ̈ ։ ունել Զուտասին ծնողացն իսկ յետ իմ ելիցն խափանել մի ոք իշխեսցէ ի բանէն Աստուծոյ եւ մի ոք վայրապար համարեսցի զգրեալս զի բաղում բարութիւնս շնորհէր էկեղեցո առատաձեռն ։

Միւսն կարևոր յիշատակք 'ի ներքս 'ի հիւսիսոյ կողմն գրեալ է յամի 1013 'ի վերոյիշեալն Անանիայէ.

Յանուն Աստուծոյ. Ի ՆԿԲ թուականիս ես Տէր Անանիա նուաստ եւ յետին ի վերակացուս եկեղեցո առաջնորդ գոլով սուրբ ուխտիս ոչ ըստ արժանաւորութեան իմոց կենացս կամ վարուց ինչ առաքինութեան այլ ի ներելն Աստուծոյ ապաւինելով ազատեցի մեծաւ ջանիւ զհարկ եւ զԹաստակ առի եւ զՔեղարագոմն իւր ամենայն գոյիւ ի սուրբ ուխտս վասն

ապաւէնի տեղի լինելոյ ի փախստեան ժամանակի եւ այլ բազում ինչ աւգտի փայտի եւ խոտի. արդ դուք սուրբ հայք եւ եղբարք որք յաջորդէք վկնի մեր յիշատակի արժանիս արարէք զմեզ սուրբ պատարագաւն եւ այլ աղաւթից հանդխիւ. եւ որք յիշէք յիշեալ լիցիք ի մեծ ատենին առաջի Քրիստոսի եւ որք վկնի ձեր գան զձեզ յիշիցեն. զոր եւ իմ անխափան եմ պահեալ զառաջնոցն յիշատակն. եւ տուող այդմ պարգեւի Գագիկ էր աւրհնեալ յԱստուծոյ եւ որդեակք իւր Սըմպատ եւ Աբաս եւ Աշոտ վկայութեամբ ամենայն Հայոց ազատացս. արդ յամենայնի աւրհնեալ է սուրբ Երրորդութիւնն տուիչն ամենայն բարեաց ամէն:

Ի ներքոյ երեցուն լուսամուտից արեւելակողման եկեղեցւոյս այսորիկ՝ արձանագրեալ են համառօտ բանք, աներկբայաբար յայտարարք պատկերաց որ 'ի վերոյ նոցին կամ առընթեր ձեւակերպեալք էին.

Այս է սուրբ Աստուածածին.

Այս է սուրբ Յարութիւն.

Այս է սուրբ Գրիգոր:

18. Ցիշեալն յարձանագրին Անանիայի Քեղարագոմ, տեղի ապաւինի վանականաց Հոռոմոսի, պարտական մերձ նմին լինել. այլ ոչ սորա և ոչ այլոց յիշեցելոց յարձանս՝ ոչ լսին այժմ անուանք գիւղից և ագարակաց, և ոչ դիրքըն են յայտնիք, և չատք կարծեմ խոպան աւերեալք և խոպանացեալք են. հաւանելի է թէ 'ի մերձաւոր սահմանս վանացն և մայրաքաղաքին էին երկուստեք Ախուրենոյ: Միայն Աստեղանին յիշեալ յարձանս՝ յայնկոյս գետոյն, յորում մարգ մի տուեալ լինէր վանացն՝ պահէ ցարդ զանունն Աստախանէ, և է արդարև 'ի միւս կողմն՝ յահեակ գետոյն, որպէս նշանակեցաւ 'ի կարգին (9): — Գանձահանքն և Ծողքագոմն, ըստ սահմանագրութեան նոցին՝ յայտնին լինել յայնկոյս գետոյն յարեւելեան Շիրակ, այլ ոչ հեռի 'ի վանացն, 'ի Մ. կուսէ Մաստարայ գեղջ: — Բազում անգամ յիշեալն Ականց գիւղ կամ Ականք անշուշտ առ ակամբք վտակին Ական ջուր կոչեցելոյ է, զոր Մխիթար վանահայրն դարձոյց և եբեր 'ի Հոռոմոսի վանս, և ոչ հեռիք 'ի նմանէ Շավրա և Աղբնագեղ. զի երեքին սոքա սեփական իմն կալուած մենաստանին վկային: — Անծանօթ միան յինէն խոպան Երգ, Արվաշ գիւղ, յորում Ճարպկանց մարգն. Դրաապար, որ թերևս 'ի բուն սահմանս Անոյ իցէ (15). Ծմակ, որոյ աւագերէց Սարգիս որդի Գրիգոր քահանայի յիշի յամի 1233 յարձանս Բագնայրի. և սուղ յետոյ Կոստեր ոմն Ծմակեցի բարերարող վանաց տեղւոյն: Աշտակ, յորում Ուռուտ. Քեղուտ, յորում պահէր մի. Թեգաանց շահքն, ընդ որ գետ անցանէր. Վաղաւեր, որ թուի 'ի սահմանս Անոյ լինել: — Այգրեուց ձոր, Բովաձոր կամ Բովաչոր յորում Եղանց մարգն, և է անշուշտ գիւղն Բաւացձոր կոչեցեալ յԱսողկայ, ուր գումարեցան զօրաք՝ Դաւիթ կիւրապաղատ և Մուշեղ արքայ Կարուց՝ 'ի վերայ Սըմբատայ Բ Շահանշահի, վասն յափշտակելոյ սորա 'ի բաժնէ հօրեղբօր իւրոյ (Մուշեղի) զՇատիկ գեօղ Ճակատուց. վասն որոյ յետս դարձոյց զգեօղն, ընդ նմին և զզօրսն: — Քարհատ. Ջու. թերևս Ջունի կամ Ջիվնի, զոր յիշելոց եմք յետոյ: Իսկ յաճախ յիշեալն և մասն առ մասն նուիրեալն վանացս՝ Մարանց-մարգ կամ մարգին, է անշուշտ հին և նշանաւոր տեղին Մարաց մարգ, իբր 300 ասպարէզ 'ի վերոյ Երուանդաշատ քաղաքի առ Ախուրեան գետով, ըստ Խորենացւոյ [1], որ 'ի ճահ գայ սահմանաց Գարագալէի, 'ի միջոցի անդ Մուրիկայ գետոյն և Ախուրենոյ. ուր մղեցաւ մեծ և բաղդաւճիռ պատերազմն Երուանդայ ընդ Արտաշիսի Բ, մանաւանդ թէ ընդ Աշրաքաջին Սմբատայ, որ «Հրամայէր զխողսն պղնձիս հնչեցուցանել. և յառաջեալ զբանակն իւր՝ իբրև զարծուի յերամս կաքաւուց խոյանայր». և հարեալ վարեալ զգունդս Երուանդայ հալածական տանէր մինչև 'ի քաղաք անդր նորին: Ի մարտի աստ՝ քաջին Գիսակայ որդւոյ ստնտուին Արտաշիսի սուսերահար կորուսեալ զկէս դիմացն և զկեանսն՝ տոհմն նորին կոչեցաւ Դիմակիանեան, և յեղմամբ՝ Դիմաքսեան: Եւ զի գունդն Արգամայ՝ որ 'ի Մարաց՝ յառաջադէմ գըտաւ աստ, Արտաշէս «անուանեաց զհովիտն ուր 'ի վերայ դիականցն բանակեցաւ՝ Մարաց Մարգ, և զտեղի ճակատուն՝ Երուանդաշաւան, որ կոչի մինչև ցայսօր ժամանակի. այսինքն, թէ յայսմ տեղւոջ վանեաց զԵրուանդ»: — Ծանօթք են հեռաւոր գեօղք Արագածոտան՝ Թալին, Արուճ, և հեռագոյնք Փարպի, Օշական, և այլն, յորս այգիք և հնձանք նուիրին վանացս Հոռոմոսի, որպէս և մերձաւորն Մրեն [2]: Այլ զայս ամենայն և զայլ այսպէս քննութեան արժանի յիշատակս տեղեաց, անձանց, չինից, հարկաց և բաժից, և սոցին նմանեաց՝ որք 'ի յօքնաթիւ արձանսն նշանակին,

1 Խորենացի Բ. ԽԶ:

2 Քննելի է եւ յարձանագիրս ամաց ՋԻԳ և ՉԼԵ կիսատ բառն Ովչէր և չՈ–չն, որք թուին յատկանիշ իմն բնական կամ ձեռակերտ տեղւոյ:

'ի յաջողագոյն բանաստեղծս թողեալ, մատիցուք յևս արժանաւոր սահմանս բազմադէմ յիշատակաց։

19. Ցարեւմտակողմն խօշավանից իբր չորիւք մղոնօք հեռի, և իբր կիսով մղոնաւ ևեթ տարակաց 'ի հիւսիսոյ արեւմտից քաղաքին Անւոյ, կայ համանուն Նորին փոքրիկ գիւղն Անի, Թուրքարնակ, իբրու յառաջադէմ պահնակ և Նշանակ յաւերժայիշատակ քաղաքամօրն. չիք 'ի Նմա չինուած հին, այլ միայն մերձ Նմին և քաղաքին երկու հանգստարանք կամ գերեզմանք Նահատակաց ԺԴ դարու. մին կիսաւեր մատուռն իմն ամբարձեալ 'ի վերայ կամրջաձև կամարի, յորմէ ձգելոց ընդ հիւսիս և ընդ հարաւ, և 'ի Ներքոյ Նորին անցք են. 'ի հարաւային կողմանն արձանագրեալ կայ յամի 1348.

Այս է հանգիստ Կիրակոս վարդապետին, որ Նահատակեցաւ յանօրինաց. Յիշեցէք ի Քրիստոս. թվ. ՉԴէ։ գրեց։

Սակաւուք հեռի է միւսն, որմաձև կերտուած կամ խաչքարանց. յորոց սակս և խաչի ձոր կոչի տեղին. 'ի Ներքոյ մեծի խաչ-վիմին գրեալ է արձանս այս սրտառուչ, յիշատակ եղբօր սիրելւոյ 'ի վերայ եղբօր սպանելոյ.

Զսուրբ եւ զանարատ զխաչս աստուածընգալ որ բեւեռեալ ի սմա անմահ մեռեալ տէրն մեր Քրիստոս որ մահուամբն իւրով անմահացոյց զմահացեալքս. արդ ես Կաղերս որդի Մեւոնի կանգնեցի զսա կարողութեամբ բեռլին սորա յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց եւս առաւել արեւնա(թա)թաւ... ա Սարգսի որ յանաւրէն Թուրքաց Նահատակ եղեւ յանմարդաձայն տեղիս զոր ընդ ոտիւք դիզաչխարհաւն (?) դրելով զարեգակնանման եղբայրն իմ զոր գտի ի խորագու(ն) հորի քարաթաղ արարած. ի մազորտնո արենաթաթախ մարմնոյն ոչ կարիլի ծանել զնա. բազում աչխատութեամբ բերել եդի յայսմն տեղի. աղաչեմ յիշե։

Փոքրս այս յիշատակարան 'ի մեծագոյնն արդ առաջնորդէ մեզ 'ի հանդիսարան սիրոյ և ոգոյ, 'ի քաղաքն

20. ԱՆԻ. — Ի բազմադարեան հարստութեան մերոց Հայկազանց և Արշակունեաց՝ մի ըստ միոջէ ամբարձան փայլեցին փառօք և ձոխութեամբ արքայանիստ մայրաքաղաքք յԱյրարատեան աշխարհիս, Արմաւիր, Արտաշատ, Երուանդաշատ, Վաղարշապատ և Դուին. թող զոր 'ի սահմանածայրս տէրութեան Հայոց՝ Մծբին և Տիգրանակերտ, կամ որ մօտագոյնք և դեռ տեղագրեալք առ գետովս Ախուրեան՝ յԹ դարու, Նախկին գահքն Բագրատունեաց, Բագարան և Երազգաւորս. այլ ամենեքին Նոքա գրեաթէ հաւասար գետնոյ հիմնայատակ և ընդ հողով ծածկեալք, աներևոյթք և անծանօթք մնան, որպէս մեռեալք յաւիտենից, և յիշատակ Նոցա աչխատութիւն կրէ 'ի դրդել զսիրտ։ Ոչ այսպէս յետինն մայրաքաղաքաց Հայոց՝ 'ի բնիկ երկրի Նոցին և 'ի սեփական աշխարհին Այրարատայ, յինն հարիւր ամաց հետէ հանգիստացեալ, և 'ի հինգ հարիւր ամաց ամայացեալ, այլ միշտ և յամենայն դէպս և 'ի պայմանի՝ սրտառուչ. որոյ անուն անգամ իբրև անմոռաց կոչնակ ազգային ոգոյ՝ ձմլեցուցանէ զամենայն զգայուն սիրտ հայկազնեայ, և տեսիլ՝ պատկառանօք գրաւէ զամենայն կիրթ օտարազգի. և զոր օրինակ այրարատեանն Մասեաց՝ աննման իմն վսեմական են կերպարանք, Նաև 'ի Նկատի բարձրագունից քան զինքն լերանց (որպէս խոստովանին աշխարհատես զգօն ձանապարհորդք), գորովաշարժ գոգջիր հանուրց և Անի քան զամենայն քաղաքս աւերեալս և լքեալս երևի. և այս՝ վասն կիսականգուն և կիսակենդան իմն կալոյ, ընդ յատակելոցն և անհետացեալ չինուածոց ունելով և այնքան անաղարտ մնացեալս յեօթն և յութ դարուց հետէ, որպէս թէ յերիկէ չինեալս. և յաւէտ ևս, վասն քրիստոնէական մեծամեծ և անթիւ Նշանակացն, որք 'ի միջոյ դերբկաց վերամբառնան սրադագաթն գըմբեթօքն. իբրև մուրհակք անմահունակք ունելով խիտ առ խիտ Նուիրական արձանագիրս, որպէս և պարիսպքն և աշտարակք. և սովին այսու գլէ Անի քան զամենայն տիեզերահռչակ քաղաքօք Եգիպտոսի, Ասորեստանեայց և Պարսից. Նա և 'ի քրիստոնէական դարեալ քաղաքաց՝ ոչ մի չկարէ 'ի կշիռ գալ մերոյս այսմ դշխոյիս Շիրակայ, համանգամայն սարօքն և սեթևեթիւք։ Ամենայն ինչ սուտեր, ամենայն լոյս է յԱնի. աւերակքն և չէնք, կենդանութիւն և մահ, հնութիւն և Նորութիւն, յայտնութիւնն 'ի մնացուածոցն և յարձանագրաց և 'ի պատմութեանց, և թաքնութիւնն յետին արկածից՝ որով լքաւն 'ի սպառ 'ի բնակչացն. զարմանալի իմն առակ Նչաւակի աշխարհիս. գաղտնիք հնգադա-

րեան՝ որ տակաւին խնդրէ լուծումն։ Հիացեալ ընդ այս և ոմն յեւրոպէացի քննչաց տեղւոյն՝ իբր քառասուն ամօք յառաջ, գրէր[1]. «Եթէ երթեալ գնացեալ ուրուք յուղևորաց յափունս Նեղոսի՝ խոյզ և խնդիր առնէր հետոց քաղաքակրթութեան կորուսելոյ, խելամուտ լինէր ապաքէն եթէ կուտակութիւնք այնքան դարուց կարէին աճիւնացուցանել զքաղաքս և զտաճարս. այլ 'ի տեսանելն զեղծումն ապականութեան նստեալ 'ի մէջի պատուարաց քրիստոնական քաղաքի, զեկեղեցիս և զմկրտարանս՝ ապաւէնս եղեալ գազանաց վայրենեաց, » և զխաչսն քանդակեալս 'ի վերայ միոյ միոյ 'ի քարանց » քաղաքիս՝ մի ըստ միոջէ ջնջել անհետանալ. յ'ածելն » զմտաւ՝ եթէ չորք դարք միայն ժամանակի բաւական » եղեն զմայր մի քաղաքաց՝ զայնքան խնամով պերճութեամբ և սիրով կառուցեալ՝ դարձուցանել 'ի կոյտ մի » գերբկաց, և 'ի համր վկայ անցելոց, յայնժամ տեսարանն որ այսքան 'ի մօտոյ ազդէ, կենդանագոյնս յայժ » տպաւորի 'ի նմա. քանզի յարկածս նորին ընթեռնու » զպատմութիւն իւրոյ ժամանակին և զքրիստոնէութեան։ Աւանդութիւնք որ յայլս 'ի տեղեաց այնքան



10. Տեսիլ Անւոյ յարեւմտից հայելով.

1. Դղեակն. — 2. Ս. Գրիգոր Ապուղամրենց. — 3. Աւագ դուռն. — 4. Մեծ Աշտարակ. — 5. Մզկիթ.
6. Կաթողիկէն. — 7. Ս. Փրկիչ. — 8. Նախարարածի եկեղեցին արտաքոյ քաղաքին։

» փախստեայք և անկատարք են, յերկրի աստ պահեալ » ունին սխրալի յիշատակս պատմութեան, զքաղաքիս » այսորիկ և զթագաւորաց 'ի նմա բնակելոց։ Զկնի պատերազմաց որք սպառեցին զժողովուրդն, սասանութիւնք երկրի տապալեալ կործանեցին զշինուածսն, և » մանաւանդ զբնակարանսն, որք՝ զի ոչ հաստատագոյնք » էին՝ գրեաթէ բնաջինջ եղեալ են »։ Ամին նման ամենայն եւրոպէացի ճանապարհագիրք խորին զգացմամբք

1 « Qu' un voyageur aille sur le bord du Nil rechercher les vestiges d' une civilisation perdue, il comprendra sans effort que tant de siècles accumulés aient pu réduire en poudre les cités et temples; mais quand il verra la dévastation assise dans l' enceinte d' une ville chrétienne, les églises et les baptistères servis de retraites aux animaux sauvages, et la croix tracée sur chacune des pierres de cette ville s'effacer peu à peu pour disparaître à jamais; s' il songe qu' il n' a pas fallu quatre siècles pour qu' une capitale, bâtie avec tant de soins, de luxe et d' amour, ne fût plus qu' un monceau de décombres et un muet témoin du passé, alors ce tableau, qui se touche de si près, fera sur lui une impression bien plus vive, car il lit dans ces désastres l' histoire de son temps et celle du christianisme. Les traditions, qui, en d' autres lieux, sont si fugitives et si incomplètes, ont conservé dans ce pays des souvenirs bien curieux de l' histoire de cette ville et des monarques qui y sont séjourné. Après la guerre, qui a detruit la population, sont venus des tremblements de terre qui ont renversé les édifices: les habitations surtout qui offraient moins de solidité, ont été presque entièrement anéanties ». — TEXIER, L' Arménie, T. I. 93.

սխրանան, կարեկցին, դրուատեն, և ոչ մի ոք առանց աղնիւ ինչ բանի բացատրութեան չկարէ չյիշել զնա. իբրու այն, թէ որ 'ի փառս իւրում երբեմն Հայոց ևեթ էր սեփական, արդ 'ի տխրախառն աւերման՝ ամենայն բարեկիր մարդկութեան լցէ բաժին. և « գանչացեալ » նկատեն 'ի նմա, առէ Նոր ոմն գրիչ փռանկ, Պոմպէա » մի մեռեալ 'ի դարուց հետէ, զոր՝ աղէտքն որ կորու- » սին՝ ոչ ծածկեցին միանգամայն ընդ հողով կենդա- » նեաց »: Այսքան հզօր գոլով աղդման Անոյ 'ի վերայ օտարաց՝ անմարթ է ազգայնոց մինչև իսկ 'ի քնին աւերակացն կամ Մնացորդաց չինիցն մատուցեալ՝ չխորհրդածել զայսպիսիս. համբաւ կանխաճաս այսպիսւոյ տեղւոյ խնդրէ և կանուխ ճարակ սրտի՝ նախ քան զմտացն և զաչաց հետաքննութիւն:



11. Արտաքին դուռն Անւոյ հանդէպ աւագ դրան:

Ցարևմտից հարաւոյ Հոռոմոսի վանաց իբր փարսախաւ և կիսով հեռի 'ի նմանէ, յեզր Ախուրեան գետոյ զնի ԱՆԻ 'ի քարակտուր իմն վայրի, որ հաւասար դաշտին 'ի հիւսիսոյ կողմանէ՝ տակաւ ամբառնայ ընդ հարաւ. ուր գետն՝ որ օձապտոյտ քերէ զարևելեան կողմամբն, անդանօր արմուկն գործեալ անձկագոյնս պատի, շուրջ զլեզուաձև տարածեալ քարաժայռիւ, զորով պատի 'ի հանդիպոյն՝ յարևմտից՝ վտակ մի փոքրիկ, եկեալ ընդ ձոր խորանիստ և լայնաբաց, որ կոչի Ծաղկոցաձոր կամ Ծաղկաձոր ըստ արդեացս, և Ալաճա-չայ ըստ Թուրքաց, և յանուանէն յայտնի գալ յարևմտից հարաւոյ՝ յԱլաճա լեռնէ, մանուածով փարի զբոլանդակ զարևմտակողմամբ քաղաքին և զարևմտեան հիւսիսիւ. վասն այսորիկ Պարսիկ պատմիչ հեղինակ Նիկեարիստան գրոց՝ երկգետեան կոչեաց զԱնի, (دوه‌لو, տէվէլու): Ի հանդիպոյ յարևելեան հիւսիսային մասին ևս կայ փոքրագոյն ձորակ մի դոյզն ջրով, որ Գայլիձոր կամ Գլիձոր կոչիւր առ հինս: Այսպէս յերից կողմանց պատեալ և կղզիացեալ ձորովք [1] և պատալեան խանձուտ քարափամբք, միայն 'ի հիւսիսոյ կողմանէ հաւասարի ընդ դաշտին, յորմէ և զատուցեալ և ամրացեալ կայ կրկին պարսպաք, ձորէ 'ի ձոր. որով և ձևանայ Անի եռանկիւն, յարևմտից և յարևելից կողմանց լայնագոյն, 'ի հարաւոյ նեղ, և իսպառ անձուկ աւարտեալ քարաբլրիւն զոր յիշեցաք յարմկնաձև պատուածին: — Ներքին չրջապատ եռանկեանս յորում ամփոփի քաղաքն, 4100 Ք. ևեթ է, որով և տրամագիծն կամ երկայնութիւն քաղաքին 'ի Հ. ընդ Հր. հազիւ հազարչափ մի. իսկ լայնութիւնն 'ի Մ. ընդ Ե. երիր մասամբ նուրին. որ է ասել քաղաք յոյժ փոքրիկ, և իբրև ոչինչ մի ըստ տարածութեանն՝ առ համբաւն, առ մեծագործութիւնն և առ քաղաքական հանգամանսն, որովք հարկ էր նմին լի և հոծ լինել. վասն այն և առաւել զարմանալի է խոստովանել զկէտս զայս հայկական հողոյս, որ թէ ոչ բաւէր կրել հազար և մի եկեղեցիս, ըստ աշխարհածանօթ համբաւոյն և առակին և երդման ռամկաց, սակայն կրէր ոչ պակաս սքանչելիս ձեռագործս:

1 Թերևս 'ի սակս ձորոցս՝ ՁՈՐՈՑԳԵՏ կոչեցաւ վիճակն Անոյ, եթէ չիցէ սխալ կամ չփոթ 'ի բանս երկոցուն Վարդանանց, աչխարհագրին և պատմչի. քանզի բուն Ձորոցետոյ Թագաւորք կոչին որք ոչ առա, այլ 'ի կողմանս Գուգարաց Թագաւորեցին:

Ըստ աշխարհագրական դրից Անի կայ ընդ 40° 30′ Հ. լայնութեամբ. և ընդ 41° 14′ երկայնութեան Բարիզու, 'ի 1500 Զ. բարձրութեան յերեսաց ծովու: Բնական ամրութիւն և դիպան դիրք տեղւոյն, ըստ նախնեացն ախորժակաց, (անտի բարձր քարափունք Ախուրենի և աստի Ծաղկոցաց ձորոյն), խոժոռ քարաժայռք հարաւային անկեանն՝ զսպեալ անդնդովք, զորս ճշգրիտ իմն համառօտեալ ստորագրէ պատմիչ մեր Մատթէոս Ուռհայեցի, եթէ «Էր քաղաքն շուրջանակի քարակտուր, » և էր գետն Ախուրեան շրջապատ, բայց միայն 'ի մի » կողմն կայր տեղի ինչ դոյր՝ որպէս թէ նետընկէց մի». այսոքիկ ասեմ, ոչ վրիպեցան անշուշտ յամրախնդիր աչաց նախնեաց մերոց՝ 'ի կանուխ դարուց անտի. և անուն իսկ տեղւոյն՝ ըստ ձայնին և ըստ սղութեան՝ նշանակէ մեծ հնութիւն, զոր և անփոփոխ ամենայն ազգք կոչեն, Թուրքք և Պարսք՝ Անի آنى, Արաբք՝ Անա՛ آنا, Յոյնք Ἄνιον: Թուի ոչ միայն 'ի տեղի ապաւինի ընտրեալ, այլ և պաշտամանց՝ ըստ հեթանոսական կրօնից, որպէս և անուանակիցն իւր բերդ (որ և Կամախ) յԵկեղեաց գաւառի. յոր ուշ եդեալ քաղցր սրտիւն և բանիւք Շնորհալին՝ յերրեակ տառս անուանն՝ ասեմ, Երրորդութեան վերագրէ, ասելով.

« Գեղեցկանուն զարմանալի,
Որ երրակի տառիւ բերի
ՅԵրրորդութեանըն խորհրդի.
Որ միշտ 'ի քէն երկրպագի »:

Յայժ հաւանեալ եմ թէ Անահտայ կամ Նմանոյ դիցուհւոյ նուիրեալ էր զառաջինն: Ոչ գիտեմ այսու ինչ պատճառաւ եթէ այլով ստուգաբանութեամբ՝ ոմն 'ի Պատմչաց ասէ. «Քաղաքն Անի՝ որ կոչի Խնամք[1]»:

21. Թէպէտ և ոչ յիշի սա առ Արշակունեօք, այլ հուպ յետ նոցին 'ի կէս Ե դարու առ Վարդանամբք, որք և թափեցին զայն 'ի Պարսից, ընդ գլխաւորս ամրոցաց բնաշխարհիս մերոյ. և իբրև 'ի պարսպեալ վայրի՝ յետ ոչ բազմաց Ատրվշնասպ Մարզպան և ուրացեալքն 'ի Հայոց առ Վաշանաւ, զանգիտեալք 'ի սմանէ՝ զամ մի «երթեալ բանակէին մօտ 'ի պարիսպ բերդին՝ որ անուանեալ կոչի Անի», յորմէ ապա խոյս տուեալ անկան յԱրտաշատ[2]: Յետ այսր գրեաթէ ոչ ևս յիշի Անի[3] ցաւուրս հարստութեան Բագրատունեաց. բայց հաւանութեան է եթէ չէն էր տեղին, մանաւանդ եթէ ստուգիւ անդ իցէ ծնեալ Անանիայ Համարողի, 'ի վերջին կէս Է դարու, որ մերթ Շիրակացի կոչի և մերթ Անեցի, և առաջին գրագէտ է ընծայեալ մեզ 'ի Շիրակայ:

Աշոտ Մսակեր պետ Բագրատունեաց որ գանձագին արար 'ի Կամսարականաց զերկիր նոցա զԱրշարունիս և զՇիրակ, և զմասն մի սորա թափեաց զինու զօրութեամբ յԱրաբացւոց, առաջին յետ բազում դարուց նորոգող երևի ամրին Անոյ յեւս Ը դարու, ուր և հաստատէ զբնակութիւն իւր[4]. և աստանօր թուի 'ի կալն երբեմն յաղօթս՝ պաշարեալ 'ի Հագարացւոց, և ոչ խափանեալ «զխօսելն ընդ Աստուծոյ մինչև ցկատարումն, և ապա » ելեալ ընդդէմ նոցա՝ կոտրէր յերկուս զգլխաւորն, » որում անուն էր Լիպառոն Աբդլա, և հարկանէր արս » իբրև հինգհարիւր »: Յաջորդք նորա յառաջացեալք 'ի պատիւ իշխանապետութեան Հայոց՝ ընդարձակագոյն ընտրեցին ոստան, որպէս յիշեցաք, զՇիրակաւան և զԲագարան, այլ յամրութեան մի 'ի գլխաւոր շինից նոցին էր Անի. ուր Սմբատ Խոստովանող որդի Մսակերին, 'ի կէս Թ դարու, բնակեցոյց յապահովի զեղբօրորդիս իւր[5]. և թոռն սորա Սմբատ Ա արքայ հանդիպեցաւ մեծի ներքինապետին Արաբացւոց, «'ի պայմանս սիրոյ ընդ միմեանս բերեալք. և բազում պարգևս և պատիւս ընկալեալ 'ի նմանէ՝ գնայ ներքինապետն 'ի Փայտակարան » քաղաք[6] »: Նոյն դարձեալ արգել աստ 'ի դիպահոջ զԿոստանդին Թագաւոր Եգերաց: Յետ սակաւուց Հասան իշխան՝ զոր հազարապետ թագաւորութեանն կարգեալ էր Սմբատ Ա, մատնեաց զամրոցն 'ի ձեռս Ատրներսեհի, որոյ կողոպտեալ զամենայն կարասին՝ ելք և գնաց[7]: Ի սակս ամրութեանն և դիպողութեան, յաւել ևս ամրութիւն՝ յաջորդք նորա յետ կիսոյ Ժ դարու խորհեցան այսր հաստատել զաթոռ իւրեանց, որպէս և արարն Աշոտ-Գագիկ Գ, Ողորմածն, յամի 961, յորում և մեծահանդէս փառօք օծաւ թագաւոր. «և յայնմ աւուր, » ասէ Պատմիչն Ուռհայեցի, եղև ժողով աճագին մեծ » 'ի քաղաքն Անի, որ եղև յայժմու ժամանակիս թագաւորանիստ քաղաք Հայոց ». զորոյ նա ինքն յետ երկուց կամ երից ամաց նախ «զփոքր պարիսպ քաղաքին Անոյ շինեաց, և զամենայն Բրգունսն եկեղեցիս » յօրինեաց, 'ի ՆԺԳ (964) թուին[8] »: Փոքր պարիսպ իմա զներքինն. քանզի զարտաքինն և զմեծանիստ յետ մահուան նորա՝ իսկ և իսկ շինեաց որդի նորա Սմբատ Բ, որպէս աւանդէ ժամանակակիցն և ականատես Ասողիկ (Գ. ԺԱ). «Սա լիր արկեալ պարսպափակ առնէ (զառաջին) զպարիսպն Անւոյ, յԱխուրեան գետոյ մինչև » ցՁորն Ծաղկոցաց, կրով և վիմով մածուցեալ, մահարձանօք և աշտարակօք բրգացն բարձրաբերձ պարըսպեալ, բացագոյն քան զհին պարիսպն, յընդարձակութիւն քաղաքին. և մայրագերան դրամբք երկաթագամ » հաստահեղոյս բևեռապինդ ամրացուցեալ »: Երկայնութիւն զուգահեռական պարսպացն է իբրև 500 Զ. զոր Ուռհայեցին նետաձիգ մի կոչէ. այլ ներքին պարիսպն յառաջեալ 'ի Գլխձոր՝ չէ պակաս քան զ'700 Զ: Միջոց երկոցուն պարսպացն ուր 'ի հնումն էին և տեղիք բնա-

1 Վարդան, ԽԵ:
2 Ղազար Փարպեցի, ԿԷ:
3 Անստոյգ կամ աղաւաղեալ համարիմ գյիշատակարան Մնացորդաց գրոց՝ զոր Զաքարիա պատմիչ ընդօրինակէ, իբրու գրեալ յամի Տեառն 354 'ի Մանկիկ Գէորգէ Անեցւոյ. քանզի Թուականն Հայոց ասի անդ եդեալ 'ի Մովսիսէ կաթողիկոսէ, որ 'ի Ներսիսէ եդաւ. և Անի մայրաքաղաք կոչի!
4 Վարդան (ԽԱ), յիշելով զառաջումն Շիրակայ, յաւելու. «Շինէ զԿամախ, և բնակեցուցանէ 'ի նմա զընտանիս իւր». շփոթելով ընդ Անոյ Դարանաղեաց, որ կոչէր և Կամախ:
5 Վարդան, ԽԲ:
6 Յովհաննէս կաթողիկոս:
7 Յովհաննէս կաթողիկոս:
8 Վարդան, ԽԸ:

կութեան պահապանաց, ուրեք իբրև հինգ Զ. է, ուրեք եօթն. ոմանք առեն քան զայլ, այլ չգիտեմ որքան է զայլ նոյին: Նրկոքին ևս պարիսպքդ և դրունքդ նորոգեալք բազում անգամ յընթացս երկուց դարուց, և դարձեալ բռնաբարեալք, տակաւին փոքր 'ի շատէ կանգուն մնալով՝ հրաւիրեն զամենայն տեսողս 'ի մուտս. այլ վասն աղէտալի լքման քաղաքին, ողորմատեսիլ մնացորդացն, և անմարդաձայն լռութեանն, պատշաճագոյն ևս է սմա քան կամարադրան խօշունի վերտառութիւն Տանդէական սեմոց սանդարամետացն [1].

« Ընդ իս են երթք ի քաղաք անդրր տրտմագին...
Ընդ իս են երթք յամբոխութիւն վայրավատին...
Որ մտանէքդ՝ ի բաց թողէք ըղձյս բնաւին »:

Նւ արդարև ուղևորք որ սովորաբար յարևմտից, 'ի Կարնոյ և 'ի Կարուց՝ գան յայս կոյս, անցեալք ընդ լեռնաբլուրս միջասահմանս Վանանդայ և Շիրակայ, մինչ յառաջելով հիացեալ ափշին ընդ կրկին յաւիտենական բնակառայց կոթողս Այրարատեան աշխարհիս, և ընդ հակահատակ բարաւորս մեծափառ դրան ազանց՝ յերթևեկ արևելից և մտից, ընդ լուսնախիտ քառակատար լեառնն Արագած, ասեմ, յահեկէ, և ընդ բարձրագոյնն սառնածոյլ Մասիս յաջմէ, յետ սակաւուց այլ յայլմէ լինին՝ միջանկատ երկոցուն նոցա տեսանելով զաննկարագրելին զայն հայկականն Երուսաղէմ կամ զՊալմիրա. զեւեէջոն այն չէն և աւեր կամարակապ աշտարակաց զանազանելոց 'ի ձև և 'ի չափ, ոմանք քառակուսի և շատք բոլորշի, է որ անկիւնաւոր և է որ տափարակ, եր-



12. Ներքին Պարիսպք Անւոյ, յարևմտակողմն:

կայարկք և եռայարկք, քարեղէն սանդղօք 'ի ներքուստ 'ի վեր ելանելեօք. ամենայնն նշանական, այլ և ոչ մի խապառ անաղարտ սկզբնական չափովն մնացեալ. նոյնպէս և որ զնոքօք փարին պարիսպքն, թերևս բարձրագոյնք երբեմն գոլով քան զներքինն, այլ այժմ ցածունք և սակաւաբրգունք, (զի բրգունք կամ բուրջն և բրջներ կոչին յարձանսն և 'ի գիրս՝ աշտարակքն), և հեռիք են յիրերաց իբրև 10 կամ 15 կամ 20 Զ. և աւելի ևս. և համօրէն և ոքս և պարիսպքն՝ բազում այն է զի դեղնորակ և դուն ուրեք սևագոյն կոփածոյ երկթզաշափ քառակուսի քարամբք են հիւսեալ, և սևաշար խաչաձևք 'ի նոսին անթիւք, ուրեք ուրեք ունելով ագուցիկ քառակուսի տախտակս վիմեղէնս սևաւ կամ սպիտակ, և 'ի վերայ նոցին կամ առ երի դրանցն՝ ցանկալի արձանագիրք անաղարտք, թէ և անշուշտ սակաւք 'ի բազմաց. ընդ որս անհետացեալ են և թագաւորացն շինողաց յիշատակարանք, մանաւանդ որք յարտաքին 'ի մեծի պարսպին էին. զի իբր յառաջամարտիկ գոլով թշնամեաց՝ բազում հարուածս ընկալեալ և առաւել քայքայեալ են ոքս, և աշտարակք սակաւաթիւք մնան, իբրև երկոտասան. Իսկ ներքնոյն աւելի քան զերեսուն երևին: — Ներքինս այս պարիսպ յարևելից կուսէ երկայնեալ ձգէր ընդ բոլոր-

1 Մուրաւիեֆ Ռուս տեղաքնին յամի 1846 'ի ճահ կշռեաց վերագրել զայս աշխարհաշխանոյթ բան քերդողահօրն իտալացւոց՝ 'ի վերայ կամարին խօշունի, համարելով զայն նախադուռն Անւոյ.

« Per me si va nella città dolente ; . . .
» Per me si va tra la perduta gente ; . . .
» Lasciate ogni speranza, voi che entrate ».

դակ երկայնութիւն Գայլեձորոյ ցխառնուրդ Նորին յԱխուրեանն. յետ որոյ բարձր քարափունք անդնդախոր գետոյս չունէին պէտս ամրութեան. որպէս և ոչ յարևմտից՝ եզերք Ծաղկոցաձորոյն, թէպէտ նշմարին և 'ի նոսին իսկ հետք քաղաքորմոց, որպէս և յանկեան անդ հարաւակողմանն: Ցարդ երևին մնացուածք կրկին պարսպաց և յարևելակողմանն մինչև 'ի Ս. Գրիգորի Լուսաւորչի վանս. Թուեցաւ ոմանց թէ և եռապարիսպ լեալ իցէ Անի, զի երևին ուղղաձիգ հետք ինչ հիմանց հեռագոյն 'ի ներքին պարսպէն քան սա յարտաքնոյն. այլ մարթ է այդմ և բնակարան կամ զօրանիստ լինել: Խորանլայն բոլորէր անդր քան զարտաքին պարիսպն, որոյ արդ հազիւ նշմարին հետք, զի աւերակօք լցեալ է. բայց և 'ի կէս ԺԻ դարու ետես Դաւեռնիէ զբարձր ամբարտակս Նորին, և ճահճային առնէր զվայրն. յորոյ վերայ երբեմն լաստափայտս արկեալ Ալփ-Ասլանայ մատուցանէր ըզզօրսն 'ի կռիւ՝ 'ի պաշարման քաղաքիս, ինքն առաջին եղեալ խանդարող պարսպացն, յամի յորում բռնանդակէր դար մի յԱշոտոյ հիմնարկութենէն (964-1064). մինչ տակաւ ամօք յառաջ յետ բարձման թագաւորացն Հայոց՝ Արօն Մագիստրոս Պահլաւունի բարձրացուցեալ էր « բաւանդակ զպարիսպ սորին կարկառակոյտ արձա»նօք և հաստահեղոյս ամրութեամբ », որպէս և արձանագրէն: Այլքան չէնք մնացեալք և բազում անգամ պաշարմունք քաղաքին՝ յայտ առնեն աներկբայ՝ զի յոյժ ամուր էր քաղաքն և մարթ էր անառիկ կոչել[1]:

22. Երկու ևեթ դրունք են արտաքին պարսպին, երեք ներքնոյն 'ի ճակատու անդ քաղաքին, որ է հիւսիսակողմն. որոց միջինն մեծագոյն և Ուռագ դուռն կոչելի՝ ոչ կչիռ հանդէպ այլ փոքր մի յարևմտից կոյ արտաքնոյ արևմտեան դրանն. նոյնպէս և որ յաջմէ խրմէ (յՆելից՝) փոքր մի յարևմտից հանդիպոյ արևելեան արտաքին դրանն. այսպէս և աշտարակք երկոցուն պարսպացն չեն դէմ ընդ դէմ. են և 'ի կողմնական թևս ներքնապարըսպին գէթ մի մի դրունք. այսինքն դուռն մի յարևելից հիւսիսոյ՝ որ հանէ 'ի Գայլեձորն, և վասն այնորիկ Գլիձորի դուռն կոչի յարձանս. և միւս՝ յարևմտից հիւսիսոյ, այն է Ծաղկոցի դուռն, որ լոկ Ջրոյ դուռն գրի յարձանս. երևին հետք դրանց և յանպարիսպ արդ կողմանս քաղաքին, յարևմուտս, յարևելս և յայտնագոյն ևս 'ի հարաւ մերձ 'ի կաթողիկէն և 'ի կամուրջն, վասն որոյ սա յայժմեայցս Կամրջադուռն կոչի, որպէս և մին Երևանայ դուռն, որ է Դուռնայ դուռն ըստ Նախնեաց: — Մի 'ի ներքին դրանց (հիւսիսայնոց) կոչէր Կարուց դուռն, զի ընդ այն տանէր ճանապարհն 'ի Կարս, և 'ի դէպ է արևմտագունին լինել. իսկ Դուռնայ դուռնն՝ Թուի արևելեանն: Յարձանս Հոռոմոսի վանաց յիշի և Խզաձորի դուռն (Այգեձոր), որ իցէ թերևս արևմտակողմանն դուռըն. զի է յայնմ կողման ձորակ մի խառնեալ 'ի մեծ Ջորն Ծաղկոցաց, զոր կտրէ և արդ ճանապարհն որ տանի 'ի Պայէզիտ: Դարձեալ, յիշին յարձանագիրս և այլ դրունք, (որպէս Թուի 'ի կողմանս քաղաքին և ոչ 'ի ճակատուն), Գետակկրոցի խանապարի դուռն, և Տիգրանեանց դուռն: Յարձանագրի ուրեմն Բագնայր գեղջ



13. Բրգունք յարևելակողմն Պարսպին:

1 Նկատեալ և զայժմու մնացորդսն՝ ուշիմ ճանապարհագիրն անգղիացի Քէր-Բորդըր, զայն խմաստասիրէ. « The military power of the city, as far as fortifications could render it formidable, must have been very great ». — KER-PORTER. I. 75.

յիշի և Գաղու դուռն, և տալ կարծել ոչ հաստատակաց մուտք և ելք, այլ թերևս պահ զգուշութեան ժամանակի մարտից կամ վտանգաց։ Ի հաստարակի շինուածք դրանցդ ամրակառոյցք են, կամարաձևք, երկու և երեք զոյգ կամարօք, այլ անզարդք և պարզք։ Արևմտեան դուռն Ներքին պարսպին, այն է Կարուց դուռն, իբրև չորս Զ. լայնութեամբ, գրեաթէ խապառ խցեալ է դերբիւք։

Որպէս չէք թուական շինութեան պարսպացն, և ոչ դրանցն, թէպէտ և գոն 'ի վերայ և առընթեր նոցին արձանագրութիւնք, բայց ոչ հնագոյնք, և ոչ զշինութեանցն, այլ յաւէտ ղմաքսից և զբաժից ազատութեանց և զնմանեաց։ Այսպիսի է արձանն յերեք չափ երկայն վիմի, 'ի վերայ մեծ կամ Աւագ դրանն, որոյ լայնութիւն է իբրև եօթն չափ, որպէս թուի յելս ԺԱ. դարու կամ յառաջին կէս ԺԲ՟, զի զոյգ յիշին 'ի նմին առանց անուան՝ և՛ Վրաց թագաւորն և՛ փաթշահն, որ է Պարսից, ընդ որոյ գերագոյն տէրութեամբ՝ Շուարեան կամ Մանուչեան տոհմն իշխէր Անոյ, և ըստ սորին ձեռանէ Գրիգոր Աղայ և Յովհաննէս տեարք կամ պատրոնք քաղաքին. զի այսպէս կոչին Ներքին տեսուչք կամ հազարապետք քաղաքին. որք նորոգեն զայն, և ազատեն զքաղաքացիսն 'ի պէսպէս հարկաց և բաժից նշանակելոց յարձանին, որ է այս.

Գթութեամբն մարդասիրին եւ անմահ Բանին Աստուծոյ եւ վասն յերկար կենդանութեան արքայից արքային աստուածադիր փաթշահին եւ աստուածիմաստ իշխանաց իշխանին աշխարհաշէն եւ ի թագաւորութեան Վրաց աշխարհիս որ եղեւ մայրաքաղաք Անի խասինջու? ( ) եւ ի տէրութեան քաղաքիս աստուածասէր պատրոնացն Գրիգոր աղին եւ Յովաննիսի եւ յեպիսկոպոսութեան տէր Յօհաննիսի ողորմածն Աստուած հայեցաւ ի դժուարութիւն քաղաքիս եւ խորհուրդ բարի ծագեց ի սիրտս պարոնացն Գրի. և Յով. որ զքաղաքս մեր նորոգել չինեցին եւ զամենայն հարկապահանջութիւն բարձին[1] զմ . . . եւ զթաղաւ զհեծել զղափչուն զախորթամարն եւ զդռնագիրն ի բաժ ⊙ ի դաղմն եւ ի մուսայիկն դարձուցին եւ զաթուլին հարկն որ յետո ի չարաց դրած էր զկապալն յեպիսկոպոսէն բարձին և յառաջին սահմ . . .

Ի ներքոյ աշտարակին որ յաջմէ դրանդ կայ՝ ագուցեալ են յորմն երեք մեծամեծ կարմրաքար խաչվէմք գեղաքանդակք. իսկ յահեկէն՝ յետ աշտարակին զուգակցի հանդիպակողմանն, կայ բարձրաքանդակ առիւծ 'ի վէմ քառակուսի. և յառ երի նորա (յահեկէ) աշտարակին ծաղկազարդ քուֆի արաբիկ գրով՝ այս բան.



14. Արաբիկ արձանագիր Մանուչէի 'ի բուրգն Պարսպին Անւոյ։

« Յանուն Աստուծոյ գթածին և ողորմածին. շինեցաւ աշտարակս այս բոլորչի հրամանաւ մեծին և յաղթողին » և քաջախնամ վարչին՝ հօրն քաջաց, Մանուչէի որդւոյ Շուարայ », — որ է Ապուսուար ըստ Հայոց, որդի

1 Զպէսպէս հարկացս՝ զծանօթից և զանծանօթից՝ լեցի յիշատակ յետոյ 'ի ծանօթութեան 35 համարոյ։

փառլունի ամիրային Գանձակայ, այն որ « առնու զԱնի » յԱլփասլանայ, տալով նմա ոսկիակուռ նկարս ծաղ- » կոցի. և առաքէ տէր աւեր քաղաքին զՄանուչէ Թոռն » իւր՝ յոյժ տղայ. որ իբրև զարգացաւ՝ յաւելոյր ՚ի պա- » րիսպն Անւոյ և յամրութիւնս նորա. և ած ՚ի քաղաքն » զամենայն մնացեալ իշխանսն. որպէս և մեծաւ հան- » դիսիւ ելեալ ընդ առաջ մուծանէր ՚ի ներքս՝ զԳրիգոր » զորդին Վասակայ, զԹոռն Ապիրատին ». և սա ինքն է հաւանօրէն Պատրոնն Անւոյ կարգեալ ՚ի նմանէ։

Ի վերայ արևելեան դրան ճակատու քաղաքին՝ որ յաջմէ կայ միջնոյդ յիշեցելոյ՝ չիք արձանագիր, այլ յաշտարակին՝ որ յաջմէն՝ ՚ի խաչվիմի միում, այսպէս.

## ԶՍարգիս յիշեցէք.

և ՚ի ներքոյ խաչին դարձեալ կրկնի անուն կանգնողին.

## Սուրբ Սարգիս աւգնէ Սարգսի Գէորգա ամէն.

որ և ՚ի ստորև խաչին յուրոյն սպիտակ վիմի արձանագրէ Թուականաւ 1215 ամի [1]։ Ի ստորոտ աշտարակին առ գետնաւ փորեալ է խորշ մի քանդակազարդ, յորում թերևս խաչ կամ արձան կամ պատկեր ինչ կայր։ — Հնագոյն յայտնի Թուականաւ (1160 ամի) աշտարակ կայ ՚ի գլուխ քարափան Ծաղկոցաձորոյ, որ և արևմտագոյն է բնաւից, ունելով զայս արձանագիր.

## Ի ՈԹ Թւ. ի Թագաւորութեանն փատլնոյ, ի հայրապետութեանն տէր Բարսղի ես Աբրահամ շինեցի զբուրջս ի հալալ արդեանց իմոց յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց. որք կարդայք զիս եւ ծնողս իմ եւ զԱռաքեալ վարդապետ յաղաւթս յիշեսջիք.

փառլունդ յիշեալ է Թոռն Մանուչէի Թոռին առաջնոյն փառլընոյ։

Աստի դարձեալ ընդ արևելս հիւսիսոյ խաղալով՝ յայլում աշտարակի կայ արձանագիր 1215 Թուականաւ, Մխիթարչի Գանձակեցւոյ, ՚ի տէրութեան Շահնշահի որդւոյ մեծին Զաքարիայի [2]։ Անդրագոյն յայլում՝ յամի 1208, ՚ի տէրութեան նորին Զաքարէի ՚ի Սարգսէ ումեմնէ արձանագրեալ [3]։ Իսկ յաշտարակի որ հանդէպ խցելոյ դրան արտաքին պարսպին՝ ինքն Մեծն Զաքարէ արձանագրէ այսպէս.

## Ի ՈԿԱ. Զաւրութեամբն Քրիստոսի ես Մանդատորթա խուցէս Ամիր սպասալար շահնշահի Զաքարիա շինեցի զարձանս վասն արեւշատութեան մեզ եւ որդւոց իմոց։

Ցելից սորա ՚ի ստորոտս բարձր աշտարակի միում ՚ի վերայ քարանց որմոցն կայ հնագոյն արձանագիր անԹուական.

## Աշոտոյ իշխանաց իշխանի է.

Աշոտ ոմն իշխանաց իշխան ծանուցեալ է յամի 1002. նոյնպէս կոչէր և եղբայր Յովհաննու Թագաւորի՝ մինչև առեալ և ինքն զարքայական կոչումն։ — Անդրագոյն ընդ արևելս այլ աշտարակ 1216 Թուականաւ՝ կորուսեալ է զանուն կանգնողին ՚ի խանգարմանէ [4]։ — Անդրագոյն քան զսա յետ այլոց կան աշտարակք երկու ցածունք, (հնգից այլ աշտարակաց յերկոցուն միջի գոլով), և ունին

1 Տես զարձանդ նմանահան ձեռագրութեամբ յէջ 42, որպ այս է ընթերցուած.

« Ի Թուիս ՈԿԴ. կամաւք ողորմածին Քրիստոսի ի պետութեանս Մանդատորթա խուցէս Ամիր սպասալար Շահնշահ Զաքարիայի որդ... Շահնշահ Սարգսի եւ Սարգիս որդի Սամուէլի ծառայ Քրիստոսի ի հալալ վաստակոց իմոց շինեցի զարձանս ի յիշատակ ինձ եւ ծնողաց եւ զաւակաց մերոց. որք կարդայք յիշեցէք զմեզ ի Քրիստոս »։

2 Ի Թւ. ՈԿԴ. Շնորհիւն Քրիստոսի ի տէրութեանս Մանդատորթա խուցէս Ամիր սպասալար Շահնշահ Սարգսի ես Մխիթարիչս Գանձակեցի ծառայ Քրիստոսի ի յարդար վաստակոց Աբրահամու եղբաւր իմոյ շինեցի զարծանս վասն փրկութեան հոգւո նորա եւ յիշատակի մեզ եւ ծնողաց մերոց. որք կարդայք յիշեցէք զԱբրահամ ի Քրիստոս Յիսուս։

3 Որ խանգարեալ գոլով այսքան ինչ վերծանի.

Ի Թւ. ՈԾԷ. Շնորհիւն Աստուծոյ ի տէրութեան Մանդատորթա խուցէս... պասալար Շահնշահ Զաքարի ես Սարգ...որդ.. ծառա Քրիստոսի շի... անս վասն փրկութեան... ընդ նմին եւ զաշխատ։

4 Ի ՈԿԵ Թուը. Շնորհիւն Քրիստոսի ի տէրութեանս Մանդատորթա խուցէս Ամիր սպասալար Շահ.... որք կարդայք աղաչեմք զմեզ յիշեցէք ի Քրիստոս Յիսուս տէր մեր. Սիմէոն։

15: Արձանագիր Բոլորգ Սարգսի որդւոյ Սանուկին: (Տես յէջ 41):

քանդակս քարեղէնս մէն երկուց վիշապաց, որք 'ի կողաց պարսպին սկսեալ պատին զնոքօք, և գլուխ առ գլուխ մերձենան, ունելով 'ի մէջ մի զոյգն գլուխ եղին, մեւսըն' այլ ինչ զարդ. յերկուսին և նոյն բան է, արձանագրեալ 'ի Շանուշէ ումեմնէ ժրագլուխ տիկնոջէ, յամի 1218, այսպէս.

**Ի Թվիս. ՈԿԷ.՝.** *կամաւքն Աստուծոյ ես Շանուշս կենակից Խաչերեսին անդարձով Խաչերեսին շինեցի զբուրջս յիշատակ մեզ։*

*Սոցին դուստր Թուի Մամ խաթուն, որ 'ի մերձաւոր յարեւելեան ('ի Գայլեձոր կոյս) աշտարակին արձանագրէ՝ ամաւ զկնի, և խանգարեալ է ուրեք ուրեք [1]։ Անդրագոյն եւ 'ի հարաւ արեւելից գնալով՝ նշմարի ջնջեալ Թուականաւ արձանագիր Լուսոտի որդւոյ Գրիգորի, յաւուրս տէրութեան Շահնշահի, 'ի միջոցի 1215–30 ամաց.*

**Թու...** *կամաւն Աստուծոյ ես Լուսոտս որդի Գրիգորոյ շինեցի զարձանս յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց եւ յարեւշատութիւն Շահընշահի սպարապետին ի յամիրաութեան Վահրամա կատարեցաւ բուրջս.* **Տէր Աստուած** *ողորմեա Լուսոտին. ամէն.*

*Հուսկ բնաւից 'ի հարաւային արեւելեան սպառուածի անդ պարսպացն, աշտարակ մի դարձեալ զՄեծին Զաքարիայի ընծայէ զյիշատակ, յամի 1208, այսու ձեւակերպութեամբ գրեալ.*

**16.** *Արձանագիր Մեծին Զաքարիայ 'ի Բուրգն արեւելեան [2]։*

[1] Ի ՈԿԸ Թւ. Շնորհիւն Քրիստոսի ես Մամ խաթունս դուստր խաչերեսին Լաւռեցո անժամ ի Քրիստոս գնացի յիմ հաւրն ի հո... ամին որ ինչ տուեալ էք.... անյիշատակ էի շինեցի զբուրջնս յիշատակ ինձ... աղաչեմ որ կարդայք մեզ Թող...։

[2] « Ի ՈԾԷ Թու. Շնորհիւն Քրիստոսի ես Մանդատորթս » խուցես Աւթր ստատոլոր Շահնշահ Զաքարիա շինեցի զարձանս » եւ զպարիսպս վասն յիշատակի մեզ եւ ծնողաց մերոց »։

Ոչ վասն արեւելեան մասինս միայն որ 'ի Գայլեձոր՝ զչինութիւնս թուի ասել, զի և 'ի հիւսիսակողմանն տեսան ոչ սակաւ բրգունք շինեալք 'ի ժամանակի տէրութեան Նորա և որդւոյ Նորին Շահնշահի. և որպէս արձանքն և պատմիչք նշանակեն, յետ առաջնոյ հիմնարկութեանն՝ երկիցս և երիցս ըստ մասին նորոգեալ և ըստ մասին նոր շինեալ են պարիսպքն և աշտարակք, յընթացս երկուց և կէս դարուց. զնոյն առաւելան և եկեղեցիքն վկայեն և ցուցանեն, հնութիւնս և նորութիւնս իբրու երեք և կէս դարուք զանազանեալս. զի են որ զվերջին քառորդի Ժ դարու ունին թուականս, և են որ զկիսոյ ԺԴ դարու. ըստ այսմ հարկ էր լինել և հատաբակաց շինուածոց քաղաքին, որք գրեա թէ 'ի սպառ աւերեալք են արդ, և արձանք յիշատակաց նոցին անհետացեալ: Ժամանակի, և առաւել քան զայն՝ ոխերիմ բռնութեան հարուածք ակն յանդիման երևին. վրէժք՝ որք զի ընդ մարդկան յաւէտ մախային 'քան թէ ընդ Աստուծոյ, խնայեալ են փոքր 'ի շատէ սրբազանիցն շինուածոց, այլ ոչ և բնակարանացն. զի թէպէտ սոցա յետնոցս սովոր է ոչ ամրակառոյցս լինել իբրև զեկեղեցիսն, սակայն էին էին և ապարանք և այլ քաղաքական պիտոյից շինուածք, որոց վայել էր ոչ զաղփաղփունս լինել. և սակայն չմնայ և ոչ մի ձողաչափ անգամ կանգուն, բաց 'ի հաստակառոյց ապարանից անտի Թագաւորացն: Վասն որոյ որ գամ մի զննեալ և սխրացեալ ընդ պարիսպսն և ընդ աշտարակս՝ նովին կիսամամնեայ կենդանութեան յուսով դիմէ ընդ դուռն քաղաքին 'ի ներքս, սոսկումն ընդ ոսկերսն գնայ և սարսռի, ընդ բովանդակ երեսս կամ յատակ քաղաքին ոչ տեսանելով և ոչ զհետս բնակութեանցն, այլ առհասարակ կոյտս կոյտս քայքայեալ և մանրեալ նշխարաց շինից, որպէս զծով մի աւերակաց. յորոց միջոյ հանգոյն նաւուց կիսաբեկք ոմանք և հազիւ այլք բարեբաղդիկք պրծեալք, ամբառնան քանիւ չափ չէնք սրբազանք, և երկու բարձր աշտարակք, որպէս կոթողք նշաւակի և մահարձանք անբաւ մեռելութեանց. և յոչ կամս իսկ զգայ, զի արդարև Դուռնն ընդ որ եմուտ՝ ահա երբեմն եհան 'ի քաղաքն տրտմազգեաց, և յանկայուն կայս ժողովրդեան վայրավատին կորուսելոյ: Այլ իցէ՞ հարկ անհրաժեշտ թողուլ քանել զամենայն յոյս 'ի բաց: . . .

Բայց արդ մինչ դեռ մրցանք են երկդիմի կրից, յիշատակաց անցելոցն և յուսով հանդերձելոց, քաղցրացի մեզ աստանօր 'ի սեամս ներքին դրան Անւոյ՝ յեղյեղել 'ի դիմաց նմանակցին՝ տարաբաղդիկն Նդեսիոյ, զողբերգ Շնորհալւոյ. որոյ մաքրութիւն սրտի և լեզուի՝ հանդերձ եօթնդարեան հնութեամբ՝ լցցէ զթերին վերասլաց թռչանաց մտաց, որպէս պահանջէր արդեաք տեղիս այս.

« Այլ և ըղքեզ յոյս հրաւիրեմ
Արևելեան քաղաքդ Անի.
Կըցորդ իմոյս լինել ձայնի
Եւ ըսփոփիչ տարակուսի:
Քանզի և դու երբեմն էիր
Վայելչական հարսն 'ի քօղի,
Մերձաւորաց յոյս ցանկալի,
Հեռաւորաց փափաքելի:
Շինեալ եղեր տուն աղքունի
Ցընտրեալ նահանգըդ Շիրայի,
Թագաւորաց Բագրատունի
Որ 'ի ցեղէն Իսրայէլի: . .
Յորում էիր ժամանակի
Բերկրեալ ուրախ և ցընծալի,
Որպէս այգի ողկուզալի
Կամ ձիթենի պըտղով 'ի լի:
Մանկունըք քո զուարթալի
Նըման նորոգ բուրաստանի.
Դըստերըք քո պաճուճալի
Յերգ և քընար միշտ 'ի խաղի:
Իսկ թագաւոր քո պանծալի
Նըստեալ յաթոռ թագն 'ի գըլխի,
Եւ զօրականքն աստի և անտի
Կալով 'ի սպաս իւր հրամանի:
Նաև որդիքըն Սիօնի
Նըման դասուցըն հրեղինի՝
Ցարմարապէս յօրինուածով
Կաթողիկէ յեկեղեցի.
Այն որ հանգէտ և հաւասար
Վերնակառոյցըն խորանի:
Հայրապետք եպիսկոպոսք
Եւ քահանայք ու այլք ըստ կարգի,
Իւրաքանչիւր յիւրում դասի
Պատշաճաւոր յայն տաճարի:
Զոր թէ ասել հարկ լինիցի՝
Է դըժուարին ու անկարելի,
Եւ անօգուտ յայժմուս բերի,
Յորոց ոչ է մի 'ի միջի:
Քանզի անցին ըստ երազի
Որպէս ծաղիկք ամարանի,
Ըստ յորդութեան յորդ վըտակի
Գարնանաբեր հեղեղատի: . .
Սուրն անողորմ անօրինի
Որ մերս արեան է 'ի սովի՝
Ոչ է յագեալ և ոչ յագի,
Մինչև 'ի գալ կատարածի:
Նոյն նա եհաս ուրեմն 'ի քեզ,
Որպէս յիս՝ յայն ժամանակի.
Հընձեաց զօրայն յանդաստանի,
Կանաչագոյն որ 'ի հասկի. . .
Եհեղ զարիւն սրբոց յերկրի,
Հոսեաց նըման ջըրոյ գետի. . .
Արար դիակն անթըւելի
Անթաղ մեռեալ գէշ գազանի. . .
Եւ է ասելն անկարելի
Որ քեզ հասին յայնըմ վայրի՝
Բոլոր ամէն մասունք չարի:
Վասն այնորիկ, ո՜վ անձկալի,
Որ ես ներհուն այսր ամենի,
Ի քոյն յայնժամ խիստ աղետի՝
Ծանիր և զիմս այլ կականի.
Եւ որպէս փոքր տարակուսի՝
Լեր տըրտմակից ինձ յայս վայրի »:

23. Առ 'ի ճանաչել և քննել զՄնացորդս մեծայիշատակ քաղաքին՝ անկ էր նախ յուզել յստակել զյստակն, և որոնել զհետս անցուդարձի տեղեաց և զհրապարակաց, որով և շինուածոցն դիրք ճշգրտէին. այլ զի չև ևս է արարեալ զայդ, և հազիւ երևին հետք ինչ փողոցաց՝ 'ի հասարակի ուղղաձիգք և անձուկք, ըստ նշմարելոյ առաջին քննողին՝ իբրև երեք կամ չորք Զափ լայն, յորս զալք զարուց զհետ կուտեալ են աւերակս, փոշի և աղտ. զ'առ 'ի նախնի արձանաց անուանեալ փողոցս ինչ յիշեցուք, Թողեալ հետահանից՝ ճշգրտել զնոսին և զայլսն։ Մին՝ որ և գլխաւորն Թուի՝ կոչի Բուռն փողոց, և որպէս կարծեմ ծայր 'ի ծայրէ անցանէր կորէր զքաղաքն. ըստ նմին Թուին և այլք լինել ուղղաձիգ փողոցք. քանզի և յոլովք 'ի ծանուցեալ հասարակաց շինուածոց՝ գտանին 'ի վերայ ուղիղ գծի՝ զոր Թէ ձգեսցէ ոք 'ի նշանաւոր կէտէ կամ 'ի կողմանէ միոյ ցմիւս. զոր օրինակ յարևելեան ներքին դրանէն գրեաԹէ ուղղակի ընդ հարաւ ձգելով յԱխուրեան՝ ժամանէ 'ի կամուրջ մի, և ճշգրիտ 'ի վերայ նոյն գծի կայ գլխաւորն շինուածոց՝ կաԹուղիկէն. — յարևելից՝ յանկենէ անտի 'ի կցուածոյ Գայլեձորոյ ընդ Ախուրենի՝ ձգեալ ուղղակի, կամ հաւասարանկիւն հատանելով զառաջինն, 'ի վերայ այսր երկրորդիս և երկարագունի՝ հանդիպին ճշգրիտ Ս. Փրկիչ նշանաւոր եկեղեցին, Տիրամօր եկեղեցին, մեծ աշտարակն 'ի կենդրոն քաղաքին, և հետք անծանօԹ շինուածոյ միոյ 'ի քարափն Ծաղկոցաձորոյ, որում հուպ կայ Ս. Գրիգոր Ապուղամրենց եկեղեցի։ Ի կիսախից դրանէ միոյ որ 'ի Հր. Դրան Ծաղկոցաձորոյ 'ի յիշեալ աշտարակն կենդրոնական, գիծն անցանէ շեշտ ընդ մեծ եկեղեցին Ս. Առաքելոց, և մերձենայ 'ի կաԹողիկէն։ Յաւագ դրանէ ձգելով յաշտարակն այն՝ ուղղակի հասանէ 'ի մզկիԹն մերձ 'ի ձորն Ախուրենոյ, և նովին ուղղուԹեամբ ընդ հարաւ ժամանէ 'ի Միջնաբերդն։ Յարևելեան (խցեալ) դրանէ ցայլ դուռն խցեալ յեզր Ծաղկաձորոյ 'ի Հր. Ս. Գրիգորի Ապուղամրենց՝ գիծն անցանէ ուղղակի ընդ աշտարակն միջակայ։ Այսպէս և յարքունի ապարանից՝ 'ի Մ. Հ. յԵ. Հր. ձգեալ գիծ՝ անցանէ ընդ աշտարակն, ընդ կաԹողիկէն, և ժամանէ 'ի Ս. Գրիգոր Լուսաւորչի վանս։ Իսկ զուգահեռական իմն արևմտեան կողման քաղաքին ձգելով՝ յապարանիցն ցԱխուրեան՝ անցանէ գիծն ընդ Ս. Առաքեալ և ընդ Տիրամօր եկեղեցիս, և մերձի 'ի Ս. Փրկիչ։ — Յիշին յարձանս և այլ փողոցք. որպէս, Վիրի փողոց, զոր կարծեմ 'ի Հ. Ե. կողմն քաղաքին. Դարբնոյ փողոց, մերձ 'ի Ս. Գրիգոր եկեղեցի յարևմտակողմն քաղաքին, Մառած-փողոց, փողոց-կոնր։ Դարձեալ և այլք արտաքոյ զուխակ անուամբ յիշին, և Թուին փոքր փողոցք, որպէս Ս. Առաքելոց զուխակ, յայտ է Թէ մերձ



17. Կամուրջ 'ի վերայ Ախուրեան գետոյ յԱնի։

յայն անուն եկեղեցին 'ի Հ. Մ. կողմն քաղաքին. Հատեցնոց զուխակ. Ծառագուխակ, ըստ խառն դրից։ — Ընդ փողոցս յիշելի են և կամուրջք, յորոց երկոցուն երևին ցարդ տեղիք, և միոյն տակաւին Մէան և գլուխք երկուստեք գետոյն, որպէս երևի 'ի պատկերիդ, 'ի հարաւոյ կաԹողիկէին, և Թուի անշուշտ միակամար։ Ոմանք 'ի կամրջացն Թուին յարկածածուկք, և Թերևս Խանապար[1] կոչեցեալքն յարձանս. որպէս, Գետակկրոցի խանապար, Պապենց խանապար, « Խանապարի ներքին դեհն երկու հուծրա » (դարան, խորշ). եԹէ չիցեն դոքա շուկայք, զի յիշի ուրեք և Խանապար կուղպակնիով։ Թողեալ առայժմ և զայլ ինչ քաղաքական շինից յիշատակս որ ըստ արձանագրուԹեանց, մատիցուք յերևելիսն ցարդ աչաց։

[1] Թերևս ըստ خنیور ԽԷՆԷՎԷՐ։ պարսիկ բառ, որ արդարև կամուրջ ինչ նշանակէ, Թէպէտ և ըստ կրօնական իմաստից։



18. Որմն և դուռն Ապարանից։

Մտեալ ընդ արեւմտեան հիւսիսային դուռն պարըսպացն (որ պատշաճի Կարուց), և հայեցեալ յաջակողմն՝ որ է Ծաղկոցաձորն, անընդմէջ յանկեան անդ պարըսպացն և ձորափին՝ առաջին շինուած ըստ մերձաւորութեան, ըստ մեծութեան և ըստ գլխաւորութեան՝ յանդիման լինի Ապարանքն կամ Արքունիք. զի մեծութիւն և ամրութիւն նորին՝ զոր չկարացին խապառ ջնջել այնքան հարուածք ոսոխաց, վկայեն զայն Թագաւորաց և տեարց Անւոյ բնակարան՝ և ոչ Պահլաւունի իշխանաց, որպէս կարծեցին ոմանք յօտարազգի բանասիրաց. արդարև յարքայավայել դիրս կայ յահեղատես բարձրաւանդակի՝ կարկառեալ ՚ի Ձորն Ծաղկոցի, և յանդրադոյն ՚ի դաշտն, որպէս թէ յապահովել ՚ի թիկանց զքաղաքն՝ դէտ կալով թշնամեաց ՚ի նոյն յարձակողաց, մերձ ունելով զզունդս պահապանաց և զօրաց՝ ՚ի միջոցս կրկին պարսպացն զետեղեալս և յաշտարակս նոցին: Հաստա-



19. Դուռն Ապարանից և պատուհան:

կառոյց զանդուած շինուածոյն թուի արդարացուցանել զկարծիս ռամկին՝ որ քաղաք իմն փոքր ասացին զարքունիսդ. չեն այնպէս ընդարձակք որպէս համբաւեն զրոյցք, այլ սակայն և ոչ փոքր և դոյզն շինուած. զի համարի իբր 75 Չ. ընդ երկայնն և ընդ լայն հաւասար. բայց զի նշմարին հետք այլ ևս յարակից շինուածոց, թուեցաւ ոմանց հինգ վայրկենի գնացից չափ առնել զշրջապատ ապարանիցն. հարաւային պարիսպքն կործանեալք են: Դուռնն կայ յարևելից կուսէ գեղեցիկ քանդակօք դրուագեալ յեզերսն և ՚ի բարաւորն, մանր զարդուք և խաչաձևօք ՚ի սևոյ և ՚ի դեղին քարանց՝ որ ագուցեալ են ՚ի քարինս որմոցն. և է հուպ յեզր ձորոյն, յորոյ ՚ի յատակաց ամբառնան ՚ի քարաժայռս՝ արևմտեան և հիւսիսային որմունքն բարձունք քան զպարիսպսն: Դուռն մի ևս սակաւ

ինչ նեղագոյն կայ 'ի վերայ այսր դրան, այլազան ձեւոյ քառակուսի քարաշարին, և որանկիւն կամարաւ. յայտ է թէ վերին կամ միջին դաւիկանին էր սա դուռն, կամ պատշգամբ հայելի։ Ցերկուս տրոհեալ երևի արքունիքդ, 'ի հիւսիսային և յարևմտեան մասունս. առաջնոյն որմունք միայն կանգուն կան այժմ, այլն ամենայն աւերեալ քանդեալ. իսկ երկրորդին՝ յոր մուծանէ դուռնն այն, կան և որմունք սենեկացն, ոչ բազմաթիւք և ընդարձակք. քարինք նոցին երկթզաչափ քառակուսիք, դեղնագոյնք նման պարսպացն. այլ՝ զարդ կամ նկար ամենեւին չերևի 'ի նոսին. չերևին և պատուհանք, բաց 'ի միոյ միայնոյ որ հայի 'ի Ծաղկոցաձորն. թուի թէ ընդ երդիս էին լուսանցոյցքն ըստ արևելեան տարազու։ Սակայն կարծեմ թէ 'ի սակաւ ամաց հետէ բազում աւերութիւնք լեալ են յապարանսդ. քանզի անգղիացի ճանապարհագիրն Քէր-Բորթըր, որ յամի 1817 զննեաց զվայրսն, ոչ միայն զարդս և քանդակս յիշէ 'ի պալատանդ, այլ և սխրանայ և անհաւելի խիստ ասէ զճարտարագործ



20. Դահլիճ արքունի Ապարանից։

քարանց զարդուցն զբազմազանութիւն և զճոխութիւն, և զնրբանկար միւսիոնս 'ի յատակս անթիւ սրահից պալատանն. վասն որոյ թուի թէ ձեղուանն փլուզեալ ծածկեալ է զվայելչութիւն շինուածոյն։ Ի միում սենեկաց արևելակողմանն՝ որոյ ձեղուն գմբեթայարկ է, սեաւ և կարմիր քարանց գեղեցիկ ծաղկաձև շարածով, կայ աւազան մեծ քարեղէն։ Աստի սանդուղք քարեղէնք իջուցանեն 'ի ներքնատուն, որ արդ շքեղագոյն և սքանչելի քան զվերնայարկն երևի. քանզի է տեսանել ընդ բովանդակ երկայնութիւն պալատանն յարևելից ընդ արևմուտ՝ կամարս ձգեալս 'ի վերայ որմասեանց, և իբր Ջափս երկու բացագոյն յորմոց պալատանն՝ այլ որմն ուղղաձիգ ածեալ՝ և զկամարսն 'ի խորանաձևս տրոհեալ. յորոց ոմանք չունին մուտս ընդ որմս այս, իսկ այլք ունին անձուկս՝ որք հանեն 'ի նրբափողոցս և 'ի ներքնատունս մթինս. և են ոմանց դրունք ցածունք և ոմանց ընդար-

ձակք և բարձունք։ Կամարակապ են և ներքնատունքդ կամ սենեակքդ ամենայն, ոմանք բարձր մինչև ցյատակ վերնատանն, և այլք խոնարհաձեղունք. բազում փլածք են և 'ի սոսին և յանցիկն որ տանի հանէ 'ի Ծաղկոցաձորն. այլ որմունքս այսոքիկ ստուարագոյնք են և մեծամեծ քարամբք շինեալ, զոր ձեռին բնութեամբ խանգարեալ է պարապորդ մարդկան 'ի խնդիր գանձուց, որպէս կարծեն նոքա լինել անդ. մանաւանդ զի և խորշք կամ դարանաձև խորք ինչ են յորմունսն։ Չիք արձանագիր յորմունս և 'ի բնաւ պալատանդ. այլ 'ի հիւսիսոյ կողմանէ արտաքուստ 'ի կատարս որմոյն կայր բարձրաքանդակ պատկեր զինուորաձև առն, որոյ գլուխ խորտակեալ էր. ամղանն ժամանէր ցծունկս, և գօտեաւ զապեալ զմէջն. 'ի միում ձեռին ունելով զպատկեր շինուածոյ՝ որպէս Թուի՝ պալատանս այսորիկ. և աւանդի լինել առնապատկեր Սմբատայ Բ Թագաւորի, զոր յամի իբրև 1845 հանեալ Ռուսաց տարան 'ի Պետրպուրկ[1]։

Ակնունելի է արժանայարգ ինչ իրաց յայտնութեան յապարանսդ արքունի, թէ յաջողեսցի խնամով բառնալ զփլածսն, բանալ զյատակսն և նշմարել զբաժանմունս կամ զմասունս նորին, զդահլիճսն, զսենեակսն, զգանձատունս, և այլն, որպէս վայել էր ճոխահարուստ Թագաւորացն այնոցիկ. նա և զգրատունս իմաստասէր պսակաւորացն, որպիսիք էին յետին իշխեցողքն Յովհաննէս-Սմբատ և Գագիկ Բ. յորոց գրոց 'ի գանձատանն պահելոց՝ եհաս բաղդիւ 'ի ձեռս մեր մասեան մի մեկնութեան Թղթոց Պօղոսի, գրեալ յամի 999. զորմէ և գեղեցիկ իմն ծանօթս տայ ժամանակակից ուսումնասէր այր, մեծրիմ Գրիգորի Մագիստրոսի՝ Սարգիս վարդապետ Սեւանեցի, գրելով 'ի վերջ մատենին յամին 1041, զայս ձև. (տես յէջ 50)։

24. Հպագոյն յապարանս յարևմտից կուսէ առ պարսպօք Ծաղկոցաձորոյն նշմարի մատուռն մի աւերակ փորեալ 'ի կարմրագոյն վիմի, առ նմին և այլ փոքրագոյն ևս մատուռն վիմափոր։ Որոց գրեաթէ 'ի հանդիպոյ յարևելակողմն ապարանիցն՝ առ քարափան վտակի միոյ խառնեցելոյ 'ի գետ Ծաղկաձորոյն՝ երևին մնացուածք այլոյ մեծագոյն եկեղեցւոյ իբր 13 Չ. երկայն, կիսով չափ լայն, քառակուսի ձևով. սա է անշուշտ մատուռնն հուպ յապարանսն, զոր յիշէ Եւգեն. Պոռէ, և Վրաց պաշտաման նուիրեալ համարի. քանզի 'ի հարաւային դիմի նորին կայր արձանագիր վրացերէն, և 'ի ներքոյ գրեալ հայերէն, 'ի Թու. ՈԿԵ (1216). եթէ, Ես Գրիգոր եպիսկոպոս և Վահրամ Պատրոն քաղաքիս, հաստատեմք զհրամանս կաթողիկոսին։ Երկոքին կողմանք եկեղեցւոյն որմայար սեամբք բաժանեալ են 'ի վեց, և են 'ի նոսա քանդակ պատկերք մարդկան. նշմարի և ներքնատուն ընդ եկեղեցեաւս։ Իսկ 'ի Հր. պալատանն՝ ուր սկսանի լայնանալ եռանկիւնակ միջոց քարափանց Ծաղկոցաձորոյն և յիշեցելոյ օժանդակ վտակին, կան կոյտք աւերակաց՝ որք չև ևս ծանուցան որպիսի ինչ շինուածք էին։ Ի Մ. աւերակացդ և 'ի Հր. վիմափոր եկեղեցւոյն յեզր Ծաղկաձորոյն նշմարին հետք կրկնապարիսպք, առ որով գետակն ընդունի յահեկէն ('ի կողմանէ քաղաքին) վտակ փոքրիկ յիւրմէ ձորակէն խաղացեալ, որում մերձ Թուի և դուռն մի եղեալ ելանելոյ 'ի ձոր անդր. և առ նոքօք երևին կամարակապ մուտք սրբատաշ քարորմովք, զոր ոմն յեւրոպացի քննողաց Անւոյ՝ համարեցաւ Տուն պահանորդաց։



21. Տուն Պահանորդաց (կարծեցեալ)։

Յետ այնր դարձեալ քաղաքորմք պարապեն զձորեզրն Ծաղկոցաց. ուրանօր 'ի քարափն նորին և հաւասար հեռի 'ի կրկնապարիսպ տեղւոյն՝ 'ի հիւսիսոյ, 'ի մզկթէն՝

1 Ոմն յառաջնոց մերազգի այցելուաց ասէ զպատկերն՝ առն գլխատելոյ լինել և 'ի ձեռին ունել զգլուխն. և աւանդի ասէ Գագկայ վերջնոյ լինել պատկեր, օրինակելով զդժբաղդութիւնն. այլ ինքն հաճի համարել Վեստ Սարգսի՝ առ առակէ։

որ 'ի Հր., և յԱռաքելոց եկեղեցւոյն՝ որ յՆ. Հ., գրեալ է և յաշտարակէն մեծէ, ամբառնայ մի 'ի յաւէտ սխրալի չինուածոց քաղաքին, Ս. Գրիգոր Աբուղամրենց եկեղեցին, բնաւիցն վեհագոյն դրիցն վսեմութեամբ ան-

22. Ձեռնագիր Սարգսի վ. Սեւանեցոյ 'ի մատենի արքունի գանձատան յԱնի։

«Յամի յորում էր Հայ Թուականս ՆԿԱ եւ վճարեցաւ ի մարդկանէ արքայն Հայոց մեծիմաստն Յովհաննէս, գտի ես Սարգիս վարդապետ զգիրքս զայս յարքունական տան գանձուն, անգեալ յանկեան միում, անայցելու թափառեալ թաւալէր յաճիւն յատակին, եւ գրեալ թէ լայր լռելեան. իսկ իմ հայեցեալ խնամով ի գերանոցէն, եւ ըստ սովորական մեր ախորժակացս զյոքունս բացեալ ի բանսն բերկրեի. եւ սա զատուցեալ յնկերացն կայր կարաւտ ձեռին առ ինքն կարկառելոյ. զոր ապա առեալ իմ ընդ իս տարա, հանեալ ի բանդէն։ Արդ մաղթեմ, մեզ ապագայիցդ, աղաւթիւք զիս յիշեսջիք, որք ի գիրքս յայս հայիք եւ վերծանէք»։

աղարտագոյն մնացութեամբ և հնութեամբ թուականաց. քանզի գտանին 'ի սմա թուականք յառաջ քան զհազարամեայն դար քրիստոսական: Ցայսպիսում եկեղեցաձոյս և յիշատակաց քաղաքի՝ 'ի դէպ էր ոչ մի, այլ բազում նուիրել եկեղեցիս հօրս մերոյ Սրբոյ Գրիգորի, և ցարդ երից կամ չորից մնացուածք և հետք՝ աներկբայ առնեն. յորոց մին թագաւորաշէն էր և թագաւորավայել. այն է հիմնարկեալն յԱ. Գագկայ յամի 996-7 և աւարտեալ 'ի 1000 թուականին. զոր ոչ միայն թագաւորաշէն այլ և կաթողիկոսաշէն անկ է ասել. նա և առաւելաշնորհ իմն. քանզի Ներսէսի Գ կաթողիկոսի Շինողն անուանելոյ, 'ի կէս Է դարու, յետ բազում շինութեանցն՝ զերագոյն բնաւից դաստակերտացն կառուցեալ էր եկեղեցի մի մեծ յԱռապար ճանապարհի Վա-



23. Ս. Գրիգոր Աբուղամրենց:

ղարշապատ քաղաքի, 'ի Զուարթնոց անուանեալ տեղւոջ, յանուն Ս. Գրիգորի նախապետի աթոռոյն իւրոյ, իբրև աննմանուոյ աննման իմն կամեցեալ նուիրել. ընդ որ ամենայն պատմիչք որք յիշեննն՝[1] զքանչացեալք ելևելս առնեն զմիմեամբք 'ի գովասանել, կոչելով մեծ, հրաշալի, բազմապայծառ, հրաշակերտ, աստուածակերտ փարախ, հրաշապայծառ, զանազան յօրինուածով, լուսազարդ, գերահռչակ, զարմացուցիչ տեսողաց, աննման, և չորեքումբք հաստահեղոյս սեամբք. որոյ՝ 'ի ժամանակի շինութեանց Անւոյ՝ փլածքն միայն տակաւին զարմացուցանէին զտե-

[1] Յովհաննէս կաթողիկոս, Թովմաս Արծրունի, Ասողիկ, Սամուէլ Անեցի, Կիրակոս, Մխիթար Այրիվանեցի:

տողն, և իբրև մի 'ի հրաշակերտից աշխարհիս համբաւէր 'ի Հայս: Արդ մեծոգին և մեծահաւատն Գագիկ 'ի վերայ այլոց բազում շինուածոցն՝ խրախուսեաց վերականգնել զայնպիսին շինուած. ոչ առ եւեղն, զի տակւին ընդ այլազգեաց իշխանութեամբ էր այն, այլ փոխադրել յիւրն արքայանիստ Անի. և ընտրեալ նմանագոյն իմն վայր դիտակ, ձեռն արկ յամի 996-7. «Նոյնաձև չափով և յօրինուածով յարդարել 'ի քաղաքին » Անւոյ, (որպէս ասէ տեսող սորին Ասողիկ) հիմնարկեալ » 'ի կուսէ Ծաղկոցաձորոյն, 'ի բարձրաւանդակ տեղւոջն, » տարփատենչ տեսողացն, մեծատաշ վիմարդեան կոփածոյ վիմօք՝ մանուածոյ քանդակեալ յօրինէ, լուսանցոյց պատուհանօք, երրակի դրամբք, սքանչատես



24. Յատակաձև Ս. Գրիգորի Աբուղամրենց:

» տեսմամբ գմբեթաւորեալ, գունակ գերամբարձ և երկնանման գնդլին». և 'ի հազար թուականին գլխաւորեցաւ շինուածն. այլ համօրէն սարք՝ թերևս յետոյ ուրեմն բովանդակեցան ըստ օրինակի կաթողիկէին, զորոլ գերազանցէր աներկբայապէս ըստ գեղեցիկ զարդուցն և դրուագաց. քանզի զ'Է դարու բիւզանդական արուեստի տիպս բերէր, յոր կիրթ և հմուտ էր նախագաղափարին կերտող Ներսէս կաթողիկոս, երկար ամս կեցեալ և մնեալ 'ի Կ.Պօլիս: Այլ արդ հրաշալին այն գաղկաշէն տաճար, թերևս պերճապաճոյճն 'ի շինուածս Անւոյ, ոչ ևս երևի, և ոչ իսկ ստուգիւ տեղի դրիցն է յայտ. և զի 'ի հասարակի հաստակառոյցք են եկեղեցիք քաղաքիս, վասն որոյ և շատ կամ սակաւ կանգուն կան գլխաւորք առ 'ի նախնեացն յիշատակելոց, սորայս հիմնայատակ կործանումն՝ թուի ոչ ակամայ բռնութեամբ եղեալ. և զի 'ի վաղուց հետէ տապալեալ էր՝ յայտ է 'ի ժամանակագրէն ԺԳ դարու (Մխիթարայ Այրիվանեցւոյ), որ ընդ յիշատակի շինութեանն յաւելու և զտխրականն բան, «որ այժմ հանգուցեալ է»: Անեցին Սամուէլ որ նշանակէ յամի 1131 զկործանել Ամենափրկիչ եկեղեցւոյ՝ ոչ յիշէ զգերահռչակ Գրիգորին՝ (որպէս անուանէ զայն). յայտ ուրեմն զի 'ի միջոցի 1177 թուին՝ (յորում աւարտէ նա զժամանակագրութիւնն), և յառաջ քան զվերջ ԺԳ դարու՝ յորում աւարտէ Մխիթար զիւրն, եղեալ է արկածդ: — Բաղդաւոր յոյժ քան զայդ եղեալ և մնայ նախայիշեալս Ս. Գրիգոր մականուանեալն Աբուղամրենց, յանուն Պահլաւունեաց հիմնարկողի 'ի վերջնում քառորդի Ժ դարու: Փոքր է, այլ վայելուչ և ճարտարաշէն յոյժ, թերևս Տրդատայ հմտին ձեռակերտ և այս. թանձր և ամրակառոյց որմովք, որով անխախտ մնայ յ'900 ամաց հետէ, զի չիք 'ի նմա յիշատակ նորոգութեան, որպէս յայլ եկեղեցիս. երկոտասանանկիւնի է ձևով արտաքուստ խարիսխն, այլ առ լայնութեան կողմանցն բոլորչի երևի. երկոտասան Զ. է տրամագիծն յարտաքին որմոցն, իսկ մէջն տասն Զ. միայն, և տրոհեալ 'ի վեց կիսաբոլորս, որպէս և արտաքուստ սուղ ինչ 'ի վերոյ 'ի յատակէն 'ի շրջապատ որմոցն՝ վեց սրանկիւն խորշք բացեալ են այսու > ձևով, և իբրև 'ի վեց չերտս հատեալ: Յաւարտ անջրպետաց վեցեցուն ներքին բոլորակացն կանգնեալ են մէն մի սիւնք, որով ձևանայ բոլորակ մի ևս մեծ 'ի միջի, յորոյ վերայ ամբառնայ կոնաձև գմբէթ գեղեցիկ 12 լուսամուտիւք, սուղ ինչ 'ի գագաթանն մաշեալ, թերևս 'ի բռնութենէ չսիրողաց պատկողին զնա խաչի: Ոչ շատ քանդակք և զարդք են եկեղեցւոյս արտաքուստ, այլ վայելուչ յոյժ դրուագք շրջանակի գմբեթին և լուսամտից նորին. իսկ 'ի ներքոյ անպաճոյճ ևս, իբրև անկարօտ արուեստի՝ լցեալ պարզութեամբն գեղով[1]: Փոքրկութիւն եկեղեցւոյս ինքնին և արձանագիրքն յայտնեալ վկայեն՝ զի վասն հանգստարանի տոհմի իւրեանց կանգնեցին զայն Պահլաւունիքն: Չիք արձան թըւականի շինութեանն, այլ 'ի վերոյ դրանն կայ մի 'ի հնագոյն մնացեալ արձանագրաց Անւոյ, յամի 994, այսպէս.

**Կամաւքն Աստուծոյ. ի ՆԽԳ թու. Ես Շուշան տիկնաց տիկին զուգակից Գրիգորո իշխանի ետու զՄրուանա կուղպակս ի Սուրբ Գրիգոր իսկ որ հակառ գա յիմոց կամ յաւտարաց ՅԺԸ լցն նզոված է հոգով եւ մարմնով.**

Միւս ևս արձան կայ անդ սկսեալ 'ի վերոյ քան զսա երկու տող, և երկու տող ևս խառնեալ մուծեալ 'ի միջի

1 Հէմիլդըն, որ 45 ամօք յառաջ քան զԹուական տպագրութեան մատենիս գրէր, ճոխազարդ ասէ զարտաքինն եկեղեցւոյս. « Within the architecture was extremely plain, but on the outside highly ornamental: rich traceries, flutings and fretwork, with deeply-carved twisted beadings, were carried round the windows and under the cornices. — Hamilton, I, 200.

տողից սորին, Թերևս ոչ համեմատ ընդ առաջինն՝ յետոյ գմիւսն գրեալ է, որ է այսպէս.

Յանուն Աստուծոյ կամ եղեւ իմ Շուշանա տիկնաց տիկնոջ որ ետու զՄրուանա կուղպակս ի Սուրբ Գրիգոր։ Ջ։ դրամ։ է Սէդաի. եւ Ջ։ Մրուա-նա. ԺՁ։ աւր ժամ ի Քր.

Գրիգորդ է որդի Ապուղամրի և հաւ համանուանն Մագիստրոսի հռչակելոյ, որոյ կայ և համառօտ արձան յիշատակի 'ի հարաւոյ կուսէ եկեղեցւոյն, զայս օրինակ.

✠ Քրիստոս Աստուած յորժամ գաս փառաւք Հաւր ի նորոգել զերկիր ողորմեա Գրիգորո ծառայի քո.

Իսկ Սեդա դուստր է Գրիգորի և Շուշանայ. համանօրէն որդի Նոցա էր և Մրուանն. որոց որդի է երեց Վահրամ իշխանաց իշխան և սպարապետ, որ զհոգեբաժին վաղավախճան որդւոյ իւրոյ Ապուղամրի՝ գրէ անդ.

✠ Կամաւքն Աստուծոյ ես Վահրամ իշխանաց իշխան ետու զիմ որդւոյն զԱպուխամրի ոգեբաժին եւ գնեցի Բ կուղպակ զԼորագոյնին եւ զՈրսաւտին Ոշականց ետու ի Սուրբ Գրիգորի եւ քան եկեղեցիքս որ ունին ի տարին Գ քառասունք. արդ էթէ ոք հակառ գա յիմոց կամ յաւտարաց նզովեալ եղիցի ի Հաւրէ եւ յՈրդւո եւ ի Սուրբ Հոգոյն. ՅԺԸ հա. եւ Ապուխամրի մեղացն պարտական եղիցի առաջի Աստուծոյ.

Ի ներքոյ արձանին Վահրամայ կայ և յիշատակ Սարգսի ուրումն Լարարարի, (Թուի՝ քաջաձիգ աղեղանց).

Ես Սարգիս Լարարարս ետու զիմ տունս ի Սուրբ Գրիգոր որ արնեն ինձ ժամ ԺԵ աւր իսկ որ հկառ գա եւ զիմ յիշատակս խափանէ յամենա-կալ...... նլին Աստուծոյ հոգով եւ մարմնով ամէն.

Այլ կարևոր ևս արձանագիր է միւս ևս որդւոյ Գրիգորի և Շուշանայ, եղբօր քաջացն Վասակայ և Վահրամայ, Ապլղարիպայ՝ մարզպանի, յամի 1040, որոյ և յայլ չէնս քաղաքիս երևին յիշատակք. և է այսպէս.

Ի ՆՁԹ Թուականիս ես Ապլղարիպ Հաոց մարզպան որդի Գրիգորո եւ Թոռն Ապուղամրի Հայոց իշխանաց Թէպէտ եւ անտես էի ի հաւրէ իմէ յա-ղագս կրսերութեան այլ հարկեցա ի ծնողական սիրոյն եւ շինեցի զայս ճանգատարան հաւր իմոյ Գրիգորո եւ եղբաւր իմոյ Համզէի եւ քեռ իմո Սեդաի եւ շինեցի սենակ Բ զսուրբ Ստեփաննոս եւ զսուրբ.... պայման քահանայիցդ այս է որ զամէն ուրբաթ ի Ս(ուրբ Սանի.)... ժամն իմ մաւրն Շուշանա արասցեն եւ զշաբաթն իմ հաւրն Գրիգորո եւ ի սուրբ Քրիստափոր զամէն ուրբաթ իմ քեռն Սեդաի եւ զշաբաթն իմ եղբաւրն արնէ Համզէի եւ առաջաւորացն ուրբաթին եւ աղցացն ուրբաթանոյն փոխան յարձակ աւուրքն արասցեն Ը աւր. արդ եթէ ոք ի քահանայից եկեղեցեացդ

զայդ ժամդ խափանէ եւ կամ պղերգա եւ աւր անցնէ նզովեալ լիցի ի Հաւրէ եւ յՈրդւո եւ ի Սուրբ Հոգւոյն եւ ՅԺԸ հայրապետացն եւ բաժին նորա ընդ Յուդաի մատնչին աւցէ իսկ կատարիչ գրոյս աւրհնեալ լիցի :

Քանզի քառասուն և հինգ ամաց յառաջագոյն արձանագրեալ է յեկեղեցւոջս՝ մայրն Ապլղարիպայ, ապա շինութիւն հանգստարանիս զոր յիշէ դա՝ կատարած կամ յաւելուած է. որպիսի էին և յիշեալ երկու սեննեակքն Ս. Ստեփանոս[1] և Ս. Քրիստափոր, որք թուին գեղեցիկ մատրունքն ՚ի Հ. եկեղեցւոյն, այլ աւերք: Թուի ՚ի բանից արձանագրին Վահրամայ՝ թէ և այլ եկեղեցիք կամ մատրունք էին առ նովաք, իբրև մէն միոյ ՚ի հանգուցելոցն առ երի նոցին, յորս քառասունք (պատարագք) վասն նոցա մատչէին: — Համանման և համաչափ այսմ եկեղեցւոյ Ս. Գրիգորի՝ կայ եկեղեցի մի արտաքոյ քաղաքին իբրև քառորդաւ ժամու լոկ հեռի, ՚ի Հ. կողմանէ, և կոչի Նախարարժի եկեղեցի, և ըստ Թուրքաց՝ Ջօպան գիլիսէսի. զի աւանդեն չինեալ աղքատ հովիւ կարծեցելոյ գձձազգեստ առն միոյ մերժելոյ յեկեղեցւոյ քաղաքին, ՚ի ցոյց անծանօթ փարթամութեան իւրոյ[2]:




25. Յատակ Մզկթին Անոյ:

Ոմանք ՚ի քննողաց Անւոյ համարին մերձ յեկեղեցիս յոյս Ս. Գրիգորի Ապուղամրենց լինել գլխաւոր շուկայի կամ վաճառանոցի քաղաքին:

25. Իբրև 120 Ք. խոնարհագոյն ՚ի հարաւոյ Ապուղամրենց եկեղեցւոյս, երեւի տեղի դրան ՚ի պարիսպն յեզր Ծաղկոցաձորոյն, որ աստանօր մերձենայ յԱխուրեանն, և հազիւ իբր 200 Ք. է ՚ի միջի երկոցուն, և կչիռ ՚ի հանդիպոյ նորին եւս անցք լինին ընդ Ախուրեան ՚ի հին բաժին Ռուսաց, որոց բացագոյն հաստատեալ էր անդ պահակս Ղազախաց: Ի միջակի անդ յանձուկ վայրի երկոցուն ձորոցն և հանդէպ դրանդ յիշեցելոյ՝ կայ նշանաւոր շինուած մի եւս քաղաքին, Մզկիթ առ յետինս, այլ զառաջինն ոչ է յայտ յինչ պէտս շինեալ, թէ և կարծի յումանց պալատ լինել կամ ժամատուն՝ աւե-

1 Արել Վ. (53) առէ զՍ. Ստեփ. շինեալ յամի 1020:

2 Տես ՚ի Պատկերն տասներորդ զԹիւն 8, յէջ 35:

բեալ և անհետացեալ եկեղեցւոյն յարևմտից Նորա եղելոյ[1]. քանզի այլաձև իմն է և աննման այլոց եկեղեցեաց, երկայնաձև քառակուսի շինուած, մեծամեծ կարմիր քարամբք կոփածոյիւք, յարևմտից ունելով դուռն. երկկարգեան երիւք կարճ և թանձր բոլորչի սեամբք յերիս բաժանեալ թևս, և 'ի նոցանէ և յերկոտասան կամ 'ի չորեքտասան որմասեանց կամարք են ձգեալք, որով համակ կամարայարկ իմն է տեղին. յատակն յերկոտասան մասունս տրոհեալ է քարաշարիւ և սեանցն անջրպետութեամբ, բայց ոչ հաւասարաչափս և համանմանս, այլ պէսպէս գրիւք և միւսիւն զարդուք և ձևօք զանազանեալ վայելչապէս. Նման Նմին և ձեղունն ուրեք բոլորակ է, ուրեք կմբաձև և ուրեք տափարակ, մեծամեծ քարեղէն տախտակօք: Ցարևելեան հիւսիսային անկեանն ամբառնայ Մինրայն կամ աշտարակն 85 աստիճանօք, սևակարմիր քարամբք կերտեալ. և 'ի գագաթանն ապակերուռ աղիւսօք գրեալ «Ցանուն Աստուծոյ», (Բի'սմ իլլահ بسم الله): — Երեք պատուհանք են յարևելա-



26. Մզկիթ:

կողմեան որմն՝ յԱխուրեան կոյս հայելով. արևմտեան



27. Մէջ մզկիթին:

և հիւսիսային որմունքն մասամբ անկեալք են: Չիք 'ի Նմին բեմ կամ տեղի ընթերցման, ըստ մահմէտական օրինաց. այլ է և ներքնատուն ընդ յատակաւն կամարակապ և բազմադռնենի, ոչ է յայտ յինչ պէտս կար-

1 Արէլ Վ. (78) առէ վասն շինուածոյս. «Վրացի արձանագրութիւնը ցոյց կու տայ որ ժամատուն եղած է սրբեալ 'ի պաշտօն Աստուծոյ». սակայն ոչ նա յառաջ ածէ զարձանագիրն, և ոչ այլ ոք յիշէ այդպիսի ինչ:

*գեալ. բայց սակս այսր ոմն 'ի քննողաց [1] տեղւոյն եռա-յարկ կոչէ զմզկիթն: Ցարտաքին որմունսն գոն արձանա-գիրք. մին քուֆի գրով յոյժ Թերի, այլ յայտ առնէ հրա-մանաւ Մանուչէի գրեալ յամի 1072, այսպէս.*

*միւսն յարևմտակողմն քանդակեալ նեշքի պարսիկ տա-ռիւք երկայն հրովարտակ Նպուսայիտ խանի Թաթա-րաց, ('ի միջոց ժամանակի 1320-1335 ամաց). որ պա-տուիրէ ոստիկանաց քաղաքին' մի նեղել զբնակիչսն և մի պահանջել պէսպէս տուրս. սաէ և զկասն էրն.*

اللّه لطيف بعباده

ابو سعيد بهادر خان

درين وقت كه اوز تختگاه پادشاهی روی زمين

يرليغ سلطان عالى علاء الدّنيا والدّين

خلد ملكه

كه از مشرق تا مغرب جهانيان در سايه مرحمت و معدلت اوند حق تعالى حكم و فرمانش بزيادكی ميرساناد و ديكر حكم بما چنانست كه خلايق تدفير بفرمان كرد ديوان سمّی قاهر اوست باهيچ افريده كم و پيش نتواند كرد و بغير از تمغا و ياج براسيتى چيز ديكر نستانند واز هيچ افريده بعلّت قلان وثمادی غيره چيز نخواهند چنانكه پيشتر ازين برين شهرانی وديكر ولايات كرجستان بسبب قلان و ثمادی و حوالات تاواجب قصريّه زيادنق كرده بودند وزور رسانيده روی خرابی نموده و رعايا متفرّق كشته كذلك ايات شهرو لايت بسبب فلان... ليق ملك و اسباب و خانمان خودرا تمامت كذاشته ورفته همكيى بما نوشتند كه حق تعالى سايه اعلى ازسر...

*Հրովարտակ.*

*« Աստուած որ բովանդակէ յանբաւութեան իւրում » զամենայն ծառայս իւր.*

*» Ի ժամանակի յորում (տիրէ) զարդն մայրաքաղաքի » երեսաց երկրի, Սուլտանն տիեզերաց, փառք աշխարհի » և հաւատոց, ԷՊՈՒՍԱՅԻՏ ՊԷՀԱՏՈՒՐ ՂԱՆ.*

*» Քանզի յարևելից մինչև յարևմուտս աշխարհաց' » ամենայն ինչ 'ի ներքոյ կայ գԹուԹեան և արդարու-» Թեան նորա. զօրոյ Աստուած ամենակալ բարձր ա-» րասցէ զիշխանուԹիւն և զհրամանս. Այս ևս պատուէր » է նորա առ մեզ. Մի ոք 'ի մարդկանէ 'ի ներքոյ հրա-» մանաց նորին եղելոց, կամ որ շուրջ գան զատեանիւ » անուան նորա փառաւորելոյ, մի ինչ յաւելուցուն կամ » նուազեցուսցեն և մի ումեք. և մի աւելի ինչ պահան-» ջեսցեն տուրս քան զհարկ կնքոյ (տամղա) և զբաժ. և մի » կարասցեն պահանջել ինչ աւելի յամենայն անձնէ, իբրև » խալաճ կամ փարչ գինւոյ. որպէս յառաջ քան զայս » 'ի քաղաքի աստ Անւոյ և յայլ գաւառս Վրաց, պա-» տրուակաւ խալանի և փարչի գինւոյ և այլոց անիրաւ » հարկաց' հարստահարուԹիւն հասուցանելով, ական-» սա աւերիլ, և բնակիչքն 'ի բաց ցրուեցան, և տանու-» տեարք քաղաքին և գաւառին 'ի պատճառս խալանի » և . . . . . . Թողեալ լքին զտունս և զինչս իւրեանց » զանշարժ և զշարժուն, և գրով ծանուցին ինձ (սաեւով). » Աստուած ամենակալ մի վերացուսցէ 'ի գլխոյ քումմէ » զհովանի իւր բարձր... »:*

*Ի ներքոյ հրամանագրին կայ հնագոյն արձանագիր պարսիկ և վրացի լեզուաւ, այս բան. « Ես մեղաւոր Զա-քարէ ԱԹաբակ որդի հանգուցեալ.... հաստատեցի 'ի Թուին 635 (Հագարաց), և Վրացն 458 [2] ».*

سهور سنه ص . . .

صنكر اتلبك زكريا بن المرحو

*որք պատշաճին 1237 ամի Քրիստոսի. իսկ հայերէն ար-ձանն անանուն և անԹուական' սաէ.*

## *Հաստատուն պահօղքն աւրհնին Աս-տուծոյ:*

*Այս բան հայերէն գրեալ է և 'ի վերայ միւսոյ բարձու աշտարակին որ 'ի մէջ քաղաքին: — Հանդէպ մզկիԹին և հուպ' երևի շուկայ եղեալ 'ի հնումն:*

1 Մուրաւիեֆ:
2 Ըստ Պրոսեայ. այլ երկբայելի են Թուականքն կամ գրուածն. զի յամի 1237 կեայր տակաւին ժառանգն Անւոյ հայրն Բ Զաքարէի Շահնշահ, որդի Մեծին Զաքարէի:

իբրև 100 կամ 120 Ձ. հեռի 'ի մզկիթէն՝ 'ի հարաւոյ կուսէ, 'ի միջակի քարափանց երկուց գետաձորոցն կան քայքայեալ աւերակք եկեղեցւոյ միոյ, յորմէ ցարդ ոչ ինչ ստուգեցաւ: Յիշի ևս և 'ի փռանկ ճարտարապետէն (Գէսիէ) աւերակ մի յարևմտակողմն քաղաքին՝ նշանաւոր շինուածոյ, որոյ [1] ոչ նշմարի ձև, այլ նշխարք յոյժ չքնաղք, մուսինք գունագոյն խանձաքարամբք, դրուագք տերևոց և ծաղկազարդ խաչից, յորոց կարծէ և գերեզմանական իմն տեղի լինել. և սակաւուք 'ի վեր 'ի գետնոյն՝ բազում հայ արձանագիրս. սակայն ոչ հասին առ մեզ տակաւին արձանագրութիւնքդ այդոքիկ:

Անձուկ գետամէջքն իբրև 300 Ձ. ևս ձգեալ ընդ Հր. յիշեցելոյ աւերակին՝ ապա ընդարձակին, բոլորաձև իմն շրջապատեալ 'ի քարափանց երկոցուն ձորոցն: Ի միջավայր ընդարձակեալ տեղւոյդ ամբառնայ սեւորակ քարբլուր մի բոլորակ, իբրև 80 Ձ. բարձր. մերձագոյն 'ի Ծաղկոցաձորն, յոր հայի ահեղ իմն կարկառմամբ քան յԱխուրեան. և 'ի նմին է Միջնաբերդն կամ Ներքին կլայն Անւոյ [2], Իչ-գալէ կոչեցեալ 'ի Թուրքաց. զոր և պարփակեն 'ի հեռուստ պարիսպք, ուրեք և կրկնակք, զափամբք երկոցուն ձորոցն. ոմանց սա իսկ թուի ապարանք Թագաւորացն Բագրատունեաց: Իսպառ քանդեալ,



28. Քանդակ 'ի Միջնաբերդին Անւոյ:

քարակոյտ և մացառացեալ՝ դոյզն ինչ հետս ցուցանէ սենեկաց բնակութեան, այլ ոչ և նշան մարտկոցաց: Ի միում 'ի սենեկաց կամ սրահից կայ քանդակս այս ձիաւորաց: Յայտնագոյն երևին հնացորդքն եկեղեցեաց և մատրանց. յորոց մին 'ի բարձրաւանդակի բլրին կայ բոլորաձև կամ վեցակողմն, իբր տասն Ձ. տրամագծաւ, որոյ կործանեալ գմբէթն ամբառնայր 'ի վերայ կրկնակ կամարաց վեցից որմասեանց, յորոց միջոցս լուսամուտք են, և յանկիւնս կամարացն երևին քանդակեալ գլուխք մարդոյ կամ հրեշտակի. յերկոսին կողմանս սեղանոյն են փոքրիկ աւանդատունք, և առաջի դրանն թուի գաւիթ եղեալ չորեքումբք սեամբք. յարտաքին որմունսն խաչվէմք են քանդակազարդք. այլ արձանագիրն եղծեալ չյայտնէ մեզ զանուն սրբարանիս: — Յելից հարաւոյ տորին 'ի ստորոտ բլրոյն և մերձ 'ի պարիսպ՝ կայ վայելչագոյն և մեծագոյն ևս եկեղեցի խաչաձև երկայն, սեւորակ վիմօք կերտեալ, ստուար որմովք, գեղեցիկ գմբեթաւ ամբարձելով 'ի վերայ չորից որմասեանց, չորիւք պատուհանօք, և երկու փոքրիկ գեղեցկաշէն աւանդատամբք կամ մատրամբք. այլ արևելեան և արևմտեան որմունքն և գաւիթն, (որպէս կարծի թէ ունէր), քակտեալ են, և գմբեթին կանգուն մնալով 'ի վերայ այլոց երկոցուն որմոցն՝ սրտառուչ առնէ զտեսողս. մանաւանդ զի և ոչ ունելով արձանագիրս՝ խորհրդական իմն թա֊

1 « Du plus grand intérêt... avait quelque chose de sépulcral ».

2 « Ամուրն Անի՝ ներքին բերդն է ամրացեալ »: Վարդան, Խն՝

քնութեամբ պարկեշտանայ։ — Են և այլ երկու եկեղեցեակք 'ի միջնաբերդի անդ, երկոքին ևս կամարակապք, մին կանգուն ունելով զգմբէթն 'ի վերայ չորից կամարագոտեաց, և երկուս աւանդատունս. երկոքին ևս անգիրք են և անծանօթք անուամբ (որպէս և նախագրեալ երկեակդ), այլ ըստ ոմանց՝ յաւանդութենէ կոչին Սուրբ Գէորգ և Ս. Սարգիս։ — Յարևմտից Հս. միջնաբերդին յեզր Ծաղկոցաձորոյն՝ կայ կիսաւերակ փոքրիկ եկեղեցեակ քառակուսի վայելչազարդ, այլ արդ խորանն միայն կանգուն է կողմնակի դրամբն հանդերձ։ — Յարևելակողմն միջնաբերդին սակաւուք հեռի, և 'ի կողմն Ախուրենոյ ամբառնայ աշտարակ մի մեծ քառակուսի, բայց պարիսպք չկան առ նմին։

Նովին ուղղութեամբ, այսինքն, գծի բերդին և աշտարակին, երթալով ընդ արևելս յափն Ախուրենոյ, գտանի հուն անցից նորին՝ վասն ձիաւորաց։ Իսկ ընդ հարաւ բացագոյն՝ յարմկնաձև անկեան պարսպացն, որ 'ի ծագս անդ բոլորաձև վայրի միջագետացն, (ուստի դարձեալ սկսանի անձկանալ և մերձենան յիրար ձորքն երկոքին), կայ փոքրիկ ութանկիւնի եկեղեցեակ մի, անանուն և անծանօթ։

26. Աստի և անդր արտաքոյ պարսպաց միջնաբերդին է լեզուաձև անձուկ հարաւային ծայր քաղաքին, 'ի միջի երկոցուն գետոցն, որք իբրև 150 Զ. միայն տարակացք են 'ի միմեանց, այլ քարափունք նոցին մերձագոյնք ևս. յորոց միջի երկիրն քամակաձև ձգի մինչև 'ի գոգ կամ յանկիւն արմկան Ախուրենոյ՝ ուր և ընդունի զԾաղկոցացն գետակ։ Յայնմ գոգի կամ հուպ 'ի գետակիցսն՝ ամբառնայ քարաբլուր մի սրանկիւն 'ի կուտակութենէ խանձաքարանց, յարևմտից յարևելս ձգեալ, որ և 'ի հընումն Թուի ամրացուցեալ և աշտարակօք և պարսպօք, 'ի բնէ իսկ ամուր և դժուարամատոյց յոյժ գոլով յառապար վայրի, ուր ելանէին երբեմն քարահատ նեղ սանդըղօք. և Թուի յառաջամատոյց առանձին ակառն մի լինել 'ի պահպանութիւն վերջին ծայրի քաղաքին. յոր սակս Թերևս ցարդ ռամիկն անուանէ զայն Գըզըլ-ղալէ կամ Գըզ-ղալէ[1]. առաջին կոչումն ստուգաբանի գունով քարանց շինուածոյն՝ կարմիր և սեաւ. իսկ երկրորդն՝ զի արքայդստեր միոյ ասեն շինեալ և անդ բնակեալ։ Իսկ ոմանք համարին կուսանաց վանս եղեալ անդ, զի նշմարին և խցկունք 'ի հիւսիսային և 'ի հարաւային կողմանն երեսնիւ չափ։ Շինուածն այն 'ի միջակողմն քարաբլրին՝ է արդ քառակուսի եկեղեցի մի իբր 11 Զ. երկայն, 6 1/2 լայն. որոյ կանգուն միան հարաւային և արևելեան որմք երկու երկու պատուհանօք, այլոյն անկեալ գոլով. ունի և 'ի չորեսին անկիւնսն կրկնայարկ մատրունս փոքրկունս մէն մի լուսամտիւ։ Ի բազմաթիւ եղծագիր արձանացն մին 'ի քայքայեալ որմն հարաւակողման՝ ցուցանէ շինող կամ նորոգող տեղւոյն զՋաքարիա Սպասալար. և յայլում արձանի յիշի մայր նորին այսպէս.

## Սուրբ մեղսաքաւիչ պատարագ որ ի սմա կատարի՝ Սահակադխտոյ է ծնաւղի Զաքարիայի եւ Յիւանէ Թագաւորաց Հայոց։

Ի կիսեղծ արձանի անդ յիշի հնագոյն շինութիւն եկեղեցեաց յաւուրս Ս. Գրիգորի Լուսաւորչի, որ եթէ ստոյգ իցէ՝ ցուցանէ տեղի մեհենի լինել զայն յառաջագոյն. և դիրք իսկ տեղւոյն երաշխաւորեն կարծել տաճար մի Անահտայ կանգնեալ անդ, և զայն լինել բնաւայր և խանձարուրք Անւոյ, որ ըստ դարուց աճեալ՝ էանց ընդ կիրճն անձուկ, և ձգեցաւ ընդ հիւսիս, տարածեալ 'ի ձորամէջս երկոցուն գետոցն, մինչև 'ի դաշտն Շիրակայ. և վասն այն համարի յետոյ նուիրեալ և կոչեալ վանք Սրբոյ Աստուածածնի։ — Յարևմտից կուսէ եկեղեցւոյն երևին հետք այլոյ շինուածոյ՝ զոր գաւիթ կամ ժամատուն նորին կարծեն քննողք։ Առ լուսամտիւ հիւսիսային որմոյն քանդակեալ կայր կարմիր քարեղէն տախտակ մի հինգ բոլորակօք՝ յորս տառք հայերէն այբուբենից ծածկագրութեամբ. որպէս Թուի նշանակք Թուականի շինութեան Սուրբ Գրիգորոյ, յոր անուն Թերևս և կոչէր սա կամ այլ եկեղեցի մի առ սովաւ[2]։ — Յարևմտեան հիւսիսային արտաքին քարաբլրիս մերձ 'ի քարափն Ծաղկոցաձորոյ կայ բազմանկիւնի աշտարակ մի մեծ կիսակործան. այնպիսի ինչ երևի և 'ի հանդիպոյ յարևելակողմն, ուր և հետք դրան միոյ յԱխուրեանն հայելով. և այլ աշտարակք յանձուկ սպառուածի քարաբլրին 'ի հարաւակողմն։ Ի վերայ դրանդ գոյր արձանագիր՝ զոր ոչ ոք 'ի մերազգի քննողաց յիշէ, այլ Ռուսն Մուրաւիեֆ, յիւր լեզու արտագրեալ, յորմէ Թարգմանի. «Ես Բագարատ




29. Քանդակ 'ի Ս. Աստուածածին վանս։

1 Ուխլարէհէմ։

2 Բազում ինչ հանճարեցին 'ի վերծանութիւն նշանագրաց տախտակիս՝ Նիկողոս Հովուեան (Բազմավէպ, 1850, էջ 21-28), և այլ ոմն կանխագոյն (Հայաստան Օրագիր, Թիւ 146), զորոց զբանս Թարգմանաբար եմոյծ Պրոսէ յիւրում Պատմութեան աւերակաց Անւոյ. (Brosset, Ruines d' Ani, 38-47)։

» որդի Զարոպայ? Արագածունի, չինեցի զզուռնս որ » տանի 'ի վանս Սրբոյն Գրիգորի. 'ի Թուին....»: Յուսալի է և այլ ոչ սակաւ յիշատակարանս գտանել 'ի քարբլրի աստ և շուրջ զնովաւ, զգուշութեամբ յատակելով կամ հարթելով զտեղին, զի յոյժ լպրծուտ և գահավէժ է, յոր սակս և ոչ յաջողեցաւ մանրախոյզ քննութիւն առնել անդ: — Սակաւուք հեռի 'ի քարաբլրոյս յՆ. Հ. երևին մնացուածք կամրջոյ 'ի վերայ Ախուրեան գետոյ, իբրև 'ի միջավայր երկայնութեան լեզուաձև թեւակղզւոյն. զոր թողեալ մեր արդ, աւարտելով նովին զտեղագիր արևմտեան և հարաւային մասանց քաղաքին, դարձցուք ընդ միջնաբերդն մինչև 'ի մզկիթն, մտանել 'ի միջավայր քաղաքին, անտի դառնալ պատել զարևելակողմամբն, և շրջան առեալ աւարտել առ մեծատարած պարսպօք հիւսիսակողմանն, յորս արևմտեան ծագաց ակնզրն արարաք:

27. Որպէս տեսաւ 'ի տեղագրեալ մասանց աստի՝ լայնագոյն մասն բովանդակ հարաւակողման քաղաքին է շրջաբոլորն միջնաբերդին, որոյ երկուստեք միջոցք ձորոցն երկոցուն նեղք են, և անձկագոյն՝ հարաւածայրն, ուր գետախառնուրդն լինին, փոքր մի լայնագոյն հիւսիսակողմն՝ մինչև 'ի մզկիթն յիշեալ. անտի և անդր ընդլայնեալ քաղաքամիջին յաջ և յահեակ տարածելով ընդ Մ. և Ե., ուղղանկիւն իմն եռակողմն ընծայէ 'ի տեսիլ, որոյ գլուխ մզկիթն այն, և երկոքին կողմնական անկիւնք աւարտին յապարանսն՝ 'ի Մ., և 'ի մեծ բաղանիսն՝ յԵ. իսկ բացուած կամ լայն կողմն եռանկեանն է հիւսիսակողմն քաղաքին, կրկնապարիսպն: Գրեաթէ 'ի միջակէտ մեծի եռանկեան քաղաքին, և գոգջիր 'ի կէս գծի որ ուղղակի ձգիցի 'ի մզկթէն ցԱւագ դուռն քաղաքին, կտրելով ուղղապէս զերկայն գիծն որ յանկեանէ յանկիւն կողմնական, ամբառնայ մեկնակ և անկցորդ այլոյ ինչ շինուածոյ՝ բարձրագոյն բնաւից Աշտարակ մի կամ Մինարայ, ութանկիւնի խարսխաւ և հատուածաձև կողմամբք, 'ի գագաթանն ունելով նեղագոյն բոլորչի մասն. իբրև հարիւր ոտք 'ի բարձրութիւն, և իննսուն աստիճանօք մինչև 'ի պատշգամն կամ 'ի շրջաբոլոր կայարանն: Ոմն 'ի քննողաց, Անգղիացի, յիշէ և քանդակ առիւծու տեսեալ 'ի վերայ աշտարակին, և գլուխ մի՝ զոր և արեգական պատկեր համարի: Այլ ոմն (Ռուս) կարծեաց՝ ստորև աշտարակին կանգնեալ զապարանս Գագկայ Թագաւորի. այլ հետք մեծի ինչ շինուածոյ չերևին բնաւ անդ. և թուի ինձ 'ի դիտանոց՝ պահնակաց և յայսպիսի ինչ քաղաքական պէտս կառուցեալ նմին, և շուրջ զնովաւ լինել մեծի հրապարակի քաղաքին. յետոյ ուրեմն թերևս կառուցեալ և մզկիթ՝ զարդիս անյայտ եղեալ. և զի էին երկու մզկիթք յԱնի, յիշէ առաջին եւրոպէացի այր տեսող քաղաքին՝ մինչդեռ շէն էր, 'ի կէս ԺԳ դարու: Ի միում երեսաց աշտարակին՝ սակաւ ինչ բարձր յերկրէ՝ կայ պարսիկ արձանագիր 1198-9 ամի, Բէկ Սուլտանի ամիրայի քաղաքիս, որ ասէ.



30. Մինաշտարակն:

من کی سلطان محمود بن شاور بن منوچهر
الشد ادی از برای جان فرازی جدّ وفرز اندانم
چنان فرمودیم کی بنّیه و دوستی وقطاییی ارس
نی مسجر ابو المعمران استادکان کوسپند اشتر خرید
و فروخت: هم اینجا: فرمودیم کی نکنند هرکه دراین
فرمان
طعنه زند در خشم خدای وتعالی کرفتار باشد
فی تاریخ سنه خمس وتسعین و خمسمایه

« Ես Բէկ-Սուլտան որդի Մահմուտայ, որդւոյ Շաւուրայ, որդւոյ Մինուչէհրի, Շէտտատեան, հրամայեցի,

» վասն փրկութեան հոգւոյ ծնողաց իմոց և զաւակաց » (որոց անեսցէ խնամութիւն, ազգականութիւն և միու» թիւն), և արգելում տեարցն վաճառել առաջի մզկը» թիս Էօգ-խշլ-Մաամրանայ՝ ոչխարս և ուղտս։ Հակա» ռակող հրամանացս պատուհասեսցի յԱստուծոյ. 'ի » Թու. Հէճիր. 595»։ Ոչ գիտեմ ևր յերկոցուն մզկթացդ իցէ, և ո՞ Մաամրանդ[1]։ Ի ստորև՝ հայերէն արձանագրեալ է, որպէս 'ի միւսում աշտարակին,

## Որ հաստատուն պահեն աւրհնին յԱստուծոյ. ամէն ։

Ցայգմ յիշեալ տաւրոջ կամ 'ի յաջորդին՝ Ապասալարն Զաքարէ էառ զԱնի, և յայնմհետէ բարձաւ իշխանութիւն Շէտտատեանց 'ի քաղաքէն։

Մերձագոյն շինուած յաշտարակս յայս՝ է 'ի հիւսիսոյ արևմտից իբր 80 Զ. հեռի, աւելի կամ պակաս, եկեղեցին Ս. Առաքելոց, քառակուսի խաչաձև, չափաւոր մեծութեամբ, ամրակառոյց և բազմազարդ, Նորանշան ճարտարապետութեամբ. զի ոչ որպէս զայլսն գմբեթաւոր է և ոչ սիւնաւոր, այլ 'ի չորից կողմանց կամարք տափակք կամ յոյժ լայնք աղեղնաձև ձգեալ հաւաքին 'ի կեդրոնի, մեծամեծ վիմաք յարկեալ. Նոյնպէս և տեղի խորանին ոչ կիսաբոլոր խորշիւ և բեմիւ զատուցեալ է, այլ հաւասար այլոց կողմանցն, միայն քանդակս խաչից և պէսպէս զարդուց ունի 'ի ներքոյ և արտաքոյ կողմանէ, միւսինակերպ գունագոյն քարամբք՝[2] յոլովս, անաղարտս և փայլունս թերևս քան զամենայն ծանօթ շինուածոց քաղաքին. բայց և շատք յայնցանէ արտաքուստ, որպէս և այլ ևս մասունքն խանգարեալք և աւերեալք են բռնութեամբ, և մեծամեծ քարինք 'ի բաց բարձեալ, կամ անկեալք 'ի գետին, ընդ որս և բարաւորք դրանցն[3], յորս թերևս արձանագրեալ էր անուն շինողին և թուական շինութեանն, որ անծանօթ մնան։ Վասն այլանձևութեանն և աննմանութեան այլոց եկեղեցեաց՝ ռամիկն խոհակերոց Նուշրէվանայ թագաւորի ասէր զտեղիս. որպէս և յանուն այսր Պարսից թագաւորի կոչէ զմիջնաբերդն՝ արքունիս Նուշրէվանայ[4]։ Արտաքոյ և շուրջ զեկեղեցեաւն են աւերակք այլոց ևս շինուածոց, ընդ որս և փոքր անդաստակ կամ գաւիթ առաջի դրան նորին, որոյ ձեղուն ամբառնայր 'ի վերայ կամարաձիգ որմանց։ Մի 'ի հնագոյն եկեղեցեաց լինել յայտ առնէ զսա՝ արձանագիր մի 1031 ամի, 'ի ներքս յեկեղեցւոջն, և է այսպէս.

## ՆԶ. Թու. Շնորհիւն Աստուծոյ ես Աբուղամր որդի Վահրամա իշխանաց իշխանի եւտու զկառնուտի արտն ի սուրբ Առաքեալքս վասն եղբաւր իմո Գրիգորոյ առողջութեան եւ կենացն յերկարութեան ։

Ցայտ է 'ի թուականէս՝ զի յետ այնր արձանագրեալ է Վահրամայ յեկեղեցւոջ Ս. Գրիգորի զոգէբաժինն վասն սորին Աբուղամրի որդւոյ իւրոյ (էջ 53)։ Արձանագիր մի ևս կարևոր պատմական կայ յեկեղեցւոջս՝ առ լուսամուտիւ հիւսիսակողմանն, ընդ մեծաւ գեղաքանդակ կարմիր խաչվիմով. որ թէպէտև անթուական, այլ անուն եպիսկոպոսին Գրիգորոյ յայտ առնէ զդէպսն 'ի սկիզբն ԺԳ դարու. և է այսպէս.

Աստուածահաճոյ եւ ընդրեալ սուրբ միայնակեացն Գանձակեցի զԾՆ ամ յանապատի կեցեալ խստաճարակ եւ անտես ի մարդկային տեսութենէ եկն ի քաղաքս մեր ի տուչութենէ Աստուծոյ առժամայն հրաման ի Տեառնէ հասեալ փոխեցաւ ի մշտնջենաւոր կեանսն եւ թաղեցաւ պանդխտարէն ի գերեզմանս աշխարհականաց եւ դիրք սուրբ ոսկերաց նորա բժշկութիւն առնէ ամենայն ախտաժետաց. եւ ես տէր Գրիգոր սահմանեցի զԱստուածածնին կիւրակէն աւրն յանուն նորա պատարագել զՔրիստոս. ով ընմա մուտքն ի յաթոռէս հանէ կամ յուզել իշխէ Կայենի եւ Յուդայի չափն նզովեալ եղիցին ։

1 Այս թարգմանութիւն է ըստ Ռուս գիտնականաց, հրատարակեալ 'ի Պրոսէէ. իսկ Պարսիկ ոմն թարգման՝ որում ցուցաւ արձանագիրս, 'ի ժամանակի տպագրութեան մատենիս, ընթեռնու զանունն Էօղուլ Մոսամմէրան, և փոխանակ անորոշ տերանց վաճառողաց՝ թարգմանէ. «Գլխաւորք Ռուսք (!) որք վաճառեն և գնեն » ոչխարս և ձորիս՝ բարեկամ մտօք, մի ևս արասցեն զայդ »։

2 « A beautiful arched roof divided into several compartments, » filled with mosaics of various patterns, formed of the different colou» red stones of the neighbourhoud, and having its walls covered with » rich carvings and scultpured arabesques ». — Hamilton, I. 100.

3 Այցելու ոմն յամի 1870, գրեաց թէ 'ի սպառ քայքայեալ առէ զեկեղեցիս զայս, զոր ինքնին հինգ ամօք յառաջ կանգուն տեսեալ էր։

4 Դեսիէ։

Միւս խաչվէմ յայլում կողման նշանակէ գլխատակ վա-ղամեռիկ ցանկալի և քաղցրալեզու մանկան, յամի 1318.

Այս է տապան .....
Հանգիստ Սարգիս պատանեկի.
Էր գեղեցիկ եւ ցանկալի
Քաղցր լեզու որչափ պիտի.
Թուին ՉԿԷ փոխեցաւ ի Քրիստոս։



31. Յատակաձև եկեղեցւոյն Ս. Առաքելոց։

Են և այլ ոչ սակաւ արձանագիրք, որպէս տեսցի 'ի ստորև իմիցս, յորս շատք են մաքսաւորաց կամ կնքա-հարաց, տամղաձի կոչեցելոց, ազատաշնորհութիւնք 'ի զա-նազան հարկաց, մանաւանդ վասն ուխտի եկեղեցւոյն.

*հնագոյնն 'ի 1263 (ՉԺԲ)․ ընդ որս և Մխիթար եպիսկոպոս Տեղերցի հնարի խափանել զվաճառ յաւուրս կիրակէից' առ ահի սասանութեանց երկրի [1]։ Արժանի նշանակի է արձանն Խուանդզէի, կնոջ Աթաբէկ Շահընշահի, որ յետ մահու առն իւրոյ տիրաբար շնորհէ ազատութիւնս 'ի հարկաց' բնակչաց Անւոյ, զոր տաւ‑կաւին իւրեանց հայրենի ժառանգութիւն համարի, այսպէս գրելով յամի 1320․*

**Թվ. ՉԿԹ.** *ողորմութեամբն Աստուծոյ ես Խուանդղէս զուգակից Աթաբակ Շահնշահի որ յայսմ ամի եկ յաշխարհէ եւ տրտմութիւն մեծ եղեւ մեզ եւ աշխարհիս արեւելից. ես ամուսին նորա դուստր Շամշադին Սահիպ դիւանին եւ պարոն . . . Իւանէ Աթաբակին եւ իմ որդիս իմ Զաքարիա յաղաքս պատրոնին հոգոյն փրկութեան եւ եղբարց իմոց յերկար կենդանու‑*

1 Ցանուն Աստուծոյ ես Խաչատուր ետու զիմ գանձագին սարաւոյթով տունս ի սուրբ Առաքեալքս իմ ոգոյս եւ իմ ծնողաց. եւ պարտին սպասաւորք սորա ի սարուոյջն։ Ե։ աւր ժամ արնեն անխափան եւ եթէ ոք հակառ կայ գրոյս այսորիկ յաւագաց կամ ի յրնտանեաց կամ յաւտարաց ՅԺԸ նզովեալ եղիցի հոգւով եւ մարմնով անլուծանելի։

Շնորհիւն Աստուծոյ ի տէրութեան քաղաքիս եւ յառաջնորդութեան Տէր Սարգսի եւ ի մելիքութեան Փախրադինին ես Մխիթար եպիսկոպոս Տեղերեցի ի ցասմանէ շարժի աւուրքս բարձաք զկիրակէի վաճառն ի փողոցէ. ով այս գրիս հակառակ կայ թէ մեծ թէ փոքր քաղաքիս մեղացն սէր է։

Շնորհիւն Աստուծոյ ես Նուրադին քոթիթս իմ ընկերաւքս եկի յԱնի տամղիս վերայ տեսայ զԱնոյ իրիցանուս զխառլեխին * հրամանքն որ ի սկսբանէ բաժ ու տամղա չէին տվել, ես այլ հաստատեց իմ ընկերաւքս որ ոչ բաժ տան ու ոչ տամղայ զինչ ի առլեխին հրամանքն էր թողաք վասն յերկար կենդանութեան փաթշահին. ով որ այլ բաժ ուզէ կամ տամղայ Աստուծոյ ու ինգեթվոր լինի ու նզոված է ՅԺԸ հայրապետացն մասն զՅուդային եւ զկայենին առցէ. հաստատուն պահաւղքն աւրհնին Աստուծոյ։

ՉԺԲ Էլղանին։ Շնորհիւն Աստուծոյ մեք տաղմաճիքս վասն յերկար կենդանութեան եւ վասն պատրոնաց մերոց Սահիպ Դիւանին եւ Սահմատին եւ Քարիմադինին բարձաք ի յԱնո իրիցանուս զբաժն զոր ի սկզբանէ ազատ էր մեք վերստին այլ հաստատեցաք չունի ոք իշխանութիւն բաժ ուզէլու ոչ ինչ ազգ ով իցէ որ կապէլոր լինի ով այլ խաւսք ասէ կամ աղման անէ ** բաժի ուզէլու, ՅԺԸ հայրապետացն նզոված է հաստատուն պահողքն աւրհնին յԱստուծոյ. Իէլ Գ. ***.

**Թվ. ՉԾ.** Շնորհիւն Աստուծոյ ես Աղբուղէս որդի Իւանէի թոռն մեծացն Զաքարիայի եկի յԱնի հրամանաւ Շահնշահի տեսայ զքաղաքս աղքատացեալ եւ խիստ ի վէր մնացել զի շատ հարկ էր ի վերայ դրած որ ի սկզբանէ չէր եղել. Ես։ գ։ հարկ ի վեր կալա վասն յերկար կենդանութեան եւ արեւշատութեան եղբարցն իմոց Շահնշահի եւ իմ վասն իմ նախնեաց գերեզմանին համար թողի զեզինն հազրն զկովին համբրէլէն զոչխրին աղհակն. եթէ ոք յիմ ազգէ եւ թէ այլ ուստեք որ գյիշատակս մեր հաստատուն պահէ աւրհնի յամենակալ Բանէն Աստուծոյ։

Ցուսովն որ առ Աստուած եւ սէր նորին ես պարոն Աղբուղայս որդի Ամիր սպասալար Շահնշահի թոռն մեծին Զաքարիայի եւ ես պարոն Թամարս դուստր իշխանաց իշխանի պարոն Բուղտային տեսաք զԱնոյ աթոռս եւ զիրեցանիս որ հարկ էր ի վերէնին զոր մեք նախ. . . . . . . . .

Կամաւքն Աստուծոյ եւ հրամանաւ պարոն Աղբուղին ես Մխիթար որդի Գրիգոր Խուցիսին որ Անոյ սաղմաճի էի վասն պարոնաց արեւշատութեան թողի զջաղացնոյս ամենոյ զդամղէն եւ զդահեկ վասն պարոն Զազին հոգոյն. եթէ ոք ի մեծաց կամ ի փոքու զայս արձանս խափանէ մարդն էն նզովել եղիցի ՅԺԸ հայրապետացն մասն եւ բաժին զՅուդային եւ զկայենին առցէ. եւ որ հաստատուն պահէ աւրհնին յԱստուծոյ։

✠ Շնորհիւն Աստուծոյ ես Գէշս որդի Պայկանն որ պարոնացն հրամանաւն Անոյ դաղմաչ . . . եւ վասն պարոն Աղբուղին արեւշատութեանն եւ եւս վասն Պարոն Զազային հոգոյն թողի զքասանկին զդամղէն քաղաքիս եւ որ ի դրուց գայ որ յառաջն չէր լել եւ ներկարարն զվաճառիկն քասանիկ չառնեն . . ով որ զայս արձանս խաբանէ դատի յԱստուծոյ մասն եւ բաժին զՅւդային առցէ հաստատուն պահողք աւրհնին յԱստուծոյ . . Այս բանի առաջնորդ Մուղաէտէն եւ Քրիստոսատուր եղեն։

* Այսպէս կոչի (տուլեի կամ եօբլեր), غيلرچ պաշտօնագիր կամ հրովարտակ Թաթար ղանից, և 'ի լեզու նոցին նշանակէ օրէնք և օրինական. այսպիսի է գրուած Էպուսէիտ ղանի զոր տեսաք արձանագրեալ 'ի վերայ մզկթին, յէջ 56։

** Նեղել, ծանրանալ։

*** Այսինքն, Իւրայէլ Գրիչ։

*թիւն ի մեր հայրենիք քաղաքս ի յԱնի Թողաք զկովերոյն եւ զիշանուն ըղհամբրելէն եւ զդռնագլխոյն մեծի եւ զփոքու եւ որ զմեր աւանդս խափանել ջանայ թէ հայ լինի կամ վրացի կամ տաճիկ հանդատի եւ դատապարտի յԱստուծոյ. մասնակից եւ գեհենակից սատանի եղիցի եւ վրացին կրուլ եւ անիծած լիցի եւ տաճիկն ի յամենայն փառաւորեալ փեղաքարացն ամաւթով եւ սեւերես լինի. իսկ որք հաստատուն պահեն զաւանդս մեր մինչեւ ի կատարած աշխարհի աւրհնին յամենակալէն Աստուծոյ. որք այս բանիս հակառակ կենան Նղովի որպէս զՈւդա եւ զԿաեն. այս բարիս եւ ողորմութիւնս հաստատեցաւ ի յամիրաութեան պարոն Լիպին[1].* ⊙ *Պաւուղ գրիչ:*

*Նշանաւոր է և արձանագիր Շապաղինի, յամի 1348, որ յետին է ժամանակաւ 'ի ծանօթ արձանագրութիւնս Անոյ, և կարեւոր յիշատակօք. զի ոչ միայն ծանուցանէ տուՆս և արուեստանոցս յԱնի, այլ և եկեղեցի մի Ս. Ստեփանոս. զոր և ցուցանէ երբեմն վիճակ եղեալ ժողովրդապետութեան մեծի եկեղեցւոյ Ս. Առաքելոցս, և ապա չորթեալ 'ի Նմանէ, և արդ վերստին առ Նոյն դարձուցանէ. գրելով այսպէս.*

**Թ. ՁՂԷ.** *կամաւքն Աստուծոյ ես Շապաղինս որդի Յովանիսի ետու ընձա ի սուրբ Առաքեալքս զսուրբ Ստեփանոս իւր ժողովրդովն իւր կալերովն զոր յառաջն չորթել լին. ես: էճ: ապ: տվի եւ յԱռաքեալքս դարձուցի. այլ ետու զխաչով պահեպի կէսն որ ի Հովթըթվանց գնել էի եւ մէկ կուղպակ որ ի յԱմիր Հասնա գնել էի ի գտակկրոցի խանապըրի դուանն դիմացէ վասն յիշատակ ինձ եւ ամուսնոյ իմոյ Ավաք խաթունին եւ գեղեցկատեսիլ եւ բարեպաշտ որդոյ իմոյ Յովանիսին. եւ պարտին սպասաւորք սորա յամենայն ամի ժբ աւր պատարագ: դ: աւր Շապաղինին: դ: աւր Աւաք խաթունին: դ: աւր Յովանիսին. կատարողքն աւրհնին յԱստուծոյ. հակառակքն դատին յԱստուծոյ:*

*Եկեղեցիս այս Ս. Ստեփանոս, կարծեմ՝ արդ այն կոյտ աւերակաց է զոր յիշեցի 'ի հարաւակողմն արքունական Ապարանիցն. Նախ զի մօտ է յԱռաքելոս, և երկրորդ զի յայլում արձանի աստ վասն եկեղեցւոյդ լինել հանդէպ դրանն Կարուց. և այդ դուռն, որպէս յիշեցաք 'ի կարգին՝ յայնմ կողման է, որում պատշաճին ղերք աւերակացն:*

*Ի հիւսիսակողման Ս. Առաքելոց և կից Նմին կայ մատուռն աւերակ, որոյ անկեալ քարինքն վկայք են հոյակապ շինուածոյ: Միւս եւս աւերակ մատուռն մեծագոյն աւընթեր կայ 'ի Հր. Ն. կողմանէ, և խորանատեղին և այլ ինչ մասունք որմոցն կանգուն կան. և 'ի վերոյ Թերաւս արձանագիր մի, յորում կարեւոր ինչ ծանուցանէ Գրիգոր արքեպիսկոպոս Անոյ յամի 1217, զաւրութենէ տրից առ եպիսկոպոսն. որպէս տեսցէ ահա ընթերցողդ.*

*...կ. Ի միւսում ամի որ էր Թուականս ՈԿԶ, կա(մաւքն) Աստուծոյ ես* **Տէր Գրիգոր** *որդի Ապուղամրի Արհիեպիսկոպ(ոս կամ)եցաք բառնալ զէդեալ հարկ ի մեր դաւառէս Շիրակա եւ (ի քաղ)աքիս եկեղեցեացս յԱնոյ. զի սահման էր ի սկզբանէ յամենայն գեղէ երկու գրիւ հաց յաթոռս տալ*

[1] Ասէ որք ընթեռնուն զանունդ՝ Շէղին։

*եւ ի քաղաքիս յամենայն եկեղեցիս մորթի մին զատկին տաւին. արդ. ես յաղագս յերկար կենաց պատրոնացն իմոց եւ ազգականաց եւ եղբարց իմոց եւ վասն հոգւոց ննջեցելոց մերոց թողի զայս հացս ամենայն գեղի մեծի եւ փոքու եւ զատկի մորթին ամենայն եկեղեցոյ եւ չունի ոք իշխանութիւն պահանջել մինչ ի գալուստն Քրիստոսի ապա եթ . . . կատարիչք յիշատակիս . . . ցին յԱստուծոյ եւ յամենայն սրբոց . . . կենդանութեան եւ տուող . . աց իւրեանց ։*

**28**. Ի Հարաւոյ մեծի աշտարակին և փոքր մի առաւել հեռագոյն 'ի նմանէ քան Առաքեալքն որ 'ի հիւսիսոյ, կայ յայժմուս, գուցէ և 'ի հնումն վեհագոյն և սրբազնագոյն ամենայն շինուածոց և աւերակաց տեղւոյս, նա և



**32**. Կաթողիկէն Անւոյ ։

թագուհի իսկ աւերակացեալ քաղաքին՝ Կաթողիկէն Անւոյ, նուիրեալ ամենափառն Թագուհւոյ Աստուածամօր[1]. երբեմն հոգեկան և քաղաքային փառօք և ճոխազարդութեամբն յինքն ձգելով զբիւրս բիւրուց հաւատացելոց, և այժմ մեծազանգուած և անարգիլ դրիւքն և կիսականգուն կայիւքն՝ իսկ և իսկ զրաւելով զաչս պշու-

1 Ցայն սակս համարի 'ի Պարսից և 'ի Թուրքաց Գուլէ Մէրիէմ կոչել ողջոյն իսկ քաղաքին Անւոյ, որպէս և գրէ ոմն 'ի պատմչաց նոցին, قلعى مريم ; առանց այլոյ անուան քաղաքին ։

ցեալս 'ի սփիւռս աւերակացն։ Փոքր մի 'ի բնուստ բարձրաւանդակ է գետինն՝ յոր զետեղեալ կայ, և երիւք եւ կամ չորիւք աստիճանօք շուրջանակի վերացեալ, որոց առնաչափ մի է լայնութեան և բարձրութեան. անտուստ ամբառնան որմունքն առհասարակ մեծամեծ կոփածոյ դեղնագոյն և թխորակ վիմօք, այնպէս քաջ յիրար մածուցեալ, ոչ է յայտ որպիսի նիւթով, զի համակ միաձոյլ սրբատաշ տախտակ իմն երևին։ Ձև եկեղեցւոյն է քառակուսի, 35 1/2 Զ. ընդ երկայնն արտաքուստ, և 23 6/10 ընդ լայնն. այլ իբրև չափ մի և աւելի թանձրութիւն որմոցն իբր երիւք չափօք նուազեցուցանէ զներքին մեծութիւնն ընդ երկայն և ընդ լայն։ Ցարևելեան, հիւսիսային և հարաւային որմունս՝ յերկուս երկուս տեղիս գոգս սրանկիւնս կամ դատարկս գործեալ է չափաւոր բարձրութեամբ 'ի յատակէն և 'ի վեր, և կամարաձև գործեալ 'ի վերոյ նոցին, գեղեցիկ քանդակօք։ Ներքին եկեղեցւոյն որքան անպաճոյճ՝ այնքան վսեմ և զարմանալի երևի[1], մանաւանդ գեղեցիկ զուգաչափութեամբ մասանցըն, խորխոռաձև ձգմամբ կամարացն և հսկայականաց սեանց. յորոց չորք վերանան 'ի միջոյ եկեղեցւոյն խաչաձև խարսխօք, երիս երիս անկիւնս ունելով ընդ միջոցս խաչաթևոցն. բազմամասնեայ են սիւնքն, ստուարք երեք չափ, դեղին և սեաւ մեծամեծ կտորովք, 16անկիւնի իմն ձևով, և ամբառնան մինչև 'ի թևս կամարացն. ոմանք 'ի չերտիցն կորընթարդ են և ոմանք անկիւնաւոր. և կամարք աստի և անտի կապեն զսիւնսն ընդ իրեար[2].



33. Յատակաձև Կաթողիկէին Անւոյ։

արևմտակողմեան կամարքն ցածունք են քան զայլսն. են և վեց որմասիւնք յարևմտեան, 'ի հիւսիսային և հարաւային կողմանս, կիսով լայնութեան միջին սեանցն. պարզուածք կամարացն ձգեալ են ընդ հիւսիս և ընդ հարաւ, և 'ի վերոյ նոցին այլ կամարագօտիք, որք ամբառնային զվսեմականն գմբէթ լայնատարր, արդ առ

1 « Cet édifice est remarquable par sa grande simplicité, qui n' exclut pas l' élégance ». — Texier, I. 149.

2 Ոչ գիտեմ զի՛ր 'ի սեանց տապալելոց կարէին և մահարձան Թուրքի միոյ տաշէին յամի 1870, յամսեան մայիսի, ըստ գրելոյ ականատես այցելուի։ — Արարատ Օրագիր Դ. 182։

մեզ՝ 'ի միջոցի 1830–40 ամաց՝ կործանեալ անկեալ և գլատակ եկեղեցւոյն ծածկեալ։ Գմբէթս այս երկնուանակ, ըստ ականատես պատմչաց, 92' բարձր 'ի յատակէն, 28' տրամագծաւ, կրէր երբեմն արտաքոյ 'ի գագաթանն տեղւոյ՝ խաչ արծաթի մարդաչափ բարձրութեամբ, զոր բարձեալ աւերածու հինից Ալփ-արսլանայ՝ փոխանայնր մահմէտականք եդին մահիկ ոսկեզօծ. ընդ նմին 'ի ներքուստ կախէր ջահն բիւրեղեայ, որ կշռէր երկոտասան լիտր, նոյնքան տանելով ձէթ, զոր Սմբատ Բ եա բերել 'ի Հնդկաց, ութ[1] բիւր ոսկի դահեկանաց, որ ըստ այժմեան արժէից միլիոնս փռանգաց առնեն։ — Երեք դրունք են եկեղեցւոյն, աւագն յարևմտից, և այլքն 'ի հիւսիսոյ և 'ի հարաւոյ. 'ի վերայ յետնոյս 'ի ներքուստ փորագրեալ կայ, «Ի Թու. ՆՁԲ». որ է ամ Տեառն 1033։ Ի վերոյ կողմնական դրանցն են երեք երեք պատուհանք երկայնաձևք[2], և երկու երկու ընդ մէջ նոցին և արևմտեան որմոյն, և մի մի բոլորակք 'ի վերնակողման կամ 'ի ճակատն. մի պատուհան քառակուսի երկայն յարևելս 'ի վերոյ խորանին, մի մի բոլորակք՝ աւանդատանց. երեք երկայնաձև պատուհանք յարևմտեան կամ 'ի ճակատու



34. Մէջ կաթողիկէին Անոյ։

կողման, և յաջմէ միջնոյն քանդակ արծուի. և մի բոլորակ 'ի վերոյ նորին. և 'ի վերոյ քան զայն կարմրագոյն շրջանակաւ խաչքանդակ մի[3]. և երեք պատուհանք 'ի դասին։ Ի հինգ կամարաձևս կարակնեալ է ճակատ եկեղեցւոյն. 'ի կենդրոն երկոցուն 'ի կամարացն են քանդակք զարդուց այսպիսիք[4]. նման նմին է և արևելեան կողմն, այլ ճոխագոյն ևս քանդակօք։ Կոնք խորանին 'ի ներքուստ կիսաբոլոր ամբառնայ մինչև 'ի ձեղունն, ուր կամարաձև յանգեալ խառնի ընդ կամարագօտիս բեմին. իսկ 'ի ստորև 'ի գետնոյ ցմարդաչափ բարձրութիւն՝ բաժանեալ է 'ի տասն խորշս երկայն բոլորշիս[5]. յետին երկուք 'ի խորշիցդ դէպ հանդէպ՝ դրունք են, որ ընդ սանդուղս քարեայս՝ գործեալս 'ի մէջ որմոյն՝ հանեն 'ի կամարակապ քարաշէն մատուռնս կամ պահարանս, ընդ որովք կան աւանդատունքն, վեց Զ. ընդ երկայն և չորս ընդ լայն, նոյնպէս քարաշէնք և կամարակապք։ Նման իմն սոցին զոն

1 Այսպէս արժանիշամարիմ զգրեալն ը (ութ), զոր ոմանք ընթեռնուն «ընդ բիւր ոսկի», և այլն։

2 Տես Պատկեր 37, յէջ 68։

3 Տես յէջ 68, Պատկեր 37։

4 Տես յէջ 68 Պատկեր 36։

5 Տես յէջս 69 և 70, զՊատկերս 38 և 39։

և այլ ոչ սակաւ դարանք կամ պահարանք յայլևայլ կող֊
մանս ձեղուանն, քարեղէն օձապտոյտ սանդղօք ելա֊
նելիք, ոչ է յայտ յինչ պէտս չինեալք. կարծի և ներ֊
քնատուն լինել եկեղեցւոյն նոյնպիսի նեղ սանդղօք իջա֊
նելի, այլ խափանեալ են շաւիղքն։ — Զայս տաճար մեծ՝
հիմնարկեաց խոխոտն ամենայն Թագաւորաց Բագրա֊
տունեաց Սմբատ, և յառկարար Տիեզերական կամ Շա֊
հանշահ կոչեցեալ, իբրև յամի 980, «'ի ձեռն ճարտա֊
» րապետին Տրդատայ, որ զկաթողիկոսարանին եկե֊
» ղեցին չինեաց յԱրգինայի [1]». այլ կանխելով մահուան

Թագաւորին քան զաւարտումն մեծագործ եկեղեցւոյն,
(որ Թուի տևեալ ըստ բոլորին աւելի քան զքսան ամ),
« Կին (Գագկայ որդւոյ և յաջորդի) նորա Կատրանիդէ
» Թագուհի, բարեպաշտուհի եղեալ, որ էր դուստր Վա֊
» սակայ Սիւնեաց իշխանին, չինեաց զհիմնարկեալ եկե֊
» ղեցին Սմբատայ, ամենապայծառ վայելչութեամբ.
» բարձրաբերձ կամարօք գմբեթաւորեալ. խորան եր֊
» կնանման. և զարդարեաց 'ի զարդ ծիրանեծաղիկ ստ֊
» կեթել անկուածոց, արծաթեղէն և ոսկեղէն անօթոց,
» և բազմապայծառ լուսատու անօթոց վայելչութեամբ,



35. Հարաւային կողմն կաթողիկէին Անոյ։

» որովք ջահանայր ըստ երկնային կամարին կաթողի֊
» կէն սուրբ »։ Իսկ, աւա՛ղ, 'ի յետին դարս կոխան եղև
և փարախ հարակաւորացն Քրդաց և Նմանեաց, ուր
Թագաւորքն և քահանայապետքն Հայաստանեայց հան֊
գիստնային։ — Արևելեան որմն, որպէս երևի և 'ի պատ֊
կերիդ (Թիւ 38), հերձեալ է վերուստ 'ի վայր, և սպառնայ

կործանումն ողբալի, թէ ոչ փութասցի 'ի կարկատումն։
Արձանագիրք ոչ սակաւք են յարտաքին որմունս տա֊
ճարիս. որպէս, 'ի հարաւայնումն՝ յիշատակարան Կա֊
տրանիդեայ, զորս կտակ հաստատէ Սարգիս կաթողիկոս
իւրով արձանագրաւ. և է այսպէս, գրեալ ձևով՝ որ տե֊
սանի կիսամասնեայ 'ի պատկերիդ. (Թիւ 40, յէջ 71).

**Ի ՆԾ Թ Հայոց ✠ ՄԺԹ Թ(ուին) Հոռոմոց . . . . . ի ժամանակս աս֊
տուածապատիւ եւ հոգեւոր Տեառն Սարգսի Հայոց կաթողիկոսի եւ ի մե֊**

[1] Ասողիկ, Գ. ԺԱ։

ծափառ Թագաւորութեանն Գագկա Հայոց եւ Վրաց Շահանշահի ես Կատ-րանիդէ Հայոց Թագուհի դուստր Վասակա Սիւնեաց Թագաւորի յողոր-մութիւնն Աստուծոյ ապաւինեցա եւ հրամանաւ առն իմո Գագկա Շահան-շահի շինեցի զսուրբ կաթողիկէս զոր էր հիմնադրեալ մեծին Սմպատա եւ կանգնեցաք տուն Աստուծոյ նորոգ եւ կենդանի ծնունդ հոգեւոր եւ արձան

36. Զարդ 'ի կամարանիջս ձախատոռ Կաթողիկէին Անւոյ. (տ. էջ 66)։

մշտնջենաւոր. զարդարեցի եւ զարդիւք պատուականաւք նուէրք ինձ ի Քրիս-տոս եւ զարմից իմ եւ որդոց Սմպատա Աբասա եւ Աշոտո. Հրամայեալ եմ ես տէր Սարգիս սպասաւորաց եկեղեցոյս յետ ելից բարեպաշտ Թա-

37. Դրուագք պատուհանից Կաթողիկէին Անւոյ. (տ. էջ 66)։

գուհոյս զվարդաւարին յիսնեակն միով քառասնիւ կատարել անխափան մինչեւ ի գալուստն Քրիստոսի. եթէ ոք զարձանագրեալս անփոյթ առնէ դատապարտեալ եղիցի ի Քրիստոսէ.



38. Կոնք խորանի կաթողիկէին Անւոյ. (տ. էջ 66)։

**Ի վեց ՌՆԼ եւ Գ ամացն Ադամա ի Ռ եւ ԲԺ մարմնանալոյ Աստուածոյ Բանի ՋԱԺ ամի հաւատալո ի Քրիստոս Հայոց գրեցաւ յիշատակարանս ի ձեռն իմ Բենէ .**

Թուական սկզբան արձանագրիդ ցուցանէ զաւարտ շինութեանն յամի Տեառն 1001. իսկ ստորինն զժամանակ գրութեան յիշատակին՝ յետ մետասան ամաց (1012), և յայնմ միջոցի Թուի ամենայն սարօք բովանդակեալ շինուածոյն. երեք փակատառքն յաւարտ առաջնոյ տողին խնդրեն լուծումն. միջինն Թուի ամիս։ Նշանակեալ այբուբենքդ կամ 12 Թիւք՝ յայտնեն արեգակնային ժամացոյց լինել փորագրեալ 'ի վիմի. այլ ոչ գիտեմ, 'ի հնուց անտի քանդակեալ 'ի տեղւոջ ուր երևիդ, եթէ ընդօրինակողին գծագրեալ աստ առ երի ժամանակագրութեան տաճարին. որ զիարդ և է, ճահողակի իմն հանդիպութեամբ ազդէ 'ի տեսանելիս՝ զանսյլայլակ հոլովումն ժամանակի և զայլայլումն ժամանակէից, զշինուածոց և զշինողաց։ — Նշանաւոր և գեղեցիկ է արձանագրութիւն Առօնն Մագիստրոսի, որոյ եկեալ 'ի դրանէն Յունաց, յաւուրս Զոյէ կայսրուհւոյ, ('ի միջոցի 1045–1034 ամաց), Նորոգէ զբերդն և բերէ ջուր յամրոցն, որպէս և ինքնին ծանուցանէ յիւրումն յիշատակարանի, որ է այս.




39. Խորշք խորանի կաթողիկէին Անոյ. (տ. էջ 66)։

✠ Կամաւք ողորմութեամբ բարերարին Աստուծոյ ես Առաւնս մագիստրոս մեծարեալ ի մեծափառ Թագաւորութեանցն ի գեղ զարդու եւ ի տիս մանգութեան իմոյ եկի յարեւելս ի գեղեցկաշէն բերդս յԱնի. բարձրացուցի բաւանդակ զպարիսպ սորին կառկառակոյտ արձանաւք եւ հաստահեղոյս ամրութեամբ եւ ի յիմոց մեծածախ գանձուց ածի ջանիւ ջուր յորդաբուխ ի մէջ ամրոցիս յուրախութիւն եւ ի ղովացումն ծարաւեաց։ Բերի ոսկի մատանեաւ գիր ազատութեան զինքնակալ ծիրանեծին Թագուհոյն վասն պախտից տանց քաղաքիս եւ Թաստակին զոր տաին ամ յամէ չափ ութից լտերց. այլ եւ ի խնդրոյ իշխանաւորացս խափանեցի եւ զգիտ երկուց լտերց զոր տայր մուԹսիբն զայս ամէն։

Նոյնպէս և երկար արձանագիրն Բագարատայ մագիստրոսի՝ որ առ Կոստանդեաւ կայսերբ (1057–1063), յոբում ասէ բառնալ կամ Թեթևացուցանել զհարկս և զբաժս 'ի դիւրութիւն քաղաքին.

✠ Անուամբ Տեառն ամենակալի եւ ողորմութեամբ սուրբ եւ ինքնակալ Թագաւորին Կոստանդեա Դուկի կամ եղեւ իմ Բագրտա մագիստռոսիս եւ արեւելից կատապանիս Վխկացոյս։ Առնել ողորմութիւն մայրաքաղաքիս Անւո։ Յորժամ առին զտանուտրութիւնս Մխիթար իպատոսն Կրտին որդին եւ Գրեգոր Լապաստակի որդին Սպաթար կանկլիտատն։ եւ Սարգիս Արտաւազա որդին Սպաթար կանկլիտատն եւ ազատեցին զվեցկէ կոռ։ եւ զայլի։

40. Մասն արձանագրի շինութեան կաթողիկէին Անւոյ 'ի կատրամնիդեայ թագուհւոյ, յամի Տեառն 1001. (տես յէջ 67)։

*եւ զկամին : եւ զանգարիոն : եւ կատապան ով եւ լինի տա սերմ: ո: մոդ- եւ ծախք զընծելոյն : զայլն տանուտէրքն առնեն խրեանց տամբ որ չհասնի ի յԱնի ոչ խնչ ոյժ : եւ գինեւոր անեցի եթէ սայլով եթէ գրաստով՝ բաժն ազատ է . եւ անեցի որ իւրենն մորթելիք գնէ բաժն ազատ է . եւ չալակաւոր Անեցի յամէն ցեղ բաժին կէսն ազատ է : եւ ի կապճին տախն դահեկա- նին : զ : դրամ այժմ տան : դ : բ : ազատ է : եւ մսագործի եթէ պախրէի լինի գլուխ եթէ ոչխարի զկէսն տա կէսն ազատ է : եւ ի նստ ո ին կարէն ո ? դրամն ազատ է .*

Ի ներքոյ արձանագրի Թագուհւոյն կայ յիշատակ Ջուհալի ուրումն Կարեցւոյ, յամի 1235, այսպէս.

**Ի Թուիս ի ⁝ ՈՁԴ ⁝** *շնորհիւն Աստուծոյ ես Ջուհալս Կարեցի որդի Գորգկանն միաբանեցա մեծափառ սուրբ կաթողիկէիս եւ ետու աւետարան Եսայի չրջառ եւ վառ . եւ սպասաւորք սրբոյս հաստատեցին մեզ ի տարին աւր մին պատարագ ի սաւնի սուրբ Աստուածածնին որչափ ես կենդանի եմ իմ եղբաւրն Վահրամայ եւ յետ մահուան իմոյ ինձ առնեն եւ կենակցին իմոյ Տիկնոջն . կատարողն աւրհնեսցի :*

Զկք յիշատակ Նորոգութեան Կաթողիկէիս, այլ յետ երկերիւր ամաց շինութեանն, յամի 1213, Տիգրան պաշտօնեայ Զաքարիայ Սպասալարի, նորոգէ զաստիճանս նորին, և գրէ այսպէս 'ի ճակատ եկեղեցւոյն.

**Ի** *թուիս* **ՈԿԲ** *Կամաւքն Աստուծոյ ես Տիգրան ծառայ Քրիստոսի շինեցի հալալ ընչիւք իմով զաշտիճաներս մեծափառ սրբոյ կաթողիկէիս զոր ի բա- զում ամաց հետէ խարխալեալ էր եւ ետու նուէրք ի սուրբ կաթողիկէս զիմ գանձագին կուղպակն որ ի կատոնոցին է . ետու երկու Տաւնական եւ սուրբ Գրիգոր մին եւ երկու սկի արծաթիք աւագ խորանին եւ եդի լուծ ի վերա սպասաւորաց սորա ի տարին ... պատարագել յանուն իմ մինչեւ ի գալուստն Քրիստոսի :*

Աւագ խորանն ասելով՝ յայտնէ և զերկուսին փոքրիկ աւանդատունս մի մի խորան համարել: — Վերջին արձանագիր է Ռուբենայ ուրումն յամի 1286. ընծայէ կաթո- ղիկէին զձիթահանս իւր, մերձ յապարանսն Տիգրանայ.

**Թու . ՉԼԵ** *կամաւն Աստուծոյ ես Ռուբէն ծառա Աստուծոյ որդի Դավթի եւ թոռն Յոհնա ապաւինեցա յԱստուած եւ ի մեծափառ սուրբ կաթողի- կայս զոր խորհեալ էի եւ կատարեցի ետու ընծա ի սա զիմ գանձագին ձի- թահանքն բոլոր մին ակն իւր ամենայն յաջողութեամբ որ է մերձ ի ... նիցն Տիգրանա զոր իմ հալալ արդեամբք շինեցի եւ գնեալ էի զինքն ի թոռնե- րուն ... եւ իշխեցող սորա Սարկաւագն եւ այլ սպասաւորքն հաստուցին մեզ փոխարէն (յամենա)յն ամի հինկ աւր պատարաք յանուն հաւր իմոյ Դաւթի*

*արդ եթէ ի մեծաց ոք կամ ի փոքունց . . . խմոց կամ յաւտարաց զար֊ դւինքս մեր հանել կամ խափանեալ ջանա մեղաց մերոց պարտական եղիցի յատենին մեծի . իսկ որք հաստատուն պահեն աւրհնին յԱստուծոյ :*



41 . Եկեղեցի մերձ 'ի Կարողիկեն :

*Կայ և այլ արձանագիր մի կիսեղծ առ հարաւային դրանն* [1] *:*

*Ի դերբուկս աւերակացն շուրջ զմեծափառ կաթողի֊ կէին կուտակելոց, նշմարին մատրունք երկու . մին յա֊ րևելից կուսէ աւընթեր որմանկեանն հարաւոյ, որոյ և տեղի [խորանին տակաւին կանգուն կայ և փայելչագեղ յայտնի* [2] *. միւսն 'ի հիւսիսոյ՝ առ արևմտեան որման֊ կեամբ, այլ յոյժ քայքայեալ: Թերևս մի 'ի սոցանէ, կամ այլ սակաւ ինչ 'ի բացեայ՝ էր այն զոր յիշէ պատմիչն Վարդան 'ի գործս Սարգսի կաթողիկոսի, եթէ « Շի֊*



42 . Դուռնայ դուռն (տես յէջ 74) :

[1] Անուամբն Աստուծոյ ամենակալի . . . ն զայգին որ ի Ծաղնոցին է ընծաեցի ի . . . Վարդէվարին պամ հինգշաբաթն աւրն եւ . . . որդւոյն իմոյ Գէորգա արնեն զժամն եւ յե . . . ց կամ յիմոց կամ յաւտա֊ րաց եւ զայգի . . . ի Քրիստոսէ եւ ի մեղացս եւ իմ . . .

*Ի ներքոյ բանիցս կայ խաչքանդակ, և 'ի ստորև նորին այլ արձա֊ նագիր Թերատ, կամ մասն առաջնոյն, այսպէս.*

Ով սրբասէր քահանայք եւ սրբասնեալ ժողո֊ վուրդք որք երկրպագէք տիկնո . . . ոգուծ . . խրն֊ դրեց . . .

[2] *Ծանեաւ զսա և Նէգ. Բորէ յամի 1858 և յոյժ ճոխազարդ ասէ.* « Le style de l' architecture est beaucoup plus orné ». E. Boré.

» Նեաց զվկայարանն որքոց Հռիփսիմեանցն առընթեր կա-
» թողիկէին Անոյ, և փոխեաց անդր զնշխարս նոցա,
» բերեալ մեծաւ հանդիսիւ, և կարգեաց զօրն տօն մեծ »։
Հաւանելի է մերձ սոցին լինել և տան կաթողիկոսարա-
նին, թէպէտ և ոչ յիշատակի յայտնապէս. և թէ ոչ
առաջին կաթողիկոսքն՝ այլ դէթ Տէր Պետրոս, և յետոյ
եպիսկոպոսունք Շիրակայ նստէին անդ։

29. Ցարձանագիրս ուրեք յիշի տուն Գրիգորի որդւոյ
Ապահէրժի « մօտ 'ի սուրբ Կաթողիկէ՝ 'ի հիւսիս կոյս »,
զոր նուիրեաց վանից Արջոյ Առիճոյ։ Թուի թէ և այլ
ևս ոչ սակաւ շինուածք քաղաքականք կային 'ի հա-
րաւոյ կաթողիկէին ցգետն Ախուրեան, զի նշմարին
առ քարափամբք սորին յայնմ կողման՝ դուռն մի 'ի քա-
ղաքորմն որ պարսպէ զձորեգրն, այն է Դուռնայ Դուռն [1],
յայժմեայցս յանուն Նրևանայ կոչեցեալ, և աղբիւր մի,
և կամուրջ միակամար, որոյ զլուխք ևեթ կան յերկոսին
կողմանս Ախուրենոյ. և յարևելեան որմն պարսպացն
առ դրանն արձանագրեալ է այսու օրինակաւ [2].

ԹՎ.ՋԿ
Թ
ՇՆՈՐՀԻՒԵՒՈՂՈՐՄՈՒԹԲՆԱՅԵՍՍԱՐԳԻՍՏ
ԻԼԵՆՑԲԱԺԲԱՍԹՈՂԶՕԱՐՋՌՒԱԳՃՈՒԷԲԳՐԻ
ԳՈԲՈՕԲԱԺՆՄԵԾԵՒՕՓՈԲԲՎՍՀՆԿԵԲՍՏ
ԵՆՊՏՐՈՆԻՆՄԵՐՈՇԱՀՆՇԱՀԻՒԱԾԱ
ՏՈԲՕԱԲԱԿԱՑՆՕԱՔԱՐԻԱԻԵԻԵՂԲԱՑ
ՆՈՐԱՅԵՐԿԱՐԿԵՆԴՆՈՒԹԵԷՈԲՈԲՕ
ՅԻՃԱՏԱԿՍԽՍՓՆԱԷՆՕՈՎԵՂԻՑԻ
ՅԱԵՆԱԿԱԷՆԱՅՀԱՍՏԱՏՈՒՆ
ՊԱՀՈՂԲԱՒԲՀ
ՆԻՆՅԱՅ

43. Արձանագիր Տիկնեց Սարգսի Բաժարարի Անոյ առ Դռնեայ դրանն։

Կարծեմ մօտ յայս դուռն կամ 'ի մերձաւոր սորին, 'ի
խոռոչի ուրեմն գետափին կամ 'ի հուն իսկ Ախուրեան
գետոյ՝ թաքոյց Պետրոս կաթողիկոս լռերս 400 միւռո-
նի, կասկածեալ (որպէս և եղևն) զի արգելցեն Ցոյնք

1 Տես Պատկեր 42 յէջ 73։

2 « ԹՎ. ՋԿԹ. Շնորհիւ եւ ողորմութեամբն Աստուծոյ ես
» Սարգիս Տիկնոց բաժրարս թողի զԱրջո Առճո Սուրբ Գրիգորո
» զբամն մեծ եւ փոքր վասն հանկըստեան Պարոնին մերո Շա-
» հանշահի եւ աստուածասէր զաւակացն Զաքարիաի եւ եղբարց
» նորա յերկար կենդանութեան. որ որք գ․յիշատակս խափանէ նզով
» եղիցի յամենակալէն Աստուծոյ հաստատոն պահողք աւրհնին
» յԱստուծոյ »։

ճպաշտօն իւր[1]: Մերձ սոցին են կամարակապք 'ի վերայ քարեղէն լայն սանդղոց, որք լցեն թերեւս Բէշքէնակապք կոչեցեալքն յարձանագրին. և 'ի հանդիպակողմն ևս գետոյն՝ յարևելեանն՝ երևին նոյնպիսիք. իսկ սաստ 'ի ներքին կողման քաղաքին՝ 'ի կամրջոյ այտի յիշեցելոյ ընդերկարեալ ընդ երեսս քարափանց ձորոյն ընդ արևելս՝ աւելի քան ընդ 50 Ձ. տանին հանեն 'ի շինուածս խաթարեալս, որք նոյնպէս յերկարեալ ընդ նոյն կողմն աբևելից՝ յարին 'ի զառ 'ի վայր ապառաժուտ դժուարակոխ բարձրաւանդակ տեղի, ուր կառուցեալ կայ Ս. Գրիգոր Լուսաւորիչ վանք և եկեղեցի, կրսեր շինութեանն ժամանակաւ քան զայլս, այն է յամի 1215, և անաղարտ և անարատ մնացեալ քան զամենայն շինուածս Անոյ. ուր, վկայէ շինողն Տիգրան Հոնենց՝ պաշտօնեայն Զաքարեայ, կայր յառաջն մատուռն մի Տիրամօր նուիրեալ, և կոչէր Մատուռն Աստուածածնի. և « էր քաղափն և մացառ » տեղի »: Արժան է ընթեռնուլ զողջոյն զերկայն արձանագրութիւն, որ գրեալ կայ 'ի հարաւային որմն եկեղեցւոյն. յորում յիշէ մի ըստ միոջէ զտուրս կրպակաց, այգեաց և այլոց տեղեաց՝ 'ի հասոյթ վանացն և եկեղեցւոյն կարգելոց, և զսահմանս սոցին, հանդերձ անուամբքն. և ունի այսպէս.

✠ Թւ: ՈԿԴ: Շնորհիւն եւ ողորմութեամբն Աստուծոյ յորժամ տիրեց քաղաքիս Անոյ ⁝ հզաւր եւ տիեզերակալ Ամիր Սպասալար եւ Մանդատուր-



44. Ս. Գրիգոր Լուսաւորիչ վանք:

թա խուցէս Զաքարիայ եւ որդին նորա Շահնշահ ես Տիգրան ծառայ Աստուծոյ որդի Սմբատաւրենց[2] Սուլեմա: յազգէ Հոնենց վասն յերկար կենդանութեան տ(եր)անց իմոց եւ որդոց նոցայ շինեցի զվանքս Սուրբ Գրիգորոյ որ ի հինն Մատուռն Աստուածածնին կոչիւր որ էր քաղափն եւ մացառ տեղի աէտ (?) զոր իմ հալալ գանձով գնեցի ի հերէնէտիրաց եւ բազում աշխատութեամբ եւ գանձով պարսպեցի չուրջմակլի. շինեցի զեկեղեցիս յանուն սրբոյն Լուսաւորչին Գրիգորի եւ զարդարեցի բազում զարդիւք փըրկա(կա)ն նշանաւք սուրբ խաչիւ ոսկիք եւ արծաթիք եւ պատկերագործ խաչերով զարդարել ոսկով եւ արծաթով եւ ակամբք եւ մարգրտաւ եւ կանթեղաւք ոսկի եւ արծաթի եւ նշխարաւք սրբոց առաքելոց մարտիրոսաց եւ

1 Մատթէոս Ուռհայեցի:

2 Քննելի է ընթերցուածդ, թերեւս Սմբատա որդւոյ:

մասամբ աստուածընկալ եւ տէրունական խաչին եւ ամենայն ցեղ սպասք յօսկոյ եւ արծաթոյ եւ բազում զարդաւք չինեցի զամենայն ցեղ զընակարան վանականաց եւ իշխանաց եւ կարգեցի ի սմայ քահանայք պատարագողք մարմնոյ եւ արենն Քրիստոսի որ անխափան պատարագ մատչի վասն արեւշատութեան տ(եր)անց իմոց Շահնշահի եւ որդոց իւրոց եւ վասն թողութեան մեղաց իմոց . եւ ետու ընծայս ի վանքս սուրբ Գրիգորոյ հայրենիք զոր գնել էի գանձով եւ վճռամբ հայրենէտէրաց եւ զոր ես ի հիմնէ չինել էի զայտոսիկ . Գաւռոխոնեց գեղին կէսն եւ Քարհտին Ե դանկն , Մշակունեց կէսն



45. Ս. Գրիգոր Լուսաւորիչ։

Կապղուցն կէսն , Ցամաքծովն բոլոր , Խուղած Մահմունդ ի Կարուց յերկիրն ու Ցրնդոյ Բ դանգն , Խաչորկանն , եւ փնդուկն ի քաղաքիս , հայրենիք բաղնիսն ու միլն ի մոդանիս , խանապարն կուղպակնովն ու կամարակապ փնդուկն ու մարագն հետ բաղնեցն տէր Սարգսի ախոռն ու մարագն զոր գնեցի կալն եւ Բ ակն ձիթահանք եւ ախոռնի ու մարագնի վանիցս ի դռանս վանիցս առջեւ պահէզն ու լանջն ինչուրվի Գլիձորի դուռն ինչվի գետն ու գետեզերն պահէզն զոր գնել էի եւ չինել Գմնադռանն կէս ակն ջաղաց թարփ մի բոլոր ու մին այլ թար-

փին չաբ բ աւր Գլխձորին ջաղաց ա թարփին չաբ բ աւր ի բէչքէնակապէն ինչուրվի կարմունջն գետին կէսն իմ գնած էն. Պապենց խանաբարն դ դանգն ու դուան կուղպակն բոլոր տներ Հատէցոնց զուկակի քաղաքիս դուանս բաղում հողեր գնած. այգի ա յԵրեւան այգի ա յՈշական այգի ա Կոշ. էգի ա յԱրուճ որ Սաղոտն կոչի, այգի ա ի Մրեն այգի ա ի Ծմակին որ կաթողի




46. Յատակաձև Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ։

հող կոչի. զայս որ գնած է. եւ այլ բազում գրաւկնած էր, զոր ոչ արձանագրեցի վանացս էի տվել ու թէ տէրքն թափեն ոսկին վանացս զոր ուրիշ իմ անդարձագրին եմ գրել. եւ զվանքն Բեխենց կոչեցեալ զոր ես շինեցի եւ նորոգեցի ընձայաւք փարթամացուցի ամէնովն. սուրբ Գրիգորոյ վանացս հոգացողս հոգայ զորպիսութիւն. արդ էթէ ոք ի մեծաց կամ ի փո-

քունց յիմոց կամ աւտարաց զոր ինչ արձանագրիս է խափանել ջանա կամ
թէ իրք չորթէ յարդենցս որ ի սմա հաստատել է կամ գյիշատակ զմեղու-
ցել ծառայ(ի)ս Աստուծոյ խափանէ զինչ և իցէ պատճառաւք այնպիսին ու-
րոչել լինի փառացն Որդոյն Աստուծոյ եւ զպատիժս Կաենի եւ զՅուդայի
ժառանգեսցէ ի գլուխ իւր եւ երեք սուրբ ժող(ով)ոյն եւ Թ̅ դասուց հրեշտա-
(կա)ց նզովել եղիցի եւ մեր մեղացս համարս տացեն առաջի Աստուծոյ եւ կամ
արարքն եւ հաստատուն պահողքն աւրհնին յԱստուծոյ. ✠. ԻԴ̅[1] Գ̅Ջ̅:



47. Մէջ Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ:

Եկեղեցին՝ արտաքին և ներքին ձևով բերէ զնմանու-
թիւն կաթողիկէին. պարզագոյն ևս գոլով, զերծ ՚ի գո-
թախառն կերպարանացն. 14 Զ. է ընդ երկայնն և 10
ընդ լայն. մի միայն ունելով դուռն՝ յարևմտից. կողմնա-
կի երեսքն մէտասան զոյգ նրբին սեամբք բաժանեալ են
՚ի տասն երկայն կամարաձևս, իսկ ճակատն և թիկունք ՚ի
վեց, եօթն եօթն զոյգ սեամբք, ընդ բնաւ 72 սիւնակք.
իւրաքանչիւր ՚ի զուգիցն ՚ի միում խարսխի հաստատեալ
է, որպիսի են և սիւնակք գմբեթին՝ յերկոտասան կամ
յութևտասն բաժինս տրոհելոյ. յաղեղունս կամարացն,
՚ի բարաւորս լուսամտին և յայլ մասունս բազում մանր
դրուագք են վայելուչ քանդակաց, մանաւանդ ազգ ազգ
հաւուց: Անսիւն է մէջ եկեղեցւոյն, այլ յերկոսին կող-
մանսն՝ ուր որմք արտաքուստ ՚ի ներքս անկիւնաձև գո-
գացեալ են՝ որպէս զկաթողիկէին և առաւել քան զնոյն,
յերկոսին տեղիս մէն մի սիւնք յեցուցեալ կան, յորոց
ձգեալ կամարք, որպէս և յորմոյ խորանատեղւոյն, մի-
անգամայն ամբառնան զգմբէթն գեղեցիկ, որ ունի ութ
լուսամուտս անձուկս. իսկ եկեղեցին՝ վեց: Առ խորա-
նաւն աստի և անտի են մատուռք կամ աւանդատունք
փոքունք կրկնայարկք, ունելով մէն մի պատուհան: Նշա-
նաւոր շնորհք են եկեղեցւոյս դեղանկար պատկերքն
չափաւոր իմն վայելչութեամբ[2], յորոց սակս ՚ի Թուրքաց
Նագըշլը գիլիսէ (Նկարէն եկեղեցի) կոչի. և նկարողքն
համարին Յոյնք, այն զի յունարէն գրեալ են անուանք
սրբոցն նկարելոց. գտանին և յոյն և վրացի արձանա-

1 Այսինքն Խուրայէլ ֆէէն:

2 Դևսիէ զայս վկայէ. « Peintures d'un style très-curieux et d'une belle conservation ... Tous les sujets ne sont pas de la même main, ni peut-être de la même époque ; car il y en a qui sont très défectueux, tandisque d' autres ne dépareraient pas une église d' Europe ». — Texier, I. 99. — Նոյն նշմարէր ընդ պատկերօքն և հայերէն անուանս:

գիրք ինչ յեկեղեցւոջս. Թերեւս սոքա իցեն կոչեցեալքն 'ի Տիգրանայ Պատկերագործ խառնքն։ Ըստ Մուրաւիէֆի, 'ի կամարամիջի դրանն է պատկեր Փրկչին, յորոյ մի կողմն Էջքն 'ի խաչէն, 'ի միւսն Տիրամայրն, հրեշտակք և այր մի 'ի քուն. 'ի ներքին ճակատ եկեղեցւոյն՝ Տիրամայրն Աստուածորդւովն 'ի գրկի. Անդանօ յետին ընթրեաց, և Սուրբք Նիկողայոս, Ղեւոնդիոս, Արիստակէս, և այլք, յունագիր անուամբք. 'ի կողմնական որմունս նկարեալ են Մուրք Քրիստոսի յՆրուսաղէմ՝ իջել, և Վերափոխումն Կուսին։ Ներկադեղով եւս գրեալ է 'ի վերայ կամարաձեւ բարաւորի դրանն յունարէն տուն սաղմոսին. « Տէր սիրեցի զվայելչութիւն տան քո », և 'ի ներքոյ վրացերէն՝ միւս տուն. « Այս դուռն Տեառն է և արդարք » մտանեն ընդ սա »։ Կից է եկեղեցւոյն և գաւիթն կամարակապ փոքր և քառակուսի, այլ կամարացն կործանեալ սակաւ ինչ մասն մնայ կանգուն, սեամբք չորիւք, երեք յարեւմտակողմն և մի ընդ հարաւ, համանման եկեղեցւոյն վայելուչ ձեւով և քանդակօք։ Ի հիւսիսոյ գաւթիս և որմնակից՝ մատուռն մի կայ ընդ լայնութեամբ նորին, նոյնպէս կործանեալ, ունելով և սորա նկարս ոչ սրբոց միայն այլ և հաւուց և բուսոց։ Իբր հարիւր ամաւ զկնի Տիգրանայ (1310) Մաթէ ոմն պաշտօնեայ Շահանշահի 'ի զարմէ Զաքարեանց արձանագրէ յարեւելեան որմն եկեղեցւոյն, և ծանուցանէ զոր արարն.



48. Ժամատուն Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ։

Թվ: ՉԾԹ. Աթապագի Ամիր սպասալար Շահանշահի Մծիկնաւ բարթու խուցէս Մաթէս և իմ կենակիցս Թէնի եւ իմ եղբէր Մարկոս յայս ժամս որ Պարոն ողորմեցաւ զվանքս մեզ էրէտ վաղ բարեպաշտ Տիգրան ջուր էր բերել ի վանքս ու ի յանտիրութենէ խաղտել էր ու կտրել մեք վասն արեւշատութեան Պարոն Շահանշի եւ Խուանդզին եւ իրենց որդուն Զաքարի եւ վասն մեր հոգուս յիշատակ բերաք զջուրս եւ հաստատեցաք յիշեցէք ի Քրիստոս։

Ցեկեղեցւոջս յայամիկ են և երկոքին խաչվէմքս մահարձանք (Թիւ 49 և 50) մին ունի զայս գրուած.

Յանուն Աստուծոյ. Ես Յովանէսս... վանէ որդի Զորտվանիկի կանգնեցի զխաչս զայս.

Որքան անաղարտ մնացեալ է եկեղեցիս Ս. Լուսաւորչի՝ այնքան և աղարտեալ և անհետացեալ իմն են ամենայն ցեղ բնակարանք վանականացն և իշխանաց, զոր յիշէ Տիգրանդ յիւրում արձանին։ Ընդ որս՝ և առաւել ևս ցանկալի էր գիտել զկիրս Բնիւնեց վանաց, զոր ինքն իսկ շինեալ աստ և յանձնեալ 'ի խնամս հոգացողի վանացն Ս. Գրիգորի։ — Ի ստորոտս քարափին վանացս յեզր գետոյն կայ մատուռն մի փոքրիկ, և 'ի հարաւոյ Նորին աշտարակք մեծ և փոքր։

30. Երևին ձեռագործ քարայրք կամ սենեակք փորածոյք 'ի կողս քարափին և ձորոյ Ախուրենոյ, յորոց



49. Խաչվէմ 'ի Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ։

սակաւուք 'ի բացեայ են երկու քարայրք 'ի ստորև զառիվայրին ընդ արևելս կոյս, և առ երի միւսք ցածուն, ընդ որ ուղի ստորերկրեայ տանի Նախ փոքր մի 'ի քաղաքն կոյս, ուր և երևի եկեղեցի մի. և չորք քարափոր դրունք, որոց մին հանէ ընդ հարաւակողմն ընդ գետոյն իսկ[1]. այլքն հանեն 'ի փողոցս իմն բաւզաձև ճզճղեալս ընդ քաղաքաւն՝ 'ի հարթ յատակի. որոց մին, ասեն, գնայ մինչև 'ի քարածերպս Ծաղկոցաձորոյ. իսկ առաջինն ընդ խոր և զառ 'ի վայր իջանէ, և անցեալ ընդ գետովն հանէ 'ի գլուխ բլրակի միոյ, յորում և աշտարակ կայ կիսակործան, ուր Ռուսաց պահնակս կարգեալ էր երբեմն առ արգելուլ զփախուստ գաղթելոցն՝ ընդ այն ճանապարհ թաքուն։ Յատակն այն 'ի սկզբան խճախառն է և լպրծուտ, և ուրեք ուրեք մգլին 'ի վերուստ շիթք ջրոյ գետոյն, վասն որոյ և զանգիտելի են արդ անցքն, և 'ի ռամկաց Թուրքարէն Կիտւեն կէրմէզ կոչին (անդարձագնաց)։ Որ զխարդ և է՝ ցուցանէ ոչ փոքր ճարտարութիւն և արուեստ զմերոց Նախնեաց, ութ հարիւր ամաւ յառաջ զԱխուրեանն Անոյ Նախագաղափար կարգելով Գամիզայն Լոնտոնի. Թուի յըղգուշութիւն և 'ի փրկանս հնարեալ զայս վասն վտանգաց պատերազմաց. սակայն են ոմանք 'ի մերոց յետին գրողաց՝ որ ոչ միայն յայսմ վայրի՝ այլ և ընդ բովանդակ քաղաքաւն ասեն լինել գետնափոր, կամ թէ Ներքնայարկ քաղաք մի ընդ վերնովն, յորում 'ի դէպ է ակն ունել գտանել այլևայլ տեղիս 'ի պէտս իրաց իրաց, գուցէ և հանգստարանս և մատրունս[2]։

Նման կամարակապ սանդղաւոր ճանապարհին՝ զոր տեսաք 'ի Հր. կուսէ վանաց Ս. Գրիգորի, կայ և 'ի Հ. ընդ զառ 'ի վեր գետոյն, և հոյակապ ևս քան զառաջինն, իբրև 65 Ձ. երկայն և 14 լայն. երկուստեք որմունք են, և 'ի վերայն կամարակապ, 'ի Ներքոյ աստիճանք համակ քարակոփք. ոչ ուղղակի ձգի փողոցդ, այլ յաջ և յահեակ խոտորեալ, և առ անկեամբքն պատուհանք, որպէս և յայլ կողմանս ուրեք. յառաջելով ընդ արևելս՝ ընդլայնի փողոցն. քարինք որմոցն սրբատաշք և յստակագոյնք ևս են, թէպէտ և վերնայարկն խաթարեալ և փլեալ ուրեք ուրեք, որպէս և կամարքն առաջինք. փողոցն այն լայնարձակ հանէ յեկեղեցեակ մի կամ 'ի զոյգ մատրունս, 'ի կարմիր աղիւսագոյն քարանց կերտեալս, մէն միով խորանաւ, որք ամենևին անաղարտ մնացեալ են, այլ չունին արձանագիր, վասն որոյ և անանուն. այլ չգիտեմ որով մակաբերութեամբ Ս. Աստուածածին կոչէ զսա ոմն յեւրոպէացի քննչաց քաղաքիս[3]։ Մի 'ի մատրանցն բոլորշի բազմակողմանի ձևով, հազիւ երկու Ձ[4]. տրամագծաւ, ունի լուսամուտս չորս, Նոյնպէս և գմբէթ իւր ամբարձեալ 'ի վերայ վեցից որմասեանց, պէսպէս դըրուագօք հաւուց. միւսն քառակուսի երկայն փոքրագոյն ևս է, երկու լուսամուտք, և երկու խորշիւք 'ի կողմանս

1 Մուրաւիէֆ կոչէ զայս Galerie couverte, ըստ Պրոսէի, allant à la rivière. Խուստապաշեւ, Un chemin souterrain.

2 Յետ գրելոյ զայսոսիկ՝ 'ի ժամանակի տպագրութեան գործոյս եհաս 'ի ձեռս մեր փոքր օրագիր տարւոյս (1880), յորում Յ. Գեղամեանց պատմէ, ճարտար լուսագրող ընկերաւն (Յ. Քիւրքճեան) առաջնորդութեամբ Տաճկի միոյ գիտողի, մտեալ 'ի ստորերկրեայ քաղաքն, ոչ յայսմ կողմանէ, այլ յահեկէ աւերեալ դրան արտաքին պարսպին՝ որ 'ի կողմն Ծաղկոցաձորոյ, ուր անձուկ մուտք են 'ի ծերպ քարաժեռից, ընդ որ հարկ է զառաջինն սողալով մտանել և յառաջել. այլ ընդ հուպ բարձրանայ վերին յատակն կամ խորանայ Ներքինն, և տայ համարձակ գնացս ընդ անձուկ փողոցս 'ի միջի թանձր որմոց, որք բաւզաձև խոտորին յայս կոյս յայն կոյս, և առ երի կան տնակք և կրպակք մանունք, որոց յայտնին և դրունք և դարանք. այլ լուսամուտ ոչ երևեցաւ, զի ծրագաւ շըրջէին. բայց հողմն կամ օդ ցուրտ շնչէր ուստեք և տագնապեցուցանէր, աւելի քան զ20° Նուազելով անդ ջերմութեան քան յերեսս քաղաքին, վասն որոյ ոչ հանդուրժեալ աւելի քան զկէս ժամ՝ ելին արտաքս. բայց ուղեցոյցն ասէր յամի 1876 ընդ ոպայից ոմանց ժամս չորս շրջեալ և ոչ գտեալ զեզր. ուրեք ուրեք պարիսպք ստուարք արգել լինէին յառաջելոյ. ուրեք և ջուրք մղեալք կաթեն 'ի վերուստ, որոյ Նիւթ է կրաքար և ածղաքար։ Երևին և յայլ կողմանս մուտք 'ի գետնաքաղաքն, այլ խցեալք կամ խանգարեալք են։

3 Ալիխ 'ի յատակագծին Անւոյ (Թիւ 4) կոչէ Mère de Dieu.

4 Հայաստան լրագիր, (Թիւ 127) ասէ զչափն 4 1/2 զրայ։

սեղանոյն. մի մի դրունք են նոցա ընդ արեւմուտս, ուր և գաւիթ վեցեքումք սեամբք, 'ի կարմիր քարանց. յորում ասի թաղեալ վեցից միակեցաց, և առ նոցին յիշատակէ համաթիւ խաչվէմք 'ի վերոյ դրան փոքրագոյն մատրանն. իսկ 'ի վերայ դրան մեծագունին՝ նրբագոյն ևս քանդակք են դրուագեալք: Թերևս այս էր տեղի Բեխենց վանացն շինելոյ 'ի Տիգրանայ. ցարդ երևին աւերակք բնակարանի յարևելից մատրանցն, զոր ռամիկն ասէ ապարանս լինել արքայդստեր. և բացագոյն ևս անդր աւերակք են քարակոյտք, ընդ որս երևին և նշխարք հաստակառոյց որմոց յարևմտից կուսէ եկեղեցւոյն. զորս մի յեւրոպացի տեսողաց հսկայակերպս կամ կիւկլոպեայս ասէ. և 'ի հիւսիսոյ կուսէ՝ մնացուածք հզօր աշտարակաց:

Հուպ 'ի սոսա և 'ի ձորափն Ախուրենոյ՝ կան այլորակ շէնք, Բաղանիք մի, և դերբունկք աւերակաց կուտեալ զնովաւ գրեաթէ մինչ 'ի ձեղունն, ընդ որս արդ 'ի վայր իջանեն 'ի յատակն, որ է քառակողմն՝ երկայն իբր 18 Զ. լայն՝ 14: Ի հինգ բոլորակս զատուցեալ է, մի մեծ 'ի միջի և չորք մանունք յանկիւնս, և 'ի միջի նոցին՝ զմեծ բոլորակաւն՝ չորք քառակուսի սենեակք, որք ցած դրամբք հաղորդին ընդ միջակայն, և 'ի վերոյ կողմանէ քաղելով իմն տերևաձև կամ սրանկիւն աւարտին. Նմանաձև են և կամարքն ձգեալք. երկու ևս մեծագոյն սենեակք են որմով զատուցեալք յայլոցն ամենեցուն: Երևին ցարդ տեղիք ծորակաց ջրոյն, այլ խանգարեալ է ամենայն: Նա զի մերձ են բաղանիքս վանաց Լուսաւորչի՝ դաստակերտին Տիգրանայ, հաւանութեան է թէ այն էր անուանեալն յարձանի միում՝ Հոնենց բաղանիք, որ է մականուն սորին Տիգրանայ, որ և յիւրում յերկայն արձանագրութեանն յիշէ զհայրենիք բաղնիսն ևս տուեալ 'ի հասոյթ վանացն. 'ի նմին արձանագրութեան յիշէ և զայլ բաղանիս 'ի կողմն հրապարակի քաղաքին: Ճանապարհորդ ոմն անգղիացի որ իբր յիսուն ամաւ յառաջ (1834) զննեաց զԱնի, բազում բաղանեաց նշանս տեսանէր անդ[1]: — Բաղանիքս այս կան 'ի Հ. Ե. ծայր քաղաքին և յանկեան ձորակցաց Ախուրենի և Գայլեձորոյ. յորմէ և անդր հիւսիսակողմն քաղաքին է և մեծ պարիսպքն:

31. Ցարևելեան ծագ հիւսիսակողման քաղաքին և հուպ 'ի պարիսպս Գայլեձորոյ, յարևմտից կուսէ բաղանեացն և ոչ կարի հեռի 'ի նմանէ՝ կայ յետին 'ի ծանօթ նշանաւոր հին և հոյակապ շինուածոց Անւոյ, Ս. Փրկիչ եկեղեցին, փոքր տարածութեամբ, այլ գեղեցիկ և ամբաշէն. բոլորշի է արտաքուստ, 'ի ստորև ութանկիւնի ունելով խարիսխ 13 1/2 Զ. տրամագծաւ, և 'ի վերոյ յ'12 անկիւնս[2] բոլորեալ, գորշագոյն մեծամեծ սրբատաշ վիմօք կերտեալ, և նուրբ սեամբք 'ի միջոցս կամ յանկիւնս կողմանցն. իսկ ներքսակողմն եկեղեցւոյն յութ կիսաբոլորս բաժանեալ է, և յիւրաքանչիւր միջի մէն մի սիւն միատանի. յորոց վերնախարսխաց և 'ի համօրէն կողմանց հուսքեալ ձեղունն՝ գործէ բոլորակ ամբարձիչ գեղանի երկյարկեան գմբեթին, որ ցարդ կանգուն կայ, 'ի վերնոյ գտակէն միայն կապտեալ. ստորոտն բոլորշի է երկոտասան պատուհանօք, և 'ի միջոցսն նկարէն պատկերք (աւետարանչաց և այլոց սրբոց). վերակողմն գլանաձև: Երկուս ունի դրունս, և երկուս աւանդատունս փոքունս յորմամէջն զետեղեալս, զի յոյժ թանձր են որմունքն, վասն որոյ և անխախուտ մնացեալ շինուածն իննհարիւրամեայ: Ի կէս բարձրութեան կիսաբոլորին որ յարևմտեան կուսէ դրանն՝ ամպհոնաձև տեղի յօրինեալ



30. Մահարձան 'ի Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ. (տ. էջ 79):

է քարեղէն ելանելեօք ընդ որմամէջն, որ և տանի հանէ մինչև 'ի տանիս եկեղեցւոյն և գմբեթին: Ցարևելակողմանն է լուսամուտ բոլորշի, խաչվէմ մի մեծ և քանդակ արծուի: Երկար և հին արձանագիրք փորագրեալք յարտաքին կողմանս որմոցն, յայտ առնեն՝ թէ ոչ զհիմնարկութեանն այլ զաւարտմանն ամ, այն է 1035, և զշինողն՝ Աբլղարիպ, զորոյ տեսաք ձեռակերտս և յիշատակս 'ի Ս. Գրիգոր Աբուղամրենց (24). Նոյն և սա 'ի Ս. Փրկիչս՝ գրէ կրկին յիշատակս կարևոր գիտելեօք վարչութեան եկեղեցւոյն, յամս 1035 և 1036.

1 Several Baths. — Wilbraham.

2 վասն որոյ Ակլին քսանանկիւնի կոչէ Église en Icosigone. իսկ Մուրաւիեֆի՝ նման երևեցաւ հռչակաւոր մզկիթին Խօմէրի որ յԵրուսաղէմ:

**Ի ՆՁԴ** *Թուականիս ես Ապլղարիպ մարզպան եղի հրովարտակ ի Սըմբատա շահանշահի առ կայսրն Յունաց Միխէլ ի Կոստանդնուպոլիս. եւ շատ ջանիւ եւ մեծածախ գանձիւ բերի մասն ի սրբո խաչէն եւ եկեալ կատարեցի զտաճարս զայս եւ զնշանն յուսո կանգնեցի ի պսակ հարսինս Քրիստոսի եւ եդի լուծ սպասաւորաց եկեղեցոյս զկիւրակէին աւրն գիշերապաշտաւն առնել մինչեւ ի գալուստն Քրիստոսի. եւ քահանա որ մեռանի ի սուրբ փրկչիս խ մի կալցեն յեկեղեցիքդ. եւ եթէ ոք ի քահանայից եկեղեցոյս եւ յիմ սպասուցս եւ կամ ի գրենոյս յափշտակէ կամ ծախելով կամ զինչ եւ իցէ պատճառանաւ եւ կամ զագահութեան զհետ երթա եւ զեկեղեցոյս մուտքս խորէ եւ սուրբ փրկչիս ի պէտս ոչ անցուցանէ ի յժը հայրապետացն նզովեալ լիցի եւ որ զԳրգոր երիցու որդիքս յեկեղեցապանութենէ հանէ կրկին անիծիցդ պարտական լիցի իսկ կատարիչ գրիս աւրհնեալ լիցի։ ՁԳէորգ գրիչ յիշեսջիք ի Տէր.*



51. Բաղանիք։

✠ Յամս աստուածապատիւ եւ հոգեւոր տեառն Պետրոսի Հայոց կաթողիկոսի եւ ի թագաւորութեան Սմպատա որդւո Գագկա Շահանշահի ի **ՆՁԵ** *Թուականիս ես Ապլղարիպ մարզպան որդի Գրիգորո իշխանի եւ թոռն Ապուղամրի եւ եղբայր Վահրըմա եւ Վասակա շինեցի զսուրբ Փրկիչս ի մայրաքաղաքս յԱնի շատ ջանիւ եւ մեծամեծախ գանձիւ եւ գնեցի հալալ ընչից իմոց կուղպականի։ գ։ եւ ձի . . . եւ այգի եւ հողեար եւ ետու ի սուրբ*

Փրկիչս եւ (զարդա)րեցի ոսկւով եւ արծաթւով եւ ակամբք պատուականաւք եւ ետու աւետարան եւ տաւնական եւ նո... յն եւ նոր կտակարանաւք եւ կանգնեցի միլ առ [1] ... րկչիս. արդ եթէ ոք ի մեծաց կամ ի փոքունց... (ի սպ)ասուցս եւ կամ յայլ իրացս որ ետու եւ յափշտ... խափան լիցի յԺԸ



52. Սուրբ Փրկիչ եկեղեցի Անւոյ։

Հայրապետացն նզովեալ լիցի..(յետ ելի)ց իմոց յաշխարհէս. եդի լուծ ի վերայ սպասաւորաց ե... զվարդեվառին խունսն անխափան կատարել մին(չեւ ի գալուս)տն Քրիստոսի. ընդ նմին եւ զ... (որ)դւոյ Գագկա Սմպատա շահանշահի [2] ։

1 Թուի՝ առ Դրան Սուրբ Փրկչին։

2 Սմբատս այս է Գ., կոչեցեալն տիեզերակալ Յովհաննէս։

**Ի ՆՉԵ** *թուականիս Հայոց եւ ի մեծափառ թագաւորութեանս Հզաւր եւ տիեզերակալ Սմբատա որդւո Գագկա Հայոց եւ Վրաց շահնշահի կամ եղեւ ինձ Տեառն Պետրոսի Հայոց կաթողիկոսի տալ զայգին Աչնկի որ ի մեր կորդւո արկած էր քրիստոսասէր մարզպանին Ապլղարիպա որդւո Գրիգորո Պահլաւունո վասն առաւել սիրոյն եւ երախտեացն զոր ծառաեալ էր զսուրբ Լուսաւորչի աթոռս. արդ տուաք որմով եւ ծառովք պտղաբերովք եւ անպտղաւք եւ խոտագետնովք եւ Գ. աւր ջուր ազատ ի խալաէ [1] եւ ի գեղջէ յամենայն հասուց եւ գրեցաք մեծաւ հաստատութեամբ զկտակս զայս. իսկ նա ընծաեաց յիւր շինեալ եկեղեցիս ի սուրբ Փրկիչս բաժակի վասն փրկանս խորհրդոյն յիշատակ հոգւո իւրո արդ եթէ ոք զապարանօք զոր շինեալ է Ապլղարիպա առ սուրբ Փրկչիս աւ [2] ... կամ զոր ինչ տուեալ է ի պէտս եկեղեցոյդ եւ որոշէ ոք եւ կամ յապարանօք բնակի եւ զեկեղեցւոյդ հոգսդ զոր ինչ պիտո լինի եւ երկիւղիւ Աստուծոյ ոչ հոգա ի սուրբ Լուսաւորչէն եւ ի նորին աթոռակալացն մինչեւ ցմեզ յամենեցուն նզովեալ լիցի. իսկ կատարիչ գրոցս աւրհնեալ լիցի:*



53. Յատակագծ. Ս. փրկչի:

1 Թուի բերդ նշանակել, գալի, քան զաւուրան խալան:

2 Որպէս թուի՝ աւերել:

Երկու և այլ հին արձանագիրք են նուիրատուաց դրոշմեալք 'ի տեւողական վէմսն, երկոքին ևս զուգաժամանակք, յամի 1041. 'ի միումն ընդ Ս. Փրկչի յիշի և Ս. Յովհաննէս, որ թուի մատուռն կից կամ մերձ նմին.

✠ Ի ՆՂ։ Թ ի հայրապետութեան Տեառն Պետրոսի Հայոց կաթողիկոսի եւ թագաւորութեանն Ամբատա որդւո Գագկա շահանշահի ես Քրիստափոր ծառայ Աստուծոյ ապաւինեալ յողորմութիւնն Աստուծոյ եւ ի սուրբ Փրկիչս ետու զիմ գանձագին հայրենիքս է̅ տուն ի սուրբ Փրկիչս վասն մեղաց իմոց թողութեան եւ հոգւո փրկութեան. եւ պարտին քահանայք սուրբ Փրկչիս յամէն ամի ի չորս եկեղեցիքդ յեկեղեցյն զ̅ աւր ժամ առնել անխափան մինչեւ ի գալուստն Քրիստոսի. արդ եթէ ոք յիմոց կամ աւտար ոք հակառակ հոգւո իմ յայտնեսցի եւ զարձանագրեալդ անփոյթ առնէ եւ իմ տներոյս յափշտակէ դատապարտեալ եղիցի ի Քրիստոսէ եւ մեղաց իմոց պարտական լիցի ի գալստեանն Քրիստոսի եւ անէծս մշտնջենականս ժառանգեսցէ. իսկ կատարիչ գրիս աւրհնեսցի։

✠ ՆՂ։ Թ ես Շահիկս եւ իմ որդիս Վարդս տուաք զմեր կորդո չինած տունս եւ զբակս ի սուրբ Փրկիչս եւ ի սուրբ Յոհաննէսն յիշատակի . . .

Յետ ամաց իբրեւ հարիւր երեսնից, այսինքն յամի 1173, Տրդատ աւագերէց Արճոյ և երիցակինն Խուշուշ նորոգեն զեկեղեցին՝ որ գանձագին հայրենիք լեալ էր նոցա, կարգելով 'ի նմա բազում հասոյթս. յիշեն զքառեսին խորանս, որք են չորս եկեղեցիքն կոչեցեալք յարձանին Քրիստափորի, և թուին աւանդատունք կամ մատրունք տաճարին և չերևին արդ. և բաց յայնցանէ շինէ և ժամատունս ամարանոյ և ձմերանոյ. և արձանագրէ այսպէս.

Յամս աստուածապատիւ եւ հոգեւոր Տեառն Բարսղի Հայոց կաթողիկոսի եւ յամիրապետութեանն բարիանուն Աւլզանի որդի Ամիր Մահմուտի թոռն Մանուչէի։ յամի։ ՈԻԲ։ թւ։ արդ ես Տրդատ քահանայ որդի Սոսթինիս քահանայի թոռն Գէորգա աւագ երէցս Արճոյ եւ զուգակից իմ Խուշուշ աղախին Քրիստոսի յուսալով յողորմութիւն Աստուծոյ շինեցաք վերստին զմեր գանձագին հայրենիքս զսուրբ Փրկիչս շատ աշխատութեամբ եւ նորոգեցաք յառաջին պայծառութիւնն ոչ ունելով զոք աւգնական այլ միայն զբաւականն յամենայնի որով կարողացաք եւ կատարեցաք այդ եւ ընծայաբեր եղաք ի սա ի սորին շնորհէ շնորհս զնորս հնոյն աստուածագիծ պատգամաւ նա եւ զզարդս ստացուց ի քառեսին խորանն որ կանխեցին հանին ի սեղան զարդարեւ ուխտեալ զհաճելին կամացն Հաւր պատարագ. շինեցաք սմա ժամատունս ամարանո եւ ձմերանո եւ ի կեանս մեր պաշտեցաք ի սմա զեկաւորս ճավաղս[1] հաց. արդ ես Տրդատ երէց եւ լծակից իմ Խուշուշս ի մեր հայրենի ժառանգութեանց ի սպաս պիտոյից հացի եւ գինւոյ

[1] Ոչ գիտեմ ստոյգ իցէ ընթերցուած բառիդ զոր չիմանամ, թէ պա՞րտ իցէ զտառն Ճ համարել թիւ (հարիւր)։

*տուաք չորս այգի յԱրուճ զՍաղար եւ զՇլիկն և զԿովրածն եւ Բլար խաչկայն եւ բ̅ տուն եկեղեցւոյն դիմաց մեծ արտ[1] Բեխենցն ճ̅ կապճով մին ի մէջէսն ի ջրփողին Բեխենցն այս է ի պղպղի . արդ ընդ այսր աշխատութեան եւ պարգեւի պարտին ժառանգորդքն զկնի մեր կատարել ամենայն ամի ։ խ ։ մի ի̅ Տրդատա ի̅ տիկին Խուշուշին եւ ։ բ ։ Սարգսկանն որդո Սողոմոնի անխափան կատարել զյիշատակս մեր մինչեւ ցծագումն Որդւոյն Աստուծոյ . եւ մի ոք իշխեսցէ չորթել յարդեանցս հաստատելոց ի սուրբ Փրկչէս . ապա թէ ոք զատուսցէ եւ որոշեսցէ զյիշատակս մեր եւ ինքն որոշեսցի ի փառաց Որդւոյն Աստուծոյ ՅԺԸ իցն նզովեալ եղիցի ի մահ եւ ի կեանք . կատարիչք գրոյս աւրհնեալ եղիցին . ամէն ։*

Ցետ այլոց և ս ամաց 120ից (1291), Մխիթար ոմն շինէ զանգակատուն և բերեալ դնէ 'ի նմա զանգակս 'ի զըւարճութիւն լսելեաց . իսկ զեկեղեցին գերադրական յաւելուածով կոչէ Ամենափրկիչ .

**Ի** *թու ։* **Զխ** *. ես Մխիթար որդի Շերասցի որդի Զուսի Միսալուքենց[2] սուրբ Նշանս եւ ի սուրբ Ամենափրկիչս եւ բերի զանգականիս եւ շինեցի զանկակատունս ի հալալ արդենց իմոց . որք զվարճանէք ի ձայնից սորա ասացէք Տէր Աստուած ողորմեա Մխիթարա եւ ծնողաց իւրոց . սպասաւոր սորա ՠ̅ մատուցէ պատարագ ։ ա ։ Սուրբ Գրիգորի ։*

Ցիշեալ Սուրբ Նշանն, ոչ իմանամ՝ եկեղեցի՞ նշանակիցէ եթէ խաչ մի պատուեալ։ — Դարձեալ յետ 50 ևս ամաց (1342) Վասիլ պաշտօնեայ Աթաբակ Վահրամայ Զաքարեանց, ժառանգորդի կամ Պատրոնի քաղաքիս, Նորոգեալ է զգմբէթ Ս. Փրկչի, որ արդ վերստին կործանեալ է զշնորհս նորոգութեանն.

**Թվ. ԶՂԱ** *. շնորհիւ եւ ողորմութեամբ բարերար եւ մարդասիրին Աստուծոյ ես Աթապակ Վարհամ որդի Իւանէի որդուն մեծին եւ հզաւրին Զաքարիաի վերստին նորոգեցի զկումբէթ Սուրբ Փրկչիս վասն երկար կենդանութեան իմոյ եւ յիշատակ մեզ եւ նախնեց մերոց ⊙ արդ ես Վասիլս որդի Գրիգորո առաքեցա Պատրոնին հրամանաւն Աթաբակ Վարհամա եւ եկել կատարեցի մեծ ջանիւ եւ աշխատութեամբ զհրամանելս ինձ . եւ սպասաւորք Սուրբ Փրկչիս ընձա մատուցին մեզ զվարդավառին կիրակէն բ̅ պատարագ ։*

Եւ այս մի 'ի յետին յիշատակաց է, ոչ միայն եկեղեցւոյս՝ այլ և համօրէն քաղաքին Անոյ։ — Ի նշանակելոցդ յարձանսն չերևին այժմ առ եկեղեցեաւն և ոչ մի . այսինքն ոչ Աղբարանքն և ոչ Միլն չլինել յԱպլղարիպէ, ոչ ժամատունք Տրդատայ և ոչ զանգակատուն Մխիթարայ . այլ դերբուկքն թերևս ծածկեն զհիմունս նոցին։ Բայց նոր այցելուք նշմարեն 'ի նոսին և Զիրահանս, զուցէ յիշատակեալն յԱպլղարիպի արձանագրին, ուր եղծեալ է վերջ բառին։

32 . Ցետին եկեղեցի նշանակեալ 'ի քննողաց աւերակացն՝ կայ իբրև հաւասար հեռաւորութեամբ 'ի Ս. Փրկչէ ընդ Մ. Հր., 'ի կաթողիկէէն 'ի Հ. Ե., և յափանց Գայլեձորոյն ընդ Հր., խաչաձև նստիւք . և համարի նուիրեալ Տիրամօր կուսի[3] . այլ որքան չէն կամ աւեր իցէ՝ ոչ գիտեմ, զի ոչ մերս Հ. Սարգիսեան յիշէ զայն և ոչ այլ ստորագրողք։ — Առ ստորոտով բովանդակ երկայնութեան պարսպացն և հարուստ մի ևս 'ի ներքս 'ի քաղաքամէջն կոյս՝ ոչ նշանակի ոչ չէն և ոչ

1 Յօրինակին մեծ արտ Բեխենցն ։

2 Քննութեան կարօտի ընթերցուածդ, մանաւանդ անուանքն և փակատառն ՠ̅, որ թերևս նշանակէ յամենայն ամ ։

3 Այլոց, որ կոչէ Église de la Sainte Vierge. Տես Թիւ 54 ։

աւերակ տեղի, յայտ է թէ իսպառ քանդեալ է և խոպանացեալ. այլ միայն եկեղեցեակ մի աւեր մերձ յաբեմոեանն երեցուն դրանց ներքնապարսպին, նման այնմ զոր յիշեցաք 'ի սկզբան՝ յարևելից արքունի ապարանիցն։

Աստանօր գլխաւորին շրջաբերութիւն մեր զքաղաքաւն 'ի ներքուստ, և ամենայն ցարդ ծանուցեալ տեղիք, զոր գտաք յիշեալ յայլ և այլ քննողաց ամայացելոյն Անւոյ. այլ յայտ է թէ մեծագոյն մասն ևս մնայ քննելի, որ է բովանդակ եռանկիւնաձև միջոցն այն քաղաքին, յորում չորս կամ հինգ շինուածս միայն տեսաք։ Քննելի է և Ծաղկոցաձորն որ 'ի համանուն դրանէն 'ի Մ. Հ. պարըսպաց քաղաքին՝ զիջանի, և տակաւ անձկացեալ և հարթեալ՝ բաժանի 'ի բազում առաջս, յորոց մին խառնի ընդ Ախուրեանն ձորոյ. լայնութիւն նորին առ առաւել չանցանէ զքարընկեցիւ. յատակ նորա հող է, այլ երեսքն խճախառն քար կակուղ, և երկուստեք փորեալ և հատեալ 'ի նոսին կրպակք անթիւք մեծ և փոքր, ոմանք երկայնաձև խորացեալ 'ի սիրտ ձորափին, և ոմանք 'ի մանր սենեակս հատեալ, ունին դրունս մոից հաղորդութեան ընդ իրեար. և լուսամուտս՝ ոմանք միայն 'ի վերուստ առ 'ի չեղ. է ուրեք զի կրկին կարգք են կրպակաց մի 'ի վերայ միւսոյ. խցեալ են այժմ շաւիղք մոից նոցին. ստորինքն խափանեալք 'ի յաճախ սորելոյ քարանցն, և վերինքն դժուարամատոյցք [1]։ Առհասարակ մաշեալ են երեսք ձորոյն, որով և կրպականիդ յոյժ





54. Եկեղեցի Տիրանոր։

այլաձևեալ և անկերպարան, թէպէտ և 'ի սկզբան իսկ թուի թէ անհարթ էին երեսք նոցին. յոմանս երևին և խորշք կամ դարանք, խիտք և մանունք։ Ոմանք բնակարանս կարծեցին զխորշս ձորոյդ և իբր արտաքին քաղաք [2], որպէս գքարափոր քաղաքս Վարձիոյ և զՈւփլոսցիխեայ 'ի Վրահայս, այլք՝ գերեզմանս, և զխորշսն՝ է որ ձեռագործս, և է որ 'ի ներգործութենէ ջրոյ ծակոտեալս։ Ի խորշ մի բռեալ որմոյ տեսանի և նկարէն պատկեր՝ լուսապսակ հեծելոյ աղեղնաւորի՝ որ նետաձիգ լինի (տես յէջ 89). և առ երի կայ արձանագիրս.

## Քրիստոս Աստուած ողորմեա Շուշանա աղախնո Քո։

33. Ի հետախուզութիւն բանասիրաց և հայրենասիրաց՝ արժան համարիմ յիշեցուցանել միւսանգամ, և միահաւաք առաջի առնել զշինուածսն, զպուեստանոցս և զնմանիս՝ որ յարձանս քաղաքին, Հոռոմոսի վանաց և այլոց մերձակայից՝ յիշատակին. ընդ որս և զրնական տեղիս, որպիսի են Ջորք, (զատ 'ի Ծաղկոցաձորոյ և 'ի Գայլեձորոյ), անծանօթք յայժմուս. Իգաձոր, որ հանէր 'ի դուռն մի քաղաքին. Բոխաձոր, ուր և կամուրջ. Կարմնջի Ջոր՝ որ Արեւանց կոչի. և յիշի յարձանագիրս Հոռոմոսի վանաց. ուր, և յայլում արձանի՝ յիշի Արեղի-ակն 'ի Դիմաց դրան. Այրնուց ձոր, նոյնպէս յարձանս Հոռոմոսի վանաց յիշեալ, և թերևս փոքրիկ ձորակն է որ 'ի Հ. քաղաքին քերեալ զարքունի ապարանօք խառնի 'ի Ծաղկոցաձորն, և էր անդ ջա-

1 Ոչ գիտեմ ստուգիւ 'ի ձորս յայս թէ այլուր իցէ տեղի պատկերիդ (Թիւ 55), զի պատկերահանն որ զաւերակս Անոյ գծագրեալ է, հանդերձ սակաւուք այլովք, ոչ նշանակէ զսորա դիրս։

2 Պրոսէ և Խանիքով։

ղացք։ — Ջաղացքդ բազում ուրեք յիշատակին, այլ ոչ և դիրք նոցին, բայց միայն դա և որ 'ի Գայլեձորն էր Հառօրձնից անուանեալ. միւս ես հնաւկից յարակից կալուածոց Գունիձանց տոհմի։ — Ջիթահանք, առ Ս. Փրկչաւ յիշեցաք 'ի վերոյ. յիշին և այլք առ Դրան Կարուց։ Ըստ ոմանց առ եկեղեցեաք էին ձիթահանք 'ի պէտս լուսոյ։ Ցարձանագրի Տրդատայ աւագերիցու Նորոգողի Ս. Փրկչի՝ յիշի Ջրհողն Բեխենց¹, յորոյ անուն տեսաք և վանս մի (Բեխենց վանք) յիշատակեալ յերկար արձանագրի Տիգրանայ՝ շինողի Ս. Լուսաւորչի վանաց։ Ցարձանս Հոռոմոսի յիշի և Ջրդիրն Արեղի, այլ Թուի արտաքոյ քաղաքին լինել։ — Մի 'ի հասարակաց կամ պետանի շինուածոց է և Միղն, որպէս ասէ Աշլղարիպ մարզպան (յամի 1035) կանգնեալ առ Ս. Փրկիչ եկեղեցւոյ. և Տիգրան Հոնենց (յամի 1215) յիշէ զՄիղն 'ի մոդանի (հրապարակի), զորս ըստ բառին և ըստ կանգնեալ բայի՝ մարթ էր կոթողս ինչ կարծել, այլ յերկուսին ևս յիշեալ տեղիս՝ տան իմաստ պիտանի և հասութաբեր տեղւոյ։ Նկատելի է և այս զի Պետրոս կաթուղիկոս փոխանակ միլի՝ յիշէ զԱպարանս շինեալ յԱպլղարիպայ առ Ս. Փրկչի։

Կարևոր ևս են չէնք արուեստանոցաց և վաճառուց։ Ոչ յիշին կարաւանատունք կամ իջևանք, և հոգետունք² կամ անկելանոցք. այլ փնդուկք (ֆօնտուք ըստ Արաբաց), որ նշանակեն զիջևանս, միանգամայն և զմթերանոցս վաճառականաց. և յայսպիսեաց ասոի՝ ուրեք աւանց ինչ յատկի կամ ստացողի յիշին, որպէս յարձանագրին Տիգրանայ, ուր և այլ փնդուկ մի կանարակաց, և ուրեք յանուանէ՝ Վայլի փնդուկ, յարձանս Հոռոմոսի։



55. Վիմափոր գերեզմանք ('ի Ծաղկոցաձոր ?)։

Վաճառատեղի կամ Շուկայ՝ այսու անուամբք ոչ է սովոր 'ի քաղաքիս. իսկ կրպակք կամ կրպակնի, զոր արդ կրպակս կոչեմք, բազում ուրեք յիշատակին, և յաճախ յանուն տերանցն. որպէս հնագոյնքն որ յարձանս Ապուղամրենց, յամի 995, և 'ի սկիզբն Ժ դարու. Մրթուանայ, Լորագոյնի և Որսատի. և նորագոյնք՝ Թորոսնց, Վարդի, Աշխժոյ, Աչետեաց, և այլն։ Ջանազանին ուրեք և յաւելուածով կոնր մանկամբ, կրպակի-կոնր, զոր օրինակ 'ի փողոցս տեսաք փողոցկոնր (23)։ — Սայք, Թուի յատակն, զի յիշէ ոմն զկուղպակ իւր առ ենրքին Սղքեր Տիգրանայ. այլուր յիշին և ներքնատունք նոցին կամ ստորին յարկք. որպէս 'ի վերջին յիշատակիդ կուղպակի-կոնրոյն՝ ասի լինել դաղրայն³ 'ի ներքևն. և յայլում՝ կուղպակ, և 'ի ներքևն Տախտք. յիշին և այլուր տակառքդ⁴։

1 Քննելի են առ. ստուգութիւն ընթերակայ բառքն, «ի Միքէսն 'ի Ջրփողին Բեխենցն, այս է 'ի Պղպղի»․ տես յէջ 86։

2 Ցարձանս Բագնայրի յիշի Հոգետուն մի Պէշտրինց անուանեալ, զոր վանականքն վաճառեալ էին, և բարեպաշտօն ոմն վերստին գնեալ դարձուցանէր 'ի վանսն. այլ չէ յայտ ստուգիւ յԱնի՞ նթէ 'ի նոյն իսկ 'ի Բագնայր էր տեղին։

3 Թերևս Բուջլու, ախոռ, ձիանոց։

4 Ցարձանագիրս Արջոյ Առինճոյ։

Իսկ գործարանք կամ արուեստանոցք և արուեստք յիշատակեալք, որոց և ուրոյն թաղք էին, յիշին այսօքիկ. Կօշկակարոց. Դարբնոց փողոց մերձ 'ի Ս. Գրիգոր. Բազզնոց (կերպասագործք) 'ի փողոցկտերն. Նալպանդնոց (Պայտար). փոխկարարոց (?). Սառած փողոց, (համետագործք). Կատունոց, որ թուին դերձակք լայն զգեստուց՝ քիշտատ կոչեցելոց 'ի Պարսից. Գտակկարոց խանապարն (23), որ են գդակակարք կամ խոյրարարք։ Յիշին եզակարար և ումն Ներկարար, և ումն Լարարար։

Յառանձնական բնակարանաց, այսինքն տանց քաղաքին, որք և զտանուտէարսն ծանուցանեն, իբրև Ապարանք՝ յիշի շինեալն յԱպլղարիպայ մարզպանէ՝ յաւուրս թագաւորութեան վերջնոյ Սմբատայ (Յովհաննու), որ առ Ս. Փրկչին. Սարաւոյրով տունն Խաչատրոյ ուրումն, նշանակէ լինել 'ի սարաբարձր տեղւոջ կամ իբրև պատշգամբ շուրջ հայեցիկ. որպէս և այլ ումն յիշէ զիւր «Տաճարն և զՍարաւոյրն և 'ի Ներքեն Տուն [1]». — Տունք Տիգրանայ բազում անգամ յիշին, որ է Հոնենցն, շինող



56. Դեղանկար պատկեր 'ի Ծաղկոցաձորի։

Ս. Գրիգոր Լուսաւորիչ վանաց, յորոյ անուն յիշի և դուռն մի քաղաքին, և այլ կալուածք և շէնք. Բակուրանայ տներն. Քարգզեանց տներ. Մեքքենց. Գուրճենց. Աւետեաց. տունն Բախտիարեանց. Խաչատրոյ տունն մերձ 'ի Ս. Գրիգոր Աբուղամրենց։ Ի հասարակի տունքն՝ որք ըստ Քէր Բորդրրի, յանձուկ և 'ի բազմադարձ փողոցս, բաժանեալք են 'ի բազմաթիւ յարկս կամ սենեակս, որ և որոշակի երևէին առ 'ի չգոյէ տանեացն՝ կործանելոց։

34. Յազգս սրբազան շինուածոց, վանորայք 'ի բնիկ քաղաքին ոչ յիշին, բաց յայնցանէ զոր 'ի ստորագրութեանս կարգեցաք, այսինքն է Ս. Գրիգոր Լուսաւորիչ (29), Ս. Աստուածածին (26), և Բեխենցն (29). իսկ Եկեղեցի՝ արտաքոյ ստորագրելոցս երկուս ևս միայն զտանեմ յարձանագիրս, որք թէ և չասին, այլ հաւանիմ լինել 'ի քաղաքիս, և են Քահանենց եկեղեցին, և Գոգոնց կամ Գողոնց Ս. Սարգիս, որոց դիրք անյայտ. այլ զի էին առ Նոյին տունք, զորս տեարքն Նուիրեն, ոմն՝ վանաց Բագնայրի և ոմն՝ Խնծկօնից. որովք թիւ առ 'ի մէնջ ծանօթից և նշանակելոցս հասանէ ընդ մեծ և ընդ փոքր, ընդ հին յիշատակեալս յանուանէ և ընդ մնայունս ցարդ՝ յ33։ Իսկ ո՞ր մնայցեն, յեօթն հարիւր ամաց հետէ հռչակեալ և 'ի կարգս առակաց յեղյեղեալ Հազար եւ մի Եկեղեցիքն Անոյ։ — Որք 'ի սկզբանէ դարուս և այսր յայց և 'ի քննին ելին աւերակաց քաղաքիս, ոմանք՝ 20 և ոմանք 40իւ չափ եկեղեցիս նշմարեցին. իսկ ոմանք 'ի փոքրատար չափ պարապապատ սահմանացն հայեցեալ՝

[1] Արձանագիր 'ի Բագնայր, որ անթուական է, այլ գուշակի 'ի սկիզբն ԺԳ դարու գրեալ։

հազիւ 30 եկեղեցեաց[1] ընդունակ ասացին զայն, և 15,000 բնակչաց[2]. և արդարև ըստ հանգամանաց արդի քաղաքաց՝ ոչ աւելի քան զայդ էր յուսալ. այլ Անոյ և ցարդ մնացեալ հաստակառոյց մանաւանդ թէ մեծահարուստ չէնք, արքունի ապարանքն, կաթողիկէն, պահլաւունաչէն վիմաքատակ տաճարք, տրուեստանոցք, փնդուկք, և մնացուածք կամարակապ շինուածոց, որք բազում ևս ուրեք՝ զատ 'ի ստորագրելոցս՝ երևին, տան քամահել զայդպիսի նուազ քանակաւ եկեղեցեաց և բիւր և կէս բնակչաց։ Թիւդ 1001 արդարև առակօրէն ասացեալ է 'ի նշանակ բազմութեան[3], որպէս խոհականաբար գրէ ժամանակակից աւերածոյ քաղաքին 'ի Թաթարաց, Կիրակոս Պատմիչ. եթէ, « Քաղաքս այս Անի լցեալ էր բազմութեամբ մարդկան և անասնոց, և պարսպեալ ամրագոյն պարսպաւք. և եկեղեցի բազում կայր 'ի նմա, մինչև 'ի կարգ խօսից երդման՝ այսպէս երդնուին. Անոյ հազար և մի եկեղեցին. և յոյժ փարթամ էր քաղաքն՝ ամենայն իրօք »։ Այլ իբրև դարու միով երիցագոյն քան զնա պատմիչ (Մատթէոս Ուռհ.) առ որով շինագոյն և ճոխագոյն ևս էր քաղաքս, առաւելաբար խօսի. « Էր Անի բազմամբոխ լցեալ քաղաք, բիւրք բիւրուց արանց և կանանց, ծերոց և տղայոց, որ և հիացումն արկանէր տեսողացն. զոր կարծեալ զօրացն բազմաց՝ եթէ մեծ մասն աշխարհիս Հայոց իցէ. և յայնմ աւուր (յառմանն յԱլփասլանայ յամի 1064) Հազար և մէկ եկեղեցի 'ի պատարագի կայր 'ի յԱնի »։ Աւանդեն սերունդք գաղթականացն յԱնոյ, նաև գրով, երկուք կամ երիւք դարուք յառաջ քան զմեզ, եթէ սոսն բիւր տունք և ոսկէզօծ ապարանք էին նախնեաց իւրեանց յԱնի. և լսի ցարդ միւս ևս գեղեցիկ առակ բանի, թէ,

« Անին չէն՝ աշխարհս աւեր.
Անին աւեր՝ աշխարհս է չէն ».

'ի նշան մեծութեան և ճոխութեան քաղաքին, որոյ նշխարք լցին զաշխարհ։ Թէպէտ այսպիսի 'ի մերոցս, այլ համբաւ քաղաքին ընդարձակագոյն ևս էր տարածեալ ընդ ամենայն արևելս. և ոչ միայն վասն եկեղեցեացն, այլ և ճոխութեանն և ամրութեանն իբրև յառակս յիշէր առ այլազգիս Անի կամ Անա զալէսի կոչմամբ։ Մեծահռչակ ժամանակագիրն Արաբաց Իպն-էլ-Աթիր կիսով դարու երիցագոյն քան զվերոյիշեալս մեր Կիրակոս, և մեռեալ (1233) յառաջ քան զաւեր Անոյ 'ի Թաթարաց, աւելի քան զ'500 եկեղեցիս ասէ լինել 'ի նմա։ Իսկ Ապուլ-Ֆարած Ասորի ժամանակակից մերոյ պատմչին՝ նոյնպէս 1000 եկեղեցիս ասէ յԱնի։ Նոյն համբաւ անցեալ հասեալ էր և յարևմուտս, թերևս յեկաց և 'ի վաճառականաց Հայոց և յերթևեկէ խաչակրաց. զի Վինցենտ Բելլովակեանց որ նոյնպէս յառաջ քան զԿիրակոս մեռեալ է (յամի 1264), 'ի լայնատարր Հայելւոյ պատմութեանց իւրոց՝ յիշէ զառումն Անւոյ 'ի Թաթարաց, և « են (ասէ[4] իբր ներկայապէս), 'ի նմա հազար եկեղեցիք և 100,000 տունք »։ Յիշէ և Մանտըվիլ Անգղիացի ճանապարհագիր փռանկիսկեան 'ի կէս ԺԴ դարու, եթէ էին յԱնի 1000 եկեղեցիք։ Բազմութիւնք եկեղեցեաց, թէպէտ և միշտ առաւելազանց համարելիք, յիշին յայն ժամանակս և յայլ բազմամբոխ քաղաքս, որպէս յԱրծն, յաւերեալն ընդ Անւոյ 'ի Սելճուկեանց « 800 եկեղեցի ընդ պատարագով », ասէ նոյն Ուռհայեցի. նոյնքան և 'ի Նախջուան աւանդէ լինել ոմն յօտարաց[5], յառաջ քան զաւերելն 'ի Թաթարաց։ Իսկ վասն բազմաբնակութեան քաղաքին կամ բովանդակելոյ բազմութիւն մարդկան, յիշելի են գունդք զօրացն՝ որք ելին անտի 'ի պատերազմ. զոր օրինակ, 'ի պաշարել զայն Աշոտոյ՝ եղբօր Սմբատայ-Յովհաննու, եհան սա ընդդէմ նորա 40,000 հետևակաց և 20,000 հեծելոց. և յետ մահու սորա 'ի գալ Յունաց պահանջել զքաղաքն, Վահրամ Պահլաւունի ել 'ի վերայ նոցա 30,000 հետևակօք և հեծելօք։ Աւագին ականատես եւրոպէացի, ժամանակակից պատմչաց մերոց և Վինցենտեայ, ԺԳ դարու, Ռուպրիւք քարոզիչ և դեսպան առ Ղանն Թաթարաց, որ 'ի դարձին էանց ընդ Անի 'ի սկիզբն 1255 ամի, հարիւր եկեղեցիս ասէ քաջ լինել 'ի նմա[6]։ — Արդ առ 'ի միաբանել զայսոսիկ և զայսպիսիս, այլ ինքն զառաւելութիւն թուոյ եկեղեցեաց և բնակչաց Անոյ՝ ընդ նուազութեան տարածութեանն, (քանզի չէ մարթ զայնպիսի բազմադէմ և անընդհատ աւանդութիւն ստասպել ասել), հարկ է հաւանել, նախ, եթէ եկեղեցիքդ 'ի թիւ արկեալք ոչ ամփոփէին միայն 'ի պարսպապատ միջոցին՝ զոր ստորագրեցաք, այլ և արտաքոյ ց'անորոշ շուրջ սահմանս, որոց դէթ մասն մի ունէր և այլ պարիսպ. զի և ցարդ արտաքոյ քաղաքին 'ի Հ. Մ. անբաւ քարակոյտք են մանրեալք հին շինուածոց, վկայք խիտ մարդաբնակութեան 'ի քաղաքէն և անդր։ Երկրորդ, զի և յանձուկ սահմանի անդ պարսպապատ քաղաքին կամ բերդին (զի յաճախ փոխանակ քաղաքի՝ Անոյ բերդն կոչի), հոծ և խուռն էր բնակութիւնն, և ոչ ըստ այժմու ընդարձակ քաղաքաց ցրիւ, այլ բնակարանքն խիտ առ խիտ, որպէս և կրպակքն, զորս բազում ուրեք արձանքն կոչեն ճնճակիցս կամ քսեակիցս։ Երրորդ, հաւանելի ևս է, եթէ ոչ ըստ ոմանց այժմուցս կարծեաց՝ տունքն զօրէն գեղջէից հողոյ հաւասարք իմն էին, այլ կանգունք և բազմայարկք. զոյն և տունք ստորերկրեայք, որպէս աւանդութիւն և թերակատար իսկ քննութիւն հաստատեն զայս, և ընդ հուպ ակն ունիմք ստուգագոյն յայտնութեան։ Բազում ուրեք յարձանս յիշին տունք և կրպակք 'ի վերայ, և նշանագոյն այս է զի յաճախ կրպակք 'ի վերայ տանցն յիշին քան տունք 'ի վերայ կրպակաց[7]։ Չորրորդ, որպէս տեսաք 'ի ստորագրեալ շինուածս, և

1 Դեսիէ։

2 Շոբէն։

3 Ի փոքրն Ասիա զաւերակս Լիստրայ քաղաքի ևս Թուրքք կոչեն Պին պիր Գիլիսէ (հազար և մի եկեղեցիք)։

4 In Armenia est civitas nobilis quæ Am (Ani) vocatur, ubi sunt mille Ecclesiæ ac centum mille familiæ. — Vinc. Bellov. Spec. XXX. 95.

5 Ռիւպրիւք, ճանապարհագիր ԺԳ դարու։

6 Ayni .... il y a bien là dedans cent églises. — Rubruquis (Ruysbroeck), ըստ Պէրժըրոնի տպագրութեան։

7 Յարձանս Բագնայրի յիշէ ոմն զեօթն կուղպակս իւր, « վեցն 'ի վերեւն և մին 'ի ներքն, և երեք տուն 'ի ներքսեւն »։ Այլ ոմն զկուղպակ իւր 'ի վերայ կուղպակի այլոյ ուրուք, և զտուն մի՝ յորոյ

գլխաւորքն իսկ եկեղեցեաց, արքայաշէնքն և իշխանաշէնք, չեն մեծամեծք ըստ եւրոպականաց, և չիք երկբայել, ըստ վկայութեան Բիւզբիւքեայ, որ քան ամաւ զկնի աւերածին 'ի Թաթարաց՝ 100 եկեղեցիս աւէ. և այն որպէս հաւանութեան է՝ որ ինչ յերեսս քաղաքին ակն յանդիման երեւիցի, զոր օրինակ և այժմու մնացեալքն. մինչ մեծ միջոց քաղաքին տակաւին թաքուն կամ անյայտ է մեզ, և չէ անմարթ զետեղել այնչափ եկեղեցիս որչափ ետես քարոզիչդ Ֆլաման, և որպիսիս կանգնէին հարք մեր. և եթէ զամենայն մատրունս և զոր յանկիւնս խորանացն, որք յաճախ և կրկնայարկք են, համարեսցուք մի մի եկեղեցիս, (զի և պատարագ մատչէր 'ի նոսին), թէպէտ և չէր մարթ ժողովրդեանն մտանել 'ի ներքս, (զի հազիւ պատարագչին և սպասաւորին գոյր տեղի արձակ), ահա բազմանայ յոյժ թիւն [1]. յորս յաւելլի են և Աշտարակքն, որք ցարդ վաթսնիւ չափ յայտնիք են, և ըստ վկայութեան Վարդանայ՝ առաջին կանգնող նոցին թագաւորն Աշոտ « զամենայն բրգունսն եկեղեցիս յօրինեաց ». չիք երկբայել զի և յետ նորա շինողքն նոյնպէս արարին. զի ոչ վայրապար և կանայք անգամ արձանագրէին 'ի նոսին 'ի յիշատակ հոգւոյ իւրեանց կամ իւրայոցն կառուցեալ զնոյնս. հարկ է թէ աւելի ինչ քան զամրութիւն և զզարդ քաղաքին նկատէին 'ի նոսա. և շատք 'ի բրգանցդ կրկնայարկք էին, թերևս և եռայարկք. և զի վկայեալ է՝ ամենայն կողմանց քաղաքին պարսպապատ լինել (բաց 'ի սակաւ միջոցէ՝ իբրև նետընկեցի միոյ), ըստ այնմ և յոգնաթիւ, գէթ հարիւրով հարկ էր լինել և բրգանցն, և որ 'ի նոսին ասացեալ եկեղեցեաց կամ խորանաց: Թող զնման շինուածս կամ փորուածս որ յեզերս և 'ի փուլս Ծաղկոցաց ձորոյն, ուր հազարաւոր այրք են բնակարանք կենդանեաց և մեռելոց. թող և զքարայրս Գայլեձորոյ և Ախուրենի հարիւրիւ չափ: — Արդ զայս ամենայն և որ այլ սոցին նման փաստս զմտաւ ածեալ, թէ ոչ աներկբայ զառակ 1001 եկեղեցեացն ասիցեմք, այլ և ոչ հեռի 'ի ճշմարտութենէ. մանաւանդ զի բարեպաշտութիւն ժամանակին, սովորութիւն քաջասէր պատարագայ կարգելոյ վասն ննջեցելոց, խտութիւն բնակչացն, և փոքրութիւն եկեղեցեաց՝ հարկաւորապէս պահանջէր ըզբազմութիւն թուոյ նոցին: Ի վերայ որոց՝ արժան է և չմոռանալ, զի որպիսի ինչ և էր Անի՝ էր մայրաքաղաք Հայոց. և թէպէտ զոր մի միայն կամ թէ նուազ ևս թագաւորանիստ, սակայն յերկարագոյն ևս յետ այնր՝ թագաւորանման արանց բնակութիւն եղև և կաթողիկոսի, և մեծի արքեպիսկոպոսի, միանգամայն և շահաստան մեծ էր և բազմահարուստ քաղաք:

33. Դիւրին իցէ թերևս գտանել զթիւ եկեղեցեացն, այլ ո՞ կարիցէ ընդ թուով կամ ընդ կարծեօք արկանել զփարթամութիւն Անւոյ, որ 'ի ճարտարութենէ բնակչացն և որ յանցուդարձէ վաճառականութեան. որում հաւաստիք են և բազմաքանդակ և հարստայեղց շինուածքըն, բրգունքն և եկեղեցիք, և վկայութիւնք պատմչաց, և փնդուկքն և յոլովութիւն կուղպակաց ազգի ազգի արուեստից և ձեռագործաց (33). որոց թուի Անի առաւելն ջական եղեալ յառաջ քան հոյակապ շինուածոցն և արքայաշուք գահուց. քանզի և նախ քան զելս Թ դարու շինող Ս. Աստուածածնի եկեղեցւոյն Մաքենոցաց (Գրիգոր Սուփան) արձանագրէ [2] անդ տուեալ նմին կալուած « և հինգ կուղպակս յԱնի »: Առաւել ևս հաստատեն զմուտևել վաճառուց յԱնի քաղաք՝ յիշատակութիւնք ազգի ազգի հարկաց, բաժից և տրից, զորս յարձանագիրս անդ է տեսանել [3], և որ աղբերք են ճոխութեան

« և 'ի վերայն կուղպակ »: Եւ յԱրջոյ Առիճոյ արձանս, « Փողկարարոց կուղպակն և տունն 'ի ներքեն »: Եւ Խծկօնիցն, « Երկու տուն նորաշէն, և 'ի վերէն երկու կուղպակ »:

1 Այլաշարիկ յարձանս իւր զիւրաշէն Ս. Փրկիչն երբեմն եզակի եկեղեցի կոչէ, և երբեմն եկեղեցիք. և պարզագոյն ևս Քրիստափոր արձանագրող 'ի նոյն աւուրս՝ յիշէ չորս Եկեղեցիս նորին Ս. Փրկչի: Յայտ ուրեմն զի ընդ գլխաւորի կամ մեծի եկեղեցւոյն անուամբ համարեալ լինէին և այլք մանունք կամ մատրունք, իբրև զաւեկք թագուհւոյ, թէ և առանձինն ևս կրէին անուանս:

2 Ստեփանոս Օրբելեան, ԼԼ:

3 Իբրև քառասուն տեսակք բաժից և տրից կամ մաքսից նշանակին յարձանս Անւոյ և սահմանացն, որոց քննութիւն և գիտութիւն արդարև պիտանի էր 'ի ծանօթութիւն քաղաքական տնտեսութեան ժամանակին. այլ մեր ոչ կարացեալ 'ի վերայ հասանել ամենայնի, և կարօտեալ ևս առոյգ ընթերցուածոյ ոմանց յանուանցըն, նշանակեմք աստանօր 'ի մի վայր, առընթեր կարգեալ և տարս որոշիչս ժամանակին և իշխանութեանն, Հայոց (Հ). Յունաց (Յ), Շէտատեանց (Շ), և Թաթարաց (Թ), առ որովք յիշին բաժքդ կամ հարկք: Թուանշանքդ նշանակեն զէջս մատենիս.

Աթոռի (եպիսկոպոսին) հարկ. Շ. 40.
Ախորթամար? Շ. 40.
Աղւհակ ոչխարի. Թ. Հարկ փարախի հօտից. 62.
Ամիրահակ. Թ. (Հակ՝ է Հարկ).
Այգոյ (հարկ) Հ.
Անգարիոն. Յ. 72. Յունականն Ἀγγαρεῖον, որ է ձիաստան, կրկէս սուրհանդակաց.
Ապուռիշի? (բաժ) Շ. քանզի ընդ Ջրաւհի յիշի (յէջ 10). Թուի նոյնպէս ջրոյ հարկ նշանակել ըստ առ (ջուր) արաբացի բառի:
Բաժ. Շ. 40, 62.
Բամբակի (հարկ) Հ.
Բերդի (հարկ). Հ. 10.
Գինեւորի՝ սայլով կամ գրաստով (բաժ). Յ. 72.
Դահեկ. տահէք տասանորդ. Թ. 62.
Դամղա (կնիք) այլ և այլ իրաց. Թ. 40. 56. 62.
— Ջաղացաց 62.
— Քասանեկի. Թ. 62.
Դռնագիր. Շ. Թ. 40. 63:
Թաղաւ կամ Թեղար, (Բեղաբ) սափոր նշանակէ ըստ Պարսից, այլ և առճիկ. ըստ Թուրքաց նշանակէ և պայուսակ կամ ձիատոպրակ. Շ. Թ. 40.
— Կալաթաղար Թ.
— Եզին կամ Եզին? Շ. 11.
— Սուսունի? (Սուսամ?) Շ.
Եկեղեցեաց հարկ. 63:
Թասակ. Հ. Յ. 70.
Խալա-Խաղողի. Թ. (Նոյն թուի ձէալան). 56.
— Գինւոյ. Թ.
Խարած Ջաղջաց Շ. 10. (տ. Ջաղջաց խարած).
Ծուծ. Հ.
Կամին (Հարկ կամ Կոռ) Յ. 72.
Կապիճք Հ. Յ. (առ Յունովք էր տուրք 6 դրամ, զիջուցաւ 'ի 4) 72.
Կոռ. (Corvée) — Եզին. Հ.
— Մարդոյ. Հ.
— Վեցկէ. Յ. 72.
Հազր. — Եզին. Թ. 62.
Համարելէ կամ Համբրելէ անասնոց Շ. Թ. 11.
— Կովի, որ և Կովահամար. Թերևս նման Եզնահարկին Գերմանացւոց, Boaticum. Թ. 62. 63.
— Իշոյ. Թ. 63.
— Աշխարի գլխոյ. Շ. Թ. կամ Պախրէի.

քաղաքաց։ Ցանկալի էր պատմութեան յայտնագոյնս ճառել զայսմ կարևոր խնդրոյ, զոր գրեաթէ խսպառ լռէ. այլ մարթ է աստանօր ասել, թէ և քարինք քաղաքին վկայեն զիրն, թէ ոչ և զորպէսն. և մի անգամ ևս և բազում անգամ արդարանայ առակն, «Անին չէն՝ » աշխարհս աւեր », և այլն։ Վկայութիւն մի ևս այսոցիկ ցուցանեն բազմաթիւ դրունք քաղաքին՝ արքունի պողոտայիւք, որք ձգին 'ի քաղաքս շահաստանս, 'ի Կարս, 'ի Դուին, յԵրևան, և յայլ կողմանս. որում 'ի դէպ է վկայութիւն համարել, թէ և օրինակաւ ասիցէ, զբանս Արիստակիսի Քերական գրչի յառաջին կէս ԺԳ դարու. « Ի Դունայ յԱնի մրջափ մղոն է։ — ՑԱնոյ 'ի Կարին » մրջափ մղոն է։ — ՑԱնոյ 'ի Սեբաստիա մրքան է »։ — Ընդ դրունս Անոյ և ընդ պողոտայս՝ յայտ է թէ ոչ միայն բնիկքն Հայք և բնակակիցք Վրացիք և Տաճիկք, մուտ և ելս առնէին, այլ և եկք 'ի բազում աշխարհաց, թէպէտ 'ի պատճառս վաճառականութեան և թէպէտ տարադէմ ուղևորութեանց. որպէս և գալուստ վերոյիշեալ քարոզիչ դեսպանին (Ռիւպրիւքեայ), որ և յառաջ քան զինքն եկեալս անդ եգիտ հինգ այլս յիւրոյ կարգէն քարոզիչս, ընդ նոյն ճանապարհ 'ի Թաթարս ուղղեալ, Թուղթս ընծայականս ունելով 'ի քահանայապետէն Հռովմայ։ Ի յիշման սոցին, թէ և 'ի հարևանցի, արժան է յիշել և զկրօնական ծանօթութիւնս և ընտելութիւնս ընդ արևմտեայց, որ՝ որպէս 'ի տունն Կիւլիկիոյ զայնու ժամանակաւ՝ եմուտ և 'ի մեծ կենդրոնս յայս Հայութեան, ըստ տհաճութեամբ իմն վկայելոյ Ստեփաննոսի Օրբելեան, որ ոչ միայն յԱնի այլ և 'ի Շիրակ առէ զնոյն ծաւալեալ[1]։

Միւս ևս կարևոր քննելի, որ և ըստ բաղդի՝ զգալի և դիւրին է և անժխտելի, ճարտարապետութեան գեղեցիկ արուեստն է, որ և արդարև գեղեցիկ երևի յԱնի, և միակ մնացորդ է անբաւ մեծափառ վայելչութեանց նորին. դոյզն՝ այլ տակաւին մեծ մնացորդ. ընդ որ երբեք չամաչեսցէ Հայ մարդ. զի թէպէտ և չերևիցին 'ի նմին կատարունակ յունական ոճք և ճաշակք, (և ո՞ւր երևէին յայնմ դարու), այլ ունին ճաշակ և ոճ զոր և օտար քննիչք խոստովանին խիկատիպ հայկական լինել, և քաղցրանան 'ի քիմս մտաց, նա և զմայլին իսկ բազումք. և ինձ այսպէս թուի, զի թէ բաղդ ձեռն տրկանէր մաքրել յատակել զտեղին, և գէթ զկիսամնացն վերականգնել չէնս և նորոգել, հանդերձ պարսպաքն, բրգամբ, կամարօք և սանդղօք, իբրև մի 'ի սակաւուց և յաննմանեաց հրաշակերտ քաղաքաց երկրի՝ այցելութեան և ուխտի վայր լինէր. և որպէս Մասիք եզականութեան շնորհս ունին 'ի Հայս զբնականին, ունէր և Անի՝ զարուեստականին. քանզի թէպէտ և շինուածք ճարտարարուեստք, գեղեցիկք, մեծամեծք, առաւելաշնորհք իսկ՝ գտցին և յայլ քաղաքս արևելից, այլ թերևս ոչ ուրեք այսքան հօծ և կուռ, և ոչ իբրև զսա վարժարան կամ հանդիսարան ճարտարապետական հանճարոյ ազգին։

Երիցագոյն 'ի քննողս աւերակաց Անւոյ 'ի դարուս, ազնուականն Քէր Բորդըր անգղիացի ('ի 15 Նոյեմ. 1817) հիացմամբ դրուատէ զնրբութիւն և զգեղեցկութիւն ճարտարապետական ոճոյ առ հասարակ շինուածոցն. « Նաև զպարիսպն բարձունս և զաշտարակն նրբագոյն » հիւսուածով[2]». և զոր 'ի նոսա խաչվէմս « ճոխազարդս և քաջ ընտիր քանդակօք[3] ». նոյնպէս և յամենայն բեկորս սեանց, խոյակաց, յօժ բազմազարդ դրուագս[4]. և առանձինն վասն արքունի ապարանիցն ասէ, « շինուած » արժանի համբաւոյ հին մայրաքաղաքիս. որ երկայնեալ » ձգեալ[5] ընդ բովանդակ միջոցն 'ի պարսպաց քաղաքին

Հարկ (ընդհանուր) Հ. Թ. 62.
Հարսանեհակ. Թ.
Հեծելի (տուրք) Շ. 40.
Ղասափճու } (Սպանդանոցի կամ Մորթելեաց) Ց. Շ. 40. 72.
Մսագործի
Մահկանէ? Թ. Թուի (Մոհկեանէ), ամսական.
Մորթելեաց բաժ. Ց. 72.
Մրուր. Հ.
Շալակաւորի (բաժ) Հ. Ց. 72.
Շարիատ (հասարակ կոչումն տրից) Հ. Շ. Թ. 11.
— Իւղոյ. (էր կայթ մի) Հ.
— Հացի. Թ. այսպէս յարձանս Մրենոյ. իսկ յարձանս Օշական գեղջ Արագածոտան, յամի 1288, ընդ հացի յիշի և Շարիատ Դուրմանի. յարձանս Աւանայ գեղջ Կոտայից՝ յամի 1285, Շարիատ այֆեայ։ Շէյրափ ըստ Պարսից նշանակէ խորշ պարկի։
Ջար մեծ և փոքր. Շ. 11.
Պախտ տանց. Ց. 70.
Պաշդխոտ? Հ.
Ջաղջաց խարաճ կամ Դամղա Շ. Թ.
Ջրաւհի բաժ. Շ. 10.
Սպլի բաժ. Ց. Թ. (ապխտակ դրամով վճարէր առ Թաթարովք) 72.
Սուսոն. տ. Թաղար. 11.
Տանակ — Հացի. Թ. (նոյն թուի ընդ Շարիատի).
Քասանիկ, կամ Դամղա Քասանկի. Թ.

1 « Հասաւ մինչև առ մեզ. զի քարոզի այս յայտնապէս 'ի թագաւորական քաղաքն 'ի Տփղիս, և 'ի հին տունն Բագրատունեաց, » յԱնի և 'ի Շիրակ »։ — Ստեփ. Օրբել. Թուղթ առ Գրիգոր Անաւարզեցի։

2 A double range of high walls and tours of the finest masonry. — Ker Porter. I. 172.

3 Richly decorated with exquisite fretwork. Id.

4 Highly ornamented friezes. Id.

5 It is a building worthy the fame of this old capital. Its length stretches nearly the whole breadth, between the walls of the city on one side and the ravine on the other. Indeed, it seems a town in itself: and so superbly decorated within and without, that no description can give an adequate idea of the variety and richness of the highly wrought carvings on the stone, wich are all over the buildings; or of the finely-executed mosaic patterns, wich beautify the floors of its countless halls . . .

The farther I went, and the closer examined the remains of this wast capital, the greater was my admiration of its firm and finished masonry. In short, the masterly workmanship of the capitals of pillars, the nice carvings of the intricate ornaments and arabesque friezes, surpassed any thing of the kind I has ever seen, whether abroad, or in the most celebrated cathedrals of England. I particulary observed a religious edifice of less dimensions than some of the others, but of exquisite architecture: it stood very near the octagon towers: and its high arched roof was a beautiful specimen of mosaic work, enriched with borders of the pure Etruscan, formed in red, black and yellow stone. The pillars and all ornamental parts of the building, were as sharp and fresh, as if but the erection of yesterday. Indeed every where time seemed to have dealt more mercifully with this city, that the hand of man . . .

Fine and even brillant mosaic, executed with more or less precision, spreads itself over the city: and in general, the form of the cross appears to be the root whence all the various patterns spring: houses, churches, towers, enbattled walls, every structure, high or low, partake the prevailing taste, and on all we see the holy insignia carved, large or small, in black stone. — Ker Porter. I. 173-4.

» մինչև ցխորաձորն՝ Թուի ինքնին քաղաք մի առանձնակ. » և այնքան ճոխափառ դրուագեալ 'ի ներքուստ և արտաքուստ, զի անհնար է և ոչ միով բանիւ ստորագրութեան հաւասարել զանազանութեան և հարստութեան » ճարտարագործ քանդակաց վիմացն՝ յերեսս ընդհանուր ամենայն շինուածոցն, կամ նրբայօրէն միւսիոն » քատակաց որք վայելչացուցանեն զյատակս անթիւ » սրահից նորին »: Նւ դարձեալ հասարակօրէն. « Որքան առաւել յառաջ մատեայ և մօտագոյնս քննեցի » զմնացուածս մեծի մայրաքաղաքիս, այնքան աճեցին » յիս զարմանք ընդ հաստատութիւն և ընդ կատարելութիւն կերտուածոյն. և զի համառօտիւ ասացից, » ճարտարարուեստ յօրինուած խոյակաց մութիցն, նրբրին դրուագք բազմամանուած զարդուցն և արաբիկ » քանդակաց, գերազանցէին քան զամենայն նմանատիպ » յօրինուածոց՝ որոց միանգամ ականատես լեալ էր իմ » յօտար կամ 'ի հռչակագոյն կաթողիկէս Անգղիոյ: Առանձինն նկատման արժանի թուեցաւ ինձ կրօնական » շինուած մի, փոքր ըստ չափոյ քան զայլս ոմանս, այլ » յոյժ ընտիր ճարտարապետութեամբ. և է նա հուպ առ » երի ութանկիւն աշտարակացն. որոյ բարձրակամար » ձեղուն գեղեցիկ օրինակ իմն է միւսիոնաշարից, պերճացեալ յատակ ետրուրական քուօք, կարմիր թուխ և » դեղին քարամբք յօրինեալ: Սիւնք և ամենայն դրուագեալ մասունք շինուածոյն՝ այնպէս անթերի և նոր » էին, որպէս թէ դեռ յերէկ կանգնեալ [1]: Արդարև » ամենայն ուրեք թուի ժամանակն առաւել խնայեալ » քաղաքին, քան ձեռք մարդոյ: . . Նուրբ, և նաև պայծառ միւսիոնք՝ որ շատ և որ սակաւ զուգութեամբ յօրինեալք՝ սփռեալ են ընդ բովանդակ քաղաքն. և 'ի հասարակի ձև խաչին նրևի արմատ՝ յորմէ սփռին ազգի » ազգի քատակքն. տունք, եկեղեցիք, աշտարակք, ընդգիմամարտ պարիսպք, ամենայն կերտուած՝ և բարձրն » և ցած, բաժանորդ են տիրականս ճաչակի. և 'ի վերայ » ամենեցուն տեսանեմք զնշանն սրբազան՝ մեծ կամ » փոքր՝ 'ի սեաւ վիմի »:

Հայրենակից Բորդըրի՝ Ուիլպրէհէմ որ յետ քան ամաց յայց եղ աւերակաց Անւոյ [2] (1837), գրէ. « Ամենայն մնացեալ շինուածքն՝ առաջի առնեն մեծ ճոխութիւն և ճարտարապետական գեղեցկութիւն. և քանդակք ոմանց 'ի կամարացն արդարև յոյժ բազմամանուածք են [2] »:

Ոչ պակաս քան զնա պքանչացեալ էր 'ի նմին ամի և միւս անգղիացի, Էպպօտ. « Զարմանք կալան զիս, » սաէ, ընդ ամրութիւն և ընդ գեղեցկութիւն կերտուածոյ մնացորդաց պարսպացն և պալատանն: Զորք կամ » հինգ եկեղեցիք չափաւորապէս կանգուն մնացեալք և » սքրկիկ շինուածով՝ արձանանան վկայք ճաշակի կանգնողաց իւրեանց Հայոց, և մին մանաւանդ արժանապէս մարթի կոչիլ վայելչաշուք և գեղեցիկ շինուած [3] »:

Իսկ Հէմիլդըն՝ ուրեք խառն իմն բիւզանդական և սաքսոնեան ասէ զոճ ճարտարապետութեան (կաթողիկէին), այլուր գոթաձև իմն նշմարէ, որպէս 'ի Ս. Առաքելոյս, ուր և մարթ է, ասէ, զսկիզբն երկոցուն ճոխազարդ ոճից՝ Գոթացւոյն և Սառակինացւոյն՝ նշմարել, խնամով դիտելով զզարդս խոյակացն և զբազմաթիւ անկիւնս խորշից 'ի միջոցս կամարացն, յորս մարթ է նկատել կանոնաւոր յառաջատութիւն, 'ի կատարեալ պարզութենէ՝ ցվայելչածաղիկ ճոխազարդութիւն [4]:

Ի գրուածոց անգղիացի ճանապարհորդացդ յորդորեալ պետութիւն և կացրդարան փռանկաց՝ առաքեցին զլեզուագէտ բանասէրն Պոռէ, զատ յայլոց տեղեաց՝ և 'ի կարևոր քննութիւն Անւոյ, և զքաջ պատկերահան և ճարտարապետ՝ Կարոլոս Գեսիէ, երկու ընկերաք. սոքա յաւուրս չորս չափեցին և ընդօրինակեցին ոչ սակաւ շինուածս, և զյատակաձև քաղաքին [5], հանդերձ երկար ստորագրութեամբ. յորում հասարակօրէն ասէ զայնցանէ՝ Գեսիէ. « Այս ամենայն փոքրադիր է ըստ քանակութեան. այլ այնքան խնամով յարդարեալ, և ծածկեալ այնքան ճշգրտաքատակ զարդուք, և այնքան խսկատիպ ոճով, զի հազիւ մարթ է ճանաչել 'ի յիշատականոցս յայսոսիկ, — որք զյունականն ճաշակ և զփափկութիւն բերեն, — զծնունդս մտաց ազգի՝ որ յաւուրս մեր » կորուսեալ է զամենայն զգացումն արուեստի, և չյիշէ » իսկ բնաւ թէ որպիսիք ոմանք եղեն իւր նախնիք [6] »:

Ոչ արդ անճաչակ գեղարուեստից ազգն այն (Հայոց), քաջ յիշել յիշէ զնախնիսն, և սխրանայ ընդ մնացուածս ձեռակերտաց նոցին: Սակայն բաւիցէ՞ այդու հասանել 'ի չափ նոցին: — Ճառելով առանձինն զմիոյ միոյ 'ի շինուածոց զոր ստորագրեցաքս, նշանակէ զյատկութիւնս նոցին անաչառ. և նախ զկաթողիկէին պարզութիւն, զզարդս ինչ արդարև ըստ Քէր Բորդըրի ետրուրանմանս, այլ զխոյակս սեանցն նրբից առաւել դորացի ոճոյ նմանս քան այլում. և նշանաւոր քան զամենայն. Ա. խառն կիրառութիւն [7] սուր աղեղան բոլորակամարի, և տափակ պայտաձև աղեղան, որք հազիւ ուրեք 'ի քրիստոնէական շինուածս երևին. Բ. կիրառութիւն բազմագունի նիւթոց, որք յիտալիա երևին 'ի շինուածս միջոցի ԺԲ–

1 Մերձաւոր յաշտարակն յիշեալս արդ տեսանի Ս. Գրիգորն Ապուղամրենց:

2 All these display much splendour and architectural beauty; and the fretwork of some of the arches is very rich. — Wilbraham, 287.

3 I was struck with the solid and beautiful masonry of what remains of the walls and palace . . . Four or five churches, still in tolerable repair and of neat construction, remain as proofs of the taste of their Armenian founders: one of these, indeed, may justely be formed an elegant and handsome building. — Abbot.

4 I could not avoid indulging in the conjecture that the origine of those rich styles called Gothic and Saracenic might be satisfactorily traced by studying the ornaments of the capitals, and of the numerous angles or recesses between the arches, in wich a regular gradation may be observed from perfect simplicity to florid exuberance. — Hamilton, I. 201.

5 Եթէ ոչ էր նոցա անճապարեալ 'ի մեկնիլ, վասն ոչ գտանելոյ ըստ բաւականի իւրեանց՝ պարէն և հանգիստ, առաւել յոյժ երախտապարտս կացուցանէին զմեզ:

6 Tout cela est petit de proportion, mais c' est appareillé avec tant de soin et couvert d' ornements si sagement ménagés, et d' un style si original, qu' on peut à peine reconnaître dans ces monuments, qui tiennent du goût et de la délicatesse des Grecs, les conceptions d' un peuple qui de nos jours a perdu tout sentiment de l' art, sans même conserver un souvenir de ce que furent ses ancêtres. — Texier, I. 94.

7 L'arc aigu du pleine cintre et de l' arc surhaussé en fer-à-cheval.

ԺԴ դարուց։ Գովէ և զճարտարս ժամանակին, զի գի-
տացին զառձեռնպատրաստ նիւթն՝ վարել 'ի պէտս շի-
նութեան. այսինքն չկարօտանալ փայտի՝ որ սակաւա-
գիւտ էր յայն կողմանս։ Ձկիրառութիւն սուր կամարի
հնագոյն համարի 'ի Հայս, մինչդեռ յԵւրոպա անծանօթ
էր. և զձև ճակատու կաթողիկէին՝ նախատիպ գերմա-
նական ճարտարապետութեան միջին դարուց. և 'ի Հայոց
գաղթելոց 'ի Լեհս՝ կարծէ ուսեալ Գերմանացւոց զձև
գմբէթի եկեղեցեաց իւրեանց։ Վասն եկեղեցւոյ վանաց
Ս. Գրիգորի Լուսաւորչի, նախ՝ կախարդիչ աչաց ասէ,
զմանրամասն խնամ յօրինուածոյն, և ապա զփափկու-
թիւն զարդուց քանդակացն, մանաւանդ զհաւուց, որ
զազգս թռչնոց երկրին կերպարանեն, աքլորք, փասիանք,
անգեղք. և վասն նկարէն պատկերացն՝ առուգիւ գու-
շակէ զնմանութիւն արուեստի ԺԲ, ԺԴ դարուց յԵւ-
րոպէ. այլ զընդհանուր ոճ շինութեան եկեղեցւոյն՝ սխալի




57. Դրուագք ինչ քանդակաց կաթողիկէին Անւոյ։

համարել դարու միով հնագոյն քան զկաթողիկէին. 'ի
գոգ գմբէթին կայ մեծ պատկեր Քրիստոսի բազմելոյ 'ի
գահ, վառ 'ի վառ և պայծառ երանգօք [1],



58. Մասն խաչվիմի 'ի Ս. Գր. Լուսաւորիչ։

Թերութիւնս ոճոյ՝ կամ մանաւանդ ճաշակի՝ ճարտար-
պետութեան Անեցոց, գտանէ Դեսիէ զանպատշաճո-
ղութիւն յօրինուածոց զարդուցն ընդ չափու շինուա-
ծոյն, որպէս կաթողիկէին, և զնրբութիւն սիւնակացն.
որով ցուրտ խին և լուրջ երևին շինուածքն. դարձեալ և
զնուազութիւն անջատ և զերծ սեանց, և զցածութիւն
նոցին. և 'ի հասարակի, զնուազութիւն բոլորչի քանդա-
կաց, յորս է խմանալ և զքարեղէն պատկերս կամ ան-
դրիս, զորս չախորժէր կամ անպատեհ համարէր ազգս
մեր, որպէս և այլ արևելեան քրիստոնեայք։ Իւ ամենայն
գեղ և շնորհք շինուածոցն Անւոյ, ասէ, յորժամ զմտաւ
ածցի՝ թէ մայրաքաղաք է դա, իբրև ոչինչ լինին. այսինքն
միայն կրօնական շինուածս գեղեցիկս համարի լինել
անդ, և քաղաքականս՝ ոչ։ — Եւգ. Պոռէ՝ որ ամօք ինչ
կանխեաց քան զԴեսիէ 'ի քննութիւն Անւոյ, նման բիւ-
զանդականին համարեցաւ զոճն ճարտարապետական.
« Սակայն ոչ ծառայական նմանողութիւն, այլ հանճարն
» տեղաբնիկ յաւել յեղաձևութիւնս յեղաձևեալս յու-
» շով պարսկային արուեստի, զոր է տեսանել յաւէտ 'ի
» ճոխազարդութեան դրասանգաց, ծաղկանց և պճնա-
» կաց։ Ոմանք 'ի շինուածոցն երևեցուցանեն զայլադէմ
» խառնուրդ երկոցուն ոճիցն՝ յարակցութեամբ երրորդի,
» զոր ճանաչեմ բնիկ հայկական և յօդեշնչութենէ քրիս-
» տոնէութեան ծնեալ։.. (Ուրեք արտաքին երեսք շի-
» նուածոց թափուր են 'ի քանդակաց և զարդուց), այլ-
» ուր ներհակարար արուեստն շռայլեալ է զարաբիկս և
» զաղարթունս այնպիսի նրբութեամբ կոփչի՝ որոյ չիք
» ինչ նախանձել յունական ճարտարութեան . . [2] »։ Ի
դէպ էր յիշել դոցա, մանաւանդ Դեսիէի, եթէ այնքան
բազմաթիւ գեղեցիկ եկեղեցեաց շինողքն՝ իշխանք, ճոխք
և թագաւորք ինքնին, ոչ հանդուրժէին անարժանս
նոցին ունել զհասարակաց շինուածս. և նորին իսկ Դե-
սիէի և այլոց եւրոպէացի քննողաց վկայութիւնք՝ հա-
ւաստեն և զշնորհս շինուածոյ ապարանիցն, կամրջաց,

1 Une grande figure de Christ assis sur un trône peinte d' une couleur chaude et brillante. — ID. IB.

2 Nous avons donc cru reconnaître dans le style d' Ani celui de l' ancienne Byzance. Néanmoins l' imitation n' est pas servile, et le génie local a ajouté des modifications, modifiées elles-mêmes par une réminiscence de l' art persan, comme on le remarque surtout au luxe des festons, des fleurs et des enjolivements. Certaines édifices offrent le bizarre mélange des deux styles combinés avec un troisième que nous croyons proprement *arménien*, et né de l' inspiration chrétienne . . . Ailleurs l' art a prodigué, au contraire, les arabesques et les astragales, avec une délicatesse de ciseau qui n' a rien à envier à l' habileté grecque. E. Boré, dans le Correspondent, I. 294.

աշտարակաց, կամարաց, քարեղէն սանդղոց, յորոց սակաւք ոմանք կանգուն կան. և եթէ յայտնէին յիշեալքն յարձանս հաստրակաց շէնք՝ զորս վերագոյնդ թուեցաք (38), հանդերձ այլովքն որք ոչ յիշին՝ այլ հարկաւ գոյին, այլազգ առնէր դատաստան ճարտարապետդ փռանկ: Յայտ է զի և ինքեան և ամենեցուն այլոց՝ հաճոյ երևեցան 'ի հաստրակի շինածքն և մանաւանդ քանդակքն և դրուագք, յորս անստգիւտ և կատարեալ հմուտս խոստովանելի է զմերայինս, բնատուր կամ սկզբնական իմն ունելով զարուեստ քարագործութեան, (բաց յանդրեաց), և հնարագէտ ճարտարապետութեան, որով վարպետն այն շինող կաթողիկէին և նմանեացն 'ի Հայս և կանգնող կոնաձև գմբեթաց՝ Տրդատ, հրաւիրեալ լինէր 'ի Կոստանդնուպօլիս կարկատել և զհոյակապ բոլորածաւալ գմբէթն Ս. Սոփիայ, որում ոչ լինէին ձեռնհասս յայնժամ բիւզանդիկ ճարտարքն Յունաց:

36. Անդրիագործութիւն և նկարչութիւն պատկերաց յեկեղեցիս, քանզի 'ի հաստրակի անընդունելի էր 'ի Հայս, թէպէտ ոչ առանց բացառութեան, վասն որոյ և չէր խնամով մշակեալ. վկայ այսմ են և գունագոյն զարդք աւետարանաց և այլ ձեռագիր մատենից, որք գեղայօրէնք և վայելուչք և հնարագիւտք են, այլ ոչ նոյնպէս և պատկերքն մարդկեղէնք, այսինքն աւետարանիչքն կամ տնօրինականք՝ որք 'ի նոյն գիրս. սակայն չկարեմք և յայսմ ստուգապէս վճռել վասն ժամանակաց շինութեանն Անոյ, 'ի Ժ դարու կամ 'ի նախորդին, զի ձեռագիրք այնց դարուց, և ևս առաջնոյն՝ յոյժ սակաւագիւտք են. և որչափ ինչ յ'Թ և Ժ դարէ եհաս մեզ տեսանել՝ լաւագոյնք և շնորհաւորք են քան զյետագայ դարուցն: Հարկ էր առ այս ևս մանրագոյնս խուզարկել և քննել զմնացուածս նկարուց հնագունից քան զՍուրբ Գրիգոր Լուսաւորչի վանացն, այսինքն զկաթողիկէին Անոյ և զայլոց հին եկեղեցեաց զոգս գմբեթաց, ուր Քրիստոսի և Առաքելոց պատկերք նշմարին ուրեք, և որ 'ի Ծաղկոցաձորին երևին պատկերք նկարէնք 'ի քարեղէն տախտակս մեծամեծս[1]: Եւ դոյզն նշմարք դոցին և գրաւոր յիշատակարանաց՝ աներկբայ առնեն ինձ՝ ըստ այնմ սարասի ճոխաքանդակս և զարդարունս լինել և հաստրակաց շինուածոց, գէթ գլխաւորացն, և սարառոյրով տանց (33). Թող զաւանդեալն 'ի յետնոց զապարանից ոսկէզօծութիւն: Վկայ այսմ արուեստի յաջողութեան մարթ է առնուլ և զմագաղաթից պատկերաց զոսկէզօծ յատակս և զարդս: Ընդ սմին և զճարտարութիւն միւսիոնագործութեան կամ նշաշքարի, որպէս ասի ռամկօրէն, վայելչազարդ չորածոյ կտորոց քարանց մեծաց կամ փոքունց 'ի յօրինուածս յատակաց և ձեղունց սրահից և սենեկաց, որում առձեռնպատրաստ օձան ընծայէր և բնութիւն երկրիս մերոյ, գունագոյն հրաբղխեայ քարամբքն:

Իսկ զհաստրակ կամ զկենցաղօգուտ արուեստից, յորոց յիշեցաք զնշանաւորսն յարձանսն (33), չկարեմք ասել զչափ բարգաւաճանաց, սակայն ոչ զանգիտեմք արժանիս և համաքատակս ասել շինուածոցն պերճութեան. քանզի աներկբայ է և ճոխութիւն և ճոխասիրութիւն Անեցւոց, մինչև ստգտեալ ևս իբրև չափազանց և 'ի շռայլութիւն և 'ի զեղխութիւն հատեալ, ըստ համարձակ հրահանգաց մեծամեծ և շահաստան մայրաքաղաքաց հին և նոր ժամանակաց. և զայդ 'ի կամս ընթերցողաց թողումք խորհրդածել:

Ցանկալի էր մեզ ընդ գեղարուեստից և զգեղեցիկ դպրութեանց ճաշակս կամ նշանակս գտանել յԱնի, և 'ի գետնափոր գրից նորին, որք յաճախ ընդ ոտամբ գնացողացն ընդ այն՝ թնդան, ակն ունել, որպէս 'ի Պոմպէի, բանաւոր մագաղաթից, յորոց ուսանէաք արդեօք ստուգապէս որպիսի ինչ էր տեղին այն 'ի Ժ-ԺԲ դարս. յարձանսն դուն ուրեք յիշատակին գրատունք, իսկ վարժարանք և հոգետունք՝ ոչ. թէ և անմարթ է զուրկ 'ի նոցուն կարծել զայնպիսի մեծ քաղաք. յորում արդէն երից և չորից վանորէից նշմարք մնան, և գիրս (տօնականս, և այլս) տուեալս եկեղեցեաց՝ արձանքն վկայեն. և յոլովութիւն բազմահմուտ և պերճախօս վարդապետաց ժամանակին, յորոց յանուանէ թուէ ոմն պատմիչ՝ վեշտասան, ընդ Պետրոսի կաթողիկոսի երթեալս 'ի Կոստանդնուպօլիս, բարւոյ գուշակք են, թէ և ոչ վկային նոքա բնիկք լինել Անւոյ. որպէս որք յ'ԺԲ դարուն, (յորում նուազեալ էր առաջին փառք քաղաքին) պայծառացանն և ծանօթք են մեզ. Սամուէլ ժամանակագիր, խրախուսեալ 'ի Գրիգորիսէ կաթողիկոսէ Փոքր Վկայասիրէ. Մխիթար հմուտն Պատմիչ և Թարգմանող ատենաբանական գրոց յԱրաբ դպրութենէ. Վարդան ոմն վարդապետ, որոյ ժամանակ ստուգիւ չէ յայտ, այլ ոչ կրսեր քան զսոսա երևի, այլ և անդորրութեան ժամանակի պատահեալ, որպէս տայ կարծել աշխոյժ բանաստեղծութեան նկարագրի քառակերպեան կառացն Աստուծոյ. և սակաւուք յետոյ քան զսոսա, Տէր Հաւնզաւայ Հաղբատոյ առաջնորդ, շինող Գրատանն տեղւոյն և այլոց մասանց: Արժա՞ն իցէ յիշել արդեօք և զնորին ժամանակակից 'ի սկիզբն ԺԳ դարու զԱռաքել Անեցի, որ Եբրայահան թարգմանեաց յարաբ լեզուէ. գէթ հմտութիւն նորա յայն լեզու, որպէս և Մխիթարայ, և սորին համանուանն՝ այլ ոչ համաքաղաքացւոյ՝ Մխիթարայ Հերացոյ, յայտ առնէ զի տակաւին չէր խափանեալ 'ի Հայս

[1] Տես զՊատկերն 56: Հաւանելի է թէ և մասն բիւզանդացի նկարչի մտեալ էր յեկեղեցիս Անւոյ. նաև հարկ իմն թուի թագաւորացն և թագուհեաց պերճասիրաց առատաբաշխից՝ ամենեին վայելուչ յարդարել զպատկերս իւրեանց, յորոյ և է ձեռն. մինչ ասել ինչ երիցագոյն քան զնոսա՝ եպիսկոպոսն Սիւնեաց Յակոբ, (եղբօրորդի Զ Յովհաննու Պատմիչ կաթողիկոսի) 'ի սկիզբն Ժ դարու, առ 'ի պաճուճել զյարկս Տաթեւու եկեղեցւոյն, «ետ ածել »նկարիչս, և զատատխոս որ է պատկերագործ, 'ի հեռաւոր աշխար- »հէ, ֆռանկ ազգաւ». (Ստեփ. Օրբէլ. ԽԹ): Կարևոր և անակնկալ դիտելիք: Բայց և 'ի նմին ժամանակի, յամի 936, դշխոյն Սիւնեաց՝ մեծոգին Սոփի՝ դուստր Դերենկան Արծրունւոյ, իւրոյ չքնաղակերտ եկեղեցւոյն՝ զոր մեծ խնամով վայելչացոյց 'ի Գնդեվանս, տուեալ «ածել արուեստաւորս 'ի ճարտար քարատաշաց», գործակալ կարգեաց շինուածոյն՝ զհամազգի «Եղէշա երեց և »Նէոբէշ». (Նոյն, Ծ). և ապա, թերևս քան զշինուածն մեծաշուք՝ արձանագրեաց բան ամենաշուք. «Մոփանի էր տնանն Վոյոյ Զոր. »շինեցի զոտ, և եղէ ոնի 'ի վերոյ»: Գոյ ակն ունել և բարձր քանդակաց յԱնի. զի անգղիացին Լէպպոդ, յամի 1857, ընդ արձանագիրսն յիշէ և պատկերս քանդակեալս վագեր, երիվարի և մարդոյ՝ որ ունէր 'ի ձեռին գնտաձև ինչ: (Տես և զպատկերն 28):

ուսումն հարուստ և կարևոր այնր բարբառոյ, յոր առաւել ևս պարտաւորեալ էին պարապել Նախորդք հեղինակացս, 'ի տիրապետութեան Արաբացւոց 'ի Հայս։ Զկք երկբայել զի 'ի Ժ-ԺԳ դարս համարձակ լսէին յԱնի ընդ հայկականիս՝ և վրացին և պարսիկ, որպէս և յոյն և արաբ երբեմն, և յետոյ և մոնղոլն թաթար. և 'ի վերոյգրեալ ինչ յիշատակէդ յայտնի՝ զի ոչ խապառ անլուր էին և եւրոպէական բարբառք, գէթ լատինն և փռանկ։ Երիցագոյն քան զյիշեալ հեղինակսդ՝ թէպէտ և անծանօթ յանուանէ՝ արժանի է յիշատակի և գովութեան թարգմանող ոմն, և ձեռնտու նորին Գագիկ յաղթող թագաւորն, որ ետ թարգմանել յաշխարհիկ լեզու ժամանակին՝ Բժշկարան մի յարաբ լեզուէ, և եհաս առ մեզ՝ գէթ մասամբ[1]։ Թողցուք զհնագոյն բնաւից և զգեբագոյն յԱնեցի անուանեալ մատենագիրս, զԱնանիա յէ դարու, զի ոչ է քաջ յայտ՝ աստի՞ էր ծննդեամբ եթէ մանաւանդ 'ի Շիրակաւանայ. և զի բազում դարուք յառաջ է քան զբարգաւաճանս Անւոյ։ — Քննութեան կարօտի և ժամանակ և սեփական տեղի ծննդեան Գրիգորի ուրումն Շիրակացւոյ, որ « էր հմուտ Օրինաց » ըստ մնացեալ բանի կորուսեալ Պատմչի միոյ[2]։

37. Ցեկեղեցական տեսչութեան՝ Անի ընդ քաղաքականին ամբարձաւ յաւագութիւն, աթոռ համարեալ քահանայապետութեան Հայոց. և թերևս յառաջ խսկ քան ըզհաստատել անդ թագաւորական գահուն՝ հանդէպք հայրապետականք կատարէին 'ի նմին, այլ ստուգիւ ոչ նշանակի փոխադրութիւն աթոռոյ սոցա յԱրգինայէ. յայտ է զի Պետրոս ճոխագոյնն հայրապետաց մերոց՝ նստէր աստ, և աստի վարեցաւ 'ի Կոստանդնուպօլիս, և աստ եթող զքեռորդին իւր Խաչիկ՝ փոխանակ իւր. այլ յարգելուլ կայսերաց զկաթողիկոսն 'ի Փոքր Հայս, Անեցիք յետ երկար ակնկալութեան խնդրեցին զեպիսկոպոս իւրեանց կարգել հոլիւ վեհագոյն քան զայլ եպիսկոպոսունս, և Գրիգոր Վկայասէր հաւանեցաւ զքեռորդի իւր Տէր Բարսեղ՝ անուանել կաթողիկոս, որ և հրամանաւ 'ի Մելիքշահ սուլտանէ՝ եկաց այնու պատուով յամի 1082, մինչև յաջորդեաց զնոյն ինքն զՎկայասէրն Մեծ՝ յաթոռ ընդհանուր քահանայապետութեան Հայոց։ Յաջորդ իւր Գրիգորիս՝ Փոքր Վկայասէր՝ բանադրեալ լեալ էր ընդ Ապուլուարայ (Բ) որդւոյ Մանուչէի տեառն Անւոյ, « վասն իւր սեպհական աթոռոյս՝ գալ այսրէն, » նորա յօժար կամակցութեամբ[3] ». այլ յորժամ լուաւ զգերութիւն նորա 'ի թագաւորէն Վրաց (1124), և յետ սակաւուց զդարձ որդւոյ նորին Փադլունի և զտիրանալն քաղաքին, (որ յայս յեղափոխութեանց սակս՝ սկսաւ յայնմհետէ նուազել և անշքանալ, ըստ վկայութեան ականատես բնիկ պատմչին), յետս եկաց 'ի խորհրդոյն, և Անոյ և համօրէն գաւառին Շիրակայ գլուխ կացին արքեպիսկոպոսք, նախապատիւք քան զայլս, և մի 'ի չորից որոց անկ էր հաւանել յընտրութիւն կաթողիկոսի. զայսոսիկ յիշելով ուրեք Ստեփանոսի Օրբելեան[4], զորս այս կոչէ Մեծ եպիսկոպոսն Անոյ։ Մինչև ցկէս ԺԲ դարու ոչ գտանեմ յանուանէ զյաջորդս Բարսղի Ա, բայց միայն զՅովհաննէս, որոյ ժամանակ անստոյգ, և թերևս երիցագոյն քան զկաթողիկոսն, զի յիշի յարձանին յորում պատրոնք Անոյ նշանակին Գրիգոր և Յովհաննէս (էջ 40). իսկ յետ կիսոյ ԺԲ դարու կացին,

| | |
|---|---|
| Բարսեղ Բ, որ յիշի յամս | 1160-1191 |
| Սարգիս որդի Ապիրատի | 1209-11 |
| Դաւիթ[5] ? | 1214 |
| Գրիգոր որդի Ապուղամրի | 1215-27 |
| Աբաս կամ Աբրահամ | 1240 |
| Բարսեղ որդի Ամիր Երկաթայ[6] | 1229-1253 |
| Սարգիս[7] | 1245-1276 |
| Սարկաւագ (իշխեցող կաթողիկէին Անոյ 1286) | |
| Վարդան | 1307 |
| Յովհաննէս Օսկէփոր[8], ԺԳ դար։ | |

Յետ այսորիկ առաջնորդք Խօշավանից համարելի են աթոռակալք Անւոյ, յորս յաւելլի և Յովհաննէս ոմն որ եպիսկոպոս վիճակին Անոյ կոչի 'ի կէս ԺԷ դարու (1653), եթէ չիցէ նոյն ինքն Շամբեցին[9]։

38. Յետ եկեղեցական տեսչաց քաղաքիս և գաւառիս՝ կարգեսցուք և զքաղաքականսն, որք պէսպէս անուամբ և չափաւ իշխանութեան՝ վերակացու եղեն նմին. և նախ թագաւորք Բագրատունիք՝ բնիկ և սեփական տեարք և ժառանգք 'ի հարց և 'ի հաւուց, զամս 84. յորոց առաջին, որպէս 'ի սկզբանդ նշանակեցաք՝ աստ հաստատեաց զաթոռ իւր, յամի

961 Աշոտ Գ (Յովհաննէս) Ողորմած[10].
977 Սմբատ Բ Տիեզերակալ, որդի Աշոտոյ Գ.
990 Գագիկ Ա, եղբայր Սմբատայ Բ.
1021 Սմբատ Գ Յովհաննէս, որդի Գագկայ Ա.
1042-44 Գագիկ Բ. որդի Աշոտոյ եղբօր Յովհաննու. առ որով վաճառակուր մատնեցաւ Անի կայսեր Յունաց,

1 Մատեանս զոր ունիմք՝ գրեալ 'ի մագաղաթի վասն Հեթմոյ Պատմչի Տեառն Կոռիկոսոյ, այն է յելս ԺԳ դարու, ունի յաւելուածս 'ի Մխիթարայ Հերացւոյ և այլուստ։

2 Ստեփաննոս Ռօշքեան, Բառագիրք Հայ-լատին։

3 Սամուէլ Անեցի։

4 Օրբելեան, Գլ. ԿԵ։

5 Բայնալուի, Եկեղեց. Տարեգր։

6 Սա միանգամայն առաջնորդ Հոռոմոսի վանաց, ձեռներէց երևի և յԱնի։

7 Յիշէ Կիրակոս։

8 Յիշատակարանք գրոց։

9 Նոյնք։

10 Փանզի գործք թագաւորացդ Բագրատունեաց ծանօթք են ամենեցուն որոց ընթեռնուն կամ ուսանին զՊատմութիւն Հայոց, աւելորդ էր և յիշելն առ տեղեաւս. բայց ոչ աւելորդ, թերևս և ցանկալի՝ առաջի առնել, որչափ բաւեաց մեզ գտանել, զազգաբանութիւն կամ զՏոհմացոյց ազգին Բագրատունեաց, զանց զառաջնովքն արարեալ նահապետօք և պայազատօք նոցա, ոչ միայն զի հազուագիւտ են առաջնոցն անուանք և ծնունդք յաջորդացն, այլ զի և չիք նոցա մասն ընդ Շիրակայ, յայլ աշխարհս և 'ի գաւառս ունելով 'ի սկզբանն զբնակութիւն. յետ կիսոյ ութերորդ դարու սկսանելով մտից նոցին և ժառանգութեան 'ի Շիրակ, որպէս 'ի սկզբանն ծանուցաք (4). այլ զի գտանեմք 'ի կիսոյ Զ դարու զնշան սերընդեան նախահարց նոցին, անտուստ և զազգն սկսանիմք կարգել յառաջիկայդ Տոհմացոյց ծառ։ Յիշեցաք ևս կանխաւ, զի նոր նախահայր իշխանաց և թագաւորաց Բագրատունեաց ճանաչի Վասակ, այլ ոչ նշանակի հայր սորա 'ի պատմչաց. սակայն յայտ հաւանութեան է՝ թէ էր ինքն Սմբատն Բիւրատեան կամ եղբայր նորին Աշոտ ոմն անյիշատակ. իսկ ժամանակին յարմարութիւն աներկբայ է, զի Սմբատ Բիւրատեան վկայի իշխեցող ցամս 705, և

քաջածանօթ և ատաղելի դիպօք, և մնաց ընդ իշխանութեամբ Նոցին զամս 21 միայն. որք զօրավարս ոմանս և Կատապան[1] մականուանեալ մարզպանս առաքէին 'ի վերատեսչութիւն քաղաքին և համօրէն վիճակին. յորոց յիշին այսոքիկ, յամս

1043-4 Աւիդ.

1044 Նիկողաս.

1045-50 Կամեն կամ Կամինաս.

1053 Արօն Մագիստրոս (ազգաւ Բուլղար), նորոգող պարսպաց Անւոյ.

ց1064 Բագարատ Մագիստրոս Վրկացի, և Գրիգոր որդի Բակուրանայ.

Ցեւինքդ զոյգ հրամանատարք՝ Վրացիք էին, որպէս հաւաստէ Մատթէոս Ուռհայեցի, և ոչ չատ խնամոտք, վասն որոյ և ոչ սիրելիք քաղաքացեացն, տակաւին ակն ունողաց վերադարձի բնիկ բագրատունի պայազատաց, յորոց վերայ այնքան արութեամբ մարտեան և նահատակեցան սպարապետք Նոցին Պահլաւունիք, Վահրամ և այլք, վաննելով զամենայն յարձակմունս այլազգեաց. իսկ առ վերակացութեամբ օտարաց, յամի 1055, Ապուլասւար իշխողն Դունայ խառն զօրօք Պարսից ասպատակ սփռեաց 'ի Շիրակ. «յորոց հինէ մարդաբնակ տեղիքն փախուցեալ 'ի քաղաքն Անի ժողովեցան. և ոչ ժամանեալ ամենեցուն 'ի ներքս մտանել, քանզի երեկոյացաւ ժամն, և ածին զդրունս քաղաքին. իսկ զօրքն Պարսից գիշերագնաց եղեալ կալան զդուռն քաղաքին, և սուր 'ի վերայ եդեալ անհնարին կոտորածս առնէին. որում ոչ ոք գոյր օգնական. զորոց առեալ զառ և զգերի՝ գնացին յաշխարհն իւրեանց[2]»: Ցետ այսորիկ Գագիկ՝ դրկեալն յարքայութենէ, զոր իբրև 'ի գիպահոյ ունէին Ցոյնք, առաքեաց զորդի իւր ղեռահասակ՝ զՅովհաննէս, որ յանկագոյն խորհրդով «փեսայացաւ Տուկին Անւոյ Հոռոմի, (թերևս Արօնի) յուսով ինչ, և եկն յԱնի, և չգտեալ հանգիստ՝ չոգաւ 'ի Վիրս[3]»:

Ցայսպիսի անցից առաւել ևս զգուեալ ազգանախանձ Հայոց՝ խորհեցան տալ զքաղաքն 'ի Մարիամ դշխոյ՝ մայր Բագարատայ Վրաց թագաւորի, քանզի Հայ էր ազգաւ, դուստր Սենեքերիմայ Արծրունեաց թագաւորի[4]: Այլ մինչ յայս վարանս և 'ի գործ էին՝ եհաս յարևելից բռնաւորն Սկիւթացի-Սելճուգ հրոսօք, աՀեղն Ալփ-արսլան. «կանգնեաց զխորանն իւր ընդդէմ քաղաքին Անւոյ, և տարածեաց զբանակս ընդ լայնութիւն երկրին. »ջանայր հնարէր՝ զի զդուռն երկաթի և զնիգս պղնձի »'ի բաց խլեսցէ, որ կայր ընդդէմ թագաւորութեան »իւրոյ. և անյոյս լեալ յաղագս ամրութեանն, թէպէտ »և զմարտն սաստկացուցանէր, կամէր չուել...: Իսկ »անօրէն իշխանքն Հոռոմոց զորս կացուցեալ էր թագաւորն պահապանս տանն Հայոց, Բագարատ հայրն »Սմբատայ, և Գրիգոր՝ Բակուրանին որդին՝ վրացի ազգաւ, սկսան սոքա ամրանալ 'ի Վերինն և 'ի Ներքին »բերդն..: Եւ յորժամ տեսին քաղաքացիքն զատուածուրաց պահապանաց ամրանալն՝ բեկան, և այր իւրաքանչիւր 'ի փախուստ լինէր առանց պատճառի[5]»:

Զհետևանս անցիցն, և զաղէտս ահաւոր կոտորածին յաւուրն քաղաքին 'ի վայրագ Սկիւթացն, Թողում մեռոցս Արիստակեայ Լաստիվերտեցւոյ և Մատթէի Եդեսացւոյ պատմել և ողբալ, և ժամանակագրաց Բիւզանդացւոց և մահմէտականաց. յորոց մի ոմն ասէ, Ալփ-արսլանայ հանդերձ որդւովն Մելիք-շահիւ եկեալ 'ի պաշարումն չքեղ և ամրակառոյց քաղաքին, որոյ երեք թաղքն չրջապատեալ էին 'ի գետոյ (զոր Նա սխալմամբ Երասխ կոչէ) և չորրորդն յայլմէ խորանիստ գետակէ (نهر عميق), վասն որոյ և դժուարամատոյց յոյժ. յոր սակս ընդ երկար եղև պաշարումն և մաքառմունք. մինչև 'ի բուռն բաղխմանէ մենքենայից պատառեալ զմասն մի պարսպացն, 'ի ներքս խուժեցին Թուրքք: Այնքան մեծ և անակնկալ համարեցաւ Ալփ-արսլան զյաջողուածն, մինչև անդէն և անդ գրել զդէպսն և աւետաւորս առաքել առ Ամիրապետն Խալիֆաց 'ի Բաղդատ. և յայնմ հետէ յաւել ինքեան զՑաղթողն անուանակոչութիւն,

յետ այնր է Վասակ հայր իշխանացեալն Աշոտոյ Պատրկի՝ անդրատին յամէ 733: — Արդ 'ի Մանուելէ Բագրատունւոյ, (զոր Սեբէոս Պատմիչ ծանուցանէ մեզ հայր գոլ Բագմայաղթին Սմբատայ Վրկանաց մարզպանի), մինչև ցԱշոտ Թոռն Գագկայ Բ վերջնոյ թագաւորի, լինին ուղղակի գծաւ ազգք 20, 'ի կիսոյ Զ դարու ցկես ԺԱին և անդր. իսկ կողմնական գիծն անդրագոյն ևս ձգի հնգիւք ազգօք, ժամանեալ ցկես ԺԳ դարու կամ ցամն 1200, յորում յիշի Հայր յետին արքայազարմ պայազատի փոքունց թագաւորաց կողմանց Տաւուշայ (ուր 'ի դէպ է խնդրել զնոսին) Թաղիադինն, 'ի բանակին Հուլաղու ղանի, ընդ պաշարողս և առողս Նփրկերտոյ: Եւ այսպէս լինին 25 ազգք 'ի շարի, որդի 'ի հօրէ յիշեալք և բաւեալք ամս ոչ պակաս քան զ'700:

Որպէս տեսանի 'ի Ծառիդ՝ երեք գլխաւոր ոստք են նորա. աջակողմեանն՝ ընծայեաց իշխանս և իշխանապետս իսկ Հայոց 'ի Տարօն, յԹ դարու. եթէ որպէս հասին նոքա իշխանութեանն յայնմ գաւառի Մամիկոնենից, ոչ է մեզ քննել աստանօր: Ձախակողմեանն ոստ երեք զշառաւեղս իշխանաց արևմտեան հիւսիսային Հայոց, որք յերկրի Տայոց և Մեսխաց, նա և այլոց ևս վիճակաց 'ի Վրաց աշխարհին. զորովք զանց արարաք, քանզի իսպառ 'ի վրացի օրէնս և 'ի լեզու փոխեցան, և զի չէ աներկբայ սերունդ կամ ազգաթիւ նոցին: Իսկ միջին բունն է հարազատ և անդրանիկ տոհմին Բագրատունեաց. որ և ինքն առանձինն արձակեաց և երկուս ոստս կողմնակի. յաջմէ զթագաւորսն Կարուց կամ Վանանդայ՝ ցերիս ազգս. յահեկէ զթագաւորսն Գուգարաց կամ Տաշրաց, նոյնպէս յերիս ազգս. բայց պայազատք սոցին նենգեալք 'ի Վրաց և կապտեալք 'ի վիճակէ աստի, գնացին 'ի կողմանս Ուտիացւոց աշխարհին. և անդ երկոքին եղբարք՝ որդիք Կորիկէի (կամ Գուրգենայ Բ), Դաւիթ և Աբաս՝ կացին առանձնակ թագաւորք, մեն միոյ բերդի (Նորբերդ և Մածնաբերդ), 'ի սահմանս Տաւուշ կամ Տուչքատակ գաւառի, զորս միով անուամբ երկրի Թաքաւորց Աղուանից կոչեմք. զի երկիրն այն մինչև յաշխարհն Սիւնեաց՝ Աղուան կոչէր 'ի միջին դարս. բայց կոչին 'ի պատմչաց մերոց և Թաքաւորք Աղուանից, վասն տիրելոյ երբեմն Աղուանից 'ի վերայ գաւառացն այնոցիկ: Սոցա յետին պայազատ է Սարգիս որդի Թաղիադնի (որ ոչ ևս կոչի թագաւոր), ազգ քսանևորորդ հինգերորդ սկսեալ 'ի Մանուելէ Բագրատունւոյ:

Նշանակ իւրաքանչիւր ազգի կամ նոր սերնդեան է կոծ ծառոյն, ուստի և ճղճղի: Կ. նշանակէ զկին Բագրատունւոյ, կամ զդուստր (Դս.) Բագրատունոյն տուեալ 'ի կնութիւն տոհմակցի կամ օտարի:

1 Κατεπανω կամ Κατ' επανω, ըստ ոմանց 'ի լատին բառէ Capitaneus յեղեալ, նշանակէ գլխաւոր կամ զօրավար. այլ հաւանօրէն 'ի յունականէն, ընդհանրական կամ ամենապետ նշանակելով, և լաւ ևս ըստ հայումս Հօմոկար. որպէս կոչէին պաշտօնեայք ոմանք Սասանեանց 'ի Հայս. իսկ Կատապան անուանէին տեղակալք մարզպանք կայսերաց 'ի հեռաւոր նահանգս կամ 'ի գաղթականս:

2 Արիստ. Լաստիվ. Գլ. ժէ:

3 Վարդան, Կ:

4 Ջուանշիր Պատմիչ Վրաց:

5 Լաստիվերտ. ԻԴ:

Ապուղ-ֆարան. և թողեալ անդ զունդ հզօր 'ի պահպանութիւն՝ դարձաւ 'ի Պարսս: Այն ամ էր 1064, և յի դարադարձ սկզբնաւորութեան շինութեան պարսպացն Անւոյ յՈղորմածէն Աշոտոյ (964). և առաջին ճակատումն եղև տկարագոյն մասին նոցին, « զոր բարառնալ փլուցին » այլազգիքն, (ասէ Մատթէոս), թէպէտև զբազում » աւուրս պատերազմեալ՝ ոչ կարացին մտանել 'ի քա» ղաքն »: Յետ սակաւ ամաց, այն է յամի 1072, Ապուլսուար կամ Շաւուր՝ Դունայ իշխեցողն, որ երբեմն մինչև ցդուռն քաղաքին ասպատակեալ էր, խնդրեաց յԱլփարսլանայ, և բազում գանձիւ գնեալ՝ կացոյց իշխան զորդի իւր մանկահասակ զՄանուչէ. որոյ տոհմն կոչեցեալ Շէտտատեան՝ [1] ամս աւելի քան զ120 տիրեաց քաղաքիս, ամիրայ պատուանուամբ. և այս են տիրապետքն ընդ վեհագոյն իշխանութեամբ սուլտանաց Պարսից.

1072—1110 Մանուչէ (Փատլուն Բ) որդի Ապուլսուարայ, որդւոյ Փատլունի Ա.
1110 Ապուլսուար Բ որդի Մանուչէի.
1126 Փատլուն Գ. որդի Ապուլսուարայ Բ.
1131 Խուշչէր՝ եղբայր Փատլունի Գ.
1132 Ամիր Մահմուտ կամ Էմիր Շահ եղբայր վերնոցն.
1155 Շէտտատ եղբօրորդի Մահմուտայ.
1156 Փատլուն Գ.
1156 Ամիր Մահմուտ վերստին.
11..—1198 Քէյ Սուլդան որդի Մահմուտի:

Նահապետ ամիրայիցս Մանուչէ [2], քանզի 'ի մօրէ թոռն էր կամ թոռնորդի Աշոտոյ՝ հօր վերջին թագաւորին Բագրատունեաց (Գագկայ Բ), և յետոյ թուի և ինքն առեալ կին Բագրատունի Կատա անուն, խնամով մարդասիրեաց առ Հայս. և « իբրև զարգացաւ՝ յաւելոյր 'ի պա» րիսպս Անւոյ և յամրութիւնս նորա. և ած 'ի քաղաքն » զամենայն մնացեալ իշխանսն. որպէս և մեծաւ հան» դիսիւ ընդ առաջ ելեալ մուծանէր 'ի ներքս զԳրիգոր » զորդին Վասակայ, զԹոռն Ապիրատին. զոր ասեն » ունել 'ի գլուխ ազատաց կանանցն՝ 500 թագս երևե» լիս. զի էր տէր մեծ զօրաց և բազում ազատաց. և » էր եղբայր տէր Բարսղի, որ զկնի Գէորգեայ ձեռ» նադրեցաւ 'ի Հաղբատ՝ կաթողիկոս, հրամանաւ և » կամօք Մանուչէի և ամենայն Հայոց. և շինեցաւ քա» ղաքն Անի ոչինչ պակաս քան զառաջինն [3] »: Այս Գրիգոր թուի՝ որ գործակցաւ Յովհաննիսիւ Պառբոնք կոչին և Նորոգողք Անոյ, և արձանագրեալ են ընդ գործ իւրեանց առ դրամբ քաղաքին [4]: — Բայց բնիկ տեարքն Անւոյ Բագրատունիք 'ի Փոքր Հայս ոչ մոռանային զժառանգութիւն իւրեանց. և յետ հօր իւրոյ Յովհաննու (որդւոյ Գագկայ Բ), փորձեաց և մանկահասակ որդի նորին Աշոտ, և երթեալ առ Սուլտանն (Մելիքշահ), հաւանեցոյց և ընկալաւ զտէրութիւն քաղաքին. այլ ներքինի ոմն ազգական և հաւատարիմ Մանուչէի սպան զնա, որպէս թուի՝ մինչչև մտեալ 'ի Շիրակ, և մարմինն տարեալ եղև 'ի Կոստանդնուպօլիս, ուր յառաջ քան զգալ դիականն՝ մեռեալ էր և հայրն. 'ի նմին գրեաթէ ժամանակի և հաւն Գագիկ Բ. և այսպէս գրուեալ լինէր և ամենայն ակնկալութիւն Բագրատունի պայազատութեան. թէպէտև ցեւս ԺԳ. դարու կոչէր « Հին » տունն Բագրատունեաց՝ Անի և Շիրակ [5] »: — Առ Մանուչէիւ յամի 1093 կամ 1094 « եղև 'ի պատճառս մարախոյ և » երաշտոյ սով սաստիկ, և 'ի յԱնի կարի իմն նեղութիւն » մեծ. ուստի զմեռեալսն թաղել ոչ կարէին 'ի սովոյն, » և ոչ օրինացն հաղորդել. որ և այր մի, ասեն, քաջու» թիւն ցուցեալ և սէր առ Աստուած՝ թաղեաց 6000 » անձինս, որում անուն էր Բեխ: Զայսպիսի աղէտս » լուեալ այր մի մեծատուն 'ի Պարսս, և երամակ մի » ուղտուց բարձեալ ցորենով գայր 'ի յԱնի, և ասէր ոչ » այլ ումեք տալ՝ բայց տղայոց [6] ». և այնպէս արար մինչև 'ի սպառել ցորենոյն, և յանձնեաց զտղայսն ծնողաց նոցին: « Զկնի անցանելոյ սովոյն՝ ազգ մի սկիւթական, » որ 'ի վաղեաց ժամանակաց զօղեալ կայր առ Վրկա» նաւ, անուն գլխաւորին Եղխազի (Օրդաք) կոչեցեալ, որ » եկն 7000աւ ընդ միջոցս աշխարհի մինչև յԱնի քաղաք » պատերազմաւ. և մեռանի անդ եղբայր նորա, (որ » նման էր Գողիադու հսկայի), 'ի Գրիգորոյ որդւոյ Վա» սակայ Թոռին Ապիրատին, որ զկնի աւուրց նահատա» կեցաւ 'ի Կաղզուանն, զերծուցեալ 'ի մահուանէ զա» միրայն Անւոյ զՄանուչէ. և տարեալ թաղեցին զնա » 'ի Կեչառուս. և Մանուչէ և ամենայն զօր բանակին » Հայոց՝ զկնի դիոյն [7] »: — Զայսու ժամանակաւ բերաւ խաչն Նունեայ յԱնի, որ յետոյ տարաւ 'ի Հոռոմոսի վանս: Այս ամենայն դէպք յ'երկար իշխանութեան Մանուչէի՝ քաջ վկայք են և բազմամարդութեան քաղաքին և բարգաւաճանացն, յոր ոչ ընդերկարեաց յաւուրս որդւոյ նորին Ապուլսուարայ Բ. զոր՝ « այր անարի և կնամարդի » կոչէ Վարդան. մանաւանդ յորժամ կամեցաւ մահմետական նախանձու վառեալ՝ լուսին ոսկի դնել 'ի գլուխ կաթողիկէին Անւոյ, և զքաղաքն ինքնին վաճառել ամի-

1 Ըստ ոմանց 'ի Քրդաց ծագեալ է տոհմս Շէտտատի. պատմիչ մեր Վարդան յիշէ (Գլ. ԾԶ) յառաջին կէս ԺԱ դարու զնախամայր սոցա Մամ անուն, որ գայ 'ի Պարսից երեք որդւովք (որք կոչէին Պարզուան, Լէշքարի և Փատլուն), 'ի գաւառն Փառիսոսյ սոքա խորամանկութեամբ զմայր իւրեանց տուեալ պատանդ՝ տիրանան բերդորէից գաւառին, ապա մի ըստ միոջէ սեփականութեանց Գանձակայ, Պարտաւայ և Շամքորոյ, սպանեալ կամ հալածեալ գիշխողս նոցին: Անդրանիկն վաղ մեռանի. երկրորդն սպանանի յորսի 'ի կրտսերոյն. սա (Փատլուն) նոյնպէս դաւանօք և սպանութեամբք տիրէ և այլոց կողմանց Աղուանից. իսկ ընդ հզօրագոյն թագաւորս՝ Հայոց, Վրաց և Գուգարաց՝ « գոռ դնէ ... և նեղէր » զնոսա. տիրեաց և Դունայ »: Սա ինքն թուի հայր Ապուլսուարայ: Արտաքին պատմիչք յառաջ քան զսոսա յիշեն նախ զՄուհամմէտ 'ի կէս Ժ դարու, յետ նորա զԱպուլ Հասան և Մէրզէպան. առ Ա Փատլունիւ (որ է Ֆազլ ըստ Արաբաց), յիշի և Ապուլֆէթ: Մուսա 'ի նմին տոհմէ, և որդի նորին Ալի, և սորա որդի Նուշիրվան:

2 Վարդան, ՀԱ:

3 Վարդան, ԾԹ:

4 Վասն սորա կամ Մանուչէի ասացեալ թուի Մատթէ ոմն Պատմիչ կորուսեալ, զայս բան. « Պարսպեաց զքաղաքն և կանգ» նեաց զբրգունսն և ս », 'ի թուին ՇԽԱ (1092): Նորին պատմչի մնայ և այս բան, անստոյգ ժամանակաւ. « Ըստ հրաման Բուլքա» կանացն պաշարել զամուրն Անի »: Եւ գտանին հատուածք բանիցս 'ի Բառագիրս Ստեփանոսի Ռոշքեան Կամենիցացւոյ:

5 Ստեփ. Օրպել. Թուղթ:

6 Վարդան, ԿԳ:

7 Վարդան, ԿԳ:

բայլին Կարուց 60,000 դենարի. « վասն որոյ սրտառեալ
» քրիստոնէիցն՝ կոչեն զԴաւիթ Թագաւոր Վրաց, և տան
» 'ի ձեռս Նորա զքաղաքն Անի. և ընկեցեալ զզէնն ա-
» ռելլի 'ի պատուական գլխոյ կաթողիկէին՝ զոր ունէր
» վաթսուն ամ՝ վասն մեղաց մերոց համբերելով[1], եդին
» զպսակն զարդու և զԹագն Յիսուսի, զպարծանքն Պօ-
» ղոսի, զփրկութեան մերոյ արեգակն, զխաչն աս-
» տուածընկալ. և հարեալ զժամահարն առ խաչին՝
» դաւանեցին Աստուած զխաչելեալն 'ի փրկութիւն հա-
» ւատացելոց։ Իսկ Թագաւորն՝ զԱբուլէԹ և զորդին իւր
» զԻւանէ (Օրբէլեանս) Թողեալ յԱնի, դառնայ յերկիր
» իւր, ընդ իւր տանելով զԱպլսուար որդւովք իւրովք,
» որք անդէն մեռան, և ոչ ևս դարձան[2]»։ Այս եղև
վաթսուն ամաւ զկնի առման քաղաքին յԱլփ-Արս-
լանայ, որ է ամն 1124։ Բայց զի խակըն մեռաւ քաջ
Թագաւորն այն Վրաց Դաւիթ, անդրանիկ գերելոյն
Ապլսուարայ՝ Փադլուն Բ՝ որ առ ամիրապետին Հագա-
րացւոց կայր, « փութացաւ գալ յերկիրս մեր, և շուրջ
» զքաղաքաւն՝ զիշխողս իւրաքանչիւր տեղեաց 'ի բանի
» արարեալ՝ պաշարեաց զսա. վասն որոյ զամն զայն ող-
» ջոյն օր ըստ օրէ սաստկացան հարուածք սովոյն, և բնա-
» կիչք ամենայն 'ի կողմանս կողմանս ելս առնելով 'ի գի-
» շերի. յորոց վերայ անկեալ դարանեալքն՝ զարս կոտո-
» րէին, որոց արեամբ և ոսկերօք ծածկեցաւ երկիր, և
» զկանայս և զմանկունս վաճառակուր առնէին. և Թէ-
» պէտ... անուանի քաջազգին Իւանէ որդի ԱպլհէԹի
» որ բազում արութիւն ցուցեալ զասպատակն կոտորէր,
» և 'ի զօրաժողով լինելն 'ի վերայ քաղաքին՝ Փադլու-
» նոյ՝ բազում հեծելովք, առ ոչինչ համարեալ պարտէր,
» այլ և սակաւ արամբք պատճառ եղև փրկութեան քա-
» ղաքին՝ մարտակցութեամբ բնակչաց սորա։ Նա յայսմ
» պատերազմի կին մի առաքինացաւ 'ի վերայ պարըս-
» պացս՝ առնացի առացեալ սիրտ, հալածական առնէր
» քարամբք զմարտուցեալսն՝ յելանելն ընդ պատուարսն,
» առ ոչինչ համարեալ զխոցուածս Նետիցն՝ զոր վիրա-
» ւորէին արտաքուստ. և էր անուն Նորա ըստ արժանի
» արագութեանն՝ Այծեամն կոչեցեալ։ Սակայն քանզի
» Թագաւորութիւնն Վրաց չև էր հաստատեալ բոլան-
» դակ, և սովն և մարդածախութիւն յոլովացաւ, ապա
» հարկեցան տալ անդրէն 'ի Փադլուն՝ զսա. դաշինս
» երդմանց պահանջեալ 'ի Նմանէ, չառնուլ վրէժս 'ի
» Նենգչաց հօր Նորա և եղբարց։ Զոր Թէպէտ և յանձն
» առնոյր առ ժամայն, այլ յետ պարապ առնլոյ՝ իւրք իւրք
» հնարիւք՝ առ զվրէժս, հաստուցեալ Նոցա զհատուցումն։
» Յորոյ իշխանակալութեանն Թէպէտ և խաղաղանայր
» երկիրս 'ի սովորական հինիցն, այլ վասն վերոյգրեալ
» Նենգութեանց և հարկապահանջ յափշտակութեանց՝
» եկն եհաս 'ի վերայ մեր յետին աղքատութիւն և տա-
» ռապանք անհնարին՝ որ յառաջագոյն ժամանակք ու-
» Նէր զաշխարհս Հայոց. և աստանօր յաւելու յաճախա-
» պէս մի ըստ միոյ, մինչև յաւուրս յայսասիկ յորում
» եմքս[3]»։ Զայսսիկ ասէ բնիկ քաղաքացին Անոյ Սա-
մուէլ, որ իբր յիսուն ամաւ զկնի դիպացս՝ կնքէր զժա-
մանակագրութիւն իւր. և զայն միջոց ժամանակի (1126-
1177) համարի Նուազելոյ և անշքութեան քաղաքին իւ-
րոյ։ Այլ գէթ զայս մխիթարութիւն ունէր քաղաքն,
ըստ վկայութեան այլոյ պատմչի, զի « Որդիքն Մանուչէի
» արարին սաստիկ երդումն, վասն զի սուրբ կաթողի-
» կէն որ էր յԱնի՝ հիմնապազ Հայոց կացցէ, և մի մոցէ
» 'ի Նա Տաճիկ և ոչ մուրման ազգ[4]»։ Թէպէտ և ոչ
յեկեղեցին, այլ յետ երից ամաց ազահեաց Փադլուն 'ի
սպասս Նորին, և կալեալ զփակակալն Գրիգոր՝ և ար-
կեալ 'ի բանտ, էառ 'ի Նմանէ բռնութեամբ զբանալիսն,
« և 'ի վաղիւն կամէր կողոպտել զեկեղեցին 'ի զար-
» դուէն, զոր՝ Նոր զգեցեալ էր առագաստն երկնաւոր,
» զկնի վաթսնամեայ սգոյն». այլ զարհուրեալ 'ի տես-
լեանց գիշերոյ, իբրև « 'ի խոցոտմանէ հրակերպ արանց՝
» որք ելանէին 'ի բանալեաց եկեղեցւոյն[5]», կասեցաւ 'ի
գործոյն։ Եղբայր մի սորա պատանի, 'ի հանոյն իւրմէ
Կատայէ վարժեալ և սիրեալ զքրիստոնէութիւն՝ մկըր-
տեալ կրօնաւորեցաւ 'ի վանորայս Ս. Գրիգորի 'ի Դա-
րանաղի, և ապա երԹեալ 'ի Դրազարկ՝ փոխեցաւ առ
Տէր[6]։ Իսկ ինքն Փադլուն յետ եօԹնամեայ իշխանու-
Թեանն՝ զոր ընդարձակեաց, տիրելով Դունայ և Գան-
ձակայ, մեռաւ 'ի պատերազմի՝ 'ի Խուրթ ամիրայէ Ղօզ
Թուրքաց, որ էառն զԴուին. և յաջորդեաց զնա եղբայր
իւր Խուզչէր, և յետոյ աւագագոյն եղբայրն Շէմիր Մահ-
մուտ, « և անկաւ դարձեալ 'ի Թշուառութիւն երկիրն
» Անւոյ[7]»։ Եւ մի 'ի պատճառաց Թշուառութեանն
Թուի հակառակութիւն և բարձանգութիւն բազմաԹիւ
եղբարց և որդւոց Փադլունի Բ, որոց և կարգ պայազա-
տութեան մի ըստ միոջէ ոչ է քաջ ստոյգ, մանաւանդ
զի զամս քսան և աւելի ոչ Նշանակին դէպք. և այս ժա-
մանակ մերձ է 'ի կէս ԺԲ դարու, յորում հոգերգուն
Շնորհալի հայրապետ մեր՝ իբրև զփորձանակից հրաւի-
րէր զԱնի ողբակից լինել Եդեսիոյ։

Միոյ յերեցուն եղբարց յիշեցելոց տերանց Անոյ որդի
է Շէտտատ, որ իշխէր մինչև յամս 1155-6. յորում՝ քա-
ղաքացիքն առաջնորդութեամբ երիցանց իւրեանց, (ըստ
պատմչաց Արաբացւոց)[8], մերժեցին զնա և ետուն զիշ-
խանութիւնն եղբօր Նորա Փադլուն Գ. Թերևս զի ոչ
քաջ զգուշանայր երկրին, ուր սակաւ ամք յառաջ աս-
պատակեաց ՍալԹուխ Ամիրայ Կարնոյ մինչև 'ի դրունս
Անոյ, ուրանօր եհար զնա Դեմետր արքայ Վրաց, յամի
իբր 1152։ Յաւուրս այսր Գ Փադլունի, յամի 1160,
Աբրահամ ումն շինեալ է զբուրգն մի քաղաքին 'ի գլուխ
քարափան Ծաղկոցաձորոյ յարտաքին պարսպին[9]։

Յետ սակաւուց յամի 1161 Գէորգի Թագաւոր Վրաց

[1] Ըստ ոմանց արդէն եդեալ էր Նշան դենին յաւուրց Ալփ-արսլանայ, և 'ի մզկիԹ ևս փոխեալ զկաԹողիկէն. վասն որոյ Թագաւորն ԴաւիԹ ժողովով եպիսկոպոսաց, քահանայից և կրօնաւորաց Հայոց՝ մեծաւ հանդիսիւ ետ օրհնել վերստին զկաԹողիկէն։
[2] ՄատԹէոս Ուռհայեցի։
[3] Սամուէլ Անեցի։
[4] ՄատԹէոս Ուռհայեցի։
[5] Վարդան, ԿԹ։
[6] Վարդան, ՀԱ։
[7] Վարդան, ՀԱ։
[8] Իպն-էլ-ԱԹիր և Այնի։
[9] Տես յէջ 41։

'ի մի օր պաշարեալ՝ յերկրորդումն էառ զԱնի 'ի փատ֊
լունայ [1]. « և զկնի յիսուն աւուր եկն Շահի Արմէնն
» (Սուքման Բ, Տէր Խլաթայ) բազում հրոսակաւ 'ի վերայ
» հարուածեալ և ախտացեալ քաղաքին՝ 'ի Սոնացն
» (Վրաց). զոր լուեալ Գէորգի՝ անդրէն դարձաւ, և
» եհար զնոսա կոտորմամբ սրոյ, զորոց զթիւն ոչ ոք
» կարաց գիտել. բայց ձերբակալքն եղեն 20,000։ Եւ
» թողոյր 'ի յԱնի զՍադուն իշխանն (Արծրունի). յորոյ
» վերայ կարծիք ապստամբութեան եղեն, վասն խնամով
» ամրացուցանելոյ զպարիսպ քաղաքին. զոր իմացեալ
» թագաւորն՝ ընկենու զնա 'ի պատուոյ... և զիշխանն
» Զաքարեան զՍարգիս՝ դնէն 'ի տեղի նորա յԱնի [2] »։
Այս գործ մեծ եղև յամսեան յունիսի յ'13, ըստ ընիկ
ժամանակագրին, որ ասէ. « Կոտորէ զՇահի Արմէնն՝
» եօթն հազարաւ, զութսուն հազարսն. և այսորիկ ա֊
» կանատես եղաք մեք. 23,000 գրով այն էր զոր գերեաց.
» թող զանկեալ զխակունսն՝ որ ծածկէր զանդաստանս
» մեր [3] »։ Յետ ամի միոյ կամ երկուց, Ելտկուզ Աթա֊
բէկ իշխող կողմանց Նախճաւանի, եկեալ 'ի վերայ թա֊
գաւորին՝ 'ի մրէժ քինու, և ոչ կարացեալ զդէմ ունել,
յետ աւերելոյ զկողմանս ինչ աշխարհին՝ երթեալ « գրգռէ
» զԾուլիզ Սուլտանն (Պարսից) զորդին Մահմուտի՝ զԱս֊
» լան, և ածէ յԱնի. և զամս չորս պահէ 'ի տառապանս,
» անվար և անհանգիստ. մինչև թագաւորն Վրաց Գէոր֊
» գի ողորմելով քաղաքին՝ կոչէ առ ինքն զՍուլտանն, և
» տայ 'ի նա զԱնի, զի չէր ձեռնհաս պահել 'ի բազմու֊
» թենէ անօրինացն [4] »։ Այս եղև յամի 1165 կամ 1166.
և Սուլտանն յանձնեաց անդրէն զԱնի 'ի Շէտտատեանս,
որոց յայնժամ թուի պայազատ կացեալ Շահնշահն, և
նոյն ինքն գոլ Ամիր-շահ կամ Ամիր Մահմուտ եղբայրն
Բ Փատլունի, մինչև ցամն 1174. յորում « էառ Գէորգի
» զԱնի՝ երկրորդ անգամ, 'ի սադրելոյ Իւանէի (Օրբե֊
» լեան) Ամիր սպասալարի, զի ինքն նստցի 'ի նմա և
» արասցէ զերադարձ քրիստոնէից. և զՇահնշահ ամի֊
» րայն տարաւ ընդ իւր արքայն, և այլ ոչ ևս դարձաւ
» անդրէն։ Եւ լուեալ զայս ամենայն Թուրքաստանայ՝
» հաւաքեցան 'ի մի, (զվերոյիշեալ) զԱփասլանն կոչե֊
» ցեալ Սուլտան՝ ընդ ինքեանս առեալ, գան 'ի յԱնի,
» և աւերեն զտունն Շիրակայ։ Իսկ Իւանէ կամեցաւ
» տալ զքաղաքն 'ի Թուրքն, և ոչ յաջողեցաւ գործն.
» զի իմացաւ քաղաքն և զգուշացաւ։ Եւ գնաց սուլտանն
» և Աթաբակն իւր (Ելտկուզ) սրտախոցեալ, և մեռան
» երկոքեան 'ի միում ամի [5] »։ Զանուն ամիրային դտա֊
նեմք ամաւ յառաջ, 1173, յարձանի միում Ս. Փրկիչ
եկեղեցւոյ Անոյ՝ գրեալ Ամիր Մահմուդ, որ և քառասուն
ամաւ յառաջ ևս երբեմն ամիրայացեալ էր։ Զկարդ և
լցէ այս, նշանաւոր է ժամանակ և մանաւանդ տեղւ
Իւանէի Օրբելեան՝ վերակացու քաղաքին կարգելոյ 'ի
թագաւորէն Վրաց, յորմէ յետ սակաւ ամաց (1177)
կալեալ կապեալ և կուրացեալ բանտարկեցաւ, վասն
կամելոյն նենգել զթագաւորն. և սադրանք նորա 'ի տես֊
չութիւն Անւոյ, զոր պատմիչք մեր յիշէ, ոչ այնքան յին֊
քենէ թուի՝ որքան 'ի կնոջէն իւրմէ « 'ի բարեպէր թա֊
» գուհւոյն Ռուսուդանայ, որ էր յազգէ Բագրատու֊
» նեացն մերոց կորուսեալ ազգիս թագաւորաց, որ ցու֊
» ցանէր գութ հարց իւրոց և նորոգէր զիւրոյ նախնեացն
» սէր առ ամենեսեան, առ հեռաւորս և մերձաւոր սուրբ
» ուխտս. քանզի ամենայն տեղի որ 'ի նախնեացն սորա
» շինեալ էին և նուազեալ յետոյ, 'ի սորա աւուրս պայ֊
» ծառանային և նորոգէին վերստին, եթէ 'ի մերում
» գաւառիս (Զորագետոյ), և եթէ 'ի գաւառն Անւոյ, և
» 'ի նոյն իսկ յԱնի [6] »։ — Յետ այսորիկ Բարսեղ եպիս֊
կոպոս քաղաքին աղաչեալ զթագաւորն Վրաց՝ փոխա֊
նակ Իւանէի կացոյց ամիրայ Անւոյ զեղբայր իւր Ապի֊
րատ, որ նոր զերծեալ էր 'ի բանտէն Կարուց [7]։ Ոչ գի֊
տեմ որքան տևեաց իշխանութիւն սորա յԱնի, բայց
թուի յաւուրս նորա լինել յարձակման Անեցոց (յամի
1186), և առնուլն յայլազգեաց « զԾառաքար՝ զհայրե֊
» նիս Տեառն Բարսղի, յանխնայ կոտորելով զորս անդ,
» բաց 'ի կանանց և 'ի մանկտւոյ. զոր լուեալ Ալիչէրն՝
» ամիրայն Գունայ՝ ճողէր զմօրուսն, և սեաւ զգենոյր 'ի
» վերայ կնոջն և որդեացն որ անդ [8] »։ Այս դէպք գու֊
շակք են անդորրութեան և զօրութեան Անեցւոց յայնմ
ժամանակի, ընդ քրիստոնեայ իշխանօք. և յայսմ ժա֊
մանակի երկոքին գիտնական երիցունք քաղաքին՝ արա֊
րին, Սամուէլ՝ զժամանակագրութիւն իւր, և Մխիթար՝
զթարգմանութիւն Պատճառի խաւարման արեգական
և լուսնի՝ 'ի պարսիկ լեզուէ։ Մեծ ևս զօրութիւն, վստա֊
հութիւն և պարծանք Անեցւոց և համօրէն քրիստոնէից
կողմանցն, եղեն զայնու ժամանակաւ և յապայն ընդ
երկար, Զաքարիանքն (կամ Երկայնաբազուկ) իշխանք,
Մեծն և արդարև քաջ սպարապետն Վրաց և Հայոց
Զաքարիա, և եղբայր իւր Իւանէ Աթաբէկ, տեարք Լօ֊
ռւոյ, որք զամս քան աշխարհակալեալ՝ վանեցին զօտա֊
րոտի իշխողս յաշխարհէս մերմէ, և նախ քան զամե֊
նայն տիրացան Շիրակայ, յամի 1191։ Բայց սուղ յառաջ
կամ յետոյ՝ Անի յետին անգամ անկեալ էր 'ի բուռն
Շէտտատեանց. Քէյ Սուլդան որդի Ամիր Մահմուտի

1 Սամուէլ Անեցի։

2 Վարդան, ՀԱ։ Բայց այլ ժամանակագիր 80,000ու ասէ ե֊
կեալ զՇահի Արմէնն. զկոտորեալսն 'ի զօրացն 7000, զգերեալս
2000, և այլ ևս ձերբակալեալս 500, յորոց 150 մեծամեծ ամիրայք
էին։

3 Սամուէլ Անեցի։

4 Վարդան, ՀԴ։ Սամուէլ ասէ. « Սուլտանն Խորասանայ ան֊
» թիւ բազմութեամբ եկեալ 'ի դուռն քաղաքին Անւոյ և զարհու֊
» րեցոյց զբնակիչս սորա. և յետ սակաւ աւուրց դարձաւ յաշխարհ
» իւր, ոչինչ կարացեալ սանձել նմա. զի Տէր պահպանէր, և
» ինքն հովանի աջոյն իւրով, որ օրհնեալ յաւիտեանս. ամէն »։
Եւ աստանօր թուի աւարտեալ հեղինակին զժամանակագրութիւնն.
այլ յետ սակաւուց նա կամ այլ ոք յաւելու. « Յետ 30 աւուր
» գայ գաղտագողի աղուէսաբար, և հար զթագաւորն Գորգի, և
» զաւար նորա էառ, և դարձաւ 'ի տեղի իւր »։

5 Վարդան, ՀԶ։

6 Զայսոսիկ ուսանիմք 'ի յիշատակարանէ գրոց գրելոյ 'ի Հաղ֊
բատ յամի 1172-75։

7 Այսպէս իմանամ զբանս Վարդանայ (ՀԶ), որ ունի մթու֊
թիւն. « Ի նմին ժամանակի եւ 'ի բանտէն Կարուց մեծ իշխանն Ա֊
» պիրատն, և եկն 'ի յԱնի. սա էր եղբայր եպիսկոպոսի քաղաքին
» Տեառն Բարսղի, որ աղաչեաց զթագաւորն Վրաց, և ետ փոխան
» նմա ամիրայ, և առ զնա, և ԺԷՌ (17000) դահեկան »։

8 Վարդան, ՀԸ։

տիրէր Նմին Նաև յամի 1198, յորում արձանագրեալ է 'ի միիրայ մզկիթին' արգելս վաճառոյ (25)։ Բայց անդէն 'ի հետևեալ ամին 1199, առին 'ի Նմանէ Զաքարեանք զԱնի, և բարձաւ այնուհետև իսպառ իշխանութիւն և անուն Շէտտատեանց անտի, յետ 126 ամաց միահետ կամ ընդհատ պայազատութեանն։

39. Գրեաթէ և հաւասար Նոյնքան ամս տիրացան Անւոյ և Զաքարեանք Նովին օրինակաւ. զի որպէս Շէտտատեանքդ մարզպանք իմն համարէին Թագաւորաց Պարսից, այլ գրեաթէ ինքնագլուխ տիրէին, սոյնպէս և սոքա ընդ վեհագոյն հովանաւորութեամբ՝ Նախ Թագաւորացն Վրաց և յետոյ Թաթարաց, իբր բացարձակ տեարք էին Անոյ և ժառանգք, որպէս արձանքն վկայեն և պատմիչք, թէպէտ սեփական աթոռ Նոցա էր 'ի Լօռի, և տեղակալս առաքէին այսր՝ Պառոնս կոչմամբ, որպէս և ոյք առ Շէտտատեամբք. իսկ որ ևս յառաջագոյն առ Ցունովք համահաւասարք Նոցին՝ Տանուտէրք կոչէին։ Արդ այսոքիկ են Զաքարեանք տեայք Անոյ.

1199—1212 Զաքարէ Մեծն Ամիր Սպասալար.
1213—1261 Շահնշահ որդի Զաքարէի, որ և զիւր որդին զԶաքարէ (Գ.) կարգեաց տեղակալ.
1261—.... Իւանէ որդի Շահնշահի.
12.. Ազրուղա որդի Իւանէի.
... 1301 † 1320 Շահնշահ (Բ) (Թուի) որդի Ազրուղայի.
1320 Զաքարիա (Գ.) որդի Բ Շահնշահի.
1358 Շահնշահ (Գ.) Աթաբակ որդի Զաքարիայ, թէ և ոչ յիշի իբր տէր Անւոյ, այլ Բջնոյ։

Ցամի 1320 'ի մահուան Շահնշահի Բ, յիշի իբրև Ամիրայ քաղաքին Պարոն Շիպ կամ Լիպ ոմն, որ Թուի ոստիկան կարգեալ 'ի Թաթարաց (27)։

Իսկ 'ի կարգի քաղաքատեսուչ վերակացուաց ըստ ձեռանէ տերանց Անւոյ, յարձանսն գտանեմք զայսոսիկ.

1057-64 Մխիթար Իպատոս, որդի Կրտին.
Գրիգոր Լապստակի որդի Սպաթար կանտիտատ.
Սարգիս Արտաւազայ որդի Սպաթար կանտիտատ. (Տանուտէրք)
(1072) Գրիգոր Աղայ (Ապիրատ) Ցոլհաննէս. (Պառոնք)
1210? - 25 Փախրադին, Մէլիք
12.. ց'1250 Զաքարիա որդի Շահնշահի.
1253 - 76 Ազրուղա որդի Շահնշահի.
1263 Սահիպ Դիվան (որդի Աւագայ որդւոյ Իւանէի.
Սահմադին.
Քարիմադին. (Պառոնք)
1301 Ազրուղա որդի Իւանէի որդ. Շահնշահի.
1342 Վահրամ Աթաբակ որդի Իւանէի։

Ցետ պատրոնացս աւագագոյն կամ կարևորագոյն 'ի պաշտօնեայս Անւոյ՝ երևին ոստիկանք հարկաց կամ մանաւանդ մաքսից, տաճիկ բառիւ Տամղաճի (կնքահար) կոչեցեալ. ոչ գիտեմ զոյգ տեղի ունէր եթէ զքաղաքատեսչացն՝ 'ի հնագոյն արձանս յիշեալ Մուհտասիպն, որ է Միհրիեսիպ ըստ Արաբաց, ոստիկան համարակալ չափուց և կշռոց։ Ի կնքահար ոստիկանաց յիշին, յամս

1250 Նուրադին Քոթիթ և ընկերք, յիշեալքն յէջ 62.
1263 (Ա. Ա) առ տանուտէրութեամբ Սահիպ դիւանին.
? Գէչ որդի Պայիկան, առ Ազրուղայիւ.
1276 Մխիթար որդի Գրիգորի Խուցիս[1].
1320 Սարգիս Ծիլենց որ բաժարար կոչի[2]։

Սոքա ամենեքին յիշատակին, կամ արձանագրեն շնորհս ազատութեան 'ի պէսպէս հարկաց քաղաքացեացն և մանաւանդ երիցանց և եկաց։

Բազմապատիկ Նորոգութեանց, շինութեանց և բարեբարի կարգաց ոյք 'ի սկիզբն ԺԳ դարու եղեն յԱնի, վկայ ինքնին արձանանան բրգունք Նորին, Նա և 'ի կիսակործան վիճակի անդ իւրեանց, յորոց ոմանք յատուկ ծախուք և յանուն Մեծին Զաքարէի շինեալ են. որ և 'ի միում յաշտարակացն ասէ, ոչ զայն միայն այլ և զՊարիսպսն շինեալ. և շատ ևս շինութիւնք, (որոց գլուխ մարթ է ասել զվանս Ս. Գրիգորի Լուսաւորչի և զաստնձանս որմոց կաթողիկէին), գործք են Տիգրանայ Հոնենց որդւոյ Սուլեմայ Ամրատաւրենց ?։ Ասպիսի կարգաք և շինութեամբք վերակենդանացաւ մայրաքաղաքն և բարգաւաճեաց որպէս յաւուրս Բագրատունի Թագաւորաց՝ իբրև կէս դար, ցառումն 'ի Թաթարաց. և իբրու յաջորդք առաջին Թագաւորացն՝ Զաքարէ և որդին իւր անդրանիկ և այլք ևս Շահնշահ կոչեցան. ուրեք և հայօրէն իսկ բազաւոր գրի՝ մեծ և քաջ զօրավարն այն. որոյ թէ և պակաս լինէր փառաւոր կոչումն կամ գլխոյ պսակն, և 'ի դրան Թամար Թագուհւոյ սպարապետ անուանէր Վրաց, (և Նոցին լեզուաւ ստէպ գրեալ յարձանս Մանտատորդա-Խուցես, որ է Պետ հրամանատարաց կամ Անձնապահապետ), սակայն ոչ ինչ պակաս յինքնագլուխ Թագաւորէ վարէր և իշխէր 'ի սահմանս լայնածաւալ ժառանգութեան իւրոյ, 'ի Ձորագետ, 'ի Շիրակ, և յայլևայլ գաւառս Այրարատոյ և 'ի Տաշիրս, ուր հաստատեալ էր աթոռ Նորին անդստին 'ի հօրն ժամանակաց. և զի յաւուրս տէրութեան իւրոյ յամի իբրև 1207–8 ծնաւ որդին իւր պայազատ՝ կոչեաց զնա Շահնշահ. այս անուն մնաց Նմա և խափանեցաւ քրիստոնէականն անուն մկրտութեան, որ էր հաւանօրէն՝ Սարգիս. որպէս զի եթէ չէր 'ի վերայ հասեալ փոթորկին Թաթարաց՝ հրաչակէր Թագաւորութիւն արևելեան Հայոց յԱնի, որպէս արևմտեայցն Ռուբինեանց 'ի Նմին ժամանակի 'ի Սիս. այլ և յետ աշխարհակալութեան Մոողոլացն մնաց տէրութիւն քաղաքին, որպէս տեսաւ, ժառանգութեամբ 'ի տոհմն Զաքարեանց. այնպէս զի և եւրոպէացի ուղևորք ոյք 'ի կէս ԺԳ դարու երթային 'ի Թաթարս՝ Երկիր Իշխանիշխան Շահնշահի կոչէին զայն։ — Մի 'ի Նշանաւոր դիպաց և գործոց Զաքարիայ, թէ և ոչ ամենևին ազնուական և քաջախոհական, եղև Ժողովն Անոյ՝ յամի 1211, յետ

1 Թերևս Նոյն սա է Գրիգոր Խուցէս, որ առաջնորդ Անւոյ կոչի 'ի յիշատակարանի Աւետարանի միոյ (պահելոյ յէջմիածին) զոր Նորոգեալ է Պօղոս որդի Նորա, յամի 1308։
2 Տես յէջ 74։

ժողովոյն Լօռւոյ, առ 'ի հաստատել կարգս ինչ եկեղե֊
ցականս, յորս փոփոխութիւն մեծամեծ տօնից ըստ ամ֊
սոց և աւուրց և ոչ ըստ կիւրակէից՝ բազում չփոթից և
հակառակութեանց եղև պատճառք. բայց մեծ վարդա֊
պետն Մխիթար Գօշ՝ հայր խոստովանութեան Զաքա֊
րիայ՝ մեղադրութեամբ խրատելով զնա, «թէ իշխանա֊
»բար ո՛չ պարտ էր զայսպիսի իրս առնել», ամաչեաց
ըստ կարի զնա և զայլսն: Յետ ամի մեռաւ Սպարապետն
մեծ (1212) և 'ի միւսումն Մեծ Վարդապետն այն ա֊
նուանեալ: — Իսկզբան իշխանութեան նորա՝ մինչ դեռևս
կասկած այլազգեացն կայր 'ի սիրտս Անեցւոց և խիթային
ընդ մրցմխնդրութիւն Շէտտատեանց, զբռնաւորու֊
թիւնս քաղաքին մերթ 'ի Նոցանէ և մերթ 'ի Վրաց,
(որով բազում արեանց հեղութիւնք լինէին 'ի քաղա֊
քին), համարեալ 'ի պատճառս անարգանացն՝ զոր Նախ֊
նիք իւրեանց եղին՝ Գէոսկորոսի փոխանակ Պետրոսի
ընտրելոյ կաթողիկոս կամօք Յովհաննու Սմբատայ (Գ.)
Թագաւորի, և յետ սակաւուց մերժելոյ, (զորոյ ռամիկք
քաղաքին «պատառեցին զգօղն յերեսաց նորա յաւուր
» Յայտնութեան Տեառն մինչդեռ օրհնէին զջուրն, քան֊
» զի քօղով վարէին յայնմ ժամանակի կաթողիկոսք,
» և հանին զնա անարգանօք 'ի քաղաքէն) . . . առաքե֊
» ցին այր մի քարկոծ 'ի Սանահին, 'ի Նոյն քաղաքէ
» (Անւոյ), զի յայտնի կամ գաղտնի առցէ մասն ինչ 'ի
» Նշխարաց Գէոսկորոսի և տարցէ 'ի քաղաքն. զի վասն
» Նորա են, ասեն, այս կոտորածք որ լինի 'ի քաղաքիս՝
» հանապազ՝ յայլազգեաց. զի թերևս թողութիւն արաս֊
» ցէ քաղաքիս վասն յանդգնութեան զոր գործեցին ընդ
» Նա հարք մեր»: Այլ իբրև ոչ յաջողեաց առնն բա֊
նալ զգերեզմանն, և Գրիգոր Տուտէորդի առաջնորդ
տեղւոյն ոչ հաւանէր, մինչև գայցեն, ասէր, բազմութիւն
Անեցւոց «խնդրել զթողութիւն 'ի Նշխարաց Նորա. իսկ
» ասացեալն յապաղէր. զի ոչ ոք արար փոյթ զայնմա֊
» նէ[1] », անդորրացեալք ընդ Նոր տէրանբքն: — Միւս
ևս խէթ էր քաղաքացեացն 'ի սասանութեանց երկրի,
որ թուի ստէպ կամ բուռն լինել, որպէս և անուն պատ֊
ճառեալ աւանդի յետին լքումն քաղաքին, և անմար֊
դանալն. և զայսու ժամանակաւ յառաջնում քառորդի
ԺԳ. դարու, Մխիթար ոմն եպիսկոպոս Տեղերեցի ետ
» արգելուլ զկիրակէի վաճառքն 'ի փողոցէ», յաւուրս
անդ ցասման շարժի, որպէս ցուցանէ արձանագիր Առա֊
քելոց եկեղեցւոյն[2]: — Յետ մահուան Զաքարեայ՝ եղբայր
նորա Աթաբէկն Իւանէ խնամէր զորդի նորա և զժա֊
ռանգ՝ Շահնշահ, զտէր Անոյ, մինչև զարգացաւ սա, և
եղեալ այր խաղաղասէր՝ յանդորրու պահէր զքաղաքն.
և յորժամ եղեն նորա որդիք և 'ի չափ հասին, զանդրա֊
նիկն Զաքարիա առաքեաց յԱնի, իբրև տեղակալ, ինքն
'ի Լօռի դադարեալ. և որպէս յիշխանութեան իւրեանց
Շէտտատեանք յազատութեան պահէին զկրօնս քրիս֊
տոնէից, թոյլ տային և Զաքարեանք մահմէտականաց. և
զի էին յայնժամ ոչ սակաւք 'ի դինէն՝ յայտ առնեն

դէպք խնդրոյ միոյ եկեղեցական բաժնից տեսչութեան,
յոր սակս ընդ այլոց բազմաց և զղատին Անոյ դատաւոր
կացոյց Իւանէ ('ի Դուին) յամի իբր 1230[3]:

Յետ ամաց քսան և չորից իշխանութեան Շահան֊
շահի եղև յարձակումն Թաթարաց 'ի սահմանս իշխա֊
նութեան Նորա. Նախ զաթոռանիստ նորա զԼօռի առին
պատնէշ պաշարմամբ, և ապա եկին 'ի վերայ Անւոյ յա֊
մի 1236, առաջնորդութեամբ մեծի զօրավարին իւրեանց
Զորմաղանի. և որպէս պատմէ ժամանակակիցն և ա֊
կանջալուր, Կիրակոս վարդապետ, յայնմ ժամանակի
որպէս առ Ալփ֊արսլանաւ, «Քաղաքս այս Անի լցեալ էր
» բազմութեամբ մարդկան և անասնոց և պարսպեալ ամ֊
» րագոյն պարսպօք... և յոյժ փարթամ էր քաղաքն ա֊
» մենայն իրօք: . . . Առաքեաց Զարմաղանն դեսպանս
» առ Նոսա՝ գալ Նմա 'ի հնազանդութիւն. և որ գլխա֊
» ւորքն էին 'ի քաղաքին՝ ոչ իշխեցին պատասխանի տա֊
» նել պատգամին, առանց հարցանելոյ զիշխանն Շա֊
» հընշահ, քանզի ընդ իշխանութեամբ Նորա էր քաղաքն.
» իսկ ամբոխ քաղաքին և ռամիկն՝ սպանին զպատգա֊
» մաւորսն: Եւ զայն տեսեալ զօրքն այլազգեաց՝ 'ի բար֊
» կութիւն բրդեցան. և պաշարեալ զքաղաքն յամենայն
» կողմանց, կանգնեցուցին փիլիկուանս՝ բազում արուես֊
» տագիտութեամբ, և մարտուցեալ ընդ քաղաքին զօ֊
» րեղապէս՝ առին զնա: Այլ և ոմանք յիշխանացն քա֊
» ղաքին ձեռնտու եղեն առ Թշնամիսն, զապրուստ ան֊
» ձանց իւրեանց շահելով: Եւ Նոցա կոչեցեալ արտաքս
» 'ի քաղաքէն զբազմութիւնն՝ խոստացան ոչինչ առնել
» Նոցա չար. և իբրև ելին արտաքս առ Նոսա ամենայն
» բազմութիւնն, բաժանեցին զնոսա յինքեանս, և սուր
» 'ի վերայ եդեալ՝ կոտորեցին զամենեսեան առհասարակ
» անողորմաբար, սակաւ կանայս և մանկունս թողեալ,
» և զսա արուեստագէտս՝ զոր վարեցին 'ի գերութիւն:
» Եւ ապա ինքեանք մտեալ 'ի քաղաքն՝ առին զինչս և
» զստացուածս ամենայն, կողոպտեցին և զամենայն
» եկեղեցիսն, և աւերեցին քանդեցին զամենայն քա֊
» ղաքն, եղծին և ապականեցին զփառս վայելչութեան
» նորա»: Զայսպիսի պատմեալ հեղինակին՝ յաւելու,
որպէս 'ի հարկէ և 'ի գթոյ դրդեալ՝ յիշատակս տխրա֊
կանս և ողբս, որպէս և ամենայն պատմողք այսպիսի
դիպաց, զոր և դիւրին է գուշակել և կերպարանել, և
մեզ ոչ հարկ և ոչ սիրելի կրկնել: Բայց զի ունիմք 'ի
ձեռին զինքնագիր հատուած մի բանի զմիոյ 'ի զերծե֊
լոյն՝ որպէս բազում հաւանութեամբ թուի՝ 'ի նմին իսկ
Անւոյ, որ և ասէ վասն ծնողաց իւրոց և մերձաւորաց՝
թէ «սպանան սրով և ողորմելի մահուամբ ելին յաշ֊
» խարհէս», և յոյժ ճարտար սրտառուչ և արհնագոյն
իմն գրեալ է, ոչ կարեմք զանց առնել զայնու, և 'ի ստո֊
րև դ կարգեմք զբանն, զորս ընդհատեալ է բաղդն կամ
ոչ բաղդն, կորզելով թղթոց 'ի թիկանց մատենին ուր
գրեալն էր[4]:

Յայսպիսի աղխտալից ժամանակէ համարին Նոր գրիչք

1 Կիրակոս:
2 Տես յէջ 62:
3 Ստեփանոս Ուռպելեան, ԿԵ:
4 «Յամս հայկազեան թուաբերութեան տումարին, յորում
» էր թիւ համարոյ թուականին ՈՁԵ, որ եղև աստուածասաստ
» բարկութիւնն յաշխարհն արևելից. և յարեաւ ազգ մի զազանա֊
» բարոյ և անողորմ, և եհեղ բազում արիւն. և կերպարանն այս֊
» պէս. լայնաթիկունք և հաստաբազուկ, և գլուխն մեծ, և հեր

զառաջին գաղթ Անեցւոց յայլևայլ կողմանս աշխարհին Հայոց և յօտարութիւն հեռաւոր. և ոմանք նախագոյն ևս յառաջնում առման անդ քաղաքին յԱլփ-արսլանայ զգաղթեալսն 'ի տար յաշխարհն Լեհաց, յառաջ բերեալ և հին հրովարտակ մի գիշխողի երկրին' 'ի նմին դարու. այլ վաւերականութիւնն ընդ երկբայութեամբ է: — Յետ կոտորածին և յագելոյ արիւնարբուացն, յայտ է թէ, որպէս յայլ տեղիս, թոյլ ետուն Թաթարք և յԱնի' դառնալ բնակել մնացելոցն և կամեցողաց, կարգեալ 'ի նմա վերակացու մի, զոր Հայք ըստ Շէստատեանցն սովորութեան ամիրայ կոչեն[1], և Բիւզբիւքի քարոզիչն' Պայլ (Bailif), թողլով 'ի Շահնշահ զժառանգութիւն տէրութեան իւրոյ, որպէս և Աւագայ որդւոյ Իւանէի' թողեալ էին զիւրն: Ջերկուսին ևս զայսոսիկ յայտ առնէ եռալեզուեան արձանագիր Մնիրայի (25) գրեալ յերկրորդում ամի նուաճման քաղաքին. նախ, զի գրեալ է առաջինն պարսկերէն, քանզի Հայաստան բաժին էր այնմ զօրավարի Թաթարաց' որոյ վիճակեալ էր Պարսկաստան, և երկրորդ, զի ստորագրէ Ջաքարէ Աթաբէկ: — Յիշատակք Ջաքարեանց ցգար մի ևս տևեալ երևին յարձանս քաղաքին. այլ ոչ նոցա և ոչ այլոց նշանաւոր ինչ գործ կամ այլ ինչ դէպք գտանին 'ի նոսա, որպէս և ոչ առ պատմիչս. և թուի երթալով նուազել և անշքանալ Անւոյ, գէթ 'ի մասին վաճառականութեան, որ ոգի կենդանութեանն և փայլման էր դարս երիս. թէպէտ և յիշատակին հարկաց թեթևութիւնք և յամս 1260, 1263, 1301, 1320, և յետին' Իպուսայիտ ղանի[2], և նուիրաց և նորոգութեանց եկեղեցեաց յամս 1286, և 1342, որ և յետին յիշատակ է Ջաքարեանց, այն է Վահրամայ Աթաբէկի' նորոգողի Ս. Փրկչի (31). իսկ հուսկ յետին հայ արձանագիր է Շապադինի որդւոյ Յովհաննու, որ զՍ. Ստեփանոս եկեղեցի' իւր ժողովրդովն' դարձոյց 'ի վիճակ Ս. Առաքելոց, յամի 1348: Յայտ ուրեմն զի չէն էր Անի և 'ի կէս ԺԴ դարու, և ոչ որպէս աւանդութեամբ յետին գրչաց կարծիւր' 'ի բուռն սասանութենէ երկրի կործանեալ յամի 1319 և անբնակ լեալ. այդպիսի սասանութեան չիք գրաւոր յիշատակ ուրեք, և չէր մարթ վրիպել 'ի գրչաց, զի բազում մատեանք գտանին գրեալ յայն ժամանակս: Եւ աւանդութիւնն այս ինչ է. Ձեղծեալ բնակչացն անառակութեամբ և մոլորութեամբ, գայ առ նոսա Յովհաննէս Երզնկացի, խրատել և ուղղել. նոքա պէսպէս օրինակաւ քամահեն և այպն առնեն զնովաւ. վասն որոյ նախ տղայամահ անկանի 'ի քաղաքին, ապա հուր ելեալ 'ի բուրվառէ վարդապետին 'ի խնկարկելն' այրէ ոգիս 400. յետոյ գազանք չարք և այլակերպք յափըշտակեալ կոտորեն զտղայսն և զպատանեակս: Սակաւ մի զգաստացեալ բնակչացն' յետ երից ամաց դարձեալ զառածանին 'ի չարիս իւրեանց. գայ միւսանգամ վարդապետն քարոզել. իսկ անզգամաց կալեալ զնա և թմբրադեղով մերկացուցեալ' շրջեցուցանեն սայլիւ ընդ քաղաքն, և զամբիւղիւ կախեն 'ի դուռն աւագ եկեղեցւոյն, և ապա բրածեծ արարեալ 'ի բաց հալածեն. և նորա երթեալ 'ի բլուր մի բարձր' անիծանէ զքաղաքն, որ և խկոյն շարժեալ սկսանի տապալել. վասն որոյ փութացեալ բնակչացն 'ի բաց փախչելն, և գաղթեալ երթան յայլ և այլ կողմանս և յաշխարհս: — Եթէ հանդիպեալ ևս էր այսպիսի ինչ, կամ անդրէն շինեալ և բնակեալ էր քաղաքն' յետ այնր 1319 թուականի. կամ յետ բազում ժամանակի առ այլով ոմամբ եղեալ էին իրքն. քանզի որպէս տեսաք' արձանագիրք ց'1348 ամ հաստուցանեն զաներկբայ յիշատակս քաղաքին, և յայնմ ամի կամ 'ի մերձաւորսն ոչ յիշին այնպիսի ինչ դէպք. այլ ցերեւուն ամ ևս յետ այնր ձգի յիշատակ կենդանութեան Անւոյ. զի մինչև ցամն 1377 գտանին դրամք հատեալք անդ' յանուն Հիւսէին Ճէլայիրեան իշխանի[3]: Ոչ հեռի է 'ի հաւանութենէ կարծիք ոմանց, եթէ աշխարհաւեր ձեռին կամ հրամանաց Լէնկթիմուրի գործեցէ աւեր և ամայութիւն Անւոյ իբր յամի 1386. եթէ խրատարտի ուրուք հարուած է անկումն Անոյ, չիք արդարև պատշաճագոյն քան զնա, և ժամանակն ևս դիպողագոյն. այլ ոչ իւրազգի պատմիչք և ոչ մերս Թովմա Մեծոփեցի, որք մանրապատում արարին զգործս նորա, ոչ յիշեն զայդ: Բայց դարձեալ ներհակաբար, այնքան հետք հարուածոյ բաղխոցաց և նետից են 'ի պարիսպսն, և այնքան նշանք բռնի կործանման 'ի շինուածս քաղաքին, մինչև հարկաւորել մտաց 'ի հաւանութիւն, զի թէ ոչ Թիմուր' այլ առ Թիմուրեամբք 'ի յերկար հակառակամարտութեան որդւոց նորին' եղև աղարտումն քաղաքին, զոր և փութացոյց սասանութիւն երկրի, և իսպառ կատարեաց վհատութիւն մնացելոց բնակչացն:

Սակայն որ զիարդ և է' խոստովանելի է և սքանչելիս իմն 'ի լքման և յամայութեան Անւոյ. այնու մանաւանդ, զի քաղաք' որ այդքան հռչակաւոր և յերևանի կայր և յառակի 'ի բերանս ամենեցուն, և յարևելս և յարևմուտս տարածեալ զհամբաւն, այսպէս լռելեայն և անկարծօրէն անծանօթանայ. իբրև զմի 'ի վաղեմի մեծամեծ քաղաքաց Ասիոյ, որք օրէնս տային բազմութեան քաղաքաց, և արդ նոքօք հանդերձ և առաւել քան զնո-

» գլխոյն ուղղորդ և ձարբ, և աչքն նեղ, և ճակատն լայն, և քիթն
» տափակ, և մուրուքն քօսակ. բարք մարդոյ, և քան զգազան
» անողորմ էին 'ի վերայ մարդոյ. և բնական անունն նորա Խարա
» Թաթար. թէ կերակուր գտանէր' ուտէր, և թէ չգտանէր' ոչ
» քննէր և ոչ խնդրէր կերակուր. և այնչափ անողորմ էր' որ թէ
» հրեղէն լեզու ստանամ' ոչ կարեմ պատմել զանցս չարչարա-
» նացն, որ ետ ըմպել զբաժակն բարկութեան Այրարատեան գա-
» ւառին, և Անոյ ևս առաւել. զոր իմ է տեսեալ զանհնարին ողբն
» և զաղէտ տարակուսանացն. զի զբազում քաղաքս և զբերդերս
» էառ, և հիմն 'ի վեր տապալեաց, զայր և զկին գերեաց և զորդւոյս նոցա առաջի նոցա զքարի հարոյր. զոմանս 'ի գիրկս մօրն
» սրախողխող սպանանէին, և զեղբայրն եղբօրն սպանանել տային.
» զոմանս քարկոծէին, զոմանս 'ի հուր ընկեցեալ այրէին. զադա-
» փար գառինքն յոտս երիվարացն ընկեցեալ 'ի գրկաց մարցն' կո-
» խան արա . . . . . . . . .

1 Մի յոստիկանաց ասոր է բազում հաւանութեամբ' Կիկչիչան ամիրայ, յամի 1284, յիշեալ յարձանս Մրենոյ, ուր տեսցի:

2 Տես յէջ 56:

3 Ճէլայիրեանք յանուն տոհմի միոյ Թաթարաց այսպէս կոչեցեալք' իշխէին կողմանց Ատրպատականի. Հիւսէին' թոռն է Ա և Մեծ կամ Վզրուկ անուանեալ Հիւսէինի, որ էառ 'ի կին զՏիւշատ դուստր Իպուսէիտ ղանի Թաթարաց, և ծնաւ զՕվէյիս, և սա զյիշեալդ Հիւսէին Բ:

ուն միան անշէնք և անբնակք։ Այլ սա առաւել ևս իմն սխրալի. զի ոչ հազարամեայ հնութիւնք հողաթաւալ առնեն զԱնի, որպէս զԲաբելոնն և զՆինուէ, այլ հազիւ թէ հինգ հարիւր ամք իցեն անշքութեան նորին. և չէնքն՝ որպէս տեսաքս՝ տակաւին կիսականգունք կան, և անձայն արձանագիրքն՝ մեծաբարբառ քարոզք են և ժամանակագրական տախտակք. և եթէ չիցէ այս մեզ երկնային իմն հրաշախառն խրատ, ապա մի 'ի մեծագոյն գաղտնեաց ժամանակի և պատմութեան համարելի է, եթէ գուցէ հնար զժամանակ և զդէպս՝ ստարացուցանել յատուածային տեսչութենէ. որ ինձ յայտնագոյն ևս երևի քան զպարիսպն և զապարանս Անւոյ [1]։

Մինչև ցարդ առ մեզ խօսք են բազում զերդաստանք և 'ի Հայս և յօտար աշխարհս՝ որք զնախահայրս իւրեանց ասեն յԱնւոյ կամ յԱնեցւոց. և թէ ոչ ամենայնն ստոյգ, այլ ոչ և ամենայնն անստոյգ. բայց յանուն Անւոյ իմանալի է աստ ոչ զքաղաքն լոկ, այլ և զաւանսն և զողջոյն լոկ զՇիրակ. ապա թէ ոչ՝ հարկ էր ասել թէ Անի և յետ այնչափ կոտորածին՝ հանապազ բղխէր բնակիչս և սփռէր 'ի վայրս հեռաւորս։ — Գլխաւոր տեղիք գաղթականին, 'ի Հայս՝ համարին Նախճաւան, Ջուղա, Վան, Սիս, Համշէն, Կարին. և Սեբաստիա և Տրապիզոն 'ի փոքր Ասիա. իսկ 'ի հեռաւոր աշխարհս՝ 'ի Վիրս, յԱժտէրխան, յԱքսէրայ, 'ի Ղրիմ և 'ի Լեհաստան։ Բայց նոյն իսկ Յիշատակարան Յայսմաւուրաց գրելոց 'ի Կաֆա 'ի կէս ԺԵ դարու [2], որ հնագոյն և յանկագոյն գրաւոր աւանդութիւն համարի այսոցիկ, ոչ միահամուռ 'ի յետին դէպսն ասէ զգաղթականն, այլ զԱքսէրային յետ ԺԳ դարու յամի 1299, և՚զՂրիմուն 'ի 1330, յորում բնակեցան ոչ 'ի Կաֆա միայն, այլ և 'ի Սուրղաթ, 'ի Կազարաթ, մինչև 'ի Գարասպազար, յորս «շինեցաք, ասէ յիշատա-» կագիրն, տունք հարիւր հազար և եկեղեցիս հազար». և զլերինս և զդաշտս լի արարին վանորէիւք և եկեղեցեօք նախնիք իւրեանց։ Բայց զայսոսիկ և զայլ կողմանց գաղթականս՝ արտաքոյ համարեալ մերոյ դիտման գործոյս, և թողեալ զզատերսն, դարձցուք առ մայրն լքեալ յողջոյն յետին։

40. Թէ և ամայացեալ, այլ յառաջին դարս անդ՝ յորս լռէ պատմութիւն, այսինքն 'ի ԺԵ-ԺԶ, հարկ է թէ անհամեմատ առաւելութեամբ շինագոյն էր Անի՝ քան 'ի յետին դարս ԺԷ-ԺԸ, և 'ի մերումս՝ յորում նախ սկսաւ ծանօթանալ և 'ի քննին գալ։ Զաքարեանց տոհմին սերունդ տևեաց մինչև ցմերս դար. բայց երբ բարձաւ 'ի նոցանէ ժառանգութիւն Անւոյ, կամ ո՞ նախ յետ նոցին ժառանգեաց, ոչ գիտեմ. այլ յառնուլ Օսմանեանց՝ մատնութեամբ կեղծ տէրվիշի ուրուք՝ զՄաղասաբերդ 'ի Պարսից, յամի (1638), Սուլտան Մուրատ Դ շնորհեաց ժառանգութեամբ զբերդն առողի նորին, որ կոչիւր Խաբուզ Օղլու, և առաջնորդ զօրագնդի միոյ եկեալ էր 'ի Կարուց. նա ժառանգեաց և զաւահմանն, ընդ որս և զԱնի. յարձանս Հոռոմոսի վանաց, յամի 1683, պայազատ նորին Մուստաֆա աղա՝ կոչի իշխանաց իշխան. սերունդք նորին որդի 'ի հօրէ մինչև ցմեր աւուրս կալան, և ցյետին պատերազմ Ռուսաց և Թուրքաց (1877) ունէին ժառանգութեամբ զաւեղին՝ յարօտս տաւարածից [3]։ Իբրև հուսկ հայրենական յիշատակ Անւոյ համարեցի միպատանեալն յԱբովեանէ. իբրու զի յամի 1820, 'ի 23 յուլիսի (4 օգոստ.) դիւցազն իւր Աղասի գումարեալ ընդ իւր 300 քաջակորով համազգի երիտասարդս, ամրացաւ 'ի միջի աւերակաց քաղաքին, պաշտպանեալ 'ի Պարսից. և 'ի գալ Հիւսէին խանի յանդէտս այսր և հանգիստ տալ զօրուն, յեղակարծումն յարձակեցան Աղասեանք, զօմանս կոտորեցին 'ի Պարսից, զայլս 'ի փախուստ դարձուցին, և առեալ զաւարն գնացին 'ի Կարս, ուր մեծապատուով ընկալաւ զնոսա փաշայն. յորմէ խնդրէր Աղասի նորոգել զմայրաքաղաքն Հայոց և բնակել անդ. այլ իւրքն զանգիտէին յանիծից Երզնկացւոյն. և նա դառն արտասուօք անկոյս լեալ՝ տայր զհրաժարականն ողջոյն՝ որբացեալ քաղաքին [4]։

Ի յիշատակագիրս ճանապարհորդաց, վաճառականաց և դեսպանաց ԺԶ դարու ոչ գտի բնաւ ծանօթս կամ այցելութիւն զԱնւոյ. այլ 'ի յաջորդ դարուն՝ նախ առաջին Դաւէռնիէ փռանկ վաճառական և ճանապարհագիր անուանի, յամի 1655 յիշէ համառօտիւ զպարիսպն և զխրամն կամ զճահիճս շուրջ զքաղաքաւն, յորում՝ զատ յայլոց երկու վանք, ասէ, ցարդ կանգուն կան [5]։ — Իբրև 20 ամօք յետ նորա յիշէ զԱնի ոմն 'ի մերազգեաց, այլ լատինարէն գրող, Պետրոս Պետիկ, որ և 'ի նախնեաց Անեցի ասէ զոլ, այլ ոչ թուի ականատես. քանզի յետ ասելոյն զքաղաքն « կարի ընդարձակ և գեղեցկու-

1 Մթութիւն և անկածութիւն ոչ միայն 'ի վերայ Անոյ տիրէ՝ այլ և 'ի վերայ ընդհանուր աշխարհիս մերոյ և դպրութեան 'ի ԺԵ և ԺԶ դարս. և գրեաթէ յաւուրց Թովմայի Մեծոփեցւոյ՝ 'ի կիսոյ ԺԵ դարու ցաւուրս Առաքելի Դավրիժեցւոյ ցկէս ԺԷին, չերևի ոք պատմիչ 'ի Հայս, և յիշատակարանք գրոց ևս նուազեն 'ի ժամանակին. վասն որոյ և աւանդութիւն է քան թէ գրաւոր վկայութիւն՝ գաղթականաց Անւոյ սփռելն ընդ բնիկ և ընդ օտար աշխարհս. որ թէ ստոյգ էր՝ որչափ ասի, միանգամ ևս ճշմարտէր առածն « Անին չէն՝ աշխարհս աւեր, Անին աւեր՝ աշխարհս է չէն »։

2 Հրատարակեալ 'ի Մխիթարեան Հ. Մինասայ վարդապետէ Բժշկեան 'ի Պատմութեան Անւոյ, յէջ 335-342։

3 Առաջին 'ի պատմութեան Օսմանեանց յայսմ տոհմէ գտանեմ յիշեալ յետ ԺԶ դարու զՎզրուկն Գ Մէհէմմէտ արքայի, Ռաշիէ՝ Խաթուն օղլի Մուստաֆա փաշայ, որ 'ի մարտին ընդ Պարսից գերի անկաւ 'ի ձեռս նոցա, և ապա արձակեցաւ 'ի Շահ Աբասայ։

4 « Քանի շունչս վըէս ա, քանի ձեռքս գլուխս,
Կրակ էլ որ թափես՝ խորովես իմ սիրտս,
Էլի իմ հոգիս ուրախ քեզ կը տամ,
Թէ Անու միջում իմ մարմինս թողամ։
Աչքեր, քոռացէք, բալքի թէ էլ բաց
Զտեսնէք դուք Անու լուսահողն օրհնած.
Բալքի թէ մեռնիմ էս դարդոմն երված՝
Հողս էլ ա հողին չմնայ կորած . . .
Էլի որ մարմինս մէկ քարի տակի
Ըլի քո ծոցումն՝ ինձ դրախտ պէտքը չի » . . . .

5 On vient aux ruines d' une grande ville appelée *Anikagaï*, c'est-à-dire en language arménien, La Ville d'Ani, qui était le nom d'un Roy d' Arménie ( ! ) son fondateur. Le long des murailles qui regardent le levant il passe une rivière fort rapide qui vient des montagnes de Mengrelie, et se va perdre dans la rivière de Kars. L'assiette de cette ville estait forte, estant bastie dans un marais où l' on voit des restes de deux chaussées par lesquelles seulement on la pouvait approcher. On voit aussi des marques de plusieurs monastères, entre lesquels il y en a deux entiers, et l' on tient qu' ils etoient de fondation royale. — TAVERNIER. I.

» թեամբ ձեռակերտացն, դրիցն վայելչութեամբ, օդոյն » բարեխառնութեամբ, արգաւանդութեամբ երկրին և » ջրոցն և գետոց առատութեամբ՝ ըղձալի վայր, (յաւե- » լու). Յայսմ քաղաքի գտանին արդարև 1001 տաճարք » նուիրեալք Քրիստոսի, և երևին որպէս դեռ նոր կա- » ռուցեալք. յորմէ մարթ է ընթերցողին իմաստասիրել » զընդարձակութիւն քաղաքին: Ոչ գիտեմ առ որում » յազգաց քրիստոնէից՝ եղև այնքան պաշտօնասիրութիւն » առ Քրիստոս, որպէս յազգին Հայոց 'ի նախնումն: . . » Այլ արդ ոչ ոք բնակէ 'ի նմա՝ բայց միայն հովիւք, որք » յամառային եղանակի արածեն անդ զհօտս իւրեանց. » որպէս զի մի և այլազգենն ժպրհիցի զլանալ զարտա- » սուս 'ի վերայ ամայութեան նորին [1] »: Միւս ևս ազ- գային և ազգանախանձ պատմաբան, եղբայր ցանկալի նահատակին Տեառն Կոմիտասայ, Երեմիա Չէլէպի, իբր տասն ամօք յետ Պետիկայ՝ վկայէ տեսեալ զԱնի. այլ ցաւէ ինձ, զի ոչ նկարագրէ, կամ թէ գրեաց և ոչ եհաս 'ի ձեռս մեր գրածն. այսչափ ինչ գտանեմ 'ի նմանէ, եթէ « Տեսաք աչօք փոքր տեղիս, զԱնի քաղաք և զգա- » ւառն, զԿարս և զգաւառն, և զԿարին և զսահմանսն » Պարսից՝ ամայի »:

Տասն ևս ամօք յետոյ, այն է յամի 1694, 'ի 26 մայիսի, գալով 'ի Կարուց՝ էանց առ սովաւ բազմաշրջիկ և գիտ- նական իտալացի ճանապարհագիրն Ճեմելլի, որ և զճա- նապարհայն 'ի սահմանս նորին « ոչ փոքր կարեկցու- » թեամբ, (որպէս ասէ, ետես) այնքան տեղիս աւե- » րեալս 'ի պատերազմաց, որք ցարդ պահեն յաւերական » վկայութիւնս ինչ զնախնի վայելչութեանն. մանաւանդ » Անի քաղաք կառուցեալ 'ի դիպան վայրի, թէպէտ և » ճախնային.. մեծ մասն պարսպացն տակաւին կան- » գուն կայ.. և երևին 'ի նմա աւերակք բազում վանո- » րէից, յորոց երկուք գրեաթէ անթերի կան, և ասին » արքունաշէնք լինել [2] »:

Յողջոյն ԺԸ դարու ուղևորի կամ քննողի զԱնի՝ ոչ հանդիպեցայ. իսկ 'ի մերումս յայսմ, 'ի սկզբան՝ առաջին ծանօթս ետուն բարեխոհակ մերայինք երկու՝ միաբանք Էջմիածնի [3], Խաչատուր և Յովհան քահանայք, որք յամի 1804, և յ'17 մայիսի յայց ելին աւերակացն, և իբրև 40 եկեղեցիս՝ որ շատ որ սակաւ կանգուն տեսին, և ընդ- օրինակեցին արձանագիրս ոչ բազումս, զի և յայլ կող- մանս Արարատեան գաւառի կամէին շրջել, ուր և նոյն- պէս ընդօրինակեցին ոչ սակաւ արձանագիրս. այլ ա- ռանձին ինչ ստորագրութիւն վայրացն՝ չեհաս 'ի մեր ձեռս: — Ոչ շատ ամօք յետ նոցա Թուլի այլոյ ուրումն վարդապետի արարեալ ողբ սակաւատուն յԱնի, չգի- տեմ 'ի տեսոյ չարժեալ թէ 'ի լրոյ [4]: Մերձ 'ի կէս դա- րուս և այլք ևս 'ի մերազգի վարդապետաց յայց ելեալ ընծայեցին և տպագրութեամբ յիշատակս, որպէս Գէորգ վարդապետ յամի 1841 յամսեան յունիսի, որոյ գրածն հրատարակեցաւ 'ի Հայաստան լրագրի. ծանօթ Շահնա- զարեանն Կարապետ վ. յամի 1848, յամսեան յունիսի. Աբէլ վ. Մխիթարեանն յամի 1850, որ և յառանձին գըր- քոյկ տպագրեաց 'ի Կոստանդնուպոլիս (1855) զՃանա- պարհորդութիւն իւր յԱնի: Այլ լաւագոյն և ստուգագոյն ևս չափով և ընդօրինակութեամբ յոլովագոյն արձանաց՝ կրօնակից մեր Հ. Ներսէս վ. Սարգիսեանն, յամի 1845. որոյ ոչ շատացեալ պարզ տեսութեամբ սրակնագոյն աչացն, դիտակօք և սանդղօք բերելովք 'ի Հռոմոսի վանաց՝ զննեալ աւուրս եօթն (8-14 հոկտ.), որչափ ինչ ետես՝ գաղափարեաց, բաց 'ի սակաւուց՝ ուր ոչ հա- սին ոչ աչքն և ոչ դիտակ գործիք, և հրատարակեցան այդ ամենայն յիւրումն Տեղագրութեանն 'ի փոքրն և. 'ի Մեծ Հայս, յամի 1864: — Յառաջ քան զսոսա յամին 1830 մերազգի և կրօնակից մեր Հ. Մինաս վ. Բժշկեանն ա- ռաջնորդ հռովմէական Հայոց Տաւրիզ, հրատարակեաց զՃանապարհորդութիւն իւր 'ի Լեհաստան, յորում նախ առաջին ոճով և երկար պատմէ զդէպս քաղաքին Անւոյ, և 'ի լոյս ընծայէ զարձանագիրս հաւաքեալս 'ի վերոյի- շեալ Խաչատուր և Յովհան քահանայից. առ որ դիմեալ են հմուտք լեզուիս՝ 'ի ծանօթութիւն տեղւոյն, և ար- ժան է երախտապարտ նմին լինել:

Իսկ յօտարազգեաց՝ առաջին և քաջազգաց քննող, է Նախայիշեալն Քէր-Բորդըր Անգղիացի, յամի 1817, զո- րոյ ընծայեցաք զբանս որ զոճոյ և զճաշակէ ճարտարպե- տութեան շինուածոցն. և ցուցէր նմա, որպէս և մեզ, զի ոչ կարաց ընդերկար ևս քննել զտեղին. այլ, « Յոր- » ժամ արեգակն գրեաթէ իսպառ խոնարհեցաւ 'ի թի- » կանց լերանցն, ոչ ևս էր ժամ պատեհ դեգերելոյ

1 Civitas quædam est Majoris Armeniæ .. quæ civitas Ani dicitur, vastissima est; et qua artis pulchritudine, qua situs amœnitate, qua demum aeris temperie, terræ fecunditate, et aquarum fluminumque frequentia optabilis. Hac in civitate actu mille inveniuntur et unum templum Christo dicata, apparentque ceu recenter essent extructa: unde considerabit lector civitatis vastitatem. Nescio ergo apud quam christiani orbis nationem tantus Christi fuerit cultus, sicut olim apud Armenorum gentem... Cæterum illam nunc nemo inhabitat, nisi pastores quidam æstivo tempore greges suos inibi pascentes; ut nec quidem infidelis lacrymis abstinere valeat super ejus desolatione. — BEDIG, TCHIL-MINAR, 557.

2 Per istrada non piccola compassione avemmo di tanti luoghi distrutti dalle guerre, che ancor serbano nelle ruine qualche testimonianza dell' antica magnificenza: ed in particolare la città di *Ani-kagac*.. Ella fu fondata in vantaggioso sito benchè paludoso. Buona parte delle mure sono ancora in piedi.. Vi si veggono eziandio le rovine di molti monasteri, due de' quali sono quasi interi, che dicono essere stati fondati da' Re. — GEMELLI, Giro del Mondo, III. c. 6.

3 Հ. ՄԻՆԱՍ, Ճանապարհ. 'ի Լեհաստան, 69:

4 Այս է ողբերգն, և այսու վերտառութեամբ, և եղանակաւ.

« Տաղ 'ի վերայ Անի քաղաքին, Պէյաթի գունով.

Պարծանք քաղաքաց, քաղաք մեծ Անի,
Քօղազարդ պճնեալ հարսըն նազելի.
Ո՞ւր քոյ վայելուչ տեսիլ պատկերի,
Ո՞ւր քո առագաստ. — արդ ոչ տեսանի:
Պարտէզ ծաղկախիտ Շիրակայ դաշտին
Բուրմունք անուշունք 'ի քեզ բուրէին.
Ահա զօսացոյց խորշակ պարսկային.
Ե՛կ, ամպ հիւսիսոյ, ցօղեա յիմ այգին:
Պայծառ բողբոջէր յարևուն ծագման
Թագ քո փեսային՝ 'ի տեսիլ ական.
Զիա՞րդ անարգեալ կայ ոտից կոխան.
Իցէ՜ տեսանել փայլել միւսանգամ:
Որ երբեմն էիր գահ Թագաւորաց,
Ի քեզ հանգչէին որդիք քո երկանց.
Այժմ ընդէ՞ր եղեր որջ աւազակաց,
Ի քեզ կաքաւեն գազանք համբարուաց »:

» յայսպիսում վայրի. և անբաւ ցաւով անսացի (ասէ)
» ազդարարութեան առաջնորդացս, և արկի յետին հայե֊
» ցուած մի 'ի վերայ վեհափառ Նշխարացն Անւոյ, որք
» տարածեալ դնին, ընդարձակ ամայութիւն, 'ի վերայ
» աղօտագոյն և եղեմնապատ դաշտին [1] »։

Յետ 1830 ամի ոչ սակաւ անգղիացիք եկին 'ի զնին
աւերակաց Անոյ, և նախ բազմագիր և վիպապատումն
Մորիէ, որ յԱյիչէ կամ յԱղջիկն Ղարսայ վիպասանու֊
թեանն առնէ յիշատակ զաւերակաց քաղաքին։ — Ճար֊
տարագոյնս զմնացորդաց Անւոյ և զճարտարապետական
արուեստն գրեաց Հէմիլդըն, որ յ13 յունիսի 1836 ամի
քննեաց զնոսին. « Ընդ անցանելն ընդ Ներքին (աւագ)
» դուռնն, ասէ, տեսաք զքաղաքն համօրէն, պարսպօքն
» տարածելովք զմեօք ամենուստ. և թէպէտ աւերակք
» (շինուածոցն) ոչ որքան կարծէաքն բազմաթիւք էին,
» սակայն էր իմն ազդողագոյն և գրեաթէ ահարկու՝ տե֊
» սիլ քրիստոնեայ քաղաքի, այնպիսի իմն իսկատիպ տա֊
» րազու կառուցելոյ և անծանօթի յայժմեան Եւրոպիոյ,
» մնացելոյ գրեաթէ 'ի նմին վիճակի յորում թողինն
» աւերողք նորին՝ ութ դարուք յառաջ։ Բովանդակ ե֊
» րեսք քաղաքին ծածկեալ էին դերբկօք փոքր շինուա֊
» ծոց և առանձինն բնակարանաց, յորոց միջի նշմարէին
» քանիւ չափ մեծամեծ հասարակաց շինուածք [2] »։

Ի միւսում ամի, 1837, մի ըստ միոջէ երեք այցելուք
եկին Անւոյ. Նախ (յ8 մայիսի) մանրախոյզ բուսաքնին
գերմանացին Քոխ, որ հիանայր ընդ երբեմն փարթա֊
մութիւն և ճոխասիրութիւն տեղւոյն, և առ ամենայն
եկեղեցեօք նշմարէր հոյակապ սիւնս արաբիկ դրուա֊
գօք [3]. և որպէս բնաքնին՝ հետազօտեալ և 'ի հողակոյտ
դերբուկսն՝ արժանի դիտման ծանեաւ զայն և ըստ բու֊
սաբերութեան մասին, գտանելով անդ իբրև քսան տե֊
սակ բուսոց և ծաղկանց՝ յափունս Ախուրենոյ, զորս մի
ըստ միոջէ նշանակէ, և 'ի նոսին երկուս նոր և անծանօթ
տեսակս, յորոց զմին անուանեաց Triglochin Ani (Եռ֊
ասյրենի Անւոյ), և զմիւսն (Խոզելընդի Անւոյ) Scrophu-
laria Ani. — Յետ երկուց եօթնեկաց եկն 'ի Կարնոյ քա֊
ղաքէ՝ ուր բնակէրն՝ Էպպոդ Անգղիացի 'ի 20 մայիսի,
զորոյ և զտեսութիւն զշինուածոց քաղաքիս նշանակեցաք
յառաջագոյն (35). որպէս և որ եկն զկնի նորա 'ի մուտս
ձմերայնոյ (4 նոյեմբ.) հայրենակից նորին Ռէիլյըէճէմ.
որոյ 'ի շրջելն 'ի միջի դերբկաց քարանցն՝ շրտուցեալ 'ի
բաց փախչէին առապարասէր կաքաւք բունեալք, որպէս
եռեւս անդ և Դէսիէ. « Ջի հազիւ երբէք, ասէ, անհան֊
» գըստէր ոք զնոսա՝ յերբեմն մարդախուռն փողոցս մայ֊
» րաքաղաքին Հայոց։ Քուրդ հովիւ մի մենաւոր, զգե֊
» ցեալ սպիտակ թաղեայս, կայր կանգուն ընդ հովա֊
» նեաւ կիսակործան դրանդեաց ուրեք, մինչդեռ փոք֊
» րիկ երամ լեռնային այծուց իւրոց՝ մակաղէր 'ի վերայ
» խորտակեալ կամարաց մօտաւոր բաղանեացն. հովիւն
» և հօտ՝ քաջ նկատելիք էին ընդ ամայութեան շրջակայ
» տեսարանին, և ընծայէին պատկեր նկարէն արժանա֊
» ւոր վրձնի Սալվատոր Ռոզայ »։ Եւ տրտմագգեաց խոր֊
հըրդածութեամբ կնքէ զտեսութիւն իւր 'ի վերայ աւե֊
րակացեալն Անւոյ. « Մելամաղձիկ յոյժ զգացմունս ազ֊
» դէ 'ի սիրտ տեսարան քաղաքիս այս անապատեցելոյ.
» եկեղեցիք նորին լքեալք յուշ իմն այսպէս առնեն, եթէ
» ազգ հզօր քրիստոնեայ անկեալ է աստանօր՝ ընդ բազ֊
» մակրկին հարուածովք խժդժագոյն բարբարոսաց Ասիոյ,
» և անագորուն թշնամեաց քրիստոնէական հրահան֊
» գաց։ Շինուածոցն անեղծ մնացութիւն՝ յերկրայս ար֊
» կանէ զկիրս միայնութեան, և յանզգաստից իմն յածին
» աչք շուրջանակի՝ խնդրել նշանակս կենդանութեան։ Ոչ
» այսպիսիս ներգործէ 'ի սիրտ ազդմունս՝ տեսիլ նշխա֊
» րեալ աւերակաց հնութեան զառանցելոց ժամանակաց.
» անկերպարան հողաբլուրք Բաբելոնի՝ երևին հան֊
» գոյնք կմախից մեռելոտւոյ. իսկ ամայացեալս այս և
» տակաւին կանգուն քաղաք՝ թուի նմանել դիական այն
» ինչ անշնչացելոյ, յորում դեռ ևս նշմարիցին տիպք
» կենդանականք [4] »։

Յետ Անգղիացւոց եկին Փռանկք առաքեալք 'ի պե֊
տութենէ իւրեանց, Եւգենիոս Պօռէ (յետոյ Լազարեան
քահանայ և առաջնորդ կարգին), յամի 1838, որ զաւուրս
եօթն (յամսեան օգոստոսի) պարապեցաւ 'ի ստորագրել
զհանգամանս տեղւոյն և 'ի գաղափարել զարձանագիրսն.
և Դէսիէ ճարտարապետ, յերկրորդում ամին 1839,
(16-19 սեպտեմ.) ընդօրինակել զշէնսն. զորոց և զդա֊
տաստան կարգեցաք յետ ստորագրութեան շինուածոցն
(35)։ Յառաջնումն ակնարկութեան իւրում 'ի վերայ
քաղաքին, յարևելից կողմանէ, ընդ ակն հարկանէր
Դէսիէի, բարձր քարակտուրն՝ որ յարմկան անդ գետա֊
կցաց Ախուրենոյ և Ծաղկոցաձորոյ, 'ի հարաւոյ միջնա֊
բերդին. « Կողք նորին, ասէ, ցցուեալ են խանձաքար
» սեպացեալ ժայռիւք, որք թուին մի մի աշտարակք
» զանգակակիրք՝ շուրջ բոլորեալք զմեծաբոլոր գմբեթաւ

1 When the sun had quite sunk behind the mountains, it was no time to linger longer in such a place; and with infinite regret, I obeyed the summons of my guides, and took a last look of the majestic relics of Ani, lying, a vast solitude, on the grey and wintry plain: for no living creature appeared, even as a single looker-out, from the murderous bands reported to infest the city. — KER PORTER, I. 173.

2 On passing the inner gateway we had a full view of the town, with the walls stretching away from us on each side: and although these ruins were not so numerous as we had expected to find them, there was, nevertheless, something impressive and almost awful in the sight of a christian town, built in a style so peculiar to itself, and unknown to modern Europe, now nearly in the same state in wich its destroyers had left it eight centuries ago. The whole site of the town was covered with the fallen remains of smaller buildings and private dwellings, whilst about twenty larger public edifices could be distinguished from the rest. — HAMILTON, Researches, in Asia Minor, Pontus, I. 198.

3 Die Kirchen sind meist gross und bezeugen den Reichthum und den Luxus, der hier besonders in X Jahrhundert herrschte. . . Prächtige mit Arabesken verschöne Saülen sah ich bei fast allen. — KOCH, Reise durch Russland, II, 382, 384.

4 The feelings excited by the sight of this deserted city, are very melancholy. The forsaken churches remind you that a powerfull christian nation here sank beneath the repeated attacks of the most barbarous tribes of Asia, the bitterest foes of civilisation and christianity. The very preservation of the buildings heightens the impression of lonenless, and you involuntarily look around for signs of life. Amid the utter ruin of more remote antiquity, very different feelings are exited. The shapeless mounds of Babylon are like the skeleton: but the deserted yet still standing city resembles the corpse whose breath has fled, but wich still retains the semblance of life. — WILBRAHAM, 291.

» կաթողիկէի․ այլ 'ի գագաթան քարաժեռին յանմա֊
» տուցագոյն տեղւոջ, ուր երբեմն ելանէին քարեղէն
» աստիճանօք խնամով հատելովք յապառաժին, ամ֊
» բառնայ մատուռն մի (Գըզ-Գիլիսէ, 26), որոյ դրանդիք
» կործանեալք մատնեն զներքնակողմն 'ի բռնութիւն
» փոթորկաց՝ ահեղ սաստկութեամբ իջելոց 'ի կրճից
» Կովկասու, գալ մեռնել և չնչասպառ լինել 'ի հովիտս
» Ախուրեան գետոյ։ Ի հանդիպոյ մատրանն՝ վերամ֊
» բառնայ այլ գմբէթ՝ 'ի կապուտակն երկնից հարեալ
» զձև իւր սպիտակ և համապատշաճ․ բայց չէ դա մարդ֊
» կեղէն ձեռին գործ, այլ բնութեան հաստուած վիթ֊
» խարի․ գագաթն է Արարատայ, առաջին երկիր, ուր
» զերծեալքն 'ի ջրհեղեղէն ընտանիք՝ եդին զգարշապար
» իւրեանց յելանելն 'ի տապանէն։ Ի քսան և յաւելի
» փարսախ հեռաստանէ՝ յերևան գայ հրաբուխն վսե֊
» մական, ամբառնալով 'ի վեր քան զամպս՝ զգլուխն
» յոխորտապանծ։ Այս ենթակայ է պատկերի քաղա֊
» քին՝ որ յաչս հարկանի դիտողին զսյն յարևելից կող֊
» մանէ [1] »։

Իսկ համազգի Նորա (Պօռէ), որ ամաւ յառաջ քան



59․ Աւերակք տաճարի միոյ յԱնի։

զնա յայց եկ Անւոյ, « Մեծաւ ըղձիւք, ասէ, անցաք ընդ
» հիւսիսային աւագ դուռն Անւոյ, բացեալ որպէս յա֊
» ւուր տօնականի՝ յելս բազմութեան խնդամիտ քաղա֊
» քացեացն․ և ներքին նորա երևեցաւ յաչս մեր թա֊
» փուր որպէս գերեզման կրկտեալ։ … Եւ յետ հարուա֊
» ծոց բաղստրաց և պարսաքարաց՝ որոց հետք երևին 'ի
» պարիսպսն, և խրամատութեանց նոցին, քանդակքն
» և արձանագրութիւնք, ամենայն ինչ՝ ընդ ցամաք և
» պարզ երկնաւն՝ պահեն եղական երևոյթ նորութեան
» և թարմութեան․ որպէս թէ դեռ երէկ լեալ իցէ յար֊
» ձակումն 'ի վերայ քաղաքին, և յաղթողին այն ինչ
» բարձեալ վարեալ զկողոպուտն։ Խօսք ահեցեալք և

[1] Au point où les deux vallées se rencontrent, un nouveau coude de la rivière entoure un rocher qui s' avance comme une espèce de presqu' île aux milieux des eaux : il ne tient à la terre que par un isthme étroit. Ses flancs sont hérissés d' aiguilles de laves qui semblent autant de clochetons entourant le vaste dôme d' une cathédrale. Mais sur la pointe du rocher, dans la partie la plus inaccessible, où l'on arrivait autrefois par un escalier soigneusement taillé dans le roc, s'élève une chapelle dont le porche ruiné livre l' intérieur à la violence des ouragans, qui descendent furieux des gorges du Caucase, et viennent mourir en grondant dans les vallées de l' Arpa-tchaï. En face de cette chapelle, s' élève un autre dôme qui découpe sur l' azur du ciel sa forme blanche et correcte : mais celui-là ne fut pas élevé par les hommes, c' est la nature qui en a façonné le colosse : c' est la cime de l' Ararat, la première terre, où la famille sauvée du déluge, posa le pied en sortant de l' arche : à plus de vingt lieues de distance, apparait le majestueux volcan, qui élève au dessus des nuages sa tête menaçante. Tel est le fond du tableau pour le spectateur, qui regarde la ville du côté de l' Est. — Texier, I. 94.

» խորշակահարք յարեւոյ՝ ծածկէին զաւերական սփռեալս
» յերեսս գետնոյ . հովիւն զգուշացուցանէ զհօտ իւր
» յարօտէ անտի . ամենայն որ ինչ 'ի քաղաքին՝ թուի
» անիծապարտ ։ Ցարեւմտից կուսէ ապարանքն արքու֊
» նիք ծակոտեալք և ծայրատեալք՝ կորացեալ խոնարհին
» 'ի վերայ Ծաղկաձորոյն, որ արդ ցամաքեալ և ամայի
» կայ . 'ի հարաւոյ՝ միջնաբերդն քայքայեալ որմովքն
» ամբառնայ 'ի բարձրաւանդակում, և յարեւելից՝ ձայն
» Ախուրենոյ մռնչելով 'ի կոշկոռուտ յատակին՝ հնչէ
» որպէս ողբ բնութեան 'ի միջի համաշխարհական սգոյ ։
» Եկն պանդուխտ թափառելով միայնակ յաւերակացս
» միջի, և զմէն մի 'ի քարանցն հարց ու փորձ առնելով
» 'ի գիտութիւն յիշատակաց տեղւոյն և ազգին բնակելոյ
» երբեմն 'ի նմին, տխրութեամբ վարակի 'ի տեսիլ աւե֊
» րածոյ և անխնայութեան մարդոյ 'ի վերայ մարդոյ
» եղբօր իւրոյ, ընդ որում պարտ և արժան էր նմա կեալ
» 'ի խաղաղութեան և յանդորրու [1] »...։

Ի միջոց ժամանակի 1841-1851 ամաց յոլովագոյն ևս
և կարեւոր քննութիւնք եղեն յԱնի, և յազգայնոց մերոց
զոր վերագոյնդ յիշեցաք (Գէորգ, Հ. Ներսէս, Կարա֊
պետ և Աբէլ վարդապետք), և յօտարաց . յորոց՝ զառա֊
ջինն մեծ երկրագէտն և բազմամեայ քննող Կովկասեան
գաւառաց Աբիխ գերմանացի, յամին 1844 եհան և զձև
քաղաքին և նշանակեաց զշէնսն . և միանգամայն կոչէ
զԱնի՝ Աստղ Նախակարգեան, գերափայլեալ 'ի միջի քա֊
ղաքաց Հայոց իւրոյ ժամանակին, և թերևս վասն այնո֊
րիկ իսկ ոչ ընդերկար բաւէր տևել յայնմ պայծառու֊
թեան վասն աշխարհագրական դրիցն, գոլով յասպարիզի
անդ բարբարիկոն հակամարտութեան արևելից և արև֊
մտից [2] ։ Ցետոյ մատեաւ Մուրաւիէֆ Ռուս յամի 1846,
որ քան զբնաւ յառաջագոյն եկեալսն բանաստեղծական
իմն աչօք նկատեաց զԱնի, և պատշաճեցոյց նմա զվեր֊
նագիր Դժոխոց Տանդէի, որպէս յիշեցաք և մեք 'ի մուտս
դրանն ։ Ցետ նորա հռչակագոյն ևս արեւելագէտ և աշ֊
խարհագէտն Ռուս՝ Խանիքոֆ զօրապետ, յամի 1848 ակն
արկ յԱնի ։

Երկու ամաւք ևս յետոյ (1850) Ճեմարանն Գիտութեանց
Պետրպուրկի առաքեաց արուեստաւոր մի գերմանացի
Քեսդներ անուն, որ աւուրս բազումս (6-17 օգոստ.) դե֊
գերեալ յԱնի՝ եհան միւսանգամ զձև շրջապատին և
զյատակին, և ընդօրինակեաց զյոլովս յեկեղեցեաց և
այլոց շինուածոց, որպէս և զայլ ինչ տեղեաց Շիրակայ
և մերձաւոր գաւառաց . զորս յետ տասն ամաց (1860)
Պրոսէ, փառանկ արևելագէտ և հմուտ լեզուաց Հայոցս
և Վրաց, վիմագիծ տպագրութեամբ բազմաթիւ պատ֊
կերօք, գրեալ և երկար տեղեկութիւնս զայնցանէ և ըզ֊
շինուածոցն, քաղեալ 'ի բանից այլոց ևս ուղեգրաց, և
թարգմանեալ զԲժշկեան Հ. Մինասայ Պատմութիւնն
Անւոյ, զամենայն բովանդակ հրատարակեաց, կոչելով
զգիրսն Աւերակք Անւոյ, (Les Ruines d' Ani), յերկուս
մասունս տրոհեալ . ընդ նմին և Պրակ մի պատկերաց
աւելի քան զերեսուն և վեց, և արձանագիրս ինչ նմա֊
նահան տառիւք ։ Եւ է այս նշանագոյն և ճոխագոյն գը֊
րուած և ցուցակ մայրաքաղաքին Անւոյ, թէպէտ և բա֊
զում վրիպակք ընթերցման արձանագրութեանց և թար֊
գմանութեանց են 'ի նմին, այլ և բազում գիտելիք, և
գովելի խնամ . յորոյ վաստակոյ և մեք օժանդակեցաք,
մանաւանդ 'ի պատկերաց եկեղեցեաց, թէ և չփոթէ նա
զոմանս ընդ իրեար ։ — Ցետ ամենեցուն և գրեաթէ 'ի ժա֊
մանակի յետին պատերազմաց, Անգղիացի սպայն Քրէյ
(Creagh) 'ի հեռուստ կամ 'ի մօտոյ դիտելով հիացմամբ
զԱնի, հրատարակէր զբանքս, յայսմ իսկ ամի (1880).
« Աստանօր և հասարակաց և սոսկականաց շինուածք՝
» նշանակք են փարթամութեան, ճարտարութեան և
» ձեռնահասութեան շինողացն, որպէս և նախնի փա֊
» ռաց և վաղեմի վսեմական մեծութեան Ցեղի, որ թէ֊
» պէտ յանարգագոյն ստրկութիւն նուաստացեալ՝ առ
» երի սահմանաց ազնիւ մայրաքաղաքին իւրոյ, գիտաց՝
» յաղթելով և տարերաց և աւերածութեան բարբարո֊
» սաց, թողուլ նշան անջնջելի և անվկանդ իսկ 'ի ժա֊
» մանակաց ։ Բայց կոյտ կոյտ դերբուկացն և պէսպէս խոչք
» և խութք՝ անհնար առնեն որոշակի քննել զոմանս
» յազնուազեղ քանդակաց և ճարտարագիծ մանեկաձև
» պատուածոց զպատուհանօք և զշրջանակօք արտաքնա֊
» ռոյց դրուագաց շինուածոցն, որք գոգջիր հաւասար
» հռչակապանծ ակառանն Աթենայ՝ վեհաշուքք են [3] »։

1 Nous avions franchi avec empressement la grande porte septentrionale d' Ani, ouverte, comme en un jour de fête, pour laisser sortir la foule joyeuse des citoyens, et son enceinte s' offrait vide à nos regards, telle qu' une tombe profanée... Néanmoins, les coups des balistes et des frondes sur les murailles, les brèches qui les entr' ouvrent, les ornements et les inscriptions qui les décorent, tout a conservé, sous ce ciel sec et pur, une apparence singulière de nouveauté et de fraicheur. On dirait que l' assaut a été livré la veille, et que le vainqueur vient de dépouiller sa proie. Des herbes longues et jaunies déjà par le soleil recouvraient les ruines éparses sur le sol. Le pâtre évite ce pacage pour son troupeau; tout ce que renferme la ville semble frappé de malédiction. A l' ouest le palais des Rois, troué et mutilé se penche avec humiliation sur la Vallée-aux-Fleurs, aujourd' hui nue et aride; au sud, la Citadelle couronne une éminence de ces murs en lambeaux; et, à l' orient, la voix de l' Akourian, grondant au fond de son lit de rochers, retentit comme la plainte de la nature au milieu de ce deuil universel... L' étranger errant seul au milieu de ces ruines dont il interroge chaque pierre afin de recueillir les souvenirs attachés au lieu et à la nation qu' il habita, est douloureusement ému à l' aspect des ravages et des excès commis par l' homme sur l' homme dont il est le frère, et avec qui il devrait vivre pacifique et heureux. — Eug. Boré, Le Correspondant, Tome I.

2 Der als Stern erster Grösse unter den damaligen Armenischen Städten, villeicht zu hell und verlockend durch die Nacht barbarischer Zeiten leichtete, und eben deshalb, vermöge seiner Weltstellung auf jenem merkwurdigen schauplatze des immer feindlich miteinander ringenden Orients und Occidents, wohl nicht lange culminiren konnte. — Abich.

3 Here both the public and private buildings are indicative of the wealth, address and interprise of their constructors, as well as of the ancient glory and once imposing grandeur of a race which, although reduced to the most abject slavery in the immediat eneighbourhood of its noble Capital, has left, in defiance of the elements as well as of the destructiveness of barbarians, an indelible mark defying time itself. In consequence, however, of heaps of rubbish and other impediments, it is impossible to examine closely some of the elegant traceries and exquisitely twisted beadings encircling the windows and cornices on the ornamental exteriors of buildings, almost as majestic as the famous Acropolis of Athens. — Creagh. Armenians, ecc. I, 3. II, 159.

Յառաջ քան զամենայն յիշեալ հետաքննին հեղինակս, յամի 1834, յամսեան մարտի, Տիւպուա Հելուետիացի քաջ հնագէտ և բնագէտ, ժամանեալ մինչև 'ի բերան Ախուրեան գետոյ, արգելաւ 'ի քննութենէ աւերակաց Անւոյ՝ որում ըղձակերտ լինէր, ոչ ունելով անցագիր, և ցաւեաց յոյժ, որպէս և մեզ ցաւէ. զի երիցագոյն գոլով ժամանակաւ և հմուտ հետազօտ՝ մարթէր նմա անաղարտագոյնս գտանել զշինուածսն և մանրագոյն տալ ծանօթս, ըստ իւրում ոճոյ. «Հնգետասան մղոնաւ չափ » ևեթ 'ի բացեայ կալով ո՛չ տեսանել զհոյակապ աւերակս Անւոյ, (բացագանչէ), զգերագոյնս 'ի հետաքննելեաց և զարմանալեաց Հայաստան աշխարհի: Յոլովք » յեկեղեցեաց տակաւին յոտին կան, որպէս և պատուարք պարսպացն, դրունքն և ապարանք, արձանագիրքն և քանդակք, ամենայն ուրեք [1] »:

Երիցագոյն քան զյոլովս 'ի յետնոց քննողաց յիշին և երկու Ռուսք, Պուչուկին (Boutchougin), որոյ հանեալ էր փոքրիկ յատակագիծ քաղաքին, նշանակեալ 'ի նմա եկեղեցիս 19, և Խուտապաշեւ (Khoudabachef), որոյ գրեալ էր տեսութիւնս 'ի Հայս. այլ երկոքին ևս ոչ համարին ճշգրտագիրք: — Անգղիացի տիկինն Շիլ (Lady Shiel) որ թուի ընդ առն իւրում ուղևորեալ 'ի Հայս և 'ի Պարսս յամի 1836, յԱկնարկութիւնս իւր 'ի կենցաղ և 'ի տարազ Պարսից (Glimpses of lifes and manners in Persia) տայ ծանօթս և զաւերակաց Անւոյ, ոչ գիտեմ որպիսի՛ բանիւք: — Մի 'ի լաւագոյն գրուածոց՝ անտեսից յինէն, է ճարտարապետական քննութիւն Կրիմ (Grimm) Ռուսի, որոյ անձամբ չափեալ և գծագրեալ է զյոլովս 'ի շինուածոց Անւոյ՝ սակաւուք յառաջ քան զՔէչղնէր, և հմտութեամբ ճառէ զարուեստէն: Յետ այսպիսեաց և այսքանեաց այցելուաց՝ աւելորդ համարիմ խուզել և զայլոց ևս քննութիւնս, յոր թերևս չիք նոր ինչ գիտելի:

Հմտագոյն թերևս քննութիւնս արարին կարգեալքն 'ի ճշդել զսահմանս երկրի երեցուն պետութեանց՝ Ռուսաց, Թուրքաց և Պարսից յամի 1856, այլ մինչչև էր հրատարակեալ քննութեան նոցին, 'ի վերայ եհաս միւսանգամ ծանր և նոր պատերազմն Ռուսաց ընդ Թուրքաց (1877), և սահմանակոխութիւն ապա և սահմանափոխութիւն. և միանգամ ևս հնչեցին առ բազմահարուած պարսպօք Անւոյ՝ բախմունք բանակաց. զի ցայն վայր տարածեաց Մուխթար փաշայ սպարապետ Օսմանեանց՝ զաջ թև իւրոյ ճամբարին յամսեան յունիսի, 'ի տեղի տալ Ռուսաց անդր քան զԱխուրեան. ընդ որ՝ 'ի սահմանս քաղաքին անցեալ գունդ մի հեծելոց, ապաստանել յարևելեան Շիրակ՝ 'ի բաժին Ռուսաց. և յետ աւուրց ինչ (25-28 յուլիսի) ընդհարան գունդքն հակառակամարտք 'ի նոյն սահմանս Անւոյ, և բանակեցան առ աւերակօքն, ցկէս օգոստոս ամսոյ. և ապա թողեալ սակաւ պահապանս՝ մեկնեցան Օսմանեանք 'ի Քիւրէկտէրէ և 'ի Գարսյալ: Թէ յաւելո՞ւն աւերք յաւերս մայրաքաղաքին՝ 'ի թընդմանէ հրանօթոց, կամ վասն այլ հարկի պատերազմաց, ոչ գիտեմ. որպէս յառաջնումն քան զայս յեղանակի մարտից, յամին 1856, ասացաւ, եթէ ոմն 'ի զօրավարաց՝ յորոյ բաժնի էր քաղաքն՝ կամաւ եւ ական գործել և քայքայել զշինուածսն, զի մի՛ լիցին հրապոյրք զգայնոց. իբրու թէ չէին բաւական այնքան բազմադարեան հարուածք և վէրք յետին քաղաքամօրն Հայոց. կամ թէ դիւրին ինչ էր բառնալ 'ի մտաց և 'ի սրտից զանջնջելի յիշատակ նորին, որ և զօտարս անգամ 'ի գով և 'ի գորով շարժէ, թող թէ զկիրթ ազգայինս. որոց արդ 'ի խաղաղել երկրին ընդ պետութեամբ Ռուսաց՝ ձեռն արկեալ է նորոգել զոմանս յեկեղեցեաց, և հաստատել վանս միաբանակեցաց 'ի շինութիւն տեղւոյն և 'ի պաշտօն Աստուծոյ: Եւ զի յանհնարիցն թուի վերականգնել զԱնի, խորհուրդ գեղեցիկ ազգային եռանդեամբ և արդիւնական ջանիւ 'ի գործ արկեալ տփղիսաբնակն Յովհաննէս Քիւրքճեան, բազմամսեայ պարապմամբ լուսագրեաց վայելչապէս գրեաթէ զամենայն կողմանս պարսպաց և շինուածոց քաղաքին և ոչ սակաւս յարձանագրութեանց, զորս և ձեռնարկէ հրատարակել ծանօթարանութեամբ: Ուղեկից նորին՝ Յովակիմ Գեղամեան՝ յաւարտ ստորագրութեան տեղւոյն, յարէ ընտրանաւ և զ'ատ. յիշատակէ ինչ գրուածս նորոց այցելուաց՝ յորմունս շինուածոցն. օրինակ իմն. «Եկի, տեսի, և ողբացի »:

«Լաւ էր չէի եկել տեսել.
Բայց եթէ արժանացայ՝
Տուր, Տէր, ինձ գերեզման չմտնել,
Մինչդեռ Հայաստան ոտին չէ կանգնել [2] »:

[1] Être à 26 verst d' Ani et ne pas voir ces ruines magnifiques ! Ce que l' Arménie offre de plus curieux et de plus admirable ! Nombre de ses églises sont encore debout, ainsi que ses murailles d' enceinte, ses portes, ses palais : des inscriptions, des sculptures partout. — Dubois de Montpérieux, III. 437.

[2] Ըստ այսոցիկ և այլք. ընդ որս դառնալի են և համառօտ ստուգագրութիւնք այցելուաց Անւոյ, հրատարակեալք յազգային օրագիրս Տփղեաց. և միահաւաք քարտէսք տեսարանաց նորին, վիմագրեալք 'ի Յովհ. Տէր Աբրահամեան՝ 'ի Կաֆա, և 'ի Կարապետէ Յովհաննջանեանց 'ի Մոսկուա. որպէս և լուսագրեալքն 'ի Նիկիտ և Մակարովիչ օտարազգեաց, զորս մեք չէ տեսեալ: — Ի բանաւոր յիշատակաց ծանօթ է 'ի կողմանս անդ Հայոց՝ դիմառնական ողբերգն Անւոյ, յԱրարատեան Աղէքսանդր Վարդապետէ.

« Անի քաղաք նըստեր կու լայ.
Զըկայ ըսող՝ Մի՛ լա, մի՛ լա.
Կ'ըսեն քիչ է, թող մընայ լայ:
Ա՜խ. երբ լըսեմ, Մի՛ լա, մի՛ լա.
Շատ ցաւերով կ'այրիմ տապիմ,
Զ'ունիմ մէկ մարդ հաւատարիմ,
Որ խըղճալույս գայ մօտենայ՝
Հիչ չէ՝ ըսէ, « Մի՛ լա, մի՛ լա »:
Ա՜խ. Հայ տըղայ, խըղճա ինծի,
Տես, թէ քու Անին ինչպէս է ». և այլն:

Ըստ այսմ ոճոյ երեք տունք ևս: — Իսկ յետագայ երեք տունք թուին հատուած մի իսկակիր եղերերգութեան գաղթելոց յԱնւոյ 'ի կողմանս Ռումենիոյ, ուր և անհնարին տառապանս կրեցին 'ի Ստեփանէ իշխանէ Վլահաց յամի 1551. պատառիկս այս գրեալ էր աղաւաղ իբր յամի 1723, այլ երբ յօրինեալ՝ ոչ գիտեմ.

« Յորժամ փախեաք բնաւքս յԱնի քաղաքէն՝
Անկաք Ուլահ Պուղտան, հեռի Մաճարէն.
Անդ ոչ գըտաք նաև ոչ մի մեր ազգէն:
Ոչ հարբք զորդիս ոչ մարք դստերս ճանաչէր.
Իւրաքանչիւր խորոց սրտէ հառաչէր.
Ոմանք տերանց այլք տանուտիկնաց աղաչէր:
Տիւ եւ գիշեր լամք եւ ողբամք մեք յայտնի,
Մինչ լըստողաց սիրտ եւ աղիսն խարշատի.
Չի զըկեցաք յԱնի քաղքէն գովելի »:

41. Իսկ մեզ հարկ է արդ յաւարտ յերկարեալ տե-
ղագրութեանս Անւոյ՝ խոստովանել, զի ոչ միայն յայժ-
մուս բուռն և վառ է յիշատակ Նորին առ մերայինս, այլ
և 'ի հնումն անդ յոյժ սիրելի եղեալ էր բնակչաց իւրոց,
և հռչակելի արտաքոյ յարեւմուտս և յարեւելս, որպէս
տեսաք 'ի վերոյ (38) [1]. բազում խնամով շինեալ և զար-
դարեալ, Նովին և պահեալ և գգուեալ։ Զափաւոր ճա-
շակ գեղեցկին՝ ոչ միայն շինեաց և փայլեցուցոյց զԱնի,
այլ և վայելչապէս գեղեցկին յարդարեաց զԱնեցիս. և
իբր զանձ իմն ցանկալի, իբրև ամուր ապաստանի, իբրև
կերտուած չքնաղ և գեղափայլ երանգ երանգ ակնահա-
ճոյ վիմացն իսկ, և իբրև որբազան և ազնիւ քան զամե-
նայն հոյակապ քաղաքս ժամանակին, պահելի և պաշ-
տելի. յոր սակս ոչ միայն բազում արիւնք հեղան և քաջ
արի մարտկաց պաշտպանողաց ազգայնոց ընդդէմ օտա-
րաց [2], այլ և կանայք Հայկազնիք առաքինացան յԱնի,
թերևս առաւել քան յայլ քաղաքս իւրեանց. և արդարև
մայրաբար գթացին և գրգացին պէսպէս օրինակաւ. և
ոչ գիտեմ՝ մի՞ք իւրեանց թէ այլք առաւել երախտա-
պարտք իցեն 'ի շինութիւն, յամրութիւն, 'ի ճոխութիւն
Անւոյ, և 'ի պայծառութիւն եկեղեցեաց Նորին. որ-
պիսիք ոմանք Խոսրովանոյշ թագուհին՝ կին Աշոտոյ Ո-
ղորմածի, Կատրամիդէ թագուհի կին Գագկայ Ա, Մա-
րիամ Արծրունի՝ կին թագաւորին Վ.րաց, Կատոյն
հանի ամիրային Փատլունի Բ, Ռուսուդան կին Իւանէի
Օրբելեանց, Շանուշ շինող աշտարակաց, և բազում այլ
նուիրատուք, նորոգողք և շինողք, որոց անուանք գրեալ
են յարձանս, և շատք ջնջեալք. և թերևս վեհագոյն
բնաւից՝ Այծեմնիկն այն արիութեանց մայր [3]։ — Աւե-
լորդ է ասել, զի քաղաք որ այնքան ջանիւ և գանձու
խնամիւր, անհրաժեշտ արժանաւոր սիրոյ և սխրանաց
ընծայիւր բնակչացն և եկաց, բազմապատիկ պայծառու-
թեամբք, ճոխութեամբ, հանդիսիւք և խրախութեամբք,
և անգամ չաչլութեամբ և որ ինչ ըստ նմանէ, ըստ
մեղադրութեան ոմանց 'ի պատմչաց. քանզի իբրև յետ
չորեքհարիւրամեայ անիշխանութեան և անկման ազգիս՝
կանգնեցաւ արքայաչուք տուն Շիրակայ, որպէս երիտա-
սարդ մի զայթեալ, և Անի՝ որպէս սիրտ 'ի լանջս Նորին
խայտայր եռանդուն կենդանութեամբ և կենդանացու-
ցանէր որ շուրջ զիւրեւն. և որպէս ականատեսն չքոյ և
փառաց Նորին ճառագրէ [4]. « Աշխարհ որ երբեմն ժա-
» մանակաւ իբրև դդրախտ տնկախիտ առաջի իւր, կանա-
» չագեղ, տերևալից, պտղաբեր, գեղեցկաչուք և երջա-
» նիկ անցաւորացն ցուցանիւր. քանզի իշխանք նստէին
» յիշխանական դահու զուարթահայեաց դիմօք, և զգար-
» նանաբեր ծաղկանոցաց բերեալ զնմանութիւն՝ վառ 'ի
» վառ գունովք առաջի կացեալք, ուրախական երգոց և
» բանից միայն լինէին հանդէսք. ուր և ձայնք փողոցն
» և ծնծղայիցն և այլ երգեցողական արուեստիցն՝ զլսո-
» ղացն անձինս լի առնէին ուրախական բերկրանօք։
» Անդանօր և ծերք նստէին 'ի հրապարակս, հարկեւոր
» և պատուական ալեօք բարգաւաճեալ. այլ և մարք ըզ-
» մանկունս 'ի գիրկս ընկալեալ, և մայրենի գթովքն աղէ-
» խարշեալ, վասն առատ ուրախութեանցն մոռանային
» զտխրական ժամանակս երկանց, զորէն աղաւնեաց
» զնորափետուր ձագօքն միշտ թռթռելով։ Զի՞նչ ասա-
» ցից և զհարսանցն 'ի սենեկի, և զփեսայիցն յառա-
» գաստի զփրահարուստ ըղձիցն զբորբոքումն և զանժոյժ
» բնութեանն զհակամիտութիւն։ Այլ և 'ի վեր տանելի
» է մեզ զբանս, առ հայրապետական աթոռն և առ թա-
» գաւորական պատիւն. զի միւն՝ զորէն ամպոյ խտացեալ
» 'ի պարգևացն Հոգւոյն, 'ի ձեռն վարդապետական
» շնորհին՝ ցօղէր զցօղ կենացն, որով պարարտացեալ
» պտղաբերէր եկեղեցւոյն դրախտ. արթուն պահապանս
» 'ի վերայ պարսպաց Նորա կարգելով՝ զառ 'ի յինքենէ
» ձեռնադրեալսն։ Իսկ թագաւորն՝ յառաւօտինսն յոր-
» ժամ 'ի քաղաքէն ելանէր, զորէն փեսայի որ ելանէ
» յառագաստէ իւրմէ, կամ որպէս տունջենային արու-
» սեակն որ 'ի գլխոյն արարածոց բարձրանալովն՝ զամե-
» նայն տեսանելիս յինքն ձգէ, այսպէս և Նա պաղպա-
» ջէր փառփուն հանդերձիւք և մարգարտախուռն թա-
» գիւն, և զամենայն մարդ 'ի տեսութիւն և 'ի զարմանս
» ցուցանէր. որ և ապիտակամազ նժոյգ՝ ոսկէզօծ զար-
» դիւք առաջի ընթանալով, 'ի ճառագայթից արեգականն
» որ զնովաւ հարկանէր՝ շլացուցանէր զտեսողացն տեսա-
» նելիս. իսկ զօրացն բազմութիւն խուռն առաջի ընթա-
» նալով՝ զորէն ծովային ալեացն զմիմեամբք կուտակե-
» լով։ Նաև անապատական վայրքն լցեալ և խճողեալ էին
» կրօնաւորական դասուք. մինչ զի զգեօղս և զագարակս
» առ բարի նախանձ քահեալ՝ առնէին բնակութիւն կրօ-
» նաւորաց։... Եւ եկեղեցիք որ 'ի Նոսա՝ որ զերկնից
» բերէին զնմանութիւն վասն պայծառ շինուածոցն, և
» վասն գեղեցկաչուք զարդարանացն, և վասն անշէջ
» լապտերացն և ջահիցն վառման, որոց լուսոյն առա-
» գութիւն ընդ օդոյն տարածեալ՝ այսր անդր ճօճելով
» զալեաց ծովու բերէր զնմանութիւն, որ 'ի հանդարտ
» ժամանակս 'ի քաղցրաշունչ օդոյն սղոխք ալեացն վէտս
» վէտս 'ի վերայ միմեանց շրջապատին. և անուշաբու-
» րակ խնկոցն զօլորշիք, որ ըստ առատութեան նուի-
» րաբերացն հրոյն ներգործեալ, զգարնանաբեր ժամա-
» նակին բալիսն ցուցանէն զօրինակ, որ 'ի ծայրս լերանց
» նստեալ՝ արգելուն զճառագայթս արեգական։ Իսկ
» զբնակողացն 'ի Նոսա՝ ո՞ր բան բաւական իցէ առ 'ի
» պատմել զօրինակն. զքաղցրաձայնութիւն երգոցն և

[1] Ըստ արեւմտեան հին ժամանակակից հեղինակս յիշողս Անւոյ
արժան էր յիշել և զՎիպասանն Ասպետին Փարիզու և Գեղեցկին
Վիենայ, մինչդեռ չէն էր Անի, եթէ ստուգիւ հեղինակին էր ըն-
տեղծեալ զբան Ասպետին իւրոյ պանդխտի, և ոչ մերազգի թարգ-
մանչի յաւելեալ. Յովհաննու Տերզնցոյ երիցու, 'ի ԺԶ դարու. որ
յետ կարգելոյ զտողս հեղինակին զուգեօրութենէ Փարէզու 'ի Պա-
ղեստին՝ և յայլ ինչ կողմանս, յօդէ և զայս տուն.

« Ուղղի դէպ յարեւելս՝ յերկիրըն Հայոց
Մտնու յԱնի քաղաք՝ որ է Մեծ Ամրոց »։

Եթէ հեղինակին իցեն բանքդ, պարծանք են Անւոյ, իսկ եթէ թարգ-
մանչին՝ մեծ ևս պարծանք հայրենասէր ոգւոյն, որ և յայնմ անա-
գանեալ դարու ոչ մոռացաւ զԱնի։

[2] Ըստ որս անմոռաց դասելի է յայլում հանդիսի և զտիրասէր
Անեցին Բանէլ, որ զդիակն ողորմամահ Գագկայ Բ, յետին թա-
գաւորին Բագրատունեաց, գողացեալ 'ի դրից սպանչացն, տարաւ
հանգոյց յաւանի բնակութեան նորին։

[3] Տես յէջ 99։

[4] Արիստակէս Լաստիվերտացի, Գլ. Ժ։

» զանդադար սաղմոսերգութիւնն, զաստուածային գրոցն » ընթերցմունս, զուէրունական տօնիցն զհանդէս և զվըկայիցն » զպատիւս, և զմիախորհ խորհողացն զկամս և » զառ 'ի յաստուածայինսն նկրտումն, և այլն ևս »:

Զայս ամենայն շնորհս Անւոյ յիշելով, զանցեալսն և զներկայ նշխարս, արդ 'ի տալ և մեր յետին հայեցուած 'ի նոսին, ներեսցի արդեօք դնել կնիք զբան ուրումն ազգայնոյ յետին դարուց, որ համառօտեալ զդէպս անցից քաղաքիս, յասելն 'ի կարգի գրութեանն՝ զԱնի թագաւորաբնակ քաղաք, առ նմին զուշով ածեալ՝ 'ի վերայ բերէ, թէ, «Նաև աստուածաբնակ ասեմ, և ոչ ամաչեմ»:*



42. Մերձագոյն յԱնի վայր նշանաւոր՝ է գիւղն Ղօզլիճա, որ է հինն Բագնայր. իբր երկու փարսախաւ յարևմտից քաղաքին, և նոյնքան հեռի 'ի գագաթանէ Ալաճա լերին, 'ի հիւսիսային ստորոտն. գեղեցիկ դրիւք, հայելով 'ի դաշտավայրն և յաւերակացեալն արդ շէնն մեծ: Յելս Ժ դարու մեծահաւատ և մեծափարթամ իշխանք Պահլաւունիք կանգնեցին աստանօր զմի 'ի կարի հռչակաւոր վանորէից ժամանակին: Աշոտիկ՝ խառն իմն ասէ, 'ի յիշելն զՎահրամ իշխանաց իշխան, զՍմպատ մագիստրոս որդի Վահրամայ և զմարզպանն Աշոտ, «զՄարմաշէն և զԲգներն շինեաց»: Մարմաշինու կանգնողն յայտնի է՝ Վահրամն, և Բգնայրի՝ ըստ այլ պատմչաց՝ Մագիստրոսն Սմբատ, յորոյ զարմի թուի սեփականեալ մագիստրոսական պատուանունդ, որպէս է գուշակել յարձանագրութեանցն: Ժամանակագիրն Անեցի յամի 1009 կամ 1010 նշանակէ զշինութիւն վանիցն. այլ այս համարելի է աւարտն. քանզի Աշոտիկ տասն ամաւ յառաջ նոյնպէս գրէր. և զի չյաւելու դըրուատ ինչ զշինուածոյն՝ 'ի դէպ է առ խրև անկատար համարել զնոյն: — Անուն գեղջն՝ որ գրի և Բգներ՝ զուգանիշ երևի Բագարանի. այսինքն, բագնեաց ունող յոլովից՝ 'ի ժամանակս հեթանոսութեան, այլ ոչ յիշատակի առ նախնիս. և արդ ամայացեալ և 'ի սակաւուց Թուրքաց բնակեալ, չունի այլ նշան մեծութեան՝ բայց զարժանին տեսութեան և մեծ կոչելոյ՝ զեկեղեցի վանացն, զՍ. Աստուածածինն, որ և բազում անգամ յարձանսն կոչի Մայր յուսոյ, իբր սեփական նմին մակդիր. և յայն սակս առաւելապէս դրուատի, և յերկոցուն պատմչացն և յարձանացն կոչի՝ «Հրեշտակաբնակ և » փափագատենչ», և «Ժողովետղ արանց աստուածայնոց». առաջին մակդիրդ երիցս կրկնեալ՝ թուի յատուկ իմն պատճառաւ, զոր անգիտանամ. իսկ ժողովետղն, այսինքն վանքն բնակութեան աստուածախոհ արանց, այժմ իսպառ քայքայեալ է, և քաղաքորմն մինչև 'ի հիմունս յատակեալ: Ըստ բաղդի կանգուն մնայ իննդարեան հոյակապ եկեղեցին, հանդերձ վսեմական գմբեթաւն. և բերէ փոքր 'ի շատէ զձև եկեղեցւոյ Հոռոմոսի վանաց, նման նմին յերկուս տրոհեալ, 'ի տաճար և 'ի ժամատուն. բայց սորայս տաճար անձկագոյն է ըստ երկայնութեանն և ըստ լայնութեան, այլ գաւիթն ընդարձակագոյն, քառակուսի հաւասար. իսկ Հոռոմոսին գաւիթն անձուկ է ըստ լայնութեան: Չորք սիւնք գեղեցիկք և մեծամեծք 'ի միջավայր ժամատանն և երկոտասան որմնայեցք ամբառնան զձեղունն բազմայեռ և քաջաձիգ կամարօք. կշիռ հանդէպ դրանն արևմտից՝ կայ և դուռնն յարևելս մուծիչ 'ի տաճարն, յորում չորք ստուար և բազմանկիւն որմնայեց սիւնք և երկոք ևս այլ փոքունք, յարևմտից կամարակցեալ ընդ իրեար, որպէս և երկուստեք խորանին, ամբառնան զգմբէթն

* Ընդ վերոյիշեալ արտադրութիւնս այցելուացն Անւոյ 'ի մօտուստ, յարադրի և քերդուածս այս առ նոյն յիշատակէ.

## ԱՆԴՈՐՐԱՆՔ ԱՆԻՈՅ

Հրաշագործակ ճիգն Հայկին,
Հարըստութիւն եւ հանճար,
Սիրտ խանդակաթ, ջերմ հոգին,
Հուսկ փառաբնակ իւր տաճար՝
Յամանակաց միջօրեայ
Եւ յաշխարհաց միջակէտ՝
Յանքոյթ յորձանս Ախուրեայ
Եւ ի ծործորս ծաղկաւէտ,
Երկնեաց ծընունդ աննըման,
Ըզքեզ՝ վեհից վեհական.
Զոր ոչ Զըրուան հանրակուլ,
Ոչ ժանտ բաւեաց սլաքն Ըսկիւթ,
Ոչ յաշաղկոտ հրոսք անդուլ՝
Խարդաւանել յոյս անգիտ:
Թօթափեցին, այո, դարք՝
Զամենազանըդ պերճանս,
Այլ նիշք շըքոյդ անվըթարք՝
Շողան յամէն քո կողմանս.
Եւ վերնական հովանի
Սաւառնանայ զքեզ, Անի:
Ոչ ոտք յուրանք բարձրայօն՝
Յոր բիւրաւոր կռուավար
Տառապեցոյց Փարաւոն,
Ոչ ակառունք որձաքար՝
Յապահովեն զյիշատակ
Օթեվանաց նախարարաց.
Այլ զոր հիմնէ գութ յատակ,
Կանգնեն հաւատք գերապանծ.
Եւ ուր յաւէտ հսկէ խաչ՝
Նա յաւիտեան անամաչ: —

վայելչաչուք [1]. հազիւ ութ Զափ է լայնութեան տաճարին և իբր 14 երկայնութեան, իսկ ժամատանն իբր 15 Զափ: Մի դուռն է տաճարին 'ի կէս հարաւային որմոյն, յորում կողման որմասիւնք հինգ կամարս արկեալ յայլ սիւնս որ 'ի հանդիպոյ՝ գործեն գաւիթ ցածուն և անձուկ իբրև 4 ½ Զ. ընդ երկայնութիւն տաճարին. և 'ի ծայր նորին՝ որ է յարևելից եկեղեցւոյն՝ կան զուգաչափ և զուգադիր մատրունք երկու գմբեթաւորք, իբր եօթն Զ. ընդ երկայնն և չորս ընդ լայն. որմնակից այնր՝ որ յերի կայ եկեղեցւոյն, գոյ արտաքոյ տապան չիրմի, զոր կարծեն Ս. Լուսաւորչի նշխարաց հանգիստ, և պատուեն Թուրքք անգամ. բայց յարձանագիրս միւս մատուռնն կոչի եկեղեցի յանուն Ս. Գրիգորի: Ի նոյն արձանաց ստուգի բազում ևս այլ չիրմաց լինել երբեմն աստ, և Տապանատունն լինել մեծատանց և բարեպաշտից. յոր սակս Թուին կանգնեալ մատրունքդ. և զատ յայնցանէ՝ Գերեզմանաց մին եկեղեցին, զոր չինեն Խաչեղբայր ոմն և ամուսին իւր Սիսամ 'ի սկիզբն կոյս ԺԳ դարու, որպէս ցուցցէ այս արձանագիր.

**Ես Խաչեղբայր որդի Աստուածատրո եւ ամուսին իմ Սիսամ շինեցաք զգերեզմանաց մին եկեղեցին եւ տուաք զմեր տաճարն եւ զսարաւոյթն եւ ի ներքեւն տուն ի սուրբ Աստուածածինս եւ հայր Սիմէոն եւ այլ եղբարքս փոխարէն հատուցին յամէն ամին. ղ̅. աւր ժամ. գ̅. աւր Խաչեղբաւրն. գ̅. Սիսամին. կատարիչք գրիս աւրհնեսցին յԱստուծոյ:**

Ի նմին ժամանակի, յամի 1229, Խաթուն՝ կին Խաւռազ իշխանի՝ շինէ, որպէս Թուի, այլ մատուռն, զի պսակասէ բան «'ի վերայ տապանատանս». և յամի 1262, Գաբեգին երէց՝ որդի Մանգիկ երիցու՝ յիշէ զգերեզմանս

Տեսի զԲաբէլ եւ զԱսուր…
Նա մանաւանդ տեսի 'նչ ոչ.
Հողակուտակք Թաքթաքուր,
Ամայութիւնք յամայւոյ.
Զորբս ձաղեալ՝ հողմ ու աւազ
Ցարձակավայր անարգել՝
Դիմամարտին հանապազ
Անդըր քան զանդըր վարգել:
Ուր Շամիրամ շպարէր վէս՝
Անդ որջացեալ կուզ ու աղուէս:
Տեսի զՀռամսէն եւ զՄեմփիս.
Լերինք եւ այրք կռանակոփ.
Ցոր՝ պատ 'ի պատ ի կտաւիս
Ննջէ զմռեալ եւ ամփոփ՝
Բազմադարեան հեթանոս.
Եւ շուրջ՝ զուգեալ յամանակ
Անխոնջ անյոյս ծեր Նիլոս՝
Ցածի ալեօք տժգունակ:
Մինչ Մեմնեան վէմն յարեւ,
Աւղ ի սիրտ՝ ոչ արդարեւ:
Տեսի զդըղեակ Ատտիկեայ
Բազմադըրուագըդ զԱթէնք.
Խուհք Պերիկլի, դաստ Փիդեայ՝
Զեղեն չինիցդ ապաւէնք.
Հազիւ նշխար խուսափուկ
Ճըգնի երդմամբ վըկայել՝
Թէ ճարտար մատն եւ փափուկ
Երբեմն ինքեան էր վայել.
Դրդէ զմիտս յամպ գեղեցկին,
Ոչ մինչ յերկինս՝ ուր հոգին: —

Ոչ այսգոյն յիմ հայրն ազգաց
Ցարփիասկիզբն Այրարատ,
Ասպընջական օտարաց,
Գդուեչ Հայոյն հարազատ:
Լուսակարկաջ ընդ երկնաւ
Տեսի զյետինն իւր ոստան,
Խաչազգեցիկ նըշանաւ
Նափորտապատ սրբազան.
Համբուրեցի զնիչ քարանց,
Եւ սոսափիւն յիս էանց:
Մինչ Թողեալ զբարձրըն Դըւին՝
Էջ բաղդ հացուտն ի Շիրակ,
Հարեալ յիմաստ ազնըւին
Աստ Հայութիւն համչիրակ՝
Մխարանէր կամովի.
Անզօրն՝ համհարզ զօրեղի,
Կուռըն կարչնեղ կորովի՝
Նարմանազուկ ընդ ծըղի,
Կըռել կոփել սրահ երկնի
Ըզնուիրականն իւր Անի:
Սըփռէր արքայ ոսկի խիտ,
Եւ բուրգն ի բուրգըն յենոյր.
Սըփռէր դըշխոյ մարգարիտ,
Մատուռ մատրան տայր համբոյր.
Քաջահաւատ քաջայոյս
Կարկառեալ ձոխ առ փինատ,
Ցաչխարհօրէն ի խրախոյս՝
Հազար տաճար բիւր պալատ
Կանգնէր յըղձիկն իւր յԱնի,
Սռնել յաչխարհս անուանի:

[1] Այլազգիք կողմանցն ասէին 'ի խոյակէ միոյ յաջակողմեան սեանցն չորեցուն՝ 'ի կիսոյ ամսեան օգոստոսի ցաւուրս 15 կամ 20 Թորել կարմիր կայլակաց նման արտասուաց, այլ յամաց հետէ դադարեալ էին (1845-8). և բազում անգամ տեսանէին բոց հրոյ առ խարսխաւն, վասն որոյ ոչ մերձեցուցանէին անդ զանասունս արօտականս: Եւ որ լուաւն զայս (Կարապետ վարդապետ) ասէ աչօք տեսեալ և շօշափեալ զմածուցիկ նիւթն կարմիր՝ յամենայն կողմանս սեանն, և համարի նշխարաց ինչ սրբոց Թաքուցեալ 'ի վերին կամ 'ի ներքին կողմն սեանն: — Հայաստան Օրագիր, Թիւ 179: — Ցիշին և այլ ուրեք 'ի Հայս նման իմն Թորմունք իւղայինք:

տոհմի իւրոյ։ Բայց աւերածուք՝ ոչ միայն բնակութեան կենդանեաց, այլ և ննջեցելոցն չեն խնայեալ, զի ոչ նըշմարին արդ տապանքդ, և ոչ իսկ արձանք կանգնողաց հոյակապ եկեղեցւոյն. նա զի և գյոլովս 'ի մեծամեծ քարանց քակեալ և 'ի բաց տարեալ է վասն նոր շինուածոց, թէպէտ և կան միան տակաւին յիմնիւ չափ արձանագրութիւնք արտաքուստ տաճարին և մատրանցն, և յոլովագոյնք 'ի ժամատանն. և այնոքիկ միայն են արդ պատմութիւնք Բագնայրի, իբր երկուց և կէս դարուց. զի հնագոյն արձանագիր թուեցեալ է 1042 ամի, և յետնագոյն 1266. բայց է և հնագոյն մի ևս, յայտնապէս յետ 1021 ամի [1], թէպէտ և անթուական. այն է արձան Սեդայ, քեռ Գրիգորի Մագիստրոսի, 'ի վերայ շիրմաւոր մատրանն՝ օրինակ զայս.

Ես Սեդա տիկնաց տիկին դուստր մեծին Վասակա զուգակից Վահրամս իշխանաց իշխանի որդոյ Աշոտոյ իշխանաց իշխանի տասանորդեցի զվաստակս գեղջն իմոյ Գաղտաւի ընծայելով ի սուրբ ուխտս Բագնայրիս վասն յիշատակի զաւրականին Քրիստոսի հաւրն իմոյ Վասակա փոխեցելոյ յաշխարհէս. եթէ ոք ի մեծամեծաց կամ ի փոքունց կամիցի խափանիչ լինել որո-

Կապին կամարք կարծրակուռ
Ցանդունդս յախուռն Ախուրայ.
Ի ճոխինչ սայլից հասկաթուռ՝
Թնդան եւ սիրտք ի վերայ.
Աստեղաթիւ աստղափայլ
Նորահարսունք ոսկէթագ՝
Արծաթամոյգ մանրաքայլ
Ջանցիկս առնեն վարդյատակ.
Մականակիրքն երկոքին
Փայլեն գունակ արեգին։
Ո՛վ, քանի՛ խռով եւ խաղաղ.
Ո՛րքան մըղեն անդ գիրար
Արիւն, արտօսր եւ ծիծաղ.
Հոգեծըփա՛նք անդադար։
Քանի՛ ամբոխ աղաղակ
Ի հրապարակ, յորդոստայն.
Քանի՛ այգունք կարմրորակ,
Եւ թըխաթոյր վաղորդայն։
Ո՛րքան կենաց մուտ եւ ել։ . . .
ԶԱնի՝ բաւէ՞ ոք թըւել։ —
Հոլաթեւեալ ե՛րթ համբաւ՝
Կոչնակ տեսլեանդ հիահրաշ։ —
Հծծէ հիւսիս առ հարաւ.
Եւրոպ ըղձօն կարդայ վա՜շ.
Հելլէն Իտալ Խափշիկ Խուժ՝
Բերեն տանին անթիւ խայր.
Հարիւր բարբառ խաժամուժ
Ցաշխարհվաճառն անդ ճոխայր.
Եւ դարձեալ հինն Հայաստան
Շահաստանաց շահաստան։
Խուժէ՞ յանկարծ թշնամի
Ի կողոպուտ եւ յաւեր. —
Եկեղեցիքն հազար մի
Համահաւաք տան հրաւէր.
Ամեն բնակի՛չ բերդապահ,
Ամեն բնակի՛չ զինաւոր.
Ու Այծեամն աչեղ եւ վստահ
Արծաթաղեղն Նահիտ Նոր,
Ի դաստակերտ բրգանէ
Ե՛ւ պաշտպանէ եւ վանէ։ . . .

Խրոխտ աշտարակք անթ առ անթ՝
Նմանեալ պարուց պատանեաց
Եւ պճնելոցն ի բահուանդ
Ի խաղս այգեաց հովանեաց,
Թըւին ճօճալ մահկաձեւ՝
Ի սահագնաց լուսնեկին։
Տարփեալ ի հարսն եւ յարեւ՝
Զայնէ պահնակ դըղեկին.
Գանչեն փրով արձագանգք
Եւ Հռովմոսին մահարձանք։
Վառեալ Վահագն աստղավառ
Սուր գմբեթաց անշէջ ջահ,
Ուր Սմբատ թագ առ ըռնար
Ու Աշոտ ննջէ Շահանշահ,
Շողայ շիրմաց մամռապատ.
Ցոլըս թըւին աներկմիտ
Ցաղօթս ի տուրս անընդհատ
Խոսրովանոյշ, Կատրամիտ։ . . .
Քան ըզթատերս՝ կենդանի
Են ինձ դամբանք քո, Անի։ . . .
Այլ օրահասն յեղյեղուկ
Համայնաջինջ ոսոխ բաղդ՝
Ժամանեալ գայ. — վա՜հ, եղուկ։ —
Ո՛չ, ոչ. նա չէ՛ աստ անյաղթ.
Կաթողիկէքս երկնապար,
Կոթողք ու արձանք խաչակնիք,
Եւ Մարեմայս վեհ տաճար՝
Յաւերժութեան ունին նիգ.
Մի՛ բնաւ տեսցէ նա զԱնի՝
Հետակորոյս ի գետնի։
Լիցի եւ սա լուռ, ամայ.
Այլ ե՞րբ, զիա՞րդ, եւ կամ ո՞ւստ. —
Ոչ գիտաց ճետ Ադամայ.
Գաղտնիք եւ խնամք են վերուստ։
Ոչ ձեռն յաղթկու, կամ գոռ ռուսմ՝
Վատնեաց ելքք զայն թափուր,
Այլ որ յՆդեմ պահախումբ
Սերովբն Հայոց բոցասուր.
Զի մի՛ օտար, մի՛ գազան
Վարձեսցի զվայրն երկնազան։

1 Զի յայսմ ամի մեռեալ է Վասակ հայրն Սեդայ, որ յիշի յարձանագրին իբրեւ վախճանեալ ոչ յառաջ քան զյոլով ամս։

*չեալ լիցի ի փառացն Աստուծոյ եւ ընդ մեղաց մերոց համարս տացէ յաւուրն դատաստանի ։*

Իսկ Թուականաւ արձանագիրդ, որ յամի 1042, յարևելեան որմն եկեղեցւոյն արտաքուստ, է Գրիգորոյ ուրումն Ծաղիկն կոչեցելոյ, եղբօր Մուկաթլի, որ և Թուի յիշխանական զարմից լինել, և որ շնորհէ վանացս Բագնայրի զկրպակս իւր յԱնի, ընդդէմ փընդըկին Վասլի, վասն արևշատութեան սորին և որդւոցն.

**Ի ՆՂԱ** *թւ ի հայրապետութեան Տեառն Պետրոսի Հայոց կաթողիկոսի եւ ի թագաւորութեանն Գագկա շահանշահի որդւոյ Աշոտո կամ եղեւ իմ Գրիգորո Ծաղկանս եւ իմ որդեացս որ տուի զիմ գանձագին կուղպականին որ Վասլին փընդկին ընդդէմ է ի Բգնայրին վանս ի Սուրբ Աստուածածինն ի ձեռն առաջնորդի հաւր Ստեփաննոսի վասն Վասլին արեւշատութեան եւ իւր որդեացն եւ իմ Գրիգորո մեղաց թողութեան եւ ոգւո փրկութեան եւ որդեաց իմոց. եւ հայր Ստեփաննոս եւ միաբան եղբարքս կամաւ յանձն առին որ ամենայն ամի զՊաւղոսի եւ զՊետրոսի տաւնին աւուրն պատարագն յամէն եկեղեցիսդ իմ եղբաւրն Մուկաթլի արասցեն եւ յետ վախճանի իմոյ ինձ մատուսցեն. արդ հայր որ լինի եւ զիմ ժամս խափանէ առաջի Աստուծոյ իմ մեղացս պարտական լիցի. արդ եթէ ոք ի մեծաց կամ ի փոքունց յիմոց կամ յաւտարաց եւ զայս հողս . . . ուխտէս յապշտ . . . պատճառաւ նզովեալ լիցի ։*

Կայ առ երի սորուն սկիզբն այլոյ նոյնպէս հին արձանագրի, այլ Թերակատար մնացեալ. և է այս.

*Ողորմութեամբ Աստուծոյ ի հայրապետութեան Տեառն Պետրոսի և ի թագաւորութեան Գագկա շահնշահի որդւոյ Աշոտոյ . . . ետու զիմ . . .*

Յետ սոցին հնագոյն արձան գտանի 'ի վերայ դրան մատրան Ս. Գրիգորի, յամի 1145, այլ ուրեք ուրեք եղծեալ. զոր կին մի Ազիզ անուն ասէ օրհնեալ? 'ի յիշատակ որդւոյ իւրոյ համանուան Սրբոյն.

**Ի ՇՂԴ** *թվ. ես Ազիզս մեղուցեալ աղախին Քրիստոսի աւրհնեցի զե–*

Մի՛ արհաւիրք մահաշուք՝
Ուր հնչէին սրտագոհ
Երեքսրբեան ալէլուք.
Այլ լռութի՜ւն ինքնախոհ։ . . .
Որպէս շուշան մի բեկբեկ
Ցառաւօտին մարերի՝
Ցօղաթաթաւ հողմնաթեք
Կայցէ ծղօտին առ երի.
Կամ կոյս ի կոյս տապանի՝
Պատեալ ի քօղ իւր՝ Անի։ —
Փայլակք բըրաց Հայկազանց
Թափք ընդ արտօսր անապակ,
Մանրակոտոր մռունչ բամբռանց,
Հառաչ հեգիկ սրտափակ,
Զըմուռն եւ խունկ եւ քրքում,
Ուժհան յեռեալ յանթառամ,
Խաչ խնդաւոիթ եւ տրտում.
Այս անդորրանք յամերամ
Քում կիսարթուն քնարանի,
Քաղաքամա՜յր գեղանի։ —
Թորգոմաթո՜ռն եռանդուն,
Ցառեա՞ր… պնդեա զսիրտ քո վառ.
Դո՞ւստր Արամայ ծաղկաբուն,
Լացե՞ր. . . կա՛լ զաչքըդ փարփառ.
Եղերամայր մշտամռունչ
Շատ մեզ լալօնքն Ախուրեան։ —
Դի՛ք ձեռն ի լանջ հայկաշունչ…
Ահա գմբէթք վերյարեան.
Ահա շուշանըն կանգնի. —
Ողջոյն տամ քեզ՝ Նո՛ր Անի։

*կեղեցիս զՍուրբ Գրիգոր ի յիշատակ որդւո իմո Գրիգորո ի ձեռն Հայր... մաւր. Եւ առաջնորդ սուրբ....*

Ցետ այսորիկ գտանի Թուական մի ևեթ 1152 ամին.

**Ի ՈԱ** *Թվ...*

Ի վերոյ դրանն կայ Նորագոյն արձանագիրն յամի 1266. և է Խաւռազայ իշխանի որդւոյ Սասնայի և Թոռին մեծ Խաւռազայ, որ իւրեանց ասէ « սեփական զսուրբ ուխտն » Բգներ ». որ և այլով ևս արձանագրութեամբ սակաւ ամօք յառաջ (1262), տայ Նուէր վանիցն բազում տեղիս.



60. Եկեղեցի Բագնայրի։

որպէս զմասն Աշնակ գեղջ՝ զբաժին անդրանկան իւրոյ Սասնայի վեցամսեայ վախճանելոյ, զՋրձորիկ վանս՝ հանդերձ սահմանօք նորին, ջրաղացս և պահէզս, այլովք հանդերձ, որպէս ցուցցեն երկոքեան արձանքդ.

**ՁԺԱ** ✠ *կամաւն Աստուծոյ ես Խաւռաղ մեծ Խաւռաղիս Թոռն Սամնիս որդիս. իմ անդրանիկ որդին Սամնայն որ կէս տարեկան ի Քրիստոս փոխեցաւ յիմ գանձագին հէրէնեցն յԱշնկու որ իմ պապն գնել էր ու սիկելով յիս տվել ինչ իմ պապն մեռաւ ես Խաւռաղ իմ կնոչն զբաժինքն ակն ու մարգարիտ իմ պարոնին տվի Շահնշահի ու կրկին զԱշնակ գնեցի ու զիմ որդոյն բաժինն զՍամնին ի Բգներս տվի յԱստուածածինս զվէրի էգին իւր ընձանոմն: բ: չինական զՄեհրեւան ու զԽաչատուր Դուլուսին փեսայն իւրենց հողոմն ու ջրոմն. ի Տգնիս զՋաղացն. յիմ խոտահարն: ճ: բարդ խոտի տեղ որ վանքս ընձէ ... սկի արծաթի: Ես Խաւրաղ զայս ընձա տվի սուրբ Աստուածածնիս. ով այս գրելոցս հակառակի Աստուածամայրս լինի իւրն դատախազ* ✠ *Եւ Տէր Սարգիս եւ հայր Աբրահամ Յուսէփ փակակալ եւ այլ միաբանքս հաստատեցին ի տարին ժ̅ աւր պատարագ ե̅ Սամնին ե̅ Խաւռաղա* ✠ *Ով ոք զայս գիրս խափանէն յժ̅լ̅ իցն ... հոգով եւ մարմնով. եւ որ հաստատ պահէն աւրհնեալ եղիցին յԱստուծոյ. ամէն:*

*ԶՍիմէոն պտուղ յիշեցէք աղաչեմ.*

**ՁԺԵ** *շնորհիւն Աստուծոյ ես Խաւռաս որդի Սամնաին ետու ի մեր սեփական սուրբ ուխտն Բգներ ի սուրբ Աստուածածին զմեր զգանձագին զՋրձորիկ վանքն իւր սահմանաւքն ջաղացոմն եւ պահիղան ... եւ զԱղի աղբերն զպահէզն որ իմ պապն գնեալ էր եւ ինձ տուեալ ես յիմ կենդանութեան ետու ի վանքն. եւ հայր Աբրահամ եւ այլ սուրբ եղբարքս փոխարէն հատուցին մեզ ի տարին. ժ̅. աւր պատարագ յետ ելից իմո ինձ առնեն. ով եւ իցէ որ մեր արձանագիրս յետ շրջէ կամ... կամ յաւտարաց մեղաց մերոց պարտական եղիցի առաջի Աստուծոյ.* **Իսրայէլ** *գրիչ:*

Բազում ամօք յառաջ, այն է յամին 1223 կամ 1229, Խաթուն՝ կին վերոգրեալ Խաւռաղայ՝ արձանագրելով ՚ի վերայ հարաւային դրան եկեղեցւոյն, յայտնէ ՚ի յիշատակ Սամնայի իւրոյ որդեկին տարաժամ վախճանելոյ՝ արարեալ շինութիւնս ինչ ՚ի վերայ յիշեալ տապանատանն, և տուեալ զհայրենի կալուածս իւր կամ զառն իւրոյ՝ ՚ի Մոգուաց գեղջ (8): Եւ յայսմ ամենայնէ յայտ լինի Բագնայրի կամ վանացն՝ լինել սեփական Խաւռաղեանց:

**ՈՀԸ** (*կամ* **ՈՀԲ**)... *ու ... ութ ...* **Խաթուն** *... բարեպաշտ իշխանին Խաւառժին հայրենիքն ի Մոգուաց որ է ի հնցէ ... զատեալ եւ բաժանեալ սահմանաւքն եւ այլ ... հրշտակաբնակ սուրբ ուխտս ի Բագնայրս յաղագս յիշատա ...աց մերոց եւ անդրանկին մերո Սամնային որ կիսաւրեա փոխեց(աւ) եւ սուգ մեծ եթող ծնողաց իւրոց յորոյ յիշատակ շինեցի ի վերայ տապանատանս սպասաւորք սուրբ Աստուածածնիս աստուածասէր հայր Սիմեւոն եւ այլ սուրբ եղբարքս յանձն առին յամէն ամի: խ̅: աւր պատարագել զՔրիստոս: ի̅. աւր Խաթունին: ժ̅: Խաւռասին: ժ̅: Սամնաին անխափան մինչեւ ի ծա-*

գումն Որդոյն Աստուծոյ. եթէ ի մեծաց կամ ի փոքունց զմեր ընձայքս հանէ ի սուրբ ուխտէս .. կամ առաջնորդ զմեր ժամն խափանէ մեղաց մերոց պարտական լիցի առաջի Աստուծոյ. կատարիչք գրիս աւրհնին յԱստուծոյ։

Ցամէ և յահեկէ դրանդ կայ մէն մի արձանագրութիւն, յամս 1208-9. միոյն Խաչերես Լօռեցի տայ վանացն եօթն կուղպակս 'ի քաղաքին և երեք տունս 'ի ներքսէն. և դուստր նորա Մամ զիւր կուղպակն.

**ՈԾԸ.** **Ի** յամս աստուածապատիւ Տեառն Սարգսի որդոյ Ապիրատին ես Խաչերեսս որդի Աբրահամու Լաւռեցի ետու զիմ գանձագին եւթն կուղպակն ի չարի վեց ի վերեւն եւ մին ի ներքն ... (մ)զքթին ընդդէմ եւ երեք տուն ի ներքսեւն ի սուրբ Աստուածածինս ի ձեռն հաւր Սիմեոնի եւ սուրբ եղբայրութեանս եւ զայգին որ ի Մարմետ. եւ սոքա փոխարէն հատուցին ինձ։ ի։ աւր ժամ։ ը։ ինձ։ ե։ Աբրահամու։ գ։ Դինարկանն։ բ։ Հրանուշին։ բ։ Աղքայութեան ու հաս։

**Ես** Մամ խաթունս դուստր Խաչերեսին ետու զիմ կուղպակն որ ի փողոցկտերն է ի Բազզնոց ... որ հաստատ պահեն աւրհնին յԱստուծոյ ..... անէծք զՅուդային եւ զԿայենին ....

Միւս արձանագրաւն Պարսիմայ որդի Հասանայ՝ ռայիսի Օշական գեղջ, տայ զայգի իւր Վարդենց-Նորք.

**ՈԾԹ.** **Ի** յամս աստուածարեալ եւ մեծարգո Տ̅ն̅ Սարգսի վերադիտողի մայրաքաղաքին Անո եւ ի պետական իշխանութեան Շահընշահ Զաքարիաի ես Պարսիմո որդի Հասանա ռաիս մեծանուն գեաղջն Աւշականո միաբանեցա սուրբ ուխտիս եւ ետու զիմ հայրենի զայգին զՎարդենցնորքն ի սուրբ յԱստուածածինս ի ձեռն բարիսէր եւ սուրբ եղբայրութեանս յիշատակ հոգո իմո. եւ սոքա փոխարէն հատուցին ինձ զաւր յարութեան Ղազարու բոլոր զեկեղեցիքս պատարագել զՔրիստոս։ ե։ Պարսիմի։ ե։ Խուրթին։ դ։ Սեդաին. որք հաստատուն պահեն աւրհնին յԱստուծոյ եւ որք խափանեն նզովին ի Քրիստոսէ։

Հետևողք լինին նմա 'ի նուիրատուութիւն՝ սպասաւորք իւր կամ պաշտօնեայք, Մրուան և Սերոբ որդի Ռատի։

**Ես** Մրուան միաբանեցա սրբոցս հետ իմ Պարոնին եւ ետուն ինձ աւր մին պատարագ անխափան։

**Ես** Սերոբս որդի Ռատին Երեւանեցի ետու զիմ այգին որ ի Ջորդուանն է ի սուրբ ուխտս եւ պարտին սպասաւորք սորա ի տարին։ դ։ աւր պատարագել զՔրիստոս յանուն Սերոբին։

Ա՛յլ ամենայն արձանք քառասնիւ չափ՝ գրեալ են յոր֊մունս և ընդ կամարագոտեաք ժամատանն, 'ի միջոց ժա֊մանակի 1201-1262 ամաց. յորս զատ 'ի Նուիրատուու֊թեանց յոլովից՝ նշանաւոր է սահմանադրութիւն Գրի֊գորի արքեպիսկոպոսի Անւոյ՝ որդւոյ Ապուղամրի, յամի 1215, վասն Թուոյ մատուցանելի քառասնից, այսինքն է պատարագաց, սակս միաբանիցն, ըստ իւրաքանչիւր աս֊տիճանի. զոր և այլուր գրեալ է Նորա.

ՈԿԴ. Կամաւ Հոգոյն Սրբոյ ես տէր Գրիգոր… ի մեր սեփական ուխտս սուրբ եղբայրութեամբս հանդերձ եթէ ոք ի միաբանացս փոխի ի Քրիստոս պատարագ մատուցեն հայրն: դ̅: խ̅: երիցոյն.. աբեղին: գ̅: խ̅: աշխար֊հական աբեղին: բ̅: խ̅: եւ ամենայն եղբայր աւր մի պատարագ եւ որ չկարէ ժ̅ կանոն աղաւթք արասցէ. եթէ ոք յայս կարգելոցս պակասեցուսցէ (մեր) խղճին եւ մեղաց պարտական է առաջի Աստուծոյ.

Տէր Աստուած ողորմեա Մարգարէին ամէն:

Հաստատեալ է և վանականացն վճիռ՝ վասն անխա֊փան կատարելոյ զկտակ միաբանիցն, զայս օրինակ.

Անուամբն Աստուծոյ. Բնակիչք սուրբ ուխտիս Տէր Քրիստափոր եւ Գա֊մաղիէլ վարդապետս ամենայն միաբանաւքս զայս կտակ անջնջելի հաստա֊տեցաք եթէ ոք ի միաբանացս փոխի առ Քրիստոս զկնչ որ անդարձ առնէ եւ իւր հոգոյն տեսող մի ոք իշխեսցէ խափանել ոչ պատրոն ոչ հայր ոչ միաբան. ապա էթէ լուծանեն յերից սուրբ ժողովոցն Նզովեալ եղիցին հո֊գւով եւ մարմնով. Զ3ովսէփ գրիչ Տէր յիշեա:

Նման իմն սոցին է և արձանագիր վանահօրն Սիմէոնի. որ առ կարօտութեան ժամանակին, 'ի պատճառս սովոյ, սրոյ և գերութեան, (որպէս Թուի յետ առման Անւոյ 'ի Թաթարաց), վաճառեաց տունս ինչ 'ի կալուածոց վա֊նացն, և փոխարէն կարգեաց պատարագիս վասն Հոգւոյ Նուիրատուին (Խաչերեսի որդւոյ Վարդի).

Կամաւքն Քրիստոսի այս մեր գիր է սուրբ ուխտիս հաւր Սիմէոնի եւ միաբան սպասաւորաց սրբոցս զերդ որ Խաչէրեան Վարդին որդին որ ի Քրիս֊տոս փոխեցաւ եւ զիւր գանձով շինած տներն ի գաղտ դռանն խեչ երետ ի սուրբ Մայրս լուսոյ ապա դառն ժամանակի հանդիպեցաք սովո եւ սրո եւ գերութեան ծախեցաք եւ ի սրբոցս ի պէտս անցուցաք եւ փոխարէնս հա֊տուցաք յամենայն ամի երեք աւր պատարագ զերկուսն Խաչէրեսին եւ ըզ֊մէկն ամուսնո իւրոյ Մլքերոյն. եթէ ոք զգրեալս մեր անփոյթ առնէ եւ խա֊փանէ յերից սուրբ ժողովոյն Նզովեալ եղիցին ամէն:

Ցառաջ և յետ կիսոյ ԺԳ դարու արձանագրեն Նուի֊րատու պայազատք կամ պատրոնք տեղւոյն 'ի զարմէ Ապուղամրից և Ապիրատաց, Շարապշահ որդի Ապիրա֊տի, յամի 1234, որ մեր սեփական կոչէ զեկեղեցին [1], և կին Նորա Թագուհի, որք Նուիրեն մարգս 'ի Շիրակա֊ւանի և այլ պէսպէս [2]: Նոյնպէս և դուստր Նոցա Թայիկ

[1] ՈՁԳ Շնորհիւն Աստուծոյ ես Շարափշահ որդի Ապիրատին ետու ի մեր սեփական եկեղեցիս ի սուրբ Աստուածածինս: գ: ակն ջաղաց ի Շիրակուանին եւ զխաչին մարգն եւ սպասաւորքս հայր Սիմեոն եւ այլ միաբանքս փոխարէն հատուցին ինձ: ժ̅ր̅: աւր ժամ: ժ: աւր ինձ: գ: կուԹէլին: բ: Կիւրիկէի: ա: Հասանա: բ: Աիխաթունին:

[2] Ես Թագուհի զուգակից Շարափշահին ետու

*Թագուհի տայ կուղպակս երկուս[1], և յետոյ ուրեմն յամի 1262 յաւելու և զհայրենիս իւր զՆորս[2]։ Առ Նոքօք տէր տեղւոյն կոչի Գրիգոր Մագիստրոս որդի Ապուղամրի յամի 1233, որպէս ցուցանէ այս արձան.*

***Ի Թուիս ՈՁԲ** շնորհիւն Քրիստոսի ի տէրութեան տեղւոյս Գրիգորի Մագիստրոսի որդւոյ Ապուղամրի եւ յառաջնորդութեանս Հաւր Սիմէոնի ես Սարգիս Ծմակին աւագերէց որդի Գրիգոր քահանայի ետու զիմ գանձագին հայրենիք այգին զՇնջանկի զներքի դեհն իւր ծաղկոցովն իւր չորեսին ափնեբովն ի սուրբ Մայրս լուսոյ եւ սորա փոխարէնս հատուցին յամենայն ամի ութ աւր յանուն իմ պատարագել զՔրիստոս. եւ այլ ետու զՔարգզեմա տներն զի ուր ինձ վախճան լինի գիշերապաշտաւն եւ մատաղ առնեն. կատարիչքն եւ հաստատուն պահողքն աւրհնեսցին ի Քրիստոսէ Աստուծոյ.*

*Միւս ևս Ապուղամր որդի Մագիստրոսի և Թոռն Վահրամայ իշխանի՝ յամս 1261–2, երկիցս արձանագրէ, գնեալ 'ի Տիգրանանց զկաղղուց կէսն, և նուիրեալ վանացն, և երկոքին ևս արձանքն Թերատ են մնացեալ[3]։ Մի 'ի յետին արձանագրողաց է Գարեգոյն երէց որդի Մանգիկ երիցու, յամի 1262, որ նուիրէ վանացն՝ ուր գերեզմանք տոհմին էին, զՆորադրբոյրիկ գիւղ իւր գանձագին, և գրեանս ինչ.*

***ՉԺԱ.** ի վերադիտողութեան մայրաքաղաքիս Անու Տէր Սարգսի տեառն տեղւոյս շնորհիւն Աստուծոյ ես Գարեգոյն երէց որդի Մանգիկ իրիցու եւ ամուսին իմ Մարեամ միաբանեցաք ի սուրբ Աստուածածինս եւ ետու զիմ գանձագին գեղն զՆորադըրյրիկ իւր ամենայն անդաստանաւքն որ բնական լեալ է. մի տաւնական մակաղաթ մի աւետարան ոսկէտուփ իմ գանձով գնած վասն յերկար կենդանութեան պատրոնաց իմոց եւ յիշատակ ծնողաց Մանկանն եւ Թաձերոյն ✠ Եւ հայր Աբրահամ եւ Յուսէփ փակակալ եւ այլ սուրբ եղբայրքս փոխարէն հատուցին ի տաւնի Քառասնիցն զ̅ աւր պատարագ յամենայն ամի բ̅. Գարեգոյնին բ̅. Մարեմա ա̅. Մանկանն ա̅. Թաձերուն. արդ էթէ ոք զմեր պատարագն խափանէ կամ զմեր աւետարանն կամ զտաւնականն ի սուրբ Աստուածածնէս ի մեր գերեզմանէս հանէ յերից*

խաչ մեծածախ եւ աւետարան։ Սառըճփողոցին կողպակի վէր ի Շիրակուանին զմարգն որ ճլուտ կոչի. փոխարէն հատուց ինձ զ̅ աւր պատարագ. Ե ինձ ա̅ աւրն Մամուզին։

1 Ես Թաիկ Թագուհի դուստր Շարափշահի ետու երկու կուղպակ յիմ կուղպականոյն որ ի Նալպնդնոցին. եւ Առաքել եւ Հայր Սիմեոն եւ այլ միաբանքըս փոխարէն հատուցին ինձ. ը̅. աւր պատարագ. կատարիչք գրոյս աւրհնեալ եղիցին յԱստուծոյ։

2 Շնորհիւն Աստուծոյ ես Թաիկս դուստր Շարապշահին ետու զիմ գանձագին հայրէնիքն զՆորսն ի մեր ուխտս ի Բգնայրս ի սուրբ Աստուածածինս ✠ եւ հայր Աբրահամ եւ այլ միաբանեալ սուրբ եղբայրքս փոխարէն հատուցին յամենայն ամի. Ժ. աւր պատարագ. ը̅. աւրն ինձ առնեն Թաիկանս եւ բ̅. աւրն Գրիգորու ✠ Արդ որք կատարեն եւ հաստատ պահեն աւրհնեալ եղիցին յԱստուծոյ հաստատ է ամենայն անդաստանաւքն հողովն եւ ջրովն մինչ ի գալուստ Որդոյն Աստուծոյ։

3 ՉԺ կամաւն Աստուծոյ ես Ապուղամր որդի Մաքիստրոսի որ գնեցի զկէս կաղղուցն ի Տիգրանանց եւ ետու ի սուրբ Աստուածածինս ի մեր սուրբ ուխտս որ զփոխարէնն.....

ՉԺԱ. կամաւն Աստուծոյ ես Ապուղամր որդի Մաքիստրոսի Թոռն Վարհամ իշխանին վասն ի Քրիստոս յուսոյն ետու զիմ գանձագին հայրենիքն զկաղղուց կէսն իւր հողովն ու ջրովն ի սուրբ Աստուածամայրս ի մեր սուրբ ուխտս որ մաւտ է։...

սուրբ ժողովոցն նզովեալ եղիցի հոգով եւ մարմնով եւ որք հաստատ պահեն աւրհնեալ եղիցին յԱստուծոյ. ամէն։ ԶՍիմեւոն գրիչ յիշեցէք աղաչեմ։

Առ նովին ժամանակաւ Կոստեր Ծմակեցի ութ հարիւր արծաթոյ վերստին գնեալ զՊիչարենց հիւրատունն դարձուցանէ 'ի վանս Բագնայրի. բայց Թերակատար մնայ արձանագիրն. որ է այս.

Կամաւն Աստուծոյ ես Կոստերս Ծմակեցի ապաւինեցայ ի սուրբ Աստուածածինս զհիւրատունն որ Պիչարենց կոչի որ ծախել էին վանեցիքն ես դարձուցի ի վանքս եւ ետու գին։ պ̅ ։ սպ̅ ։ հայրս եւ վարդապետքս եւ այլ եղբարքս փոխարէն հատուցին ինձ ի տարին. բ̅. ա(ւր)... մարդ էթէ որ գյիշատակս.....

Այլ եւ արձանագիրք Բագնայրի տեսցին 'ի ստորեւ[1]։ Արտաքոյ քայքայեալ պարսպաց վանացն, այլ մերձ նմին՝ կան երկու եւս մատրունք հուպ յիրար, յորոց մեծագոյնն վեցանկիւն կամ վեցակամար և գմբեթաւոր, և 'ի բարաւորի դրանն Թուական 1223, և սկիզբն արձանագրութեան միայն. այսպէս.

Ի փառս ամենասուրբ Երրորդութեան Հաւր եւ Որդոյ եւ Հոգոյն սրբոյ. Թուա. ՈՀԲ։

1 ՈԾ Ես Մխիթար որդի Դըւալին ետու ի սուրբ ուխտս Բագնայր զիմ աշխատո.... ի սուրբ Առաքելոց զուկակին եւ այլ եղբարքս փոխարէն հատուցին ի տարին բ̅ աւր պատարագ ինձ Մխիթարա եւ մին աւր ամուս.... կատարիչք գրոյս աւրհնեսցին յԱստուծոյ։

Ես Խաչոտս ծառայ Քրիստոսի ետու ի սուրբ յԱստուածածինս զիմ զգանձագին զտունն մաւտ ի յԱպուղամրենց սուրբ Գրիգոր եւ սկի արծաթի եւ սոքա փոխարէն հատուցին ինձ բ̅ աւր պատարագ ամենայն ամի անխափան կատարիչք գ.... հոգեւոր տեառն Գրիգորի եւ յառաջնորդութեան հաւր Սիմէոնի ես Պաւղոս երէց ... ծաղկոցն որ յԱշնակ հնծանովն գեղին դեհն. եւ եղբարքս ետուն ի տարին ժ̅ աւր... դ̅ իմ հաւրն Ղազարա բ̅ ամուսնոյ իմոյ Տիրանցին. կատարիչքն......

ՈԾԵ Կամաւ բարերարին Աստուծոյ ես Գիշուկս որդի Գրիգորո միաբանեցա սուրբ ուխտիս եւ ընծաեցի։ բ̅։ արտ ի սուրբ Աստուածածինս եւ սոքա հայր Սիմեւոն վարդապետս եւ այլ միաբանքս փոխարէն հատուցին ինծ ի տարին գ̅ աւր պատարագ։ ա̅։ ինծ։ ա̅։ իմ ծնողացն։ ա̅։ իմ եղբարցն որ հաստատուն պահեն աւրհնին յԱստուծոյ ፡ ա̅ ፡ արտ ի տափիս ፡ ա̅ ፡ ի Մաննեխուտին։

Կամաւն Աստուծոյ ես Սիմեոն երեց եւ որդի իմ Թաթուլ միաբանեցաք Բագնայրի սուրբ Աստուածածնիս եւ տվաք....

ՈԿ Ի յամս աստուածապաստիւ տեառն Սարգսի որդոյ Ապիրատին եւ ի յառաջնորդութեան .... (*կրով ծեփեալ*) ես Արտաշիր Աւշականոյ ռայիս ետու զիմ գանձագին այգին որ Աշուտոնց կոչի ի սուրբ Աստուածածինս եւ պարտին սպասաւորք սորա ի տարին ը̅։ աւր պատարագ։ գ̅։ Արտաշրին։ բ̅։ Աքասա։ բ̅։ Սսին։ ա̅։ Գնտուտին.

Կամաւ բարերարին Աստուծոյ ես Վարդառոյծս եւ Աշակ եւ Խորէն միաբանեցաք ի սուրբ ուխտս Բագնայրս ի ձեռն հաւր Սիմեւոնի տվաք զՎարդենացնորքն ի սուրբ Աստուածածինս եւ խոստացան սպասաւորք սորա ի տարին. ժբ̅. աւր պատարագ. դ̅. Վարդառոյծին. դ̅։ Աշակա. դ̅. Խորէնա որ խաբանեն մեր մեղացն պարտական է առաջի Աստուծոյ։

Ես Բախտիարեան միաբանեցա սուրբ Աստուածածնիս եւ ետու զիմ գանձագին զայգին ի Բագրանի որ կոչի Տափկենց եւ սպասաւորքս հատուցին ինծ. դ̅. աւր պատարագ անխափան... Աստուածածնիս գնեցի զՇահկանն զհողն որ յԱգրկին եւ ետու ի սուրբ ուխտս յիշատակ հոգո իմո ի յԱռինջ զսեփական այգին որ ի բազում ժամանակաց աւտարացեալ էր վերստին հանդերձ միաբանաւքս վերստին ի սուրբ ուխտս։

Ես Սարգիս ետու զիմ այգին որ ի Մարմետ ի վերայ Երասխա ի սուրբ ուխտս յանուն իմ պատարագի Քրիստոս։ գ̅։ աւր։

Ես Սարկաւագս ետու զիմ Ջիթահնաց կէս ակն որ ի Կարուց դրանն յանուն իմ պատարագի Քրիստոս։ գ̅։ աւր.

Ես Գոհարիկս ետու զիմ տներն ի սուրբ Աստուածածինս յանուն իմ պատարագի Քրիստոս։

ի Նախագրեալ յիսնաթիւ արձանագիրսդ հազիւ երեք կամ չորք վանահարք յիշին. և են յամս,

1042 Ստեփանոս.

1209 — 1242 Սիմէոն, որ յաճախ յիշի յարձանս. 'ի սորա ժամանակի երևին և Տէր Քրիստափոր և Գամաղիէլ վարդապետք յիշեալք յարձանսն.

1262 — 6 Աբրահամ, առ որով և Յովսէփ փակակալ, բազում անգամ յիշեալք։

Յառաջին կէս ԺԱ դարու փայլէր իմաստութեամբ 'ի Բագնայր՝ Մխիթար վարդապետ. զոր ընդ այլ գիտնական և հռչակաւոր վարդապետս՝ Պետրոս Գետադարձ կաթողիկոս ընդ իւր տարաւ 'ի Կոստանդնուպօլիս։

43. Արջոյ-Առիճ գիւղ, ռամկօրէն Աչաձա, է 'ի հարաւոյ Բագնայրի իբր կէս փարսախաւ հեռի, 'ի բարձրանիստ վայրի, յարևելեան ստորոտս Աչաձա լերին, որ յիւր անուն կոչի կամ ինքն յանուն լերինն. փոքր և սակաւաբնակ։ Թէպէտ անյիշատակ 'ի գիրս, այլ 'ի մնացուածոյ հոյակապ եկեղեցւոյն և յարձանացն՝ վկայի եղեալ բարգաւաճ մենաստան իշխանաչէն. բայց զի կիսակործան է և քարինքն անկեալ բազում մասամբ, ոչ չինողն յայտնի և ոչ ժամանակ շինութեանն, և մնացեալ Թուաւոր արձանագիրքն համօրէն ԺԳ դարու են։ Եկեղեցին սակաւ ինչ փոքր է քան զԲագնայրին, և նման նմին յերկուս բաժանեալ՝ 'ի տաճար և 'ի ժամատուն. նուազ է քան զնա և ըստ չքեղութեան. ժամատունն կամարակապ է անսիւն. երկուստեք խորանի տաճարին կան վայելուչ մատրունք փոքրունք կամ աւանդատունք գմբեթայարկք։ Այլ այս ամենայն կիսափուլ, 'ի 1844 ամէ և այսր, ըստ ասելոյ տեղացեաց, որով և չափք և հնագոյնք յարձանացն անհետացեալք. բայց միան ինչ ինչ 'ի ժամատանն, յորոց ստուգի Ս. Աստուածածին կոչիլ եկեղեցւոյն, և միոյ 'ի մատրանցն Ս. Լուսաւորիչ։ Յետին Թուական արձանացն է 1289 ամի, իսկ առաջին 'ի 1207, և է Պարսամոյ ուլխսի Օշականայ, որոյ գոյ և 'ի Բագնայր արձանագիր, և աստ տայ նուէրս 'ի յիշատակ եղբօր իւրոյ Խուրտի, խանգարեալ արձանաւս.

Թվ. ՈԾԶ.. (Ողորմ)ութեամբն Աստուծոյ ես Պարսամաւ ծառա Քրիստոսի որդի Հասանա... միաբանեցա սուրբ ուխտիս եւ ետու զիմ հայրենի ա... կոչի վասն յիշատակի եղբաւրն իմոյ Խուրտ... սպասաւորք սուրբ ուխտիս փոխարէն հատ... զտաւնին զեկեղեցիս զողջ անխափան... Թին եւ կէսն Խուրտին որք հաստատուն... յրկան հեզի եւ հանդարտի...

Ես Թորոսոնց Մխիթար ետու զիմ տունն եւ ետուն ինձ. բ̅. աւր պատարագ։

Ես Յոհաննէս Թադէոսի որդիս ետու զիմ ջաղացն որ ի Գլիձորին զձախ աղացն. հատուցին ինձ պատարագ։ ե̅։

Ես Յոհաննէս որդի Առաքելին ետու զիմ կէս ակն ջաղացն ի Գլիձորին որ կոչի Հատաւրճնիկ. յանուն իմ պատարագի Քրիստոս. բ̅։

Ես Առիւծս ետու զիմ տուն ի սուրբ ուխտս որ ընդդէմ Քահանեն‍ց եկեղեցոյն. պատարագի ինձ Քրիստոս աւր. ա̅։

Ես վարդաշահս Աշնակեցի ետու զիմ հայրենի այգին ի սուրբ ուխտս հատուց ինձ։ բ։ պատարագ։

Ես Աւետիս եւ Հազարդեղս տուաք զՈւղտանատին կէսն ի սուրբ ուխտս. առնեն ժամ ի տարին։ բ։ աւր։ ա։ Աւետիցն։ ա։ Հազարդեղին. այգին ի Թամիր։

Ես Պետրոս որդի Պաւղոսոյ ետու զիմ հայրենի այգին ի յԱւշականն մաւտ ի Վարդեանց ի սուրբ Աստուածածինս ի յառաջնորդութեան հայր... հատուցին ի տարին. զ̅. աւր պատարագ. ա։ ինձ։ ա. Ասուրաստանա։ ա։ լմ հաւրն։ ա։ Հարկեւորին։ ա։ Քոյրկանն։ ա։ Յայսմկանն։

ՈԿԴ ի յամս աստուածապատիւ հոգեւոր Տեառն Գրիգորոյ որդոյ Ապուղամրի ես Յոհաննէս քահանայ որդի Կոստանդնի Հոռմեանց գնեցի... ի կէսն ի տէր Գրիգորոյ որդոյ Ապուղամրի եւ ետու ի սուրբ Աստուածածինս եւ սպասաւորք սուրբ ուխտիս փոխարէն ինձ հատուցին յամէն ամի խ̅. աւր պատարագ. ի̅. ինձ Յոհանիսի։ ե̅։ Սիսվարդին. բ̅. Կոստանդի. . (Խո)ցադեղին. բ̅. Միխէլա. գ̅. Խաչերեսին բ̅.. Կատարին. ա̅. Տալիթիա տիկնոջն կրկնոյզաւտկին ի ժամն. կատարիչք գրոյս աւրհնեսցին յԱստուծոյ. եւ եթէ ոք զյիշատակս մեր խափանէ կամ յաւագաց կամ յառաջնորդաց մարդն այն նզովի յԱստուծոյ եւ ամենայն սրբոց եւ մեր մեղացս պարտական եղիցի առաջի Աստուծոյ։

ՈՋԲ. Կամաւք մարդասիրին Աստուծոյ ես վարհամ որդի Մխիթարա Թոռն Աւէտեացն Չէչկանց եւ զիւգակից իմ Փառանցամս միաբանեցաք սուրբ Մաւր լուսոյ. ետու զիմ գանձագին կուղպակն ի փողոցկտերն որ ի Թորոսոնց կուղպակին վերա է եւ զայն տունն որ Սեւքթենց հիմնակից է եւ ի վերայն կուղպակն իմ. Եւ սոքա հայր Սիմէոն եւ միաբանքս փոխարէնս հատուցին մեզ յամենայն ամի տաւնել ժ̅բ̅ աւր պատարագ զուԹն վահրամա ե-

*Սակաւ ամօք զկնի (1213) Յովհաննէս քահանայ՝ որդի Հոռմեանց Կոստանդին երիցու, տայ ընծայ, որպէս և 'ի Բ՚՚գնայր տեսաւ. բայց անուանք տեղեացն կամ տեսակք ընծայից ջնջեալ են յարձանն.*

***Ի ԹՎ. ՈԿԲ** Շնորհիւ բարերարին Աստուծոյ ես Յոհաննէս քահանայ որդի Հոռմեանց Կոստանդի քահանայի միաբանեցա սուրբ ուխտիս եւ գանձագին արարի... եւ ընծայեցի յԱրջու Առճի ի սուրբ Աստուածածինս ի ձեռն տէր Գրիգորի որդոյ Ապուղամրի եւ փոխարէն ինձ տուեցին յամէն ամի : խ : աւր ժամ անխափան : ի : ինձ : ե : Սիավարդին : դ : Խաչերեսին : ե : իմ ծնողաց : բ : Խոցադեղին : գ : Միխայլի : ա : Կատային որ հաստատ պահեն աւրհնին յԱստուծոյ եւ որ խափանեն նզովին ամէն :*

*— Այլ արձանագիր ծանուցանէ զի տէր կամ ժառանգորդ վանացն՝ էր Գրիգոր Ապուղամրենց արքեպիսկոպոսն Անւոյ, որով գուշակի զի և Նորին նախահարք էին կանգնողքն. և որպէս 'ի Բագնայրի՝ աստ ևս սահմանէ քառասունս պատարագաց վասն առաջնորդի ուխտին և միաբանիցն, և Թերևս 'ի Նմին իսկ 1215 ամի.*

*Հրամանաւ Տեառն Գրիգ(որի արքեպ)իսկոպոսի որ էր ժառանգորդ սուրբ ուխտիս եւ բնակիչք վանացս հայր Գրի... վարդապետս Գերսամս եւ եղբարքս սահման եդաք յիշատակ ննջեց... մինչեւ ցվերջինսն որք միաբան ի սուրբ յուխտս հանգուցեալ են պատարագել զՔրիստոս... ալ յայտնութեան ղպահքն : ը : աւր անխափան զամենայն եկեղեցիքս եւ միա... անին որ ի Քրիստոս փոխի հաւրն եւ վարդապետին : դ : խ : եւ իրիցոյն եւ բնաւրեքն*

րեքն փառանցին զմինն Մամքանին. արդ եթէ ոք յառաջնորդաց տեղոյս զգրեալս խափանէ կամ ծախէ մեր մեղացն պատասխան տացեն յատենին Քրիստոսի։

**ՈԾՁ.** Ողորմութեամբն Աստուծոյ ես Աւագ տիկին դուստր Գորգկանն միաբանեցա սուրբ ուխտիս եւ զիմ զհայրենի կէս ակն ձիթահանքն որ ի յիմ ծնողացն ի պսակի ներքեւ ինձ բաժինք էր հասել ետու ի սուրբ Աստուածածինս. եւ հայր Սիմէոն միաբանաւքս փոխարէնս հատուցին մեզ յամենայն ամի հինգ աւր պատարագ զերեք աւրն Աւագ տիկնա եւ զմինն Գորգկանն եւ զմէկն Թաճերոյն. եթէ ոք զյիշատակս մեր խափանէ մեր մեղացն համարս տացեն առաջի Քրիստոսի։ Մանասէ գրիչ։

Ես Հասան Կողբցի որդի Մխիթարա բռախին թոռն Համէլին ապաւինեցայ ի սուրբ Աստուածածինս եւ յայլ սուրբքս եւ վասն փրկութեան հոգոց մերոց ետու զմեր գանձագին հայրենիք ակինն[1] զկէս դանկն ի սուրբ յուխտս[2] եւ լերամբքն եւ սոքա փոխարէնս հատուցին ի տարին սասն պատարագ զութ աւրն Համէլի իմ եղբաւրն եւ զերկուսն կատաին. կատարիչք գրիս աւրհնին յԱստուծոյ։

**ՈՂԱ** կամաւ անեղին Աստուծոյ ես Մանգըռավսագ (*Մանգռուսագ*) որդի Խամարտաւլին մշեցի միայբանեցա սուրբ Աստուածածնիս եւ ետու ընծայ ճ դահեկան. հայր Սիմեւ.... վարդապետքս եւ այլ միայբանքս փոխարէն հատուցին ինձ ի տարին ի տաւնի սուրբ Սարգսի։ բ։ աւր պատարագել յանուն իմ զՔրիստոս։

Շնորհիւն Քրիստոսի ես Սարգիս որդի Խաչոտին միաբանեցա սուրբ ուխտիս ետու ձիթահնաց աղցաղի քար եւ յամէն ամի։ ե։ լիտր ձէթ. իսկ հայր Աբրահամ եւ այլ միաբանքս փոխարէն հատուցին ինձ ի տարին : բ : աւր պատարագ. կատարիչքն աւրհնեսցին եւ որ հակառակ կան...

Կամաւն Աստուծոյ ես Խաչտուր ետու զՄուլուքին հողն որ Թեղենեաց այգոյն ի հետ է ի Բգնայր ի սուրբ Աստուածածինս եւ հայր Աբրահամ եւ եղբարքս փոխարէն հատուցին։ բ։ աւր ժամ։ ա։ ինձ։ ա։ Տիկնոջն. որ հաստատուն պահեն աւրհնին յԱստուծոյ :

**Ձ..** Ես Շահեր Կիրակոս միաբանեցա ի Բգների ետու զիմ գանձագին հողերն.. ափնակից Ներքի դեհն...

1 Յօրինակին ակինն :

2 Թուի ստանօր պակասել բանի :

*բեղաւին ։ գ ։ խ ։ եւ աշխարհական հաբեղաւին եւ մանգաննն ։ բ ։ խ ։ եւ ամե֊ նայն եղբայր աւր ա ժամ արասցէ եւ որ պատարագող չէ ժ կանոն աղաւթս արասցէ . Որք հաստատուն պահեն զգրեալս աւրհնին եւ մասնակից եղիցին սուրբ պատարագացս ։*

*Վերջին արձան յիշատակի, 1289 ամին, է Որդեկայ ե֊ րիցու Կողբայ, որ անդ զայգին Պառաւենց կոչեցեալ յա֊ նուն հաւուն իւրոյ քահանայի, նուիրէ Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ վանացս, գրելով այսպէս.*

*Շնորհիւն Քրիստոսի ես Որդեկ երէց Կողբցի որդի Դաւթի թոռն Պառաւ իրիցոյ միաբանեցա սուրբ ուխտիս Արջու Առճոյ եւ ետու ընծա ի սուրբ Լուսաւորիչս Գրիգոր զիմ հայրենի այգին որ ի Կողբ է որ Պառաւենց կոչի եւ զներքն տունն որ ես շինել եմ եւ փոխարէն հատուցին մեզ հայր Անդրէաս եւ այլ սպասաւորք յամենայն ամի պատարագ ի տաւնի Աւետեց Աստուածածնին ։ ը ։ աւր ։ բ . ի . . իմ մաւրն Թագուհէ ա կենակցի իմ Մամրսթէ ։ բ . ազգաց իմ յորոմնու (?) բ ինձ Որդեկիս . եւ որք զյիշատակս մեր հաստատ պա աւրհնին յԱստուծոյ եւ որք խափանեն որոշին ի Քրիստոսէ ։* **Զ ։ Լ ։ Ը ։ Իմ** *բազում մեղաց թողութիւն արարէք ։*

*Այլ եւս արձանքն ինչ նշանակեսցին 'ի ստորեւ[1] ։ — Զկալուած վանացն որ յայգիս Մրենոյ և Օշականայ ապահարկ արարեալ է Սահմադին Պատրոն Անոյ յամի 1273[2] ։ Երեք միայն վանահարք յիշին յարձանքդ, Վարդան, Գրիգոր' առ Գրիգորով արքեպիսկոպոսաւ, որ է յառաջին քառորդի ԺԳ դարու, և Անդրէաս յամին 1289 ։*

*44. Մաղասբերդ. Երկու մղոնաւ հեռի կայ յարեւելից Արջոյ Առիճոյ և նոյնքան 'ի Հր. քաղաքին Անւոյ, յարե֊*

1 կամաւ բարերարին Աստուծոյ մեք Առիւծս եւ Շուշիկս միաբանեցաք ի սուրբ ուխտս Արջու Առճի եւ տուաք զմեր գանձագին տունն որ ի սուրբ... ի կալին . եւ հայր Վարդան եւ այլ միաբանքն հատուցին մեզ զ աւր ժամ . . . Շուշկան ։ ա ։ Ազզին ։ ա ։ Ասթերին ։ ա ։ Տիկնոչն ։ ա ։ Կարապետին . կատարողքն աւրհնեալ եղիցին յԱստուծոյ . կամաւքն Աստուծոյ ես հայր Վարդան եւ այլ միաբանք սահմանեցաք զԱստուածածին խոր . . . . . . հասարակաց լինի ժամն որ խափան . . . . . .

Ես Պարոնիկս միաբանեցա սուրբ ուխտիս Արջու Առճոյ եւ եստու զիմ գանձագին հողերն զԳերմըստու սնափնիքն առաջի եղեզն Գինեկոյ ճանապարհըն միջի եղէզն . . . .

Ցանուն Աստուծոյ հայրենիք որ կա վանիցս այս է . Բաչխին բուրքն եւ ախոռն եւ զ պատարագ բ աւր Լոյսոտին եւ բ խաչոտին եւ բ ծնողաց նոցա . փոլկաւրարոց կուղպակն եւ տունն ի ներքեւն . զ աւր պատարագ գ աւր Բունկանն եւ գ Մխիթարչին . Աբդըլմսեհէ տունն դ աւր ժամ Ցոհաննիսի տունն աւր գ ժամ բ իւրեանն եւ ա իւր հաւրն . Սարաճփողոցին կուղպակն դ ժամ բ աւր Շնահուորկանն եւ բ Գէորգա ։ եգեդիմին բ տունն եւ տան տեղ մի գ աւր ժամ գանգատին եւ տակառքն բ աւր ժամ Պետրոսոյ . Ես Լիսոտս այլ ետու գ արտ եւ ետուն ինձ գ ժամ . Գրիգոր որդի Ապահերժի եդտուն վանիցս մաւտ ի սուրբ կաթողիկէ ի հիւսիս կոյս եւ առ ժամ ի տարին ա իւր հաւրն ա Մարեմկանն ա Եղբայրկանն եւ ա իւրն անխափան ։

✠ Ես Առիւծս որդի Մխիթարա ճոնին ետու զիմ հայրենի բ արտերն որ ի յա . . քիակս է ի սուրբ ուխտս եւ փոխարէն հատուցին սուրբ եղբարքս բ աւր պատարագ ի տաւնի Հռիփսիմեանց յամէն ամի ա ինձ ա Նուրսթէ . կատարիչքն աւրհնին ի Քրիստոսէ ։

Ես Հազարդեղս միայբանեցայ սուրբ ուխտիս եւ ետու ընծայ տուն ա . եւ սպասաւորք սորայ հատուցին ինձ բ պատարագ ի տաւնի սուրբ Գէորգին յիշեցէ Քրիստոս Աստուած զՄխիթար զԹանկիկն եւ զՍիմէոն եւ զՓոփխիկն զԱզիզն որք միաբէն եւ ընծայաբերք եղեն զՆորհատն զԳոհարն զՏիկնացն . . .

[2] Ցիչէ այս յարձանագիրս Մրենոյ ։

մոագոյնն եզր ափանց Ախուրենի, ուր գետս այս մեծ
իմն եռանկիւն գործէ, յարեւլից հիւսիսոյ խաղալով յա֊
րեւմուտս և ապա դառնալով յՆ. Հր. և պատէ յերից
կողմանց զքարակտուր մի զառ 'ի վեր սեպացեալ ընդ
արեւելս և խոնարհեալ հաւասարեալ դաշտին ընդ ա֊
րեւմուտս: Մի է սա 'ի յաւէտ զարմանալի շինից Շիրա֊
կայ. և թէ ոչ յոլովութեամբ շինուածոցն՝ այլ բազում
մասամբք նման Անւոյ, և յառաջ իսկ քան զայն մեծաւ
խնամով յարդարեալ յերեսս քարաբլրին և 'ի ներքս
կամ 'ի սիրտ նորին. և թէպէտ այժմ աւերակ և ամայի,
այլ հաստակառոյց կերտուածովն և աչաւորահայեաց
դրիւքն 'ի վերայ անդնդախոր ձորագետոյն և լայնանիստ
դաշտին, յոյժ վսեմակերպ երևի, և յայտնէ զքաջայան֊
դուգն և խորատես միտս ընտրողի տեղւոյն. որ իբր չո֊
րեք հարիւր ամօք յառաջ քան զԱնի՝ կամեցաւ նման֊
օրինակ իմն ամրոց կանգնել անդ 'ի պատսպարութիւն՝
յերեսաց Պարսից: Եւ էր նա, ըստ Պատմութեան Խաչին
Հացիւնեաց, կողմնակալ արեւելից կարգեալ 'ի Մորկայ
կայսերէ, յելս Զ դարու. « Մախազ ոմն յաշխարհէն
» Հայոց, այր չար և անօրէն. և նա շինեալ զամրոցն առ
» ափն Ախուրեան գետոյ, և կոչեաց զնա Մախազի֊
» բերդ ». որ ծեքեալ 'ի բերանս փոխեցաւ 'ի Մաղասա֊
բերդ: Զայս յիշատակ ընդարձակէ Զաքարիա Սարկ֊
աւագ Պատմիչ ԺԷ դարու, ճշգրիտ նկարագրութեամբ
դրիցն, (Բ. Թ). « Թագաւորն Յունաց Մօրիկ, էր ազգաւ
» Հայ, յԱյրարատ գաւառէ, յՕշական գեղջէ... Սա ա֊
» ռաքեաց 'ի հայրենի երկիրն իւր 'ի Հայս՝ այր ոմն Հայ
» ազգաւ, Մաղաս անուն, շինել քաղաք մի յաշխարհին
» Հայոց՝ յանուն իւր: Եւ նա երթեալ գտանէ տեղի մի
» 'ի Շիրակ գաւառի, մերձ 'ի յԱնի, 'ի հարաւակողմն,
» 'ի վերայ Ախուրեան գետոյ, 'ի մէջ երկուց լերանցն,
» 'ի տափարակ տեղի, որ երեք կողմն բարձր քարափք
» էին, և յարեւմտեան կողմն փոքր ինչ դիւր և սակաւ
» ինչ զառ 'ի վայր. և հաւանեալ տեղւոյն՝ պարսպեալ
» զայն, և կախեալ դուռն՝ անուանեաց Մաղասաբերդ:
» Եւ մինչ դոյր իշխանութիւն աշխարհիս 'ի ձեռն քրիս֊
» տոնէից, տիրեցին քրիստոնեայք Մաղաս բերդին. և
» յորժամ անկաւ երկիրս 'ի ձեռն Պարսից, տիրեցին և
» Մաղասայ բերդին, մինչև յաւուրս մեր: Եւ 'ի մերումս
» ժամանակի տաճիկ ոմն՝ դաւանութեամբն Օսմանցւոց՝
» կեղծաւորեալ 'ի կերպ Կարմրագլխոց, զգեցաւ մորթ,
» և անուանեաց զինքն օրինապահ, որ է Աւդալ կամ
» Դարւիչ. երբեմն երթայր 'ի Կարբի, և երբեմն գնայր
» 'ի Մաղասաբերդ. և այսպէս երթևեկութեամբ ծա֊
» նօթացաւ սուլթանին Մաղասայ բերդին. և հաւա֊
» տարմութիւն ցուցեալ, մինչ զի զբանալի բերդին հա֊
» ւատացին տալ նմա: Եւ եղև գնալ սուլթանին յԵ֊
» րեւան, որ էր ինքն ազգաւ Բօղչալու, և եթող 'ի բերդն
» զորդին իւր: Իսկ դաւրիչն ևս էր 'ի բերդին. և յա֊
» ւուր միում առաքեաց առ փաշայն Կարուց՝ և զեկոյց
» նմա, թէ յայս նիչ գիշերի եկայք դուք 'ի դուռն բեր֊
» դիս, և ես տաց զսա 'ի ձեռս ձեր: Յորժամ լուան զայս
» Օսմանցիքն՝ խնդացին. և պատրաստեցան արք երկե֊
» րիւր, և 'ի պայմանեալ գիշերին կազմեցին զինքեանս,
» և ելեալ գնացին փութագնաց երիվարօք մինչ 'ի բե֊
» րան ձորոյն. և իջեալ կապեցին զերիվարսն անդ, և
» ինքեանք հետիոտս ընթացան անմռունչ 'ի դուռն բեր֊
» դին: Իսկ... աւդալն կայր 'ի վերայ պարսպին և հայէր.
» և ետես զզօրս Օսմանցւոցն. և զի 'ի ձեռին ունէր ըզ֊
» բանալի բերդին, եբաց զդուռն՝ և եմոյծ զնոսա 'ի
» ներս, և կալան զորդի սուլթանին, և գերեցին զօրս
» 'ի նմա էին: Իսկ կին սուլթանին իբրև ետես՝ զի առին
» զբերդն, պատեաց զերեսն իւր փակեղամբ, և ընկէց
» զինքն 'ի բարձր քարանցն 'ի վայր, և մեռաւ. և այս֊
» պէս անկաւ քաղաքն 'ի ձեռս Օսմանցւոց մինչև ցայս֊
» օր: Եւ լուեալ զայս խանն Երևանայ, և կալեալ ըզ֊
» սուլթանն՝ եհան զմորթն 'ի տիկ, և ելից խոտով, և
» առաքեաց առ Շահն: Եւ ինքն առաքեաց զօրս առ կող֊
» մըն Կրստամնայ, և բերեալ բազում աւարս և գերիս
» թուով հարիւր և քառասուն: Այս եղև 'ի ՌՁԷ Թը֊
» ւին ». 1638:

Զարդիս, որպէս յիշեցաք, ամայի և աւերակ է բերդդ.
այլ տակաւին մեծաւ մասամբ կանգուն կան կրկին պա֊
րիսպքն որ յարեւմտից 'ի տափարակ կուսէ. արտաքինն
ցածուն է և ունի դուռն յաջմէ կողմանէ. ներքինն բարձր
յոյժ և երիւք կիսաբոլոր աշտարակօք. 'ի միջոց կրկին
պարսպացդ գետնափոր տեղիք են հատեալք 'ի քարա֊
ժեռի. նոյնպէս գետնափոր և սանդղաւոր քարահատ
ճանապարհ կամարակապ և ոլորտապտոյտ սկսեալ առ
դրան ներքնապարսպին տանի և հանէ 'ի գետափնն.
միւս ևս քարաշէն սանդուղք 'ի կողմանէ այլոյ դրան
հանեն յաշտարակսն. վասն բնական ամրութեան այլոց
կողմանց՝ պարիսպս ոչ ստուարս գործեալ է անդ, թէ
և այնոքիկ ևս քայքայեալ են: Ի բերդին նշմարին մնա֊
ցուածք քարաշէն տանց և ապարանից, բաղանիք մի և
քառակուսի ջրամբար մեծ: Ի վերայ դրանցն կան տաճ֊
կերէն արձանագիրք՝ որք չեն քննեալք և ծանօթացեալք.
իսկ 'ի քրիստոնէական նշանաց՝ ծանօթ միայն են աւե֊
րակք երից մատրանց փոքունց: — Պատմութիւն Զաքա֊
րիայ յայտ առնէ զի և ցվերջ ԺԷ դարուն չէր աւերեալ
և ամայացեալ տեղիդ, որում ոչ ոք յեւրոպէացի ու֊
ղևորաց եկեալ է 'ի քնին, բայց թերևս Ճեմելլի Իտա֊
լացի ուղևոր. զի այս թուի կոչեցեալն 'ի նմանէ բերդ
Արփասույի, որ և յետին բերդ էր Թուրքաց յայնմ կող֊
ման սահմանին Պարսից, ընդ որ էանց նա ի 26 մայիսի
1694 ամի. և ասէ զայն շինեալ յերից կողմանց յանմա֊
տոյց քարաբլրի, ունելով ոչ սակաւ բերդապահս, և
գեօղ 'ի ստորև, ուր վճարէին անցորդք զբաժն. և ոչ
կարի հեռի էր անտի կամուրջ, ընդ որ էանց 'ի հող
Պարսից[1]:

43. Սակաւուք հեռի 'ի Մաղասաբերդոյ, իբր մղոնաւ
և կիսով յարեւմտից հարաւոյ՝ կայ ամայի գեօղն Կարմիր

1 Passammo poscia per la Forte Arpasuy, ultima fortezza dei Turchi, posta talmente su d' una rocca, che da tre lati non ha bisogno di mura, ma solamente da quello per cui s' entra. V' è dentro buona guarnigione e fuori un villaggio, dove si paga un Ruplo, 10 quarto di ducato della moneta di Napoli, per lo passo di ciaschedun cavallo. — Gemelli.

քէնտ (գեօղ), յորում գոյ ակն ունել յիշատակ ինչ 'ի Բագրատունեաց ժամանակէ գտանել, այլ չէ ուրուք քննեալ կամ մեզ ծանուցեալ։

Ի հարաւոյ սորին՝ երկու մղոնաւ հեռի, և յարևելեան հարաւային ստորոտս Ալաձա լերին՝ կայ 'ի բարեդիր վայրի գիւղն Ալամաճ, այժմ Ալէմ կոչեցեալ և բնակեալ 'ի Պարսից։ Քաջ նշանաւոր է 'ի սմա եկեղեցին, մի 'ի հնագունից 'ի Հայս և յընդհանուրս, զի շինեալ է յամի Տեառն 636-7, որպէս ցուցանէ մեծատառ արձանագիրն բոլորեալ զճակատաւ շինուածոյն.

*Քսան եւ եւթնեմնոյ Հերակղի բարեպաշտ Թագաւորի Ներսեհի Շիրակա եւ Աշարունեաց տեառն եւ Թէոփիղոսի (Ա)շարունեաց եպիսկոպոս(ի) ես Գրիգոր եղուստր եւ Մարիամ իմ կին շինեցաք զսուրբ եկեղեցիս վասն մեր հոգւոց։*

Մականորական անուն Գրիգորիդ Թուի հռովմէականն, որ և առ Բիւզանդացի կայսերաց վարիւր, Illustris (պայծառ, չքեղ) պատուակոչումն, և յայտ է թէ մեծատուն և պերճ ոմն էր, զի շինեաց զեկեղեցին այն չափաւոր մեծութեամբ, քառաթև և գմբեթայարկ, յանուն Ս. Անանէի, որպէս ցուցանէ արձանագիր Սոփեայ Թագուհւոյ Վրաց՝ դստեր Աշոտոյ Ողորմածի, գրեալ 'ի վերոյ դրանն.

*Յանուն Աստուծոյ այս իմ գիր է Սոփէ.. շահնշահի Հաոց եւ Վրաց Թագուհո Թողել եմ զԱլամաճ չարյատս վասն իմ հոգոս եւ արեւոս եւ Շահընշահի հոգոն եւ Գագկա եւ իւր որդեացն արեւուն. Եթէ ոք հետ մեր յանդգնի եւ առնու ՅԺԸ իցն նզովեալ եղիցի եւ բաժինն ընդ Յուդայի մատնչի եւ ընդ Սիմոնի կախարդի եւ ընդ Գեհեզի բորոտի. եւ սուրբ Անանէ նմա ոսոխ։*

Համանման սմին կայ 'ի ստորև միւս այլ արձանագիր, սկզբնաւորեալ, բայց թերակատար թողեալ.

*Յանուն Աստուծոյ այս իմ ձեռնագիր է ✠ Յանուն Աստուծոյ այս իմ գիր է Սոփէ Հաոց եւ Վրաց Թագուհո Թողեալ եմ զԱլամանիս չարյատս վասն իմ ար*

Զարմանաց է զի 'ի նշանակեալ ժամանակէ շինութեան եկեղեցւոյն՝ ցվերջ կոյս Ժ դարու չիք յիշատակ կամ արձանագիր յեկեղեցւոջդ, և ոչ այլ յետ յիշատակին Սոփիայ Թագուհւոյ, և ոչ ուրեք 'ի գիրս գտանի անուն գեղջդ։

Ցարևմտից հարաւոյ դորին իբր փարսախաւ հեռի, և 'ի Հր. Ալաձայ լերին՝ կայ Տաշնիկ կամ Թաշնիկ ըստ արդևացս, տաճկաբնակ գիւղ, որոյ անուն հայկական ցուցանէ զշինութիւն և զբարգաւաճանս յերբեմն ժամանակի. այլ ոչ գիտեմ զինչ մնացուած կայցէ 'ի նմին։

Շուրջ սահմանք գիւղորայիցդ այժմ անշէնք են, բայց հարկ է թէ երբեմն շինախիտ էին, և թերևս 'ի սոյն սահմանս ոմանք 'ի գիւղից և յագարակաց յիշեցելոց յարձանս Բագնայրի, որպիսիք են Նորք, Գաղտա, Մաննախուռ, Ոււղտանիա, Վարդևանց՝ թերևս նոյն ընդ գըրեալն Վարդենցնորք կամ Վարդենացնորք, և ընթեռնլի Վարդենաց-նորք, զի և առանձինն՝ որպէս տեսանեմք՝ յիշին և Վարդեանց և Նորք։ Ընդ սոսին յիշատակելի է և Ջրăորիկ վանքն զոր Խաւռազ իշխան ետ 'ի կալուած Բգնայրի, ընդ որում և զՄղիադբերն զպահէզն[1]։

Նաև յեզերս Ախուրեան գետոյ, 'ի Մաղասբերդոյ և 'ի վայր մինչև 'ի սպառուածն Շիրակայ, ոչ նշանակին գիւղք շէնք, այլ սակաւ և աննշան տեղիք. որպէս, Պայտաւրքէնտ երկու փարսախաւ հեռի յարևելից Ալամանայ, և նոյնքան 'ի հարաւոյ Մաղասբերդի, հանդէպ Գըզըլգուլէ պահակատան արևելեան Շիրակայ։ Ի սորա հարաւոյ երկու մղոնաւ հեռի՝ Թուձիկ փոքր շէն, և նոյնքան հեռի 'ի հարաւոյ նորին Դուրուշ հանգրուան. և մերձ նմին ի հարաւոյ՝ Գարագուզէ հանգրուան։ Խոնարհագոյն ևս երկու փարսախաւ այլ հանգրուան, Միշաճ անուանեալ, որ արդ միակ տեղի մարդաբնակ երևի մերձագոյն յանկիւն միութեան Ախուրենի ընդ Տեկորոյ գետակին։

1 Տես յէջ 116։

46. Հովիտ Տեկորոյ. — Հարաւային մասն Արեւմըտեան Շիրակայ ընդ մէջ Ախուրենոյ, Երասխաձորոյ և Վանանդայ՝ հովիտ է գետոյ փոքու, որ այժմ յանուն Տեկոր գեղջ կոչի Տիկոր չայի, և գայ յարեւմտից՝ 'ի սահմանակցութենէ Վանանդայ, 'ի լեռնակողմանց. որպէս յիշէ զայս և հին արձանագիր մի համանուն գեղջն, և ասէ 'ի գարնայնոյ ցայուն անընդհատ հոսել, ընդունելով վտակ մի 'ի հիւսիսոյ Ալաձա լերանց։ Յայդմ սահմանի յարեւմտից կուսէ նշանակի Գարագալէ գիւղիկ. և մերձ 'ի խառնուրդսն 'ի գետակն Տեկորոյ՝ յանուն նորին համգրուան կամ գիւղիկ մի ևս։ — Ի գլուխ հովտին Տիկորոյ հուպ յիրեար են երեք հին և գեղեցկաշէն տեղիք, Ագարակ, Խծկօնք և Տեկոր։ Առաջինն և արեւմտագոյն՝ երկու մղոնաւ հեռի 'ի Տեկորոյ, առ խառնրդովք բազում վտակաց որ գետանան 'ի Տեկոր, Ագրակ կամ Էգրէկ կոչեցեալ յայժմուս, և Ագարակ 'ի հնումն, ունի եկեղեցի չափաւոր մեծութեամբ, խաչաձև, կանգուն կաթողիկէիւ. 'ի հիւսիսոյ կից ունելով այլ եկեղեցի քառակուսի, երկայն 15 Զափ, և լայն 5 1/2. այլ միայն որմունք սորա մնան երկուստեք, այլն ամենայն կործանեալ է։ Ոչ է յայտ շինող դոցին, այլ առ դրամբ չէն եկեղեցւոյն գրեալ կան արձանք. յորոց առաջինն յամի 1006, բայց թերատ է յառաջին տողսն և յանունն՝ որ թերևս էր Պահլաւունին Ապլղարիպ. Նոյնպէս և այլ արձանքն պակասաւորք և խանգարք են, զուցէ և առ տգիտութեան քարակոփին. և են ստորագրեալքդ[1]։ Յերկոսին երկար արձանսն յիշատակեալ եկեղեցի Ս. Կաթողիկէ, թուի սա իսկ և ոչ Անւոյ մայր եկեղեցին. իսկ հաստատող նուիրացն Աշոտ և վկայն Տէր Անանէ, հաւանօրէն են Աշոտ Գ. Ողորմած արքայ, և Անանիա կաթողիկոս, ապա ուրեմն յերկրորդում մասին Ժ դարու գրեալ։

47. Երկրորդ տեղին է Խծկօնք կամ Խցկունք ըստ նախնեաց, իսկ ըստ արդեացս Հինգ-Սուրբք որ և Պէշգիլիսէ ըստ Թուրքաց. իբր կէս մղոնաւ հեռի յարեւելից Ագարակայ և 'ի Հ. կամ 'ի ձախմէ գետոյն Տեկորոյ, ոչ գիւղ և ոչ շինանիստ, այլ տեղի անապատական մենաստանի. արդարև 'ի զարմանալի իմն ամայութեան, յափափոյս դժուարամատոյցս կառուցեալ, 'ի բարձրաբերձ քարափունս խորաձորոյ գետոյն, ուր ահեղախառն իմն կերպարանօք ժայռի բնութիւն 'ի կարկաջանս ուղխից և 'ի մարգս յուռթիս։ Զարմանալի և շէնքն. հինգ եկեղեցիք քարակերտք, երեքն կիցք յիրար՝ կամարօք և որմովք, և երկուքն սակաւ ինչ տարանջատք. զարմանալիք և գեղով, փայլմամբ դեղնորակ սրբատաշ վիմացն և վսեմական գմբեթօք, թէ ոչ և մեծութեամբ. և ևս զարմանալի և հաճելի՝ ամենևին անարատ և անաղարտ մնալովն յութ և կէս դարուց հետէ։ Բայց և այլազգ իմն զարմացաբեր և վարանեցուցիչ, յիշատակաւ կանգնողին, որ 'ի պատմութեան մերում և 'ի միտս ազգայնոց՝ դըժպըհի ումն երևութանայ, իբրև մատնիչ թագաւորութեան Բագրատունեաց և թեկնածու նմին, իշխանն Վեստ Սարգիս. սակայն և գովի նա 'ի պատմչաց՝ վասն մեծագործութեանցն, և առասաբար իմն կոչի « Շինող բերդից և վանորէից ». որ և իբր պսակ առաջնոցն ձեռակերտից, ըստ բանից Անեցւոյն, « Մեծապատիւ Վեստն Սարգիս՝ զկնի բազում շինուածոց, բերդից և եկեղեցեաց, զհրաշալի զվանս զԽծկաւնս շինեաց, պայծառ պսակաւ զարդարեալ զքաւարանն, որ է Ս. Սարգիս »։ Անուն տեղւոյն յօրինակս ինչ գրոցն Խցկունք կոչի, անշուշտ վասն միակեացն բնակարանաց, յորոց սակաւք երևին և ցարդ 'ի պարսպապատ քարափանն՝ յորում երեքին յարակից եկեղեցիքն են. և որոց առաջին և գըլխաւոր յիշեալն 'ի ժամանակագրէն՝ Ս. Սարգիս, արտաքուստ բոլորշի է, 'ի ներքուստ խաչաձև բոլորակ թևօք, 12 1/2 Զ. ընդ երկայնն, 11 ընդ լայն. չորք մատրունք են 'ի նոսին, երկուք կրկնայարկք առ խորանաւն և երկուք հանդէպ նոցին։ Ոչ սակաւ արձանագիրք են յարտաքին որմունսն, և հնագոյն 'ի նոսին յամի 1033, որ է զայս օրինակ.

Յանուն Աստուծոյ. ՆՁԲ թուականիս Հայոց Տեառն Պետրոսի Հայոց կաթողիկոսի եւ ի թագաւորութեան Սմբատայ շահանշահի որդւոյ Գագկա շահանշահի ժամանակի որ էր որդիացեալ եւ սիրելի ճորտ Սարգիս։ Գ̅։ ից թագաւորաց Հոռոմոց առեալ գ։ ից պատիւ անթիպատ պատրիկ վեստ

[1] ՆԾԵ ✠ յանուն Աստուծոյ ես Ապ. . . ն . . . . կ հեռթ ետու զՋրփողիս. . . . զմարգ զամէն շաղ իմ արտէս վ. . . . զաղունդ վըտո կաթաղիկէի խընգագին եւ տուել եմ Թադի Ոսկահանա եւ իւր զաւակացն եւ ինքտ ազ(ատ)եալ եմ յամէն չարէ վասն Սմպատա շահանշահի արեւուն եւ Ատրըներսեհի հոգւոյն. եւ պարտի։ ի։ աւր ժամ Ատրներսեհի. թէ ոք այս հրամանիս հակառ կա նզոված է.

Յանուն Աստուծոյ այս իմ գիր Անահոկիս որ տվել եմ ի Կիրակոսի կաղիս վասն իմ ոգոս զտունս իմ արեմ փորած ել զաւակաց ի...

Յանուն Աստուծոյ ես Գէորգ ետու զՋիթահանքս ի սուրբ կաթողիկէ եւ ի Գէորգ երեց. եւ պարտի տարին։ ի։ աւր... Եւ ես Աշոտ հաստատեցի եւ ես Տէր Անանէ վկա... արդ եթէ ոք հակառակ կա ի մեծաց կամ ի փոքունց։ յժր։ իցն . . . նզոված է բաժինն ընդ խաչահանուացն եղիցի.

Պակասի սկիզբն յետագայ արձանագրութեանս.

. . . . . . . . . . . այսոց եթէ ոք հակառակ կա ի մեծաց կամ զգիր եղծէ յժր իցն ապեակ է հոգով եւ մարմնով։

եւ դուկ արևեղից. արդ հրամանաւ սոցա կամ եղեւ եղբարց որդոցս Եղդու Ապլ Հասնա եւ Խատապա տալ զմեր արկեալ եգլին որ ի Գագկանս յեզերն Երասխա ի վանքս Տեկորո արեւշատութեան (շահան)շահի եւ դուկիս մեզ եւ մեր ծնողաց մեղաց թողութեան. թէ ոք այս գրոյս հակառ կա եւ յես[1] սրբոցս հանէ զաւձին Կաինի Յուդաի խաչահանուացն զանէծսն առցէ: յժը: հայրապետացն նզոված է սուրբ Երրորդութենէն մի գտցի ողորմութիւն յաւուր դատաստանին. հայր որ ի վանքս նստի ամէն տարի: դ: քառասունք կատարել պարտի մեր ծնողացն եւ յետ մեր վախճանի մեզ: թէ ոչ ընդ նոյն անիծիւքս անգցի եւ առաջի Աստուծոյ մեր մեղացն պարտական է:

Անուանք արձանագրողացդ՝ Նուիրատուաց և հօր իւրեանց՝ արաբացիք են, և Թուին 'ի դենէ անտի դարձեալք 'ի քրիստոնէութիւն. իսկ Թուականն փափագելի առնէ զհնագոյնն ևս գտանել զշինութեանն, որ ըստ Նշանի ժամանակագրութեան Անեցւոյն երևի յամի իբր 1022: — Ի կէս ԺԲ դարու սահմանեն միաբանքն քառասունս պատարագաց վասն հօր և եղբարց վախճանելոց, ըստ օրինի այլոց վանաց, որպէս տեսաք 'ի Բգնայր և այլուր[2]:

Շնորհիւն Աստուծոյ ի ՈԲ թուս. եղեւ նորոգումն վերստին ի ձեռն Պաւղոսի ուստի եւ հաստատեցաք որ թէ ոք յեղբարցս փոխի ի Քրիստոս եւ հայր որ լինի պարտի առնել դ̅ քառասուն ժամ եւ ամենայն եղբայր ա̅ աւր պատարագ առնէ եւ որ չառնէ պատարագ ժ̅ կանոն աղաւթս արասցէ. աւբեղային բ̅ քառասուն. հայրն լաւ մատաղ առնէ. որք հաստատուն պահեն զգրեալս աւրհնեսցին յԱստուծոյ եւ խափանիչքն նզոված են:

Ցետ այնր Թուի տեղւոյն անկեալ ընդ իշխանութեամբ այլազգեաց, յորոց Թափեալ Մեծին Զաքարիայի՝ զինու զօրութեամբ, արձանագրէ յամին 1211, հանդերձ Նուիրատուութեամբ շինից և այգեաց, այսպէս.

Կամաւն Աստուծոյ ի ՈԿ թուաբերութեանս Հայոց ես Զաքարէ ամիր սպասալար Հայոց եւ Վրաց որդի Սարգսի ազատեցի զսուրբ ուխտս զայս իմով արեամբս ի յայլազգեաց եւ ետու ի սուրբ Սարգիս զՎասկափող Մըշկաղբիւրվլին եւ այգի մի ի Բագրան եւ շինական մին ի գիւղս յիշատակ հոգոյ իմոյ եւ յարեւշատութիւն հարազատ որդոյ իմոյ Շահնշահի եւ եղբաւր իմոյ Իւանէի: Հայր Յովհաննէս եւ այլ միաբանքս հաստատեցին ըզսուրբ Սարգսի զաւագ բեմն անխափան պատարագ առնել ինձ միջնորդութեամբ Դաւթի որդոյ Շոթըռկայ. արդ էթէ ոք յիմ ազգականաց եւ կամ յաւտարաց եւ կամ ի հարանց զիմ զյիշատակս խափանէ եւ զՎասկափաւղ յայս սրբոցս հանէ: զաւձին: զԿաենին: զՈւդային. զխաչահանուաց զանէծսն առցէ: յժը: իցն ի սուրբ Երրորդութենէն մի գտցի ողորմութիւն. ամէն:

1 Այսինքն յայս:

2 Տես յէջս 22. 118. 122:

— Այլ նուիրատուք և արձանագրողք մինչև ցամն 1210, են յետագայքդ. Խաչոտ Շեխեանց, յամի 1221.

Թ. ՈՀ. Յայսմ ամի ի տէրութեան Շահանշահի կամաւ բարերարին Աստուծոյ ես Խաչոտս Շեխեանց եւ ամուսին իմ Աւագ տիկին միաբանեցաք սուրբ ուխտիս Խծկաւնից եւ տուաք զմեր հայրենի տներն որ ընդդէմ Գողոնց սուրբ Սարգսի է եւ զկուղպակն որ ի վերա ծառազուկակին է. եւ հայր Յովհաննէս եւ Պաւղոս վարդապետս եւ այլ սուրբ եղբարքս հաստատեցին ի տարին ե̅ աւր պատարագ: գ̅. աւր Խաչոտին առնեն. գ̅. աւր Աւագ տիկնա. ա̅. աւր Ապիրատին: արդ որք հաստատուն պահեն զգրեալս աւրհնեսցին յԱստուծոյ եւ խափանիչքն որոշեալ եղիցին ի սուրբ Երրորդութենէն. ամէն: Տներն ի մայրաքաղաքին է ի յԱնի մաւտ ի Տիգրանանց ի դուռնն:

Քավիկ որդի Ճուճայի, զօրավար Շահնշահի որդւոյ մեծին Զաքարեայ՝ նուիրէ այգի մի յամի 1230.

Թվ. ՈՀԹ շնորհիւն Աստուծոյ ես Քավիկ որդի Ճուճային զաւրավար Ամիր սպասալար Շահնշահի տեառն իմոյ գնեցի ի հալալ արդեանց իմոց զայգին որ ի Բագրան զոր Ջնազին կոչի եւ ետու ի սուրբ ուխտս Խծկաւնս ի սուրբ Սարգիս յիշատակ մաւր իմոյ Շուշկանն եւ եղբաւր իմոյ Վարհամայ. Եւ սպասաւորք եկեղեցոյս սահմանեցաք կնաւասարդին աւուր պատարագն անխափան առնել Շուշկանն եւ Վարհամայ. կատարիչքն աւրհնեալ եղիցին եւ խափանիչքն անիծեալ եղիցին. Խաչատուր գրիչ:

Աբրահամ երէց որդի Սարկաւագ երիցոյ որդւոյ Սա- օրէն Թուռն հուշակաւոր ժամանակագրին, պարգևելով
մուէլի երիցու Անեցւոյ, զոր մարթ է համարել հաւան- տունս և կրպակս՝ գրէ յամի 1233.

Ի : ՈՁԲ : Թուիս շնորհիւն Քրիստոսի ես Աբրահամ երէց որդի Սարկաւագ քահանայի Թոռն Սամուէլ երիցոյ Անեցի ետու զիմ գանձագին: բ̅: տուն նորաշէն եւ ի վերէն բ̅ կողպակ ի սուրբ ուխտս ի Խծկաւնս յառաջնորդութեան տէր Աբասա եւ վարդապետ Պաւղոսի եւ յայլ միաբան սուրբ եղբարցս. Եւ փոխարէն հատուցեն մեզ յամենայն ամի: վ̅: աւր պատարագ: դ: Աբրահամու եւ: բ: տէր Պապ երիցու եւ: ա: հարկեացն. կատարիչք գրոյս աւրհնին յԱստուծոյ եւ հակառակքն որոշին ի Քրիստոսէ. եւ յիմ ժամէս ետու ի սուրբ Սարքսի կողման նՆջեցեալսն. գ. Խոցադեղին: բ: Յոհաննէս երիցու: գ: Տիրանցին: բ: Շահմամին. այլ ոչ ումն աղման չկա հետ գուզին. հայր ոք եթէ յանդգնի ծախել կամ գրաւկանել մի գոցէ ողորմութիւն ի Տեառնէ. Յիշեա Քրիստոս զԳրիգոր աշխատող եւ զԽիմանոս:

— Բռնաւոր և կին իւր Տղայ-տիկին՝ պարգևելով այգիս 'ի կողմանս Մրենոյ յամի 1240, գրեն այսպէս.

Թուիս ՈՁԹ շնորհիւ եւ ողորմութեամբն Աստուծոյ ես Բռնաւորս ծառայ Քրիստոսի եւ ամուսին իմ Տղա տիկին ողորմութեամբ աստուածասէր

Պարոնի իմո Գրիգորո միաբանեցաք սուրբ ուխտիս Խծկաւնից եւ ընծայեցաք ի սմա զմեր գանձագին այգին որ ի Մրեն է զոր Աշտոտն կոչեն եւ Աւետման մեծ ագին ի ձեռն աստուածապատիւ եպիսկոպոսիս Տէր Աբասա եւ այլ սուրբ եղբարցս․ եւ սոքա փոխարէն հատուցին մեզ զՂազարու տաւնին պատարագն մինչեւ ի գալուստ Բանին Աստուծոյ զկէսն ինձ առնեն Բռնաւորիս եւ զկէսն զուգակցի իմո Տղա սիկնա․ արդ որ զգրեալս մեր կատարեն աւրհնեալ լիցին ի Քրիստոսէ Աստուծոյ եւ որք խափանեն որոշեալ լիցին ի փառաց Որդոյն Աստուծոյ։

Է և այլ արձանագիր ՈԿԳ (1214) Թուականաւ, որպէս զընթերցուած նոցին։ — Ի հարաւոյ կուսէ յարակից է և միւս ևս 'ի վերայ մեծի և գեղեցկաքանդակ անշատ խաչվիմի, այլ որմն ընդ մէջ անեալ երկոցուն՝ խափանէ յեկեղեցիս մատուռն փոքր, և յորմն Նորին առ գետնաւ տապանագիրս այս, յամի 1208.

Թուական ՈԾԷ Ես Գ... ոս աշակերտ Մարգարէի քահանա(յի) միայնաւորի կանգնեցի զխաչս պահապան գերեզմանի սորա եւ եղբաւր իմում Առաքելին․ աղաչեմ յիշել յաղաւթս ձեր .. զվարդապետս ։ զՊղ։ Եւ զԱնդրէաս եւ զծնողսն իմ. եւ զտէր Առաքելն որ նահատակեցաւ ի Կեչրոր քաղաքի զանազան տանջանաւք։

Երկրորդ եկեղեցին իբր տասն քայլիւ 'ի բացեայ, այլ երկար որմով կցեալ ընդ առաջնոյն, բազմանկիւնի բոլորշի է արտաքուստ, խաչաձև 'ի ներքուստ, ինն Զ. ընդ լայնն և ընդ երկայն, չորիւք մատրամբք՝ ըստ առաջնոյն, և երկու դրամբք։ Արձանագիրք սորին որ 'ի հիւսիսի և որ 'ի հարաւակողմանն՝ կիսով խանգարեալ են, և կէս ծածկեալ կամարաւ որմոց՝ որ յարակցէ զայն ընդ երրորդին. այլ երևի Թուական մի ՆԾԵ (1006) եթէ չիցէ ՆՁԵ (1036). բայց 'ի վերայ արևմտեան աւագ դրանն գրեալ է վսեմաբար այս տուն Սաղմոսաց.

Այս դուռն Տեառն է եւ արդարք մտանեն ընդ սա։

Թուի եկեղեցիս այս կոչեցեալ Ս. Ստեփանոս։
Երրորդ եկեղեցին փոքրիկ, յարակից երկրորդին Ս. Աստուածածին կոչի, և է քառակուսի, 'ի ներքուստ խաչաձև կարձաթև. ունի և գաւիթ կամարակապ զառաջեաւն, այլ կիսակործան. յարևելեան որմն եկեղեցւոյս 'ի բարձու՝ արձանագրէ ծանօթ պաշտօնեայ մեծին Զաքարէի՝ Տիգրան Նորոգող վանացն յամի 1213, պարգևելով այգիս և ձիթահանս՝ յԱնի և այլուր.

Ի թուիս ՈԿԲ Շնորհիւն Քրիստոսի ես Տիգրան հաւատարիմ ծառայ Մանդատորթա խուցէս ամիր սպասալար Շահնշահ Զաքարիաի տեառն իմո տեսի զպանդխտութիւն սուրբ ուխտիս Խծկաւնից եւ թափուր յամենայն ընչից եւ վերստին նորոգեցի ամենայն պիտոյւք եւ ապաւինեցա ի սուրբ Մայրս լուսոյ․ ետու զիմ զգանձագին ակն մին ձիթահանքն որ յԱնի է եւ այգի մին ի Մարմետ է որ Միջնայգի կոչի յառաջնորդութեանս հաւր Յոհաննիսի եւ սուրբ եղբարցս եւ փոխարէնս հատուցին զեկեղեցիս ի սկզբանէ տարոյն մինչեւ ցկատարումն տարոյն յիմ անուն կատարեն եւ ի տարին։ Խ ։ ունք մին իմ պարոնին Զաքարիաի յիմ եկեղեցիս եւ զայլն որչափ ես կեն-

*դանի եմ իմ ծնողացն եւ ապա ինձ յետ առ Քրիստոս ճանապարհորդելոյն մինչեւ ի գալուստ Բանին Աստուծոյ. եթէ ոք ի մեծաց կամ ի փոքունց զյիշատակս մեր խափանէ եւ հակառակէ ոսոխ եւ դատիչ բարկութեան սուրբ Աստուածածինս եղիցի եւ որք հաստատուն պահեն աւրհնեալ եղիցին ի Քրիստոսէ ։*

*Նման սմին է ձեւով և մեծութեամբ չորրորդ եկեղեցին, քարընկեցիւ 'ի բացեայ յերիցն և յայլում քարափան, յարեւելից նոցին. չկան 'ի սմա արձանագիրք, այլ գերեզմանք արկղաձեւք շուրջ զնովաւ, 'ի միումն գրեալ.*

*Աստուած ողորմի Գրիգորո. ամէն ։*

*Ի միւսում՝ որոյ խաչվէմ կործանեալ է մասամբ արձանագրին, մնայ այս բան, 1222 ամին Թուականաւ.*

*Որ նահատակեցաւ (ի Կ)եչրոյ քաղաքի, որք երկրպագէ.ք Քրիստոսի սուրբ նշանիս յիշեսջիք զմեզ որ կայ.ք առաջի սորա. Թվ Հայոց ՈՀԱ.*

*Թուի նոյն տէր Աւագէլ՝ որոյ նահատակութիւն յիշեցաւ վերագոյնդ յայլում արձանի։ — Հինգերորդ եկեղեցին քարընկեցիւ հեռագոյն յարեւելից կուսէ և յայլում քարաժերուի, ձեւով և չափով նման է երկոցուն նախագրելոցդ, և ունի պարիսպ շուրջ զիւրև. առ հիւսիսային դրամբ նորին կանգնեալ կայ մեծ և գեղաքանդակ խաչվէմ՝ 'ի վերայ հնգաստիճան պատուանդանի, և 'ի ստորև՝ երեք որոցաձև տապանք. 'ի միումն գրեալ յամի 1034.*

Ի ՆՁԳ *Թուիս ես Հաջաջ որդի Աւլ Հա(սանայ ի) տղական հասակի ելի յաշխարհէ եւ ոչ տեսի (զվ)այելչութիւնն սորա եւ սուգ մեծ թողի ծնողաց իմոց առ Քրիստոս. յիշեցէ.ք զիս աղ.*

*Յարեւելակողմեան զիմի պարսպին կայր այլ խաչվէմ ագուցեալ 'ի նոյն, և առ ստորեն գրեալ յամի 1231.*

*Թվ. ՈՁ. Այս է հանգիստ Անեցի Գրիգորո եւ աւթեւան. որք կարդէ.ք յաղաւթս յիշեցէ.ք. Տէր Աստուած ողորմեայ սմա ։*

*Դարձեալ 'ի հարաւային կողման պարսպին վերծանի այս պարզ և գեղեցիկ տապանագիր Թամարայ ուրումն կնոջ.*

*Ես Թամարս որ կամս առաջի սուրբ զէնարանիս Աստուծոյ եւ սպասեմ գալըստեան Տեառն ։*

*Որպէս տեսաւ յարձանսդ՝ երեք վանահարք յիշին 'ի նոսին. Պօղոս յամի 1153, Յովհաննէս յամս 1211–23, և Տէր Արսա եպիսկոպոս, 1233-40. առ յետնովքս յիշի և Պօղոս ոմն վարդապետ՝ յամս 1208–1233, իբրու մեծապատիւ և նշանաւոր ոք. և Թուականքն ժամանեն ց1240, որ են առաջին ամք բռնակալութեան Թաթարաց 'ի Հայս, յորոց ասպատակէ թերևս ամայացան խըցկունք միայնակեցացն. այլ աստանօր ժամանակ ներողամիտ քան զպատմութիւն՝ յաւերժացուցեալ է զյիշատակ մեծոգի Վեստին, իբրև 'ի բարուրս անմեղադրութեան նմին, կամ 'ի նշանակ յամենայնի յանդուգն և բարձր ձեռնարկութեանց նորին. որոյ միւս ևս մեծագործ դաստակերտ երևի 'ի Ծառաքար Երասխաձորոյ։ Քրդի միոյ ճոխի սեփականութիւն և գոմք խաշանց եղեալ էին խծկոնք. այլ իբրև 'ի ծագել վերջին պատերազմին Ռուսաց (1877) խոյս ետ նա 'ի տեղւոյն, Յարութիւն վարդապետ 'ի Թաւշանղշլաղ գեղջէ Արևելեան Շիրակայ՝ ձեռն էարկ նորոգել զայն, յարդարելով սենեակս բնակութեան և դպրոց մանկանց։ — Ի լրոյ և ոչ 'ի տեսոյ՝ ասէ ոմն, յանմատոյց քարափունս անդ խըծկոնից չինեալ կամարակապ մեղուանոց, ուր այժմ աղաւնիք վայրենիք դադարին. և կալոտի սալայատակ, և արտաքս 'ի սարահարթն, ուստի խողովակաւ ըզկաթն կովուցն իջուցանէին երբեմն 'ի վայր՝ 'ի վանսն։*

48. Երրորդ շինուածոյն մեծագոյն և հնագոյն քան զառաջինսն՝ է Տեկոր գիւղ, խառն բնակեալ 'ի Հայոց և 'ի Թուրքաց, իբր կիսով փարսախաւ կամ նուազ ևս հեռի յարևելից Խծկօնից, 'ի հարաւոյ կամ յաջմէ Իւրանուն գետոյն, յերից կողմանց լեռնապատ, արձակ յարևելից կուսէ գոլով: Անուանակցութեամբ գետոյն յայտնի նշանաւոր և գլխաւոր տեղի բնակութեան լինել 'ի հնումն. որում վկայ և մեծաշէն և հաստակառոյց անկործան եկեղեցին, քան զյոգունս եկեղեցեաց Հայոց՝ գուցէ թէ և քան զբնաւս՝ հնագոյն, վասն այնորիկ և արժանի քննութեան ճարտարապետական արուեստին. զի բազում իւիք զանազանի ոճով յեկեղեցեաց Անւոյ, չորիւք և հնգօք դարուք երիցագոյն քան զնոսա գոլով. և մեծատարր զանգուածովն կանգուն կացեալ այնքան դարս, թէ և նորոգեալ երբեմն: Քառակուսի է ձևով, 27 Զ. ընդ երկայնն արտաքուստ, այսինքն որմովքն հանդերձ, և նոյնպէս՝ ընդ լայնն 18. կիսաբոլոր խորանին արտաքս քան զկարգ որմոցն հանեալ է. և առաւել նորաձև այս է՝ զի և երկոքին որ առ նովաւ աւանդատունք կամ մատրունք կրկնայարկք, նեղք և երկայնք, արտաքս քան զհասարակ կողմանցն ելեալք են ընդ Հ. և ընդ Հր. իբրև երեք Զ. և 'ի յաւելեալ մասունս անդ նոցին՝ յարևմտեան որմունսն՝ երկար կիսաբոլոր դատարկ գործեալ: Զոյգ քառակուսի և յոյժ ստուար սիւնք



61. Եկեղեցին Տեկորոյ:

իբր երեք չափ թանձունք՝ կամարակցութեամբ 'ի կողմանց խորանին և աւագ դրանն՝ ամբառնան զգմբէթն, որոյ ներքին գդակ խողովակաձև իմն երկար գոգացեալ է, այլ արտաքին կոնն տափակագոյն և լայնադիր է քան զայլոց եկեղեցեաց Շիրակայ. վկայ և այս հնութեան ոճոյն, որպէս և անսեթևեթ պարզութիւն ներքնակողման եկեղեցւոյն: Աւագ դուռնն արևմտակողման այժմ խցեալ է, որպէս և մի 'ի հիւսիսայնոցն. ունի դուռն և 'ի հարաւոյ. 'ի վերայ զուգակցածուն սիւնակցաց՝ պարզեալ են պայտաձև կամարք բարաւորաց դրանցն աւելի քան զկէս բոլորակի [1]: Ի ճակատին փոխանակ սովորական սեանց՝ երեք երեք միթք են կրկնամասն քառակուսիք, և 'ի միջի վերջնոցն այսինքն որ 'ի ծայրսն, մէն մի լուսամուտք. և քիւ կամ դրուագեալ գօտի քանդակին որ 'ի վերայ նոցա՝ ոչ է ուրոյն և անջատ, այլ ընդ բովանդակ երկայնութիւն ճակատուն անընդհատ ձգեալ և բոլորեալ զպատուհանօքն. գոյ և զոյգ մի անձուկ լուսամտից յեռանկիւնաձևի ճակատուն, և խաչքանդակ 'ի միջի նոցին և 'ի վերոյ. և լուսամուտ ևս փոքր վերագոյն քան զայն. իսկ գմբէթն չունի շուրջանակի լուսանցոյցս: Այսպիսի զոյգ և բարձր լուսամուտք անձուկք և ևս փոքրագոյնք, են և 'ի կողմա-

1 Զայս քաջ նկատեալ Դիւսիէ փռանկ ճարտարապետի, ոչ բիւզանդիկն՝ այլ հնդիկ իմն ոճ նշմարէ, և զի չև ևս էր առէ Արաբացւոց մտեալ 'ի Հայս, ապա հաւանելի է թէ 'ի քրիստոնէից մուծաւ առ Արաբացիս՝ ձևս այս յարևմտեան Ասիա:

կան երեսս եկեղեցւոյն, առանց խաչքանդակաց. իսկ ստորին կողմն ունի երիս երիս սիւնս վայելչաձեւս սատի և անտի դրանցն և 'ի ծայրսն, և երեք պատուհանք նը- մանք հակատուն, նոյնպէս և քիւքն միահետք: Շուրջա- նակի զեկեղեցեաւն են սալք կամ աստիճանք քարե- ղէնք հինգ կամ վեց կարգ, որպէս և զկաթողիկէիւ Անւոյ, այլ մեծ մասն աստիճանացն արդ հողով ծած- կեալ է: — Գէսիէ ճարտարապետ և պատկերահան որ ('ի 20 սեպտեմբերի 1839 ամին) ձեւագրեաց զարտաքին և զներքին եկեղեցւոյս, ճանաչէ զնախնական հնու-



62. Յատակաձեւ եկեղեցւոյն:



63. Մէջ եկեղեցւոյն:

թիւնն, և զպայտաձեւ կամարացն ոճ (որ արաբական կարծիւր), ընիկ այսր կողման, այսինքն հայկական հա- մարի, ոչ այլ ուրեք հնագոյն քան 'ի սմա տեսեալ[1]. և վասն ընդհանուր արուեստի կերտուածոյն և ամրու- թեանն՝ փափագէ իմն նմանել նմին և 'ի Փռանկաստան[2]:

Արձանագիր շինութեան եկեղեցւոյն կայ 'ի բարաւորի աւագ դրանն, այլ քարանցն խախտեալ և տեղափո- խեալ է ուրեք, և 'ի չորս տողս բովանդակեալ, այլ և այլ մեծութեամբ տառից. 'ի սկզբանն թերատ բառք ինչ կան, թերեւս մասն այլոյ արձանագրի որ երեւի 'ի վերոյն.

Ուրանայ եւ Հոււո.... (ե)պիսկոպոսի եւ Տ... յրոնի Տեկորոյ վանաց երիցու եւ Մանանայ հազարապետի հիմնարկեցաւ տեղիս ի ձեռն Յոհանու Հայոց կաթողիկոսի եւ Յոհանու Արշարունեաց յիւր բարեխաւսութիւն եւ բոլոր ազգիս եւ ամուսնի եւ որդեկաց եւ սիրելեաց եւ սրբոյ Սարգսի. Սա- հակ Կամսարական շինեաց զայս վկայարան.

— Անստոյգ իմն թուի անուն վանաց երիցուն որ թե- րատ մնայ.. յրոնն հաւեալ. իսկ Մանանն հազարապետ անծանօթ է մեզ 'ի պատմութենէ[3]. այլ երեքին այլ անուանքն՝ կաթողիկոսին և եպիսկոպոսին Արշարունեաց և Կամսարականին Սահակայ, որ է անշուշտ երէց եղ- բայր քաջացն և սիրելեաց Ներսեհի և Հրահատայ, զու- գին վերջին ամաց Ե դարու, և ոչ այլում ժամանակի. վասն որոյ կաթողիկոսդ Յովհաննէս՝ հարկ թէ քաջածա-

1 On s' est longtemps persuadé que ces sortes d' arcades avaient été exclusivement employées, dans l' origine, par les artistes musulmans; mais en les retrouvant dans cette contrée appliquées à un temple chrétien, et à une époque où l' Arménie était exclusivement chrétienne, il faut, je pense, accorder que le principe de ce genre d' architecture est dû plutôt aux chrétiens qu' aux musulmans... Ce système de construction est donc bien évidemment originaire de ces contrées. — Tex.

2 Le caractère de cette construction se naturaliserait facilement en France, et l' on pourrait en faire d' heureuses applications dans les églises de village: c' est surtout la solidité de la structure qui devrait le faire prévaloir. — Texier. I. 120.

3 Փաշլիկ քննելի են տառք արձանիդ. թերեւս Մանանն իցէ Վահան մեծն և քաջն Մամիկոնեան:

նօթ Մանդակունին իցէ. Նաև Թուականին պակասութիւն ևս վկայ է՝ յառաջ քան զդիր Հայկականին լինել: Ապա քաջ դիտողութեան և պատկառանօք յարգութեան արժանի է տաճարս այս, որոյ չափական Թանձրութիւն որմոցն և եռաչափեան սեանցն՝ կանգուն և անսասան պահեաց զայն՝ այս չորեքտասան դարք, 'ի վերայ այնքան սասանութեանց երկրի և բաղխման բանակաց 'ի բազմամարտ դաշտագետնիս Շիրակայ. և Թէպէտ ոչ որպէս զեկեղեցիս Խծկօնից ասեմ իսպառ անարատ մնացեալ, այլ դոյզն կարկատանօք՝ ցարդ իսկ ըստ բաղդի՝ պաշտի 'ի մերազնեայ բնակչաց գեղջն: — Ցարձանան մերթ յանուն սուրբ Սարգսի և մերթ Սրբոյ Երրորդութեան կոչի տաճարդ. Թերևս գոյր անդ և այլ եկեղեցի կամ մատուռն՝ որոյ չերևին հետք: Հնագոյն յարձանն, որք ամենեքին Թուաւորք են, յետ վերօգրելոյդ՝ է Խոսրովանուշայ Թագուհւոյ, կնոջ Աշոտոյ Ողորմածի, յամի 971:

**Թ. ՆԻ ✠ Յանուն Աստուծոյ ես Խաւսրեւանուշ Հայոց Թագուհի հաստատեալ եմ զՏեկորոյ շարյեատն յեղն կայթ մի. արդ մի ոք իշխեսցէ լուծանել ի սուրբ Երրորդութենէս:**



64. Ճակատ եկեղեցւոյն Տեկորոյ:

— Ցետ սորա ութևտասն ամօք զկնի, այսինքն է յամին 989, արձանագրեալ է տողաշափ բանս.

**✠ Ի ՆԼԸ Թ. Յանուն Աստուծոյ ես Գրիգորիկս ետու....**

Այսչափս փորագրեալ գոլով մնացեալ է, իսկ հետևորդն նկարագեղով գրեալ էր, վասն որոյ և ջնջեալ: — Ցաղեղնաձևի դրանդեացն կայ յիշատակ այլոյ Բագրատունի Թագուհւոյ, յամի 1008, և ամուսնոյ իւրոյ Գագկայ-Աշոտոյ Թագաւորի, յամի 1014, որք ամենայն պընդութեամբ ապահարկ առնեն զՏեկոր.

**Ի ՆԾԷ Թուականութեանն Հայոց ✠ Յանուն Աստուծոյ կամ եղեւ ինձ Կատրանիդէ Հայոց Թագուհի դուստր Վասակա եւ ամուսին Գագկա Թողեալ եմ զՏեկորոյ շարյատն վասն Գագկա շահանշահի արեւշատութեան եւ իմ որդեացն. եւ վերակացուք սորա պարտական են զՆերանի որում Թողու-**

*թիւն ասեն հանապազ. արդ թէ (մէ) ոք իշխեցէ լուծանել ի սուրբ Երրորդութենէն։ Եւ ես Աշոտ թագաւոր հաստատեցի եւ թողեալ եմ զհարկն բնովիմք յաւիտենից եւ զթաստակն վասն իմ արեւշատութեան եւ իմ ծնողաց եւ եղբարց եւ զաւակաց իմոց որ աւր։ Թ։ Կ։ Հաւոց Ն։ Կ։ Գ։ էր. արդ եթէ ոք հակառակ գա կամ հարկիս կամ չարիատիս թողլուս ժը իցն նզոված է երերեալ լիցի որպէս Կաեան անիծեալ որպէս Քանան բաժին նորա ընդ Ուդաի եւ ընդ խաչահանուացն եղիցի. վասն սուրբ Սարգսի չինութեան եւ վասն մեր հոգեացս ազատեցաք զազգ եւ հայր եւ մայր եւ որդիքս. արդ մեր մեղացս եւ մեր ազգի մեղացս տէր է որ ընդդիմանա....*



65. Կողմն եկեղեցւոյն Տեկորոյ։

Յետ սակաւ ամաց, 1018, նոյնպէս ազահարկ առնէ Թաւթուլ ոմն, որ կամ տէր էր տեղւոյն կամ հարկահան.

**Ի ՆԿԷ** *թվ. Յանուն Աստուծոյ ես Թաւթուլս թողեալ եմ զՏեկորո հարկն վասն Յէվանէս թագաւորի եւ իմ որդոյն երկար արեւշատութեան. արդ եթէ ոք հակառակ կա իմ մեղացս եւ իմ ազգի մեղացս պարտական է առաջի ատենին Քրիստոսի։*

Յամի 1036 միաբանք Խծկօնից և եկեղեցւյան Տեկորոյ հաստատեն զիրաւունս կիրառութեան ջրոյն Տեկորոյ. զի չորս օր այսմ գեղջ անկ էր, և երեք՝ Ագարակուց գեղջն, ըստ սահմանի առաջնոց թագաւորաց և ըստ վկայութեան ծերոց և գիտողաց, որոց հարց և փորձ արարեալ՝ վերստին հաստատեցին զառաջին սահմանն.

✠ **ՆՁԵ** *թվ. Հայոց ի թագավորութեան Յիվանէսի շահանշահի եւ հայ-*

բապետութեան Տեառն Պետրոսի Հայոց վերադիտողի եւ ի տէրութեան Սարգսի արեւելից Դուկիս ես Հապ... շահիկս եւ եկե(ղե)ցպանս միաբան եղբայրաւքս Խծկաւնից վանիս Տեկորոյ ջրոյս եւ Ագարակուց ուղելո զինչ առջի թագաւորու...ն լել է։ դ։ աւրս եւ։ դ։ գիշեր Տեկորոյ է։ գ։ աւր եւ։ գ։ գիշեր Ագրկուց հարցի.. երս եւ գիտողս նզովուք եւ երդնլով աւղորդն այս է. եթէ ոք հակառ կայ։ յ։ ժ։ ը։ հայրապետաց նզոված է բաժին ընդ Յուդաի եղիցի եւ ընդ այլ աստուածավաճառին եղիցի եւ ընդ այլ չարագործաց որ ատելի են Քրիստոսի. ի գարնմէն ի վեր մինչեւ յաշունն հանապազ գայր ջուրն լերինն անխափան։

Որպէս վերծանի յարձանագրութեանդ ընդ Թագաւորի ժամանակին՝ Յովհաննու, և ընդ Պետրոսի կաթողիկոսի յիշի և վեստն Սարգիս՝ Դուկ Արևելից, և յայտնի՝ պայազատ տէր գոլ տեղւոյն. որոյ և կինն՝ դուստր Գրիգորի Մագիստրոսի՝ յամի 1042 ազատագրէ զՏեկոր 'ի պաշտխոտ կոչեցեալ հարկէ.

ՆՂԱ. Թվ. Յանուն Աստուծոյ ես Տիկ(ն)աց տիկին դուստր Գրգորոյ Մագիստրոսին եւ ամուսին Սարգսի արեւելից վեստիս թողեալ եմ զՏեկորոյ զպաշտխոտս շահանշահի արեւշատութեան եւ իմ ծնողացս հոգոյն արդ. եթէ ոք հակառակ կա իմ ծնողացն մեղացն պարտական է առաջի ահեղ ատենին Քրիստոսի բաժին ընդ Յուդաի եղիցի կատարիչ հրամանիս աւրհնեալ եղիցի.
Ծառայիկս յաղաւթս յիշեցէք ի Քրիստոս։

Առաջինն յարձանացդ յայտ առար զի անդստին 'ի Ե դարէ գոյին վանք հաստատեալ 'ի Տեկոր, որ է ասել յաւուրց անտի Թարգմանչաց. յետ այնր ժամանակի մինչև 'ի Բագրատունեացն արձանագիրս, մի անգամ միայն գտանեմք զանուն Տեկորոյ, կամ լաւ ևս զՏիկորեցւոյ Յովհաննու, թերևս առաջնորդ եղելոյ վանացն. զոր իբրև մոլորեալ ոք 'ի կրօնս՝ 'ի բաց որոշեալ է՝ կաթողիկոսն Յովհան Օձնեցի՝ 'ի ժողովի Նոր քաղաքի (Վաղարշապատու), յամի 724 [1]։

49. Յարևելից Տեկորոյ երիւք կամ չորիւք մղոնօք 'ի բացեայ, յահեկէ գետոյն, կայ փոքր գիւղ կամ հանգըրուան Գզըլ-Դուշէ կամ Գզըլ-Գալէ, որոյ հանգամանք անծանօթ ինձ։ — Սուղ ինչ 'ի հարաւոյ սորին գետն Տեկորոյ ընդունի վտակ մի օժանդակ յարևմտից կուսէ իջեալ և եկեալ 'ի միջոյ Քոդուր և Եաղլուճա լերանց բարձանց, յորոց յերկայնաձիգ ստորոտս կան երկու գեօղք համանունք, Վերին և Ստորին Սօրխանլը կամ Սօրխունլուգ. 'ի միում յայնցանէ մատուռն աւերակ։ Մերձ նմին յիշէ ոմն 'ի մերայոց զՊազարձըգ տեղի, և հինգ բերդս ? աւերակս անդանօր գոլ — Ի միջավայր ընթացից վտակին և 'ի հարաւոյ կուսէ՝ որ է յաջմէն՝ կայ Ծպնի հայաբնակ գեօղ մեծ, կամ Ջուճի. թերևս կոչեցեալն Ջուշ յարձանս Հոռոմոսի վանաց. ունի եկեղեցի հին կիսափուլ գմբեթաւ, չափաւոր մեծութեամբ և խաչաձև, բայց չկան 'ի նմին արձանագիրք, այլ բարձրաքանդակ պատկերք չորքոտանեաց, եղին և առիւծոյ, և թռչնոց։ Ի սահմանս գեղջս բղխեն հանքային ջուրք։

Յանկեան խառնրդոց վտակիս ընդ Տեկորոյ կայ Մէվրէկ գիւղ հայաբնակ, մնացորդաւ բերդի և եկեղեցւոյ։ Մարթ է բաղդատել զմնացուածս շինուածոցն ընդ միւսոյ հիւսիսայինն Մէվրեկայ կամ Մաւրիկայ (12)։

Ի Հր. երկոցուն գիւղիցս Ծպնեայ և Մաւրիկայ ամբառնայ երկայնանիստ լեառն Կիւճիւկ. առ որով յարևելից հարաւոյ Ծպնեայ՝ կան հուպ յիրեար Թէփէլէր և Գզըլ-Գալէ գիւղիկք կամ հանգրուանք։ Ի հարաւոյ սոցին առ վտակի միում է Ջըռչի հայաբնակ գիւղ մեծ, 'ի հրաբըղխուտ երկրի կարմիր և դեղին տուփաքարանց. և 'ի նորին հարաւոյ երկու մղոնաւ հեռի՝ Հաճդալ-գայա քարաբլուր. և ապա լերինք որ անջրպետեն ընդ Շիրակ և ընդ Երասխաձոր։ — Իսկ յարևմտից հարաւոյ Ջռչեայ՝ իբր փարսախաւ կամ երիւք մղոնօք հեռի 'ի Նմանէ՝ Բուրիկ գեօղք երկու, Վերին և Ստորին, 'ի սահմանակցութեան Կաղզուանայ, 'ի խանձախառն երկրի։ Անուն շինիցն և դիրք նոցին տան համարել նոյն ընդ Բաւաց-ձոր տեղւոյ 'ի Շիրակ, զոր յիշեցաք յէջ 33։

50. Ի հարաւոյ կուսէ լերինն երկու մղոնաւ 'ի բացէ, յելից Ջըռչեայ իբր երկու փարսախաւ, և 'ի մտից Տեկոր գետոյ՝ նոյնքան հեռաւորութեամբ, յընդարձակ՝ այլ յա-

[1] Զայս յիշէ Յովհաննէս Սարկաւագ հակիրճ առող մի բանիւ, որ կարևոր կայծ ինձ է 'ի լոյս եկեղեցական պատմութեան մերոյ։

մայի դաշտի կայ գլխաւոր շինից այսր մասին Շիրակայ աթոռ դատաւորի՝ առ Օսմանեանց իշխանութեամբ, Նախճաւան հայարնակ գիւղ մեծ, յորում և մեծակառոյց հին եկեղեցի Ս. Ստեփանոս, որոյ գմբէթ անկեալ է և 'ի յետին ժամանակս յարկեալ, նոյնպէս և խաթարեալ որմունքն կարկատեալ են, 'ի պէտս պաշտաման. արձանագիրքն ևս խանգարեալք են, և մնացորդ նոցին ունի թուական 1035 ամի, առ Յովհաննէս Սմբատ թագաւորաւ, գրեալ առ դրանն 'ի ներքուստ.

**Ի ՆՁԴ** *Թուականիս ի Թագաւորութեանն Սմբատայ Շա(հնշահի) որդո Գագկա ես Գրիգոր .... եւ Թոռն Զուտասին ... (Ստեփ)աննոս յիմ հայրենի .... :*

Թերևս հնագոյն քան զայդ է արձանագիրն որ 'ի հարաւոյ կողմանն արտաքուստ [1], և ևս հնագոյն որ 'ի հիւսիսոյ կողմանէ մեծամեծ տառիւք, որ և մաղթողական իմն թուի, այլ ըստ առաջնոյն թերացեալ.

*Ստեփաննոս յառաջառաքեալ եւ Նախասար(կաւագ) .... զԳրիգորի ծնաւղն ... Հիպատո ....*

Յառաջ քան զսակաւ ամս, յերի եկեղեցւոյս՝ 'ի Թիկանց կուսէ, յայտնեցան գետնափոր մուտք և քարեղէն սանդուղք իջից 'ի դամբանարան քարաշէն. ուր և տեսան երկու տապանք արկղաձևք, որմով զատուցեալք յիրերաց. 'ի վերայ միոյն գրեալ էր, որչափ ստուգի յընթերցուածոյ քննողին, Թերևս ոչ քաջ վարժի [2] յայսպիսի քննութիւնս, այս գեղեցիկ և արժանաքննին տապանագիր, առանց Թուականի.

*Աստուծոյ հրամանաւքն եւ աստուածակոչ հրաժարմամբք աստ է հանգուցեալ ընդ հարս իւր երանելի Տէր Արտաւազդ Կամսարական Ապուհուպատ պատրիկ եւ իշխան Հայոց որդի Հրահատա Պատրկի Շիրակա եւ Արշարունեաց տեառն եւ ամուսին Շուշանա Մամիկոնենի.*

Գուցէ նորին իսկ Շուշանայ իցէ ընթերակայ տապանն: Ի կարգս կամսարական իշխանաց և տեարց Շիրակայ անյիշատակ է սա 'ի պատմչաց. և թուի լինել որդի քաջին և եղբայրասիրին Հրահատայ եղբօր Ներսեհի և Սահակայ շինողի եկեղեցւոյն Տեկորոյ. անշուշտ նա, և կամ մի 'ի մերձաւորացն՝ և այսր Նախճաւանի եկեղեցւոյս է շինող, զոր և թերի և վերջին բառ արձանագրութեանցն.. Հիպատո.. յայտ առնէ՝ զԱպիհիւպատ պատուոյ մակդիրն. յորմէ և եկեղեցին նոյնպէս ճանաչի Զ դարու շինած լինել. և արժանի մանր խուզարկու քննութեան տեղիս այս, և որ շուրջ զիւրև: Ի սասանութենէ երկրի՝ աւէ զկործանումն գմբեթին, ոմն 'ի մերայոց [3], որ և վկայէ լինել առ նովաւ գետնափոր նրկուղս. որք և 'ի ճահ գան հին համբարանոցաց բնիկ տերանց երկրիս Կամսարականաց, որոց և Ոստան գոլ գուշակի Նախճաւան, որպէս և մինչև ցայժմ գլուխ գիւղորայից կողմանս էր: Զերկոսին ևս հանգամանքս տայ գուշակել պատմահայր մեր Խորենացի. զի աւէ (Գ. ԼԲ), Արշակայ Բ յետ կոտորելոյ զԿամսարականսն յԱրմաւիր՝ անդր հրամայէ կուտել զհամբարս նոցա. « Զորոց պեղեալ երկուս խորս յոյժ քաջախորս և սաստ- » կապէս լայնս, որ 'ի շինին Նախճաւանի, բերին սայ- » լովք նոցին աւանին ». ուրանօր և զոսկերս գազանակուր եղելոց տերանց իւրեանց՝ « հաւաքեալ 'ի սայլսն, » ներքոյ եղեգանն, բերեալ թաղեցին 'ի նոյն խորս. զոր » զգացեալ Արշակայ՝ հրամայէ զսայլորդսն 'ի վերայ խո- » րոցն կախել զփայտէ »:

31. Ի շրջասփիւռ սահմանս Նախճաւանի ոչ նշանակի ամենևին շէն տեղի, և սակաւք 'ի ստորին գնացս գետոյն Տեկորոյ. առ որով յահեկէն՝ որ է 'ի Հ., փարսախաւ հեռի 'ի Հր. Եւ. Մարիկոյ՝ փոքր գիւղն Պաճալը կամ Բաճալա, յորում միայն աւերակք երևին. և խոնարհագոյն ևս իբր կրկին փարսախօք Տիւզ-կէչիտ, զի են անդ անցք գետոյն, որպէս և 'ի հանդիպոյ նորա ընդ Ախուրեանն. և փարսախ մի ևեթ հեռաւորութեան է ընդ երկոսին: Եւ ևս խոնարհագոյն և երկու մղոնօք ևեթ

1 ... Նայ կամաւքն Սմբա... Անդրէաս Մրենոյ — խաւսութեմ սուրբ Ստեփան ... Շահանշահի Գագա որ... ի կատարած աշխարհի ... դոյն արեվոյն եւ ...

2 Ուշ գիտեմ մեր հանդիպեալ և գաղափարեալ էր զտապանագիրս զայս, զոր մտերիմ ոմն՝ ամօք յառաջ առաքեաց մեզ. և արդ 'ի պահու տպագրութեանս՝ այլոյ բանասիրի խոստումն է առաքել տեղեկութիւն զայսմանէ. Թերևս ժամանեսցէ 'ի յաւելուած ծանօթութեան 'ի տեղւոջ ուրեք մատենիս:

3 Տէր Պօղոս Վարդապետ Պետրոսեան:

'ի վերոյ խառնրդոց Տեկորոյ ընդ Ախուրեան՝ նշանակի փոքր տեղի ինչ թիչ անուն, այլ չգիտեմ որպիսի։

Իսկ 'ի միջոցի տեղւոյ երկոցուն գետոցն իբրև մղոնաւ հեռի յերկուցն ևս, որք ցամաքակղզի իմն եռակողմն գործեն անդանօր, և երկու մղոնաք ևեթ 'ի Հս. Բագարանի, կան աւերակք յետին շինի արևմտեանն Շիրակայ, հռչակաւորն Մրենն, այժմ Գարապաղ կոչեցեալ, վասն այգեստանեացն շուրջ յոլովութեան, զոր ոմանք վասն աւերածոյն սիրեն կոչել Խարապա (աւեր). զի այնպիսի իսկ է տեղին ընդարձակ և խուռն աւերօք բազում շինից, որք և արտաքոյ սահմանացն՝ յայգեստանսն երևին, և համարին լինել գերեզմանք նախնի բնակչաց Մրենոյ։ Անուն տեղւոյս յիշի զառաջինն 'ի պատմութեան մերում 'ի կէս Ե դարու, առ Վարդանամբք, 'ի սակս երիցու տեղւոյն՝ Խորենայ, որ ընդ մեծին Ղևոնդեայ երիցու Վանանդացւոյ՝ նախապատիւ այլոց երիցանց կարգի 'ի ժողովի. և դարձեալ՝ ընդ նմին՝ իբրև այր մեծարոյ և ճարտարաբան նուիրակ առաքեցաւ առ Ս. Վարդան,




66. Մրենոյ եկեղեցին։

աղերսել յետս դարձուցանել զնա 'ի ճանապարհէ պանդըխտութեանն 'ի Յոյնս։ Այլ փառք տեղւոյն, որոյ ստուերախառն շուք միայ ցարդ, պայծառացան 'ի սկիզբն Է դարու, յորժամ Դաւիթ Սահառունի իշխանապետ կարգեցաւ Հայոց, թերևս զի տէր էր տեղւոյն կամ զի Սահառունեաց տոհմի վիճակ էին սահմանքս, գուցէ և ոստան նոցին. « և 'ի հրամանէ նորուն շինէր իսկ եկե- » ղեցին գեղեցկայարմար որ 'ի քաղաքագեղն Մրեն », ըստ բանից Յովհաննու կաթողիկոսի. և ամենայն յետագայ պատմիչք, Ասողիկն, Սամուէլ, Վարդան և այլ ժամանակագիրք, իբրև յայտ հրաշակերտ և աշխարհահռչակ շինուած յիշեն զեկեղեցին կամ զկաթողիկէն Մրենոյ. և զշինութիւնն կամ զհիմնարկութիւնն ասեն յամի 613-4. և արդարև մնացուածք նորին՝ զնոյն վկայեն աններև, բաղդին պահեալ զնա՝ թէ ոչ ամբողջ այլ ոչ և խախաքայքայեալ, որպէս այլ շէնքն, և ապարանք և դրօսա-

րանք Բագրատունի Թագաւորաց, որոց հիմունք և հետք լոկ երևին. Նոյնպէս և անուանի այգեստանեացն՝ քարուշար սահմանք, գի երեւքն խոպանացեալ՝ ճարակս լոկ ընծայեն արդ. արօտականաց։ Արդ. տաճարս այս սահառունաշէն՝ պարզ քառակուսի է ձևով, 18 Զ. ընդ. լայնն և 30 ընդ. երկայն, 'ի մոլից դրանն մինչև յորմն կիսաբոլոր խորանին, որ որպէս զՏեկորոյն ելանէ արտաքս քան զկողմն լայնութեանն. Թանձունք են որմունքն, որպէս և չորեքին սիւնք 'ի միջին՝ ստուարք, ոչ քառակուսիք՝ այլ երկայնանիստ բազմանկիւն խարսխօք, որք հանդերձ երկոքումբք որ առ արևմտեան մեծի դրամբն և քառեակ կողմնական նրբագոյն որմայեց սեամբք՝ կամարօք ձգելովք՝ ամբառնային զհոյակապն անշուշտ գմբէթ, զանկեալն արդ. և քայքայեալ։ Երկուստեք խորանին են աւանդատունք կամ մատրունք վայելչաձևք։ Այլ նշանաւոր քան զայլ ինչ 'ի կաթողիկէիս, ըստ այժմեան մնացուածոց, են բարձրաքանդակ պատկերքն 'ի վերայ դրանցն. արևմտայնոյն՝ հրեշտակք երկու կանգուն և արք վեց 'ի ստորև, ոմանց մատեան 'ի ձեռս ունելով. հիւսիսայնոյն՝ մանուկ ձողաբարձ խաչ ունելով 'ի ձեռին, և ծեր մի երկրպագու, երկոքին ևս անկեալ 'ի ծունր, և երիվար համետեալ առ նմին. զոր է կարծել զՍահառունին. Նոյնպէս և այլ ծեր մօրուեղ երկայն պարեգօտիւ քասկ 'ի ձեռին, և ծառ 'ի թիկանց նոցին. բայց յարուեստէ ճարտարութեան զուրկ են քանդակքն։ Աւ եկեղեցեաւն են հին շիրիմք, կէսք արկղաձևք և բարձրադիրք, այլք ըստ սովորական տարազու տափակք, և քանդակազարդք, այլ ոչ նրբենի որպէս զԱնւոյ։ Յարձանագիրսն որ յարևմտեան և 'ի հարաւային արտաքին երեսս որմոյն՝ ոչ ընթերցաւ դեռ անուն և թուական շինողին, գի արձան մի 'ի վերնակողմն արևմտեան դրանն անվերծանելի մնաց 'ի քննողէն՝ առ յոյժ բարձրութեանն. իսկ որք ընթերցանն՝ առ չինաւէր Բագրատունեօք են գրեալ, և առաջին թուականաւ յ'992 ամի, որ է այս.

Յանուն Աստուծոյ ի ՆԽԱ թվականին ես Դավիթ Վարդա որդի էտու զիմ այգին զայն որ ի գետեզերն իմ ձեռաց արկել ի սուրբ կաթաղիկէ ի ձեռն աստուածապատիւ եւ հոգեւոր տեառն Սահակա եւ պարտիս եմ ընդեցեալ մինչ ի միւսանգամ գալուստն զքարեկենդանին ուրբաթ աւրն պատարագն յամենայն եկեղեցիս յիմ անուն մատուցանէ. եւ որ ոք ստե կամ յապիշտակել իմ մեղացս եւ իմ ազգի մեղաց պարտական եղիցի առաջի Աստուծոյ եւ յԱստուծոյ դատապարտ եղիցի եւ մասն եւ բաժին ընդ խաչհանս կրեցէ. իսկ կատարիչ գրոյս աւրհնեալ եղիցին յԱստուծոյ եւ յամենայն սրբոց։

Զայս տուրս նուիրաց հաստատէ Սոփիա դշխոյ, իւրով յատուկ անթուական արձանագրութեամբ.

✠ Եւ ես Սոփի դուստր մեծին Աշոտոյ Շահնշահի Հայոց եւ Վրաց թագուհի տվեալ եմ եւ հաստատեալ զԴավթի զայգին ի սուրբ կաթողիկէ եւ ի տէր Սահակ եւ ի նորին աթոռակալս զոր ինքն անդարձ էր արարեալ վասն Դավթի հոգոյն եւ վասն իմ եւ վասն Գագկա Շահնշահի արեւշատութեան եւ որ ոք յապրշտակել ջանայ յԱստուծոյ Բանէն . . . եալ եղիցին իսկ հրամանակատարքն աւրհնեալ եղիցին յԱստուծոյ։

Եղբայր դշխոյիդ՝ Գագիկ Ա. արքայ՝ արձանագիր հրամանաւ ազատ կացուցանէ զՄրեն 'ի կոռ անուանեալ հարկէ.

Յանուն Աստուծոյ այս իմ հրամանք են Գագկա Շահիադնշահի ազատեալ եմ զՄրենոյ զկոռն որ ի Նախճաւանի էր զմարդոյ եւ զեզին ի ձեռն խնդրոյ աստուածապատիւ տեառն Սահակա Աշարունեաց եպիսկոպոսի որ անմոռաց խնդրէ ի Քրիստոսէ թողութիւն լինել մեղաց իմոց. արդ. ար ոք ընդդիմանա իմ ա(յա)հրամանացս կամ յիմ որդեաց կամ այլ ոք եւ

իցէ պարտական լիցի մեղաց իմոց եւ իմ ամենայն ազգի եւ սպանման ա- րեանն Քրիստոսի. իսկ կատարիչ գրոյս աւրհն եղիցի ի Քրիստոսէ. Սուրբ կաթողիկէ եւ սուրբ Նշանս կնիք գրոյս. Եղաւ առաջնորդ բարոյս Հարպ Հայոց տանուտեր. Վահան քահանայ գծող։

— Թուն Թագաւորիս, միւս Գագիկ (Բ), 'ի սուղ և յա- ռաջնում ամի անդ թագաւորութեանն, որ է 1041, ա- զատ առնէ զայլ ինչ հարկս, արձանագրելով 'ի ստորև՝ նմանողութեամբ բանից հաւուն իւրոյ, այսպէս.

✠ ՆՂ թուականութեանս Հայոց ի հայրապետութեան Տեառն Պետրոսի եւ Խաչկա Հաոց կաթողիկոսաց այս իմ հրամանք են Գագկա Շահանշահի որդո Աշոտո. ազատեալ եմ զՄրենոյ զհարկն զծուծ եւ մուր զկապիճքն.. իշուցին եթէ ոք ընդդիմանա հրամանաց իմոց յիմոց կամ.. ով իցէ պարտա- կան եղիցի սպանման արեանն Քրիստոսի եւ ամենայն ազգի մեղաց... յժը հայրապետացն նզովեալ եղիցի կենաւք եւ ի մահու. Եղեւ առաջնորդ Հաոց տանուտէր.

Այլ ևս արձանագրի յամի 1063 կայ սկիզբն միայն, յորմէ և գուշակի զի երկարաբան էր գրելին.

Ի Յաբեդական տոհմիս տոմարիս եւ թվ. Հ. ի ՇԺԲ ամաց չր...

Ցարձանաց աստի երևի լինել Մրենոյ 'ի հնումն Ար- շարունեաց գաւառի մասն, գէթ ընդ նորին եպիսկո- պոսաւ վիճակեալ։ Նշանակելի է և Հայոց տանուտե- րանց յիշումն, որ թերևս զՄարզպանն իշխան նշանակէ, որպէս և Հարպդ անուն զԱպլղարիպ։ — Այլք յարձա- նացն են 'ի հարաւակողմն եկեղեցւոյն, և յետ երկուց դարուց գրեալք, 'ի կէսոյ ԺԳ դարու ցվերջն կոյս. որոց առաջին՝ յամի 1251, հրամանաւ Շահնշահի որդւոյ մեծին Զաքարիայ, և առաջնորդի տեղւոյն, խոտիւ ար- գելու զանչափահասից ձեռնադրութիւն.

Թուակ. Չ Յամս աստուածապատիւ Տեառն Կոստանդեա Հայոց կաթո- ղիկոսի.. հրամանաւ մեծին Շահանշահի եւ յառաջնորդութ(եան). տէր Գրի- գորո եթէ ոք յեպիսկոպոսաց կաշառաւք ե.. առնէ կամ անմուրու կամ առանց ընտրութեան մասն վ(Յու)դաին առցէ եւ զՍիմոնի կախարդի. ով զգիրս ջնջէ.. ջնջի ի կենաց գրոյն.

Երկրորդն է յամի 1273 Սահմադինայ Պատրոնի Անւոյ, որ ազատագրէ զհարկ այգեաց ուխտին Արջոյ-Առինջոյ (43).

Թուակ. ՉԻԲ ողորմութեամբն Աստուծոյ ես պարոն Սահմադինս ազա- տեցի զսուրբ ուխտին Արջկա(առճ)ո այգիքն Մրենոյ եւ Աւշակնո ի խալալ եւ յերրորդ հարկէ որ բնական ազատ էր ոչ ամիրիո... ինաւորի ոչ ուշ ձեռն չկա ի վերա վասն արեւշատութեան որդեց իմոց եւ քաւութեան մեղաց մե.. ազատ մինչ ի ծագումն Քրիստոսի. արդ թէ ոք ի մերոց կամ յաւտարաց..։

Նոյն Սահմադին Թուի և արձանագրողն յամի 1284, Սէնոպ մականուանելով զինքն և որդի Աւետեաց, գնե- լով նախ զՄրեն և ապա բառնալով զտասանակն կոչեցեալ հարկ հացի.

Թուակ. ՉԼԳ կամաւն Աստուծոյ ամենակալին այս մեր արձանագիր է

պարոն Սէնոպ Սահմատինս Աւետեց որդոյս եւ կենակից իմ Ուրտուրխտայ որ յառաջ գնեցի զՄրեն յիմ հալալ արդեանց եւ հաստատեցաք արձանագրով եւ թողաք զՄրենոյ տասնակն հացին որ ի չարխատն նախ մեզ արեւշատութիւն եւ որդեաց մերոց եւ յիշատակ յետ ելից աստի կենացս եւ մեզ մեղաց թողութիւն եւ արձան տալ մինչ ի գալուստն Քրիստոսի. արդ եթէ ոք ի մերոց կամ յաւտարաց զհաստատ արձանս մեր խափանել ջանայ պարտական լիցի սպանման արեն Որդոյ Աստուծոյ եւ տատաւղ նորայ սատանա լիցի եւ զյաւիտենից անէծսն ժառանգեսցէ զՈւդաի եւ զԿաենին եւ հաստատ պահաւղքն աւրհնին յԱստուծոյ. Կիկլիչանայ ամիրութեամբս գրեցաւ.

Եւ յետ ամաց չորից, այն է յամի (1288) բառնայ և զբաժ խաղողոյ և զգինւոյ, յաւելլով միւս եւս արձանագիր.

Թ. Հ. ՁԼԷ Յանուն Աստուծոյ եւ միջնորդութեամբ ամենայն երկնաին եւ երկրաին զաւրութեան ես Պարաւն Սէնոպ Սահմադինս եւ ամուսին իմ Ոտուրտա վասն փրկութեան մեղաց մեր եւ վասն յերկար կենդանութեան զաւակաց մերոց եւ վասն չինութեան համար Մրենոյ հացին չարխատն թողել էաք. եւ հայ մալ թողաք զէգեց գինո եւ խաղողի խալէն որ այլ ոչ ի մերոց եւ ոչ յաւտարաց ոչ ով չխառնէ. ով հակառակի եւ զմեր յիշատակս խափանէ նզովի յԱստուծոյ եւ յժը հայրապետացն եւ մասն եւ բաժին նորա ընդ Ուդաի եւ ընդ Կաէնի եւ ընդ սատանաի:

Նշանելի է 'ի Նախագրեալ արձանին ամիրութիւն Կիկլիչանայ, զոր կարծեմ ոստիկան կամ կուսակալ Թաթարաց լինել 'ի Շիրակ. և Թաթարատիպ անուն կնոջն Սահմատինայ՝ Ոտուրտա կամ Ուրտուրխտա: — Վերջին արձանագրութիւն 'ի Մրեն է 'ի 1295 ամի, Դաւթի ուրումն Նուիրատուի.

Թ. ՁԽԴ Կամաւն Աստուծոյ ես Դաւիթ միաբանեցա սուրբ կաթողիկէիս եւ արարի արդիւնք. տէր.. այլ սպասաւորք եկեղեցոյս փոխարէն հատուցին մեզ ի տարին բ̅ ժամ ի տաւնի Դաւթի եւ Յակոբայ: ա. կնձ.. Դաւթի եւ: ա: ամուսնոյ իմոյ Եւլ խաթունին կատարիչքն աւրհնին յԱստուծոյ:

— Յիշատակեալն յառաջնումն արձանի Տէր Գրիգոր և 'ի վերջնումն ջնջեալ, այլ միայն նշանակն թողեալ Տէր, չէ յայտ առանձինն եպիսկոպոս իցէ թէ Արշարունեաց յաջորդ, թէ մանաւանդ եպիսկոպոսն Անւոյ: Ի ափիւս աւերակաց Մրենոյ են և երկու մատրունք փոքունք. 'ի շրջանակի դրան միոյն գրեալ է յամի 1277.

Թ: ՁԻՁ. Ի հայրապետութեան եւ թագաւորութեան Հաւոց տեառն Յակոբա եւ Լեւոնի եւ ի պարոնութեան Սահմաւինին վերակառուցեալս զայս խորան յանուննադրութիւն Յիսուսի փրկչին մերո որ է պատճառ աղաւթելոյ ի սմա եւ զիս զՄխ. վարդապետս եւ որք աւգնեցին յիշեցէք ✠:

— Իսկ խաչվէմք դամբանականք բազումք են յայլ և այլ կողմանս Եկեղեցւոյն. յորս գոն և մեծամեծք և հաստակառոյցք որմածոյք. 'ի միում 'ի Նոցանէ արձանագրեալ է այս բան.

**Ով սուրբ խաչ փրկական եւ ներկեալ արեամբ Որդւոյն Աստուծոյ ի քեզ ապաւինեցաք ծառայքս խաչելոյն Քրիստոսի ես Մարտիրոս եւ ամուսին իմ Վարդուտս եւ հարազատ որդիք մեր Փարսամն Հմայէ[1] ... Սգս (Սարգիս) Քհ (քահանայ) եւ քոյր մեր Նձխս կանկնեցաք գխաչս բարեխաւս մեզ եւ ծնողաց մերոց եւ զաւակաց մերոյ. արդ աղաչեմք:**

Ցուերակս անդ որ 'ի միջի այգեաց, կան մնացուածք մեծագործ շինուածոյ միոյ՝ զոր արքունիս անուանեն, այլ միայն երկու որմունքն մնան, և 'ի միումն դուռն մեծ և հոյակապ գեղեցիկ քանդակօք, յորոյ վերայ և 'ի բարձու կայ արձանագիր, որ և առ բարձրութեանն մնաց անվերծանելի. 'ի դէպ է կարծել զսա մնացուած ապարանից Սահառունւոյ իշխանապետին Հայոց, և արժանի քննութեան և բաղդատութեան քանդակացն ընդ շինուածոցն Անւոյ: Անդ էր անշուշտ և ամրոցն, և որպէս Թուի՝ ոչ համակ քարաշէն, այլ փայտախառն. զի յամի 1163 իբրև աթաբէկն « Ելտկուզն գայ յայրեցեալն և » 'ի քանդեալն ('ի Վրաց) Դուին, և խոցոտեալ սրտիւ » և մրմռեալ իբրև զգազան կատաղի՝ գայ 'ի Մրեն, և » այրէ անդ զամրոցն, ուր ողջակիզեցան վասն Քրիս» տոսի չորեք հազար ». քանզի նոյնքան Պարսիկս կոտորեալ էին Վիրք 'ի զօրաց նորին, զորս տուեալ էր Սադունի երբեմն քաղաքապետի Անւոյ հաստուածելոյ 'ի Թագաւորէն Վրաց՝ առ Ելտկուզ: — Ոչ ինչ ընդհատ 'ի շինիցն նշանաւորք վկային և այգիք Մրենոյ, տուեալք 'ի կալուածս վանորէից, որպէս արձանքդ ցուցին բազում անգամ, յորս յանուանէ յիշին այգիքն կոչեցեալք Հռոմդեան, Աղտոտ[2], և այլք:

ՅԶ. Աստանօր յաւարտման տեղագրութեան Արևմտեան Շիրակայ՝ քաղաքաւանաւս ամայացեալն Մրենոյ, քանզի յիշեցաք գամ մի լինել զայն 'ի բաժնի ժառանգութեան Սահառունեաց, կարևոր համարիմ և որչափ ինչ ծանօթս է՝ աւանդել զայսմ տոհմէ Հայոց, որ ոչ ընդ նախադաս նախարարս ազգիս կարգի և ոչ ընդ հզօրագոյնս, և ոչ զաւառ որիչ յանուն նորին. այլ զուցէ յառաջին ժամանակս այդպէս իսկ անուանէր մասն մի երկրին 'ի սահմանակցութեան Շիրակայ և Երասխաձորոյ. որում երաշխաւոր կայ և Սահառունիք գեօղն, սեփական ժառանգութիւն Յովհաննու Սմբատայ (Գ) արքայի, զոր և շնորհեաց 'ի հասոյթ Ս. Գէորգայ արքայական հանգստարանի 'ի վանս Հոռոմոսի[3]. և Թէպէտ չեն յայտնի դիրք տեղւոյն՝ այլ չիք երկբայել Թէ յայս կողմանս էր, ոչ միայն վասն դաստակերտին Դաւթի Սահառունւոյ 'ի Մրեն, այլ զի և 'ի շարս զօրաժողովի հայախումբ բանակին՝ յերի Հաւնունեաց, Գաբեղենից և Արեղենից կարգին Սահառունիք, և գտանեմք զերկիր երեցուն դոցա՝ սահմանակիցս տեղւոյս՝ զոր ստորագրեմքս. հանգոյն նոցին և զօրամասն իւր՝ 300 արանց է միայն, նշանակ սակաւաւորութեան տոհմին: Սակայն ոչ յաննշանիցն և հուսկ յետադասից 'ի բարձս. քանզի 'ի Գահնամակի Ս. Սահակայ՝ դասի ԽԵ 'ի մնացեալ եօթանասունսն: Անյայտ է մեզ ծագումն տոհմին և անուանն, որոյ մերձաւոր գտանեմք զՍահուռ անուն մարդոյ՝ յայլում տոհմի (Անձևացեաց), և զՍոհառն քաղաք յՈւտի աշխարհի, յորմէ Թերևս եկք իցեն 'ի կողմանս Այրարատայ. ոչ յիշին առ Խորենացւոյ ոչ ընդ Հայկազունս և ոչ ընդ փաղարշակեան նախարարութիւնս. այլ զառաջինն 'ի կէս Դ դարու յերևան ելանեն առ Բուզանդայ[4], իբրև ձեռներէցք և աւագ իշխանք. նախ առաքեալն ընդ այլոց ոմանց 'ի Կեսարիա 'ի ձեռնադրութիւն Ս. Յուսկան, որ յետոյ առաքեցաւ և 'ի կոչ Ս. Դանիէլի առ Տիրան. այլ խառնակ ինձ է նախ գրութիւն անուանն առ պատմչին, և յերկրորդում նուագին[5] Թուի կոչիլ Ոմ կամ Ջումն իշխան Սահառունեաց տոհմի: Յետ սակաւուց յիշի[6] ընդ դեսպանս առաքեալս յԱրշակայ առ Վաղէս կայսր՝ ընդ Ս. Ներսեսի « և Մուշի նահապետն » Սահառունեաց »: Եւ ոչ յետ բազմաց 'ի Թագաւորութեան Վարազդատայ, յամի իբր 376, Բատ նահապետ ազգին, (որ և դայեակ սնուցիչ լեալ էր նորա, ըստ պատմչին), վասն որոյ և համարձակեալ խնդրացաւ կորզել զգործ սպարապետութեան 'ի Քաջակորովն Մուշեղայ, և բազում քսու ամբաստանութեան մատուցեալ զնմանէ՝ ետ զաւաձանել 'ի խրախունս. և ինքնին « զնր» րանն զոր յիւրում ազգերն ունէր՝ հանեալ անցոյց ընդ » փողս զօրավարին Մուշեղի, և անդէն 'ի բաց եհատ » զգլուխ նորա: ... Ապա կացոյց Թագաւորն Վարազդատ » 'ի գործ զօրավարութեան սպարապետութեանն զԲատ » նահապետն Սահառունեաց տոհմին, որ էր իւր դա» յեակ, բանսարկու քսուն սպանօղն Մուշեղի ». մինչև եկն Մանուէլ Մամիկոնեան լուծանել զվրէժ Մուշեղի, և պատերազմաւ յաղթեալ Վարազդատեանց, « զԲատն » արքայն Վարազդատայ դքսուն, զսպանօղն Մուշեղի, » կալեալ իւր որդւովն առաջի՝ սպարապետին Մանուէ» լի . . նախ յանդիման նմա հրամայէր փողոտել զորդին » նորա, ապա յետոյ զնա զլխատել[7]»: — Ի կէս Ե դարու 'ի մեծի պատերազմին Աւարայրի ընդ հաւատարիմս Ս. Վարդանայ իշխանս յիշի և Կարէն Սահառունի: Յետ նորա ոչ զոք այլ գտանեմ 'ի տոհմէ Սահառունեաց,

1 Փակագրով գրեալ էր այդ, որ Թերևս Հմայեկ ընթեռնլի է. ընդ նմին կայ և այլ անուն մի եղծ:
2 Տես յէջս 32. 77. 129, և այլն:
3 Տես յէջ 31:
4 Բուզանդ Գ. ԺԲ. գրէ « Եւ զմերոյ տոհմի ազգի իշխան » Սահառունեաց ». զոր ոմանք համարեցան ընթեռնլի Մերուտոհմ իշխան ազգի. կամ Մերոյ իշխան ազգի տոհմի, և այլն:
5 Նոյն Գ. ԺԴ:
6 Նոյն Դ. ԺԱ:
7 Նոյն Ե. ԼԵ, ԼԷ:

բայց միայն դարու և կիսով զկնի՝ նախածանօթն մեր շինող կաթողիկէին Մրենոյ, Դաւիթ Սահառունի, այր մեծագործ և մեծազօր. որ նախ հաճոյացեալ Պարսից՝ փոխանակ այլադենիցն՝ եկաց Մարզպան Հայոց, յամի իբր 613. և յայնժամ ետ կանգնել զպարծանս Մրենոյ. և զատ յայլոց՝ որ ոչ յիշին, արար շինութիւնս և 'ի հեռաւոր սահմանի, յԱղթամար կղզւոջ ծովուն Բզնունեաց: Պէսպէս անցք թուին անցեալ ընդ նա և 'ի ձեռն նորա յամս մարտամբոխ յուզմանց Պարսից և Յունաց, և յարշաւանս Հերակլի կայսեր, որ զմեծ մասն Հայոց թափեաց 'ի նոցանէ, և ընդ այլս և զԴաւիթ յիւր սպասու կացոյց, ոչ գիտեմ որպիսի պատուով կամ պաշտամամբ: Բայց զայս յիշէ ժամանակակից պատմիչ մի մեր [1], զի 'ի ծանօթ դաւաճանութեան Աթալարիկոսի որդւոյ Հերակլի՝ ընդդէմ հօրն (յամի 635), ընդ համախոհսն գտաւ և Սահառունին Դաւիթ. վասն որոյ ձերբակալ արարեալ զնա Մժէժի Գնունւոյ (երկրորդի) որ զօրավար էր կայսերական զօրաց, առաքէր 'ի պալատն. այլ «հատեալ » նորա զկապանս իւր՝ 'ի ճանապարհին, սատակէ զարսն » որք տանէին զնա. և դարձեալ անդրէն՝ միաբանէ ընդ » ինքեան զզօրս Հայոց, յարձակի 'ի վերայ Մժէժի » Գնունւոյ, զօրավարին Յունաց, և հարեալ սատակէ » զնա, և զՎարազ-Գնէլ Գնունի. և առ յինքն զզօրա» վարութիւնն՝ կամակցութեամբ և սիրով ամենայն զօ» րացն: Իսկ թագաւորն առնէ, ըստ խնդրոյ իշխանացն, » զնա իշխան ամենայն աշխարհացն, և տայ նմա պատիւ » կորապաղատութեան, և հաստատէ զնա 'ի ծառայու» թիւն իւր: Եւ կալեալ զիշխանութիւնն ամս երիս ամե» նայն ճոխութեամբ մեծապէս, ապա անարգեալ 'ի զօ» րացն հալածեցաւ, և անմիաբան լեալ ամենայն ազա» տացն՝ կորուսին զերկիրս Հայոց »: Գրեաթէ 'ի սմին ժամանակի և ամի եղև առաջին մուտն Արաբացւոց 'ի Հայս, և այն իսկ թերևս պատճառ չփոթութեան ազատացն, զորս խապառ նուաճեցին յետ սակաւուց աշխարհակալքն այնոքիկ հարաւայինք. և թէ 'ի նմին ժամանակի մեռաւ իսկ ոչ մեծոգին այն և քաջակորով այր Դաւիթ, որպէս հաւանական թուի, գէթ անյայտանայ այնուհետև 'ի պատմութեան, ընդ նմին և համօրէն տոհմն և անուն Սահառունեաց. և մնայ միայն 'ի վերյիշեալ արձանն Յովհաննու թագաւորի, և 'ի կիսակենդանն Մրեն. և ո՞ գիտէ թէ ոչ հանգչիցին ընդ սևաշուք հովանեաւ նորին՝ նշխարք վերջնոյն այնորիկ, այլ նախապատուին 'ի տոհմի իւրում Սահառունեաց, որում արձանանայ լռութեամբ դաստակերտն իւր տաճար՝ դադարեալ 'ի պաշտամանէ:

[1] Այն ինքն է Սեբէոս պատմիչ գործոց Հերակլի կայսեր:




67. Քանդակ յարքունի ապարանս Անւոյ *:

* Ոչ գիտեմ յորում մասին ապարանիցն էր քանդակդ՝ նշանաւոր երկգլխի արծուովն. իսկ զԳրիչ (քանդակին՝ որպէս իմանամ) թերևս արժան էր ՅՎՍ (Յովանէս) ընթեռնուլ, և ոչ ՅԽԼՍին, թէպէտ լսի և այս անհեթեթ անուն 'ի յետին դարս:

# Բ

# ԱՐԵՒԵԼԵԱՆ ՇԻՐԱԿ

## ԱԼԵՔՍԱՆԴՐԱՊՕԼ



իրակայ արեւելեան մասինս յայտնի է անճրպետ յարեւմտայնոյն՝ գետն Արփա եւ Ախուրեան. որոյ հիւսիսակողման անձուկ մասին՝ սահման գործեն լերինք Գուգարաց աշխարհի, Լօքիզ, Մատարեփէ, Ղուլղարա, Լէճլի, եւ այլն. յարեւելից կուսէ լերինքն անճրպետք միճակաց Արագածոտն գաւառի, Նուր Ամէտ, Գարախաչ, Աղլաղաճ, Գուշ բէփէսի, Քէփէնէկ կամ Թէրզի գըշլա, եւ ինքն լայնանիստն Արագած. իսկ 'ի հարաւոյ՝ դարձեալ Արագածոտն գաւառ: — Հիւսիսային մասն երկրին մինչեւ 'ի սահմանս քաղաքին եւ բերդին Աղեքսանդրապօլի՝ լեռնային է եւ առատ ջրովք, որք թափին յԱրփա. հարաւային կողմն հարթածաւալ, սակաւ ունելով գետակս, եւ լեռնաբլուրս ցիրս, այլ ոչ լերինս բարձունս: Հիւսիսագոյն գետակացն կոչի Լօրթիւլի. եւ ըստ հարաւոյ նորին Եյլի ոէրէ, որ առեալ զԱղչայ 'ի Գարախաչ լեռնէ՝ թափի յԱրփա: Ընդ մէջ սորա եւ այլոյ գետակի 'ի Հր. ամբառնայ Սիփ կամ Միւփ լեառն՝ բարձր 2450 Զ: Հզօրագոյն եւս գետակ կայ 'ի Հր. նորին, որոյ չէ մեզ ծանօթ անուն սեփական, ունելով 'ի Հր. զկամխուռ Լ. 2107 Զ. եւ զՇիշբէփէ, 2287 Զ. յորմէ իջեալ վտակ անցանէ ընդ քաղաքն: Հզօրագոյն քան զսոսա գետակք երկու իջեալք 'ի ստորոտից Արագածոյ եւ խառնեալք յիրեար՝ թափին յԱխուրեանն, յանկեան կցուածոյ իւրեանց ունելով զմեծ գիւղն Գարագիլիսէ. հարաւայինն 'ի գետակացս ընդունի յայնմ կողմանէ, որ է յահեկէ իւրմէ, երկուս եւս վտակս, զԳարաճկա որ է Կարկաչ կամ Կարկաչան ըստ Հայոց, եւ զՄօուզ պուլաղ, զոր մարթ է Հառիճոյ ջուր կոչել, զի անցանէ առ համանուն հռչակաւոր մենաստանաւն: Ի միջավայր զուգից գետոցս եւ Ախուրենոյ՝ ամբառնայ Գըզըլ-տաղ լեառն 1803 Զ: Հարաւագոյն սահմանք արեւելեան Շիրակայ հանգոյն արեւմտայնոյն ամայի են եւ անջուր, եւ խոպան երկիր Ջարըճայի կոչեցեալ, մինչեւ յեւս սահմանաց գաւառին առ Արագածոտամբ:

34. Յանուն նորակերտ մեծի սահմանակալ ամրոցին՝ ԱԼԵՔՍԱՆԴՐԱՊՕԼ կոչեցաւ վիճակս 'ի Ռուսաց, 'ի պատիւ դշխոյին իւրեանց, այլ արեւելեայք յանուն հին գեղջն Կիւմրի կոչեն, որոյ հին հայկական կոչմամբն վերագրել 'ի դէպ էր՝ Կումայրի: Են 'ի վիճակի աստ գեօղք իբրեւ 120, դրեաթէ բովանդակ հայաբնակք. թիւ մերազգեացս յամին 1878 համարէր 95,000, 'ի դէպ է համարել արդ 100,000. իսկ համօրէն բնակչացն իբրեւ 120,000, յորս յետ Հայոց բազմաթիւ են սերունդք Թաթարաց: Ի ցոյց աճման մարդաթուին՝ կարգեմք աստանօր երկուս աշխարհահամարս, մին արարեալ յառաջ քան զ1865 ամն, միւսն յամի 1873, որոց երկոցուն համեմատութեամբ հարկ է զարդիս ոչ սակաւ յաւելեալ համարել. եւ այսմ երաշխաւորէ մեզ թիւ անձանց կաթոլիկ Հայոց, (զոր միայն գտաք յետ աշխարհագրի 1873 ամին), 'ի վիճակագրութեան հովուապետի նոցին, եպիսկոպոսին Սաբաղովլի, յամի 1876. յորում երեւի յաւելուած իբրեւ 260 ոգւոց քան զմարդաթիւ 1873 ամին: — Առ դիւրաւ գտանել զխնդրելին՝ զգեօղն ըստ այբուբենից կարգեցաք 'ի ցուցակիդ. իսկ զազգն բնակչաց 'ի նոյին՝ նշանակեն տառքն, Հ. (Հայք). Հ-Կ. (Հայ Կաթոլիկ). Թ. (Թուրք). Ք. (Քուրդ). Եզ. (Եզիտի):

# Աշխարհագիր Արեւելեան Շիրակայ

| ԳԻՒՂՈՐԱՑՔ | 1863 ՑՈՒՆՔ | 1873 ՑՈՒՆՔ | 1873 ՈԳԻՔ | ԱԶԳ |
|---|---|---|---|---|
| Ագգիլիսէ | 30 | 46 | 416 | Հ. |
| Ագգուլէ | 17 | | | Հ. |
| Ալագիլիսէ | 18 | 29 | 231 | Հ. |
| Ադին | 55 | 80 | 752 | Հ. |
| Ատիեաման | | 42 | 383 | Հ. |
| Արդիկ | 213 | 269 | 2359 | Հ. |
| Արըխվէլի Մեծ | 70 | 75 | 710 | Հ. |
| — Փոքր | 40 | 56 | 437 | Հ. |
| — Միւս | 46 | 65 | 551 | Հ. |
| Արմուտլու | 32 | 52 | 440 | Հ. |
| Գալէլի | | 34 | 256 | Հ. |
| Գայգուլի-Ղազանճի | 23 | 38 | 361 | Հ-Կ. |
| — Չիֆտլիկ | 22 | 25 | 311 | Հ. |
| — Տիւգքէնտ | 25 | 36 | 328 | Հ. |
| Գարագիլիսէ Իլլի | 42 | 63 | 630 | Հ. |
| — Իլլի (Փոքր) | 180 | 222 | 1631 | Հ. և Հ-Կ. |
| — Նոր | 13 | 34 | 323 | Հ. |
| Գափուլու | 60 | 102 | 956 | Հ. |
| Գզըլգիլիսէ Մեծ | 72 | 96 | 718 | Հ. |
| — Նոր | 20 | 96 | 255 | Հ. |
| Գզըլղօշ | 33 | 51 | 438 | Հ. |
| Գըրգտէկիրմէն | 44 | 70 | 615 | Հ. |
| Դահարլու | 37 | 60 | 476 | Հ. |
| Դաշգալէ | 44 | 75 | 622 | Հ. |
| Դարբանտ | 17 | 38 | 341 | Հ. |
| Եասաղուլ | 73 | 104 | 839 | Հ. |
| Եկանլար | 48 | 64 | 661 | Հ. |
| Զաւինճ | | 30 | 248 | Հ. |
| Թալիպօղլի | 17 | 32 | 308 | Հ. |
| Թավշանլար | 83 | 119 | 873 | Հ. |
| Թէփէտէօլէկ | 53 | 88 | 625 | Հ-Կ. |
| Թէքնէլի | 14 | 32 | 404 | Հ. |
| Թիդոյի Խարապա | | 18 | 143 | Հ-Կ. |
| Թօմարտաշ | 96 | 61 | 556 | Հ. |

| ԳԻՒՂՈՐԱՑՔ | 1863 ՑՈՒՆՔ | 1873 ՑՈՒՆՔ | 1873 ՈԳԻՔ | ԱԶԳ |
|---|---|---|---|---|
| Թօփարլու | 39 | 66 | 569 | Հ. |
| Իկխիապի | 87 | 100 | 900 | Հ. |
| Իմիրխան | 38 | 57 | 565 | Հ. |
| Խանվալի | 25 | 19 | 185 | Հ. |
| Խաչագիլիսէ | 22 | 29 | 293 | Հ. |
| Խուխի պօղազ | | | 317 | Ք. |
| Խուըխ Փոքր | 17 | 31 | | Հ-Կ. |
| Ծիդելի | | | 176 | Հ-Կ. |
| Կապս | 26 | 44 | 356 | Հ. |
| Կիւզէլտէրէ Թուրքի | 28 | | | Թ. |
| — Հայոց | | 38 | 368 | Թ. |
| Կիւլլիւպուլագ | 10 | 9 | 151 | Հ. |
| Կիւրճի-եօլի | 22 | 31 | 435 | Հ. |
| Հաճի Խալիլ | 40 | 39 | 298 | Հ. |
| Հաճի Նազար-ղուլի | 73 | 100 | 800 | Հ. |
| Հաւիճ (Ղփչաղ) | 33 | 39 | 415 | Հ. |
| Հոռոմ | 148 | 211 | 1421 | Հ. |
| Ղազանճի | 58 | 81 | 638 | Հ. |
| Ղազարապատ | 60 | 42 | 353 | Հ. |
| Ղանլըճա վերին | 51 | 68 | 643 | Հ. |
| — Ներքին | 36 | 40 | 389 | Հ. |
| Ղասում-ալի | 38 | 29 | 303 | Հ. |
| Ղէղաճ | 24 | 31 | 276 | Հ. |
| Ղուլթնի-ղշլախ | 12 | 18 | 145 | Հ. |
| Ղուլիճան | 33 | 51 | 413 | Հ. |
| Ղօլղաթ | 32 | 54 | 673 | Հ. |
| Ղօնախղըռան | 65 | 90 | 775 | Հ. |
| Ճըղըխլար | 38 | 65 | 627 | Հ. |
| Ճլովխան | 24 | 38 | 347 | Հ. |
| Մահմուտճուգ | 74 | 123 | 1019 | Հ-Կ. |
| Մէլիքքէնտ | 39 | 58 | 546 | Հ. |
| Մէճիտլի | 62 | 100 | 732 | Հ. |
| Միրաք | | 66 | 572 | Ք. Եզ. |
| Մունճուգլու | 29 | 40 | 369 | Հ. |

| ԳԻՒՂՈՐԱՅՔ | 1863 | 1873 | | ԱԶԳ | ԳԻՒՂՈՐԱՅՔ | 1863 | 1873 | | ԱԶԳ |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | ՏՈՒՆՔ | | ՈԳԻՔ | | | ՏՈՒՆՔ | | ՈԳԻՔ | |
| Մուսլուգլու | 30 | 33 | 411 | Հ-Կ. | Սարըպաշ | 15 | 29 | 232 | Հ. |
| Մօլլա Կէօկճէ | 80 | 113 | 931 | Հ. | Սարիեար Մեծ | 42 | 49 | 476 | Հ. |
| Նորաշէն | 63 | 79 | 678 | Հ. | — Փոքր | 21 | 32 | 280 | Հ. |
| Շիշթէփէ | 20 | 33 | 281 | Հ-Կ. | Սէօկիւտլի | 130 | 178 | 1565 | Հ. |
| Շիրվանճուգ | 90 | 137 | 1202 | Հ. | Սուֆանվէրտի | 63 | 95 | 411 | Հ. |
| Չըրփըլը | 41 | 63 | 465 | Հ. | Սօնկուրլու | 35 | 59 | 521 | Հ. |
| Չրախլը | 55 | 81 | 837 | Հ. | Տանա-տամակիրմէզ | 31 | 57 | 529 | Հ. |
| Չօպան քէրպքմազ | | 33 | 316 | Ք. Եզ. | Տէրէքէօյ | | 20 | 135 | Հ-Կ. |
| Չօրլու | 25 | 36 | 345 | Հ. | Տիրէքլէր | 36 | 63 | 534 | Հ. |
| Պոյինտուր | 66 | 74 | 582 | Հ. | Տիւզքէնտ | 80 | 145 | 1061 | Հ. |
| | 30 | 52 | 359 | Յ. | | | | | |
| Պանտիվան | 40 | 57 | 475 | Հ. | — Թուրքի | 20 | | | Թ. |
| Պաշգիւղ (Արագած.) | 57 | 66 | 598 | Հ. | Փալուտլու | 36 | 43 | 367 | Հ-Կ. |
| — Նոր | 11 | 19 | 167 | Հ. | Փիրթիկքեանտ | 15 | 27 | 214 | Հ. |
| Պապուրլու | | 42 | 366 | Հ. | Քարաղբիւր | | 30 | 294 | Հ-Կ. |
| Պարնի գիւղ (Պէկքէնտ) | 71 | 101 | 782 | Հ. | Քեալալի | 16 | | | Հ. |
| Պէզիրխանէ | 40 | 54 | 475 | Հ. և Հ-Կ. | Քեաֆթարլու | 71 | 90 | 665 | Հ-Կ. |
| Պուղտաշէն | | 30 | 185 | Հ. | Քէյթի Մեծ | 48 | 63 | 584 | Հ. |
| Պօզեօխուշ | 12 | 21 | 274 | Հ. | — Փոքր | 18 | 31 | 275 | Հ. |
| Պօզտօղան | 77 | 84 | 658 | Հ. | Քէչիչքէնտ | 20 | 27 | 218 | Հ. |
| Պօղազքէսէն | 39 | 66 | 567 | Հ. | Քէփէնէկ Մեծ | 104 | 163 | 1239 | Հ. |
| Ջալապ կէչիտ | 33 | 50 | 428 | Հ. | — Փոքր | 34 | 53 | 392 | Հ. |
| Ջաջուռ | 109 | 106 | 1011 | Հ. | Քէօր-պուլագ | | 21 | 193 | Ք. Եզ. |
| Ջառջառիս | | 65 | 441 | Ք. Եզ. | Քէֆլի | 13 | | | Հ. |
| Սալուտ | | | | Հ. | Օրթագիլիսէ | 37 | 47 | 424 | Հ. |
| Սամուրլու | 11 | 17 | 165 | Հ. | Ֆիրթոյ | | 30 | | Թ. |

55. Առաջին չէն առ ստորոտով լերանց հիւսիսակողման վիճակիս և առ ակամբք Խօրթիւլիւ վտակի՝ է պահակատուն կամ հանգրուան սուրհանդակաց Ռուսաց Նովոյ-Դրոյիցքի (Նոր-Երրորդութիւն), յեզր համանուն լճին, որ և Մատարէփէ կոչի՝ 'ի Ջաւախս: Առ նովին վտակաւ է և Ֆիրդոյ գեօղ կամ հանգրուան չուարնակաց, իբրու 30 ընտանեաց: — Ցեկից կուսէ սոցին՝ 'ի ստորոտս բարձու (9850') Լեճլի կամ Ախալքալաքայ լերին՝ Տէրէքէօյ (Չորգիւղ) բնակեալ 'ի 20 տուն կաթոլիկ Հայոց. նոյնպէս և մերձաւորն Դիդոյի-խարապա: — Առ նովին Խօրթիւլիւ գետակաւ և 'ի Մ. Հ. Նուր Ահմէտ լերին՝ է Քարաղբիւր գիւղ, բնակեալ նոյնպէս 'ի կաթոլիկ Հայոց, 30 կամ աւելի տանց: — Իբրև մղոնաւ և կիսով 'ի Հր. Քարաղբիւրի և մերձ 'ի գետակն՝ կայ Ղազանճի գիւղ հայաբնակ, 'ի ստորոտս Նուր-Ահմէտ լերին իբր յ'2068 Չ. բարձու. և առ նովին գետեզերբ հանգրուան սուրհանդակաց Ռուսաց՝ Ղազանճիյնսքի: — Ի Հր. Ղազանճեայ երկու մղոնաւ կամ աւելի՝ կայ Շիշքէփէ գիւղիկ հին եկեղեցեաւ, առ աղբերակամբք վտակի փոքու, յորոյ վերայ յամի 1873 Ստեփաննոս Անանիկեանց Կիւմրեցի արկ վայելուչ կամուրջ եռակամար, սեաւ և կարմիր քարամբք, 50 Չ. երկայն և 6 լայն, հանդերձ սեննկաւ 'ի պէտս ուղևորաց, արձանագրեալ 'ի կճեայ կոթողի դյուշատակն 'ի հայ, 'ի ռուս և թուրք լեզու.

Շնորհօքն ամենազօրին Աստուծոյ շինեցաւ կամուրջս յինքնակալութեան Աղեքսանդրի Երկրորդի օգոստափառ կայսեր Ռուսաց, արդեամբ եւ ծախիւք Ստեփաննոսի Անանիկեանց, ի յիշատակ հոգւոյ փրկութեան իւրոյ կենակցին

Գայլիանեայ, եղբօրն Կարապետի եւ կենակցին Հռիփսիմեայ եւ ծնողաց նոցին. եւս առաւել վերակացուին շինութեանս Գրիգորի Ռափայէլեանց:

Մերձ 'ի կամուրջն կայ Թթուահամ հանքաջուր, յոր գան 'ի քաղաքէն (Կիւմրոյ) 'ի լուանալ, 'ի սակս առողջութեան: — Առ փոքր վտակաւն Եղի-տէրէ կայ Գզըլ-դօշ կամ Խաչ գիւղ, ամայի եկեղեցեաւ, որոյ են և արձանագիրք քննելիք, որպէս և նախայիշեալ տեղիքդ և որք զկնի. զի Բագրատունեաց և Պահլաւունեաց դաստակերտք գուշակին, որպէս Մարմաշէնն մօտակայ և վանորայք և եկեղեցիք Արևմտեան Շիրակայ. այժմեան եկեղեցին կոչի յանուն Ս. Աստուածածնի: Կայ և 'ի Հր. Ղիշթէփէի երկու մղոնաւ հեռի համանուն պահակատուն Ռուսաց: — Երկու մղոնաւ 'ի Հր. Գզըլ-դօշայ է Նոր-Գզըլգիլիսէ առ Եղի վտակաւ, յորում է Հայոց եկեղեցի Ս. Լուսաւորիչ անուն: Յհւ. սորա Ջիֆտլիկ կամ Գայգուլի-Ջիֆտալի գիւղ, 'ի ստորոտս Գարախաչ լերանց. և 'ի սորա Ե. Հր. Գայգուլի-Տիւզքէնտ գիւղ 'ի գլուխ գետակին. Թուի և 'ի սմա լինել հին եկեղեցւոյ կամ վանաց, զի է առ նմին և Քար-խարաբա աւերակ գեղջ: — Յն. սորա և մերձ յակունս Եղևայ' 'ի ստորոտս և 'ի խորշս Ալլաղան լերին' Պօզղուչ կամ Պօզ-եօգուչ գիւղ. եկեղեցին Հայոց' Ս. Աստուածածին: Ի սահմանս գեղջս և յայլ ևս կողմանս ձորակին Եղի-տէրէի գոն ցուրտ հանքաջուրք: — Սակաւուք հեռի 'ի սմանէ 'ի Հր. և նոյնպէս 'ի ստորոտս լերանց արևելեան սահմանին' կայ Սալուտ գիւղ: — Յարևմտից Սալուտի և յՆ. Սխի լերին' Կիւլլիւ-պուլագ (Վարդաղբիւր) գիւղ: — Յարևմտեան ստորոտս լերինն և մերձ 'ի գետն Արփա և 'ի ստորոտս Սխիայ, առ փոքու վտակի' Ալագիլիսէ գեօղ, բնակեալ 'ի Յունաց: — Ի Հր. սորին առ գետեզերբն կայ Պէնտրվան գիւղ, սուրբ Աստուածածին եկեղեցեաւ Հայոց, և փոքու ամրոցաւ, ուր միւս ևս պահակատուն Ռուսաց. և բերան գետակի միոյ յԱրփա. առ որոյ եզերբ յարևմտակողմն իբր չորիւք մղոնօք հեռի 'ի Պէնտրվանայ' Ջըգըխլար գիւղ:

Յանձուկ ձորահովտի Խլի գետոյ որ յարևելից յարևմուտս ընթացեալ Թափի յԱրփա, կան գեօղքն, ըստ ընթացից նորին, Ջօրլու, որ և Պօստանճի-խարաբա, Կիւրճի եօլի, Թէքնէլի և Ճէրապ-կէչիտ որ և Թալինսքի, յանկեան գետակցութեանն, 'ի 5150' բարձու. առ որով, որպէս անունն տայ գուշակել, անցք էին ընդ Արփա գետ, և այժմ պահակատուն Ռուսաց 'ի 5130' բարձու, որ է վեցերորդ' սկսեալ յառաջնոյն 'ի հիւսիսային արևմտեան ծայրէ վիճակիս: — Յարևելս կոյս Կիւրճի-եօլ գեղջ 'ի լերանցամէջս տափ զոլ մեծի աւերակ շինուածոյ, ձիթահանք հինգ, և բազում ջրաղացք, և այլ մնացուածք շինուածոց, զորս կոչեն Խարաբա Գարա-խաչի, այսինքն Աւերք Գարախաչ լերին. և 'ի քարանց անտի հանեալ տարեալ են 'ի պէտս շինութեան Ալեքսանդրապոլի. բայց ազգայնոց ոչ է քննեալ զտեղիս, որպէս վայելն էր: — Ի հարաւոյ գեղջն (Կիւրճի եօլ) և 'ի հիւսիսոյ Ղիշթէփէ լերին, իբր կիսով փարսախաւ հեռի յերկոցունց ևս' կայ Փալուտլու գեօղ, որ Թարգմանի Արքակաղնուտ, բնակեալ 'ի կաթոլիկ Հայոց: — Ջհարաւակողմն ձորահովտին Եղեայ պարսպեն գրեաթէ աղխաղխեալ խութք և սուր լերանց Ղիշթէփէի յարևելից, Կամխուտայ' յարևմտից, և Բոլոս-սարի 'ի միջին. վասն որոյ և ջուրք կամ գետք բղխեալք 'ի նոցունց' 'ի հարկէ ընդ հարաւ իջանեն, և չառք յիրար անկեալ' ապա դառնան յարևմուտս Թափիլ յԱրփա. բայց և չատից չեն նշանակեալ վերջին ընթացք յամայի սահմանս' որ շրջապատեն զքաղաքն և զամրոց վիճակին' զԱլեքսանդրապոլ: — Յարևելեան կողման անդ 'ի Հր. Ղիշթէփէի կան Սարիար գեօղք երկու, Մեծ և փոքր. և յՆ. նորա Ազպուլագ: Ի Մ. Հր. Ղիշթէփէի և յՆ. Հր. Բոլոսսարի' Քէքի կամ Քէյքի Մեծ և փոքր գիւղք երկու, մին 'ի Մ. Հր. միւսոյն իբր երկու մղոնաւ բացագոյն, առ վտակաւ' որ ուղղակի ընդ հարաւ ընթացեալ իջանէ 'ի քաղաքն և յանուն նորին կոչի: — Յարևմտից սորա փարսախաւ հեռի և նոյնչափ յՆ. Արփայ գետոյ կայ Եաաղուլ կամ Եաաաղուլ գեօղ 'ի ստորոտս Կամխուտ լերին: — Ի Հր. Մ. Սարիեարայ և Ազպուլագայ առ եզերբ նոցին գետակի կայ Արխվէլի Նոր կամ Երրորդ, զի կան և այլ երկու հին գիւղք համանունք: Յելից հարաւոյ սորին 'ի լեռնային և յարևելեան սահմանածայրս վիճակին' Ջաչուռ կամ Ճաճուռ գիւղ, յահեկէ նոյն վտակի առ Մարալ լերամբ: Ընդ մէջ Արխվէլեայ 'ի Մ. Հր. և ստորին Քէթեայ յՆ. Հր. կայ Տէրպէնտ գիւղ, Թերևս զի 'ի կիրճս լերանց է: Ի հարաւոյ կուսէ սորա' Թէօփարլու կամ Թէփիքլի. առ որով' 'ի պահու տպագրութեան գործոյս' ծանուցանէ ազգային օրագիր, յայտնեալ աւերակի եկեղեցւոյ, և 'ի նմին երեք գերեզմանք, որպէս և արտաքոյ նորին նոյնչափ: Գոն մերձ նմին և աւերակք վանաց առ Գօնագ-զըրան գիւղիւ, որ կայ յելից կուսէ առաջնոյն (գեղջն) և 'ի Մ. Հր. Ջաջուռի: Ի սորա ևս Նլ. հարաւոյ' 'ի սպառուած լեռնոտանց արևելեան սահմանին' Հաճի-Նազար դուլի գեօղ: — Ի լերինս յայտնին են քարահատք պիտանիք, որպէս և առ Գարախաչ լերամբ, յորոց մին կոչի Խաչքարի քարահանք. ուր 'ի պեղելն զերկիր, յամի 1867, վասն շինութեան ջրանցից, գտան կոփածոյ քարինք և եկեղեցեակ որմափակ, և եօթն գերեզմանք 'ի նմին. 'ի միումն արձանագիր կիսեղծ, յորմէ ոչ Թուական և ոչ այլ ինչ կարևոր ստուգեցաւ, բայց այս հատուած բանի.

Ես տէր Դաւիթ առ Աստուած փոխ.. ցեալ շինեցի զսուրբ եկեղեցիս... ծնողաց իմոց որք ընթեռնուք արդ? զիս յաղաւթս յիշեցէք եւ Քրիստոս... հասարակաց ողորմի ձեզ:

ի Հր. Աստրին Քէթեայ առ Նովին վտակաւ և 'ի Մ. Թէփէրլեայ՝ Օրբագիլիսէ, յորում հին եկեղեցի փոքր: — Ի հարաւոյ վերջին գիւղորայիցս՝ յընդարձակ սահմանի մինչև 'ի բերդաքաղաքն՝ չկան գիւղք և շէնք: Իսկ առ գետեզերբն յետ Ճէլէպկէչիտի 'ի Հր. Կամխուտ լեռին, է Նասպ գիւղ, առ որով եօթներորդ պահակատուն կամ սուրհանդականոց. յորոյ հարաւոյ երկու մղոնաւ կամ փարսախաւ ևս 'ի վայր առ գետեզերբն ութերորդ պահակատունն է, 'ի մէջ երկոցուն աղբերահոս ձորանիստ Վերին և Ներքին Ղանըրձա գիւղից. յորոց անուն կոչի և իններորդն՝ որ 'ի հարաւոյ Նոցին և մերձ 'ի բերդաքաղաքն:

36. Ցարակից մերձաւորութիւն երկոցուն Ղանըրձա գիւղից, գետանցքն առ Նոքօք, (ուր և յառաջնումն արկեալ էր կամուրջ, յիշատակեալ 'ի սկիզբն ԺԳ դարու [1]), ևս առաւել որ առ երի Նոցին՝ 'ի հիւսիսոյ կուսէ՝ մենաստանն կիսաւեր կիսականգուն, հռչակաւորն այն Մարմաշէն, յայտ առնեն զի տեղի նշանաւոր էր աստ. այլ արդ հին բնակութեանցն անչքացեալ և 'ի նոր գաղթականաց Հայոց 'ի կողմանց Կարուց բնակեալ, տակաւին քաջանշան մնայ մենաստանն, հոյակապ եկեղեցեաւն և շիրմօք պայազատաց Պահլաւունեաց: Ո՞ առաջին շինող կամ յոյր սակս Մարմաշէն կոչեցեալ, յանուն Մարեմայ ուրուք տիկնոջ [2], եթէ Մարիմ կամ Մարմ



68. Մարմաշէն:

կոչեցելոյ առն՝ ոչ է յայտ. բայց ոչ է ընդունելի Մարմարաշէն կոչումն, որպէս առ Կիրակոսի Պատմչի միայն գրի, թերևս վրիպակաւ գրչին, իբրու թէ մարմարիոն քարամբք իցէ շինեալ, որ ոչ է: Առաջին յիշատակող շինութեանն Ասողիկ՝ խառնակ իմն առնէ, որպէս և 'ի յիշատակի Բգնայրի տեսաք. իսկ արձանագիրք և այլ պատմիչք հաւաստեն, ընդ որս և ժամանակագիրն Սամուէլ, հանդերձ թուականաւ սկսմանն և աւարտմանն, եթէ, եղև « Սկիզբն շինելոյ մեծանուն և վայելչաշէն
» զարմանակերտ և հոյակապ ուխտին Մարմաշինի՝ 'ի
» քրիստոսասէր իշխանաց իշխանէն Վահրամայ, սկսեալ
» 'ի ՆԼԵ (986), և աւարտեալ 'ի ՆԽԳ (994) ամին, որ
» լինի ութ ամ »: Այլ ստուգագոյն ևս վաւերական՝ ըստ բաղդի՝ անջինջ մնայ, արձանագրեալն յերկար և ոյան-

[1] Յիշելոյն յարձանագրի Տեառն Գրիգորի, որ ստորև ընթերցցի, երևին ցարդ սեննկաձև քառակուսի մնացուածք:

[2] Ոմանք համարին յանուն Մարեմայ Թագուհւոյ Ափխազաց, որոյ արձանագիր ընթերցցի ընդ հուպ. այլ Վահրամայ արձանն հնագոյն է քան զնորայն և կոչէ ինքն զտեղին Մարմաշէն. այլք յանուն ճարտարապետին կարծեցին, այլ և այս ոչ հաւաստի:

*ծալի բանիւ՝ 'ի նոյն իսկ 'ի շինողէն, 'ի հարաւային որմն եկեղեցւոյն արտաքուստ, որ ցուցանէ զշինութիւնն ամենայն սարգ աւարտեալ յամս քառասուն, (986-1029). այս է արձանն.*

*Շնորհիւն Աստուծոյ ես Վահրամ իշխանաց իշխան անթիպատ պատրիկ որդի Գրիգորի իշխանի Հայոց Մեծաց ի ցեղէն Պահլաւունի եւ ի զարմից սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչի որ յաղագս ի Քրիստոս յուսոյն հիմնադրեցի զսուրբ եւ զտիեզերական ուխտս Մարմաշէն սկսեալ ի ՆԼԵ թուականին Հայոց յաւուրս Սմբատայ որդւոյ Աշոտոյ Հայոց թագաւորի մինչեւ ի ժամանակս Յովհաննէսի որդւոյ Գագկայ Հայոց Շահնշահի առն իմաստնոյ շինողի եւ խաղաղարարի, եւ ի թուականիս Հայոց ՆՀԸ. եւ կատարեցաք մեծ ջանիւ եւ բազում ծախիւք ես եւ մայր իմ Շուշիկ Հայոց տիկնաց տիկին եւ եղբարք իմ Վասակ իշխանաց իշխան որ նահատակեցաւ ի Թուրքաց պատերազմի եւ Ապլխարիբ Հայոց մարզպան եւ մանուկն Համզէ. որք էաք ամենայն տամբ եւ տոհմիւք հաւատարիմք տերանց մերոց եւ նահատակեալ ի վերա տանս Հայոց աշխատութեամբ եւ արեամբ մերով եւ որդւոց մերոց եւ գանձուց առատութեամբ եւ ամենայն հնարիւք խնդրէաք զխաղաղութիւն աշխարհիս եւ զհաստատութիւն եկեղեցեաց. Շինեցաք եւ այլ բազում եկեղեցիս եւ վանորայս. բայց զտեղի հանգստեանս մերոյ առաւել պատուով մեծացուցաք եւ լիացուցաք ամենայն գոյիւք լերամբք եւ դաշտաւք աւանդեցաք ի սա գիւղս եւ ագարակս գանձագինս. զԲագարանի գեղ եւ զկիր ագարակն. զԳոդլոն եւ զՊորտանգն զԱրագէծ եւ զԱզատա զԱսմանէն եւ զԵղնկայն. եւ յԱւշականի այգիք եւ դ ջաղաց. եւ բ ջաղաց ի Գողս. ի յԱշտարակի այգի. ի Կարբոյ դաշտի այգի. ի Սերկեւլի այգի. ի Վժան այգի. ի Մրենի այգիք. ի յԱնի տներ եւ կրպականի. եւ զարդարեցաք զսա ամենայն կազմութեամբ ի յիշատակ յաւիտենից մեզ եւ որդւոց մերոց. եւ կարգեցաք ի ձեռն սուրբ հաւր Երեմիաի եւ որ զկնի յաջորդեցաւ Սոսթենէս նորին որդւացեալ. եւ փոխարէն հատուցման ընկալեալ մեր ի ժառանգաւորաց սուրբ ուխտիս տարին կ քառասունք անխափան մինչեւ ի գալուստն Քրիստոսի. Արդ եթէ ոք ի մերոց կամ յաւտարաց սաւգ որ զմեր զտուրս ի սուրբ ուխտէս պակասեցանէ կամ հայր որ զմեր ժամն խափանէ ինքն որոշեալ լիցի ի Քրիստոսէ եւ դատող նորա սատանայ լիցի եւ մի տեսցէ նա զփառս Աստուծոյ. իսկ որք հաստատուն պահեն զաւանդս մեր աւրհնեալ եղիցին:*

*Ձէք Երկրայել զի որք յետ այնքանեաց դատաստանաց եկեղեցեաց եւ վանորէից՝ աստ ընտրեցին զհանգստարան խորեանց յետին, ոչ խնայէին ընչից եւ խնամոց՝ առ յարդարել զսա խրաւամբք մեծաշէն եւ զարմանալեաց. որում վկայէ եւ եկեղեցին կանգուն մնացեալ, չափաւոր մեծութեամբ, մանաւանդ թէ փոքր, քառակուսի, 12 Զ. երկայն, 10 լայն, կարմրագոյն վիմաց, առանց սեան վերամբարձ ունելով զգմբէթն խորշխորշեալ, չորիւք լուսամուտիւք, արտաքուստ սիւնազարդ եւ սրանկիւն կամարք 'ի վերայ նոցուն, որով ստարանայ 'ի ձեւոյ եկեղեցեաց*

Անւոյ. երիւք քանդակագործ մեծ պատուհանօք յնլ. 'ի Հ. և 'ի Հր: Սեղանն վեց Զ. երկայն և սակաւ ինչ պակաս լայն՝ ունի ուանդատունս կամ մատրունս աստի և անտի, մէն 3 Զ. երկայն, 1,75 լայն, սակաւ մի ցած յատա-կօք քան զբեմն. և դուռն յարևմտից: Ի Թխկանց կիսաբո-լոր խորանին կան եօթն լուսամուտք ցածունք և փոքունք, կամարակապք և սիւնաւորք, ընդ նկարաձև քարաշար միահետ քուով. ըստ կաթողիկէին Անոյ են և յարատքին որմունս սորին անկխնաձև գոգացեալ խորշք: Ճամա-տունն՝ զրեաթէ հաւասարաչափ մեծութեան տաճա-րին, քայքայեալ է. և կործան դնին բազմանկիւնի միապատանի սիւնքն չորեքին՝ որք բառնային զյարկն. այլ արդ վարկպարազի իմն կարկատեալ մասամբ 'ի նորեկ բնակչացն՝ ընտրեալ է 'ի տեղի աղօթից. բայց կանգուն կան աստի և անտի մատրունք երկու կամ եկեղեցիկք փոքունք սրածայր գմբեթաւորք՝ կարմրագոյն քարամբք կերտեալ. այլ քանզի զքարինս արտաքին երեսաց որ-մոցն բարձեալ է յետնոց՝ անզիր և անյիշատակ մնան: — Են առ նոքօք, և հեռագոյն ևս, հինգ տապանք չիրմաց, յորոց մին բրգաձև՝ էր Սոփիայ կնոջ Վահրամայ, որ-պէս յայտնեցաւ յամի 1824, 'ի ստորերկրեայ դամբանի, 'ի վերին Ղանլըճա, ուստի բարձեալ զկափարիչն որ-ձանագրեալ՝ բերին 'ի ստորին գիւղն, և եդին 'ի վերայ գերեզմանի քահանայի միոյ նոր վախճանելոյ (Տէր Պօ-ղոս անուն). և սյս է գրուածն հանդերձ Թուականաւ 1015 ամի.

Այս հանգիստ է Սոփիայ աղախնոյն Քրիստոսի կնոջ Վահրամա Պահ-լաւունո իշխանաց իշխանի դստեր Տիգրանայ Հայոց մարզպանի տեառն Ան-ձեւացեաց մեծին Վասպուրականի. Կիսաւրեա առ Աստուած փոխեցա եւ թողի զաւակս իմ տրտում. աղաչեմ յիշեսջիք զիս եւ Աստուած ձեզ ողոր-մեսցի. Թ. ՆԿԴ:

Երկուք ևս 'ի տապանացն որ առ ժամատամբն՝ ունին զանթուական և զհամառօտ արձանագիրս զայսոսիկ.

Այս հանգիստ է Ապուղամրի որդւոյ Մագխտրոսի.

Այս է հանգիստ Ղա(րիփ)ըս որդւոյ Ապուղամրի:

Եւ հինգերորդն՝ նորագոյն քան զնախագրեալսն, օրիորդի միոյ, որպէս Թուի վաղամեռիկ եղելոյ [1], յամի 1342.

Այս հանգիստ է Նլու խաթունին դստեր Թալայի. Թվ. ՉՂԱ:

Ցայտ է զի դգա կրսեր են բազում ժամանակօք քան զՍոփիա և զՎահրամ և զյիշեալսն յարձանի նորին, որոց տապանք ոչ յայտնեցան. այլ զի ատանօր էր և Վահրամայն՝ վկայէ երկար արձանագիր Գրիգորի եպիս-կոպոսի որդւոյ Ապուղամրի: — Աւ յիշեալ արձանաւդ կայ այլ արձանագիր հին՝ Մարեմայ դշխոյի, այսպէս.

Շնորհիւն Աստուծոյ ես Մարիամ Աւխազաց եւ Հայոց թագուհի դուստր Մեծին Սենեքերիմա եւ թոռն Գագկա Հայոց արքայի որ ետու զՏարուս ի սուրբ եւ ի տիեզերական ուխտս Մարմաշէն առաջնորդութեամբ Հաւր Սու-թենիսի վասն (Գա)գկա իմ պապոյն մեղաց թողութեան եւ Կատային իմ հանկանն եւ հատուցումն բարի ընկալա ի սրբոցս զսեանն եկեղեցին զսուրբ Պետրոս ի Քրիստոս պատարագաւ զտարին ողջոյն Կատային իմ հանկանն [2]

1 Երկրորդ տառ անուան դստեր Թալայի՝ ահպաձև կամ փչա-ձև իմն ունելով 'ի գլուխն, որպէս երևի հան-դէպդ, ոչ գիտեմ ստոյգ Նլու ընթեռնլի էր, եթէ Նագլու, եթէ այլազգ. բայց տառքն ան-եղծք են:

ՆՀՈՒ

2 Կատա նոյն ինքն է Կատրանիդէ կամ Կատրամիդէ թագուհի, կին Գագկայ Ա, որոյ դուստր՝ մայրն Մարեմայ և կին Սենեքերի-մայ արքայի Արծրունեաց՝ է Խուշուշ, որոյ անունն ոչ է նշանա-կեալ 'ի Տոհմացուցն Ծառի անդ Բագրատունեաց, (էջ 96), որպէս ոչ է նշանակեալ և յիշեալն յէջ 138 Սոփիա, դուստր Աշոտոյ Ողորմածի և կին Թագաւորին Վրաց, որ Թուի Բագարատ Բ, զի սա էր իշխող նոցին յամս 958-994:

*մինչ ի գալուստն Քրիստոսի։ Արդ եթէ ոք ի մեծամեծաց կամ ի փոքունց
ի Հայոց կամ ի Վրաց, որ այս գրոյս հակառ կա եւ զիմ զգեւղն զՏարուս
ի յայս ուխտէս հանէ, ինքն ելցէ ի կենացն Աստուծոյ եւ պարտական լիցի
արեանն Քրիստոսի եւ մի տեսցէ զփառսն Աստուծոյ. իսկ որ հաստատուն
պահէն ղաւանդս մեր աւրհնեալ եղիցին։*

*Միւս եւս երկար արձանագիր կարեւոր՝ ՚ի հիւսիսային  րոգումն Նորին յետ 200 ամի շինութեանն (1225) ՚ի ձեռն
որմն տաճարին գրեալ ՚ի քսան և մի տողս, յայտնէ զնո֊  պայազատաց զարմի Նոցին Պահլաւունեաց.*

*Ի ժամանակս բարեպաշտից եւ աստուածասիրաց պատրոնաց մերոց Ա֊
թաբակ Իւանէի եւ Մանտատորթա խուցէս Շահնշահի հրամանաւ սոցին
վերստին նորոգումն եղեւ հրաշափառ տաճարի Աստուծոյ մաւրս լուսոյ սըր֊
բոյ կաթողիկէի Մարմաշինոյ ի ձեռն որդւոց Ապուղամրի Մագիստրոսի Տէր
Գրիգորոյ էպիսկոպոսի եւ հարազատի իմոյ Խարփին թոռանց Վարհամա
իշխանաց իշխանին եւ զարմից եւ շառաւեղի սրբոյն Գրիգորի (չի)նողի ի
հիմանց մեծաւ տենչմամբ եւ յուսով (բա)զմաւ վասն բազմագումար քա֊
հանայից եւ պարգեւեալ արդիւնս յոլովս գեղաւրայս այգեստանս կուղպա֊
կանի Ջաղացանի որ եւ ցուցանէ իւր արձանագիրն մի ըստ միոջէ. եւ փառ֊
թամացուցի ամենայն գոյիւք առ ի լնուլ եւ առաւելուլ զպէտս կարեւորս
ղիւրեանց եւ զեկաց. եւ ունէր ժամանակս իբրեւ ոչ սակաւս զի աւերեալ էր
յանաւրինաց եւ զվանքս գեղ արարեալ եւ զկաթողիկէս բերդանման ա֊
մրացուցեալ էր եւ կայր ի խաւարի սգաւորութեան զրկեալ յամենայն գոյից
մինչեւ յաւրսս յայսոսիկ ✠ Իսկ ի ՈՀԴ թուականիս Հայոց քաջ եւ արի
զաւրականն Քրիստոսի սիրելի եղբայրն իմ Խարփին իմով կամակցութեամբ
խորհուրդ բարի միտ արկեալ ազատել զսա ի տղմուտ եւ ի զաղիր մթնա֊
զգածութենէն հասուցանել նախկի փառաւորութեանն հանեալ արտաքս ըզ֊
չինական եւ եղեւ բնակարան սրբոց քահանայից եւ կրաւնաւորաց հաճոյա֊
ցելոց Աստուծոյ. զարդարեցաք զսա սպասիւք պայծառազգեստիւք եւ սըր֊
բութեամբք ոսկեղէն եւ արծաթեղէն եւ հին եւ նոր կտակարանաւք եկեղե֊
ցականաւք, եւ ընծայեցաք ի սմա նուէր զմեր հայրենի գեղն զԱզատս ✠
եւ որ ի վանիցս հողիս վերայ շինեցաք եւ անուանի Տիրաչէն. եւ ի յայնկոյս
գետոյն Ջաղացանի որ կան ի կարմըն(ջէն) ի վայր եւ վեր զխոտ ղհող եւ
զոր ինչ ի սկզբանէ ունէին. եւ ի քաղաքիս զմեր պալէնի հայրենիք եկեղե֊
ցին զսուրբ Ստեփանոս բո(լոր) ամենայն ժողովրդեամբն. եւ երկու այգի ի
Մարմետի որ ի նախնեաց մերոց ի մեղ էր հասեալ. եւ միաւորեցաք զվերի
վանքն մեծ վանիցս իւր ամենայն ստացուածաւք եւ լիցի հրամանաւ միոյ
առաջնորդի։ Մինչ այս առ այսչափ կատարեցաւ աւժամայն գեղեցկագեղ*

եղբայրն իմ Խաչիկ Մագիստրոսն գովեալն յամենայն լեզուաց մարտիրոսացաւ ի պատերազմի անաւրինաց եւ միայն մնացի ես Գրիգոր եղկելի եւ զրկեալ ի նմանէ. զմարմին նորա բերեալ թաղեցաք առ դրան սրբոյ կաթողիկէիս մերձ առ Նշխարս հաւուն մերոյ Վահրամա իշխանի: Եւ փոխարէն հատուցին սպասաւորք սորա ընդ մերոց արդեանցս զոր արարաք զկաթողիկէիս աւագ խորանին պատարագն յանուն նահատակին Քրիստոսի Խաչիկին կատարել յամենայն աւր ի սկզբանէ տարոյն մինչեւ ցկատարումն տարւոյն յայսմ հետէ մինչ ի ծագումն Որդոյն Աստուծոյ. որ ոք խափանէ կամ չորթել ջանայ յընչից էկեղէցոյս որոշեսցի ի փառացն Աստուծոյ եւ զրկեսցի ի մշտնջենականացն. կատարիչք գրելոյս աւրհնեսցին յԱստուծոյ եւ ի սրբոց նորա յոգի եւ ի մարմին:

Ցայսմ կողման տաճարիս 'ի վերայ դրանն կայ խաչ- վէմ քանդակեալ, թուականաւ 1026 ամի և բանիւս.

## Թուական ՆՀԵ[1]. Ես Մատաթէս կանգնեցի.

Եւ 'ի ճակատ դրան հիւսիսակողման մատրանն՝ անթուա- կան արձանագիր Նուիրատուի ուրումն, այսպէս.

Ես Տէր Գրիգորս Տեառն Սարգսի ետու զիմ սուրբ Նշանս ի սուրբ ուխտս Մարմաշինի, եւ փոխարէն հատուցին զվարդեւարին քառասունքն եւ զխաչին ութաւրէքն, մինչ ես կենդանի եմ Տեառն Սարգսի, եւ յետ իմ վախճանին ինձ. եւ եթէ ոք առաջնորդ որ լինի խափանէ նզովեալ եղիցի ի Տ(եառնէ). կատարիչք գրոյդ աւրհնեալ եղիցին:

Արձանագիր Գրիգորի եպիսկոպոսին յայտ առնէ զի երկու վանք էին 'ի տեղւոջս, մին ստորագրեալս Մարմաշէն՝ որ Մեծ կոչի առ միւսովն. իսկ միւսն Վերի վանք, զի կայ 'ի Հ. Ե. մեծին սակաւուք հեռի 'ի լանջակողման ձորոյն, փոքու վտակաւ անջրպետեալ 'ի ստորնոյն, այլ աւերեալ է, և միայն որմն հիւսիսային կանգուն կայ. սատանօր էր գերեզման Սոփիայ տիկնոջ: Ի հիւսիսոյ կուսէ վերին վանացս կայ քարայրն[2], յոր ապաստանին և արդ բնակիչք գեղջն: — Արձան թագուհւոյն Մարեմայ յայտնէ մեզ եկեղեցի մի յանուն Ս. Պետրոսի, Մեանն եկեղեցի վերաձայնեալ, թերևս մի յերկոցուն սրագմբէթ մատրանցն: — Միւս ևս նշանաւոր չէն և տեղի 'ի նախագրեալ արձանագրի Ապուղամրենց՝ է դաստակերտ նոցին Տիրաշէնն, զոր 'ի վերայ հողոց կալուածոց վանացն շինեցին 'ի բնակութիւն մարդկան, վասն որոյ և մարթ է յայս անուն կոչել զվերին Ղանլըճա գեօղ՝ որ 'ի բարձու քարափան կայ, երր 70 տամբք, առ քարահատիւք. իսկ զՍտորինն՝ որ 'ի դիւրի կայ յեզր Ախուրենոյ՝ 40 տամբք Հայոց, համարել բուն Մարմաշէն:

57. Յիշատակեալքն յարձանագրին Վահրամայ վանահարք ուխտին, Երեմիա և Սոսթենէս աշակերտ նորա և յաջորդ, ծանօթք են և այլուստ և արժանիք յիշատակի: Զառաջնոյն՝ ասէ Զաքարիա Սարկաւագ Պատմիչ[3], 'ի հին և 'ի ընջագիր ձեռագիր մատենի Սանահնի վանից ընթերցեալ այսպէս. «Եւ մեռաւ հայրն Մարմաշինու[4], » և նստաւ 'ի տեղի նորա հայր զարմանալին և սքանչե- » լագործ այրն Աստուծոյ Երեմիա, այր պարկեշտ սուրբ » և գիտուն, զարդարեալ ամենայն առաքինութեամբ, » կրկին մարդով, ներքնով և արտաքնով. և առնէր հրաշս » ևս, զոր մի 'ի բազմացն ճառեցից: Մերձ վանացն

1 Ոմանք միայն ՆՀ. ընթեռնուն, որ է ամն 1021:

2 Շահխաթունեանն (Բ. 275) գհայրենիք բառ արձանագրին ծխալմամբ ույք ընթերցեալ, կարծէ զայս քարայր նշանակել, որպէս և զերկոսին գեօղսն յիշատակեալս յարձանին Վահրամայ զԱղուտ և զԱւանէ, մի անուն ընթեռնու Աղաւտաղաւանէ, և նոյն ասէ ընդ Աղուտ գեղջ արձանին Գրիգորի եպիսկոպոսի. սակայն յերկոսին ևս արձանսն՝ Աղուտ գրի գեօղն և ոչ Աղուտ: Անծանօթ մեան տեղիք սոցին, այլ թուի թէ Աղատա մօտ էր 'ի Մարմաշէն:

3 Ի կոնդակի Յովհաննավանից, Գլ. Է:

4 Մարմառաշէնոս գրէ Զաքարիա:

» գայր ջրամօղով փոքրիկ ծովակ. և սուրբն գնացեալ
» առ ափն ծովակին աղօթէր. և եկեալ մի յաշակերտաց
» նորա 'ի միւս կողմն ծովակին՝ ձայնէր առ հայրն. և նա
» ոչ լսէր զձայն աշակերտին, վասն զի բազմութիւն գոր-
» տաց աղաղակէին. իսկ սքանչելի այրն Աստուծոյ Երե-
» միա սաստեալ գորտացն՝ ասէ, Լռեցէք. իսկոյն լռեցին
» գորտքն, և մինչև ցայսօր կան լուռ և ոչ խօսին: . . .
» Ի այն ժամանակս սքանչելին Երեմիա հայրն Մարմա-
» շինու, թողեալ զտուն իւր՝ ձեռնասուն աշակերտին
» իւրոյ Սոսթենեայ, և ինքն գնաց 'ի սուրբ և 'ի հռչա-
» կաւոր մենաստանն յանապատն Յովհաննու վանից,
» առ զարմանալին Մխիթար՝ հայր անապատին. և անդ
» ճգնեալ և անդ վախճանեալ և անդ թաղեցաւ: Եւ 'ի
» ժամ մահուն եկեալ Սոսթենէս աշակերտ նորա, ընդ
» նմա և Գրիգոր վարդապետ Աւակայ որդին, և թա-
» ղեցին զնա հանդերձ հայր Մխիթարիւ. և դարձեալ
» եդին դաշինս 'ի մէջ իւրեանց, զի սիրով լիցին առ մի-
» միանս, և զվիճակեալ թեմն երկուց վանացն 'ի միա-
» սին կալցին, և մի հարստահարեսցեն զմիմեանս. 'ի
» գետոյն Բասաղու մինչև ցԴուռն Կարուց և Ծաղկո-
» ցաց. և հայրն Յովհաննու վանից իշխող լիցի Մար-
» մաշինու. և գրեցին կոնդակ Յովհաննու վանից, և
» եդին կնիք Սոսթենէս և Գրիգոր վարդապետք, զոր
» գրեցաք, Վաղթանկ իշխան և ազատքն Արուճայ և
» Թալնայ, և այլք որք գտան անդ, և կանգնեցին խաչ և
» արձան գրեցին 'ի վերայ գերեզմանին Երեմիայ. և
» գնացին յիւրաքանչիւր տեղիս: Եւ գիրն որ գրած էր
» 'ի վերայ գերեզմանին՝ այս է. ՆՁԲ թուին. Ես հայր
» Երեմիա առաջնորդ սուրբ ուխտին Մարմաշինու
» սիրեցի զվարս միայնութեան, աւանդեցի զվերա-
» կացութիւն ուխտին իմոյ անդրանկին իմում Սոս-
» թենէսի. Եւ ես եկեալ բնակեցայ յանապատի
» աստ, եւ ի տեղւոջս ընկալայ զփոխումն. Արդ
» աղաչեմ յիշեսջիք ի Քրիստոս»:



69. Մնացուած վերին վանաց Մարմաշինու:

Թուական մահուան Երեմիայի, 1033, ցուցանէ լեալ
յետ չորից կամ հնգից ամաց աւարտման շինութեան
Մարմաշինու և յանձնելոյ նմա զայն՝ Վահրամայ. իսկ
յաջորդ նորին Սոսթենէս՝ յիշեալն յարձանի դչխոյին
Մարեմայ, ծանօթ է և 'ի թղթոյ Մագիստրոսի, տասն
կամ հնգետասան ամօք ևս յետոյ. յորոյ 'ի միումն գովէ
զարիութիւն նորա, «ըստ զօրութեանն Աստուծոյ, որ
» յայսպիսի հանդիսական և խռովութեան ժամանակի՝
» պատրաստեաց զքեզ իբրու ճակատամարտիկ խմն միա-
» մարտ և աննահանջ արիութեամբ դիմակացեալ ան-
» տանելի և անժուժելի խաղմարարաց՝ ներքուստ և ար-
» տաքուստ», և այլն. ապա յաւելու. «Այլ 'ի ժամա-
» նակիս խռովութենէ և 'ի ճանապարհիս աւերմանէ՝
» ոչինչ առաքեցի քեզ այժմ, բայց սակաւ մի ձիր ինչ,
» զորոց անուանս իմով ձեռամբ նկատեալ ընթերցցիս,
» և այնքան պահանջեսցես 'ի բերողէդ, և աղօթս մեզ
» առնել». և այլն: Յայլում թղթի ասէ՝ ընդ իւ-
րում պատուընկալութեանն և զայն, զի կայսրն՝ Կոս-
տանդին Մոնոմախ՝ առաքեաց ոսկի մատանի, «Ուխ-
» տիդ սուրբ և մայրաքաղաքիդ Մարմաշինոյ, (և) քեզ
» որդւոյդ Սոսթենէսի արի և առաքինասէր առն՝ յայժ
» զօրաւոր բանս, հանդերձ կնքովն ոսկեղինաւ, 'ի հրա-
» մանէն աստուածեղէն զօրութեան». և խրատէ ևս,
թէ, «յորժամ հասցէ նամակդ՝ արա սէր որդւոց և ժամ
» երանելեացդ, և գրեա զայս ընդ ամենայն մայրաքա-
» ղաքս որդւոց. և զգիր իմ առաքեա առ ամենեսեան. և
» արձակեա եղբարս, կամ եկեսցես դու և տարցես զոսկի
» մատանիս. զի ես մինչև ցաւթօրէս կատարեմ՝ ոչ կա-
» միմ յառաջել»: Եւ զի ունէր Մագիստրոս սերտ ըն-
տանակցութիւն ընդ վանաց Մարմաշինու՝ իբրև հայրե-

Նական դաստակերտի՝ յայտ է և 'ի Թղթոյն առ Սանա֊
հնեցիս, առ որս կամելով աւանդել ինչ, ասէ. « Ի սրբոյ
» Խաչէն 'ի մեզ մարդ եկեսցէ, և մեք զկնի Նորա մինչև
» 'ի Մարմաշէն առաքեմք »:

Բաց յերկուց աստի առաջնորդաց՝ ոչ յիշին այլք, զի
չկան և արձանագիրք, ոչ 'ի միջոց երկերիւր ամացն՝ ցնո֊
րոգութիւն տեղւոյն, և ոչ զկնի այնր, թերևս զի յետ
սակաւուց յասպատակէն Թաթարաց ամայացաւ: Այլ
քան զարձանս և քան զբնաւս արժան է անմոռաց ունել
զյիշատակ շինողին և հանգուցելոյն ընդ հովանեաւ
Նորին. այն է Վահրամ Պահլաւունի. արդարև մի յար֊
ժանապէս մեծ կոչելոց անձանց 'ի Հայս. որ աստուած֊
պաշտութեամբ, շինութեամբք և արիութեամբ՝ քան զյո֊
լովս գերազանցեաց. և զոր արձանագրէրն զանձնէ՝ ոչ
միայն ճշմարիտ էր, այլ Նոյնպէս եցոյց և յետոյ պաշտ֊
պանութեամբ Գագկայ Բ. և քաղաքին Անւոյ, առաքի֊
Նաջան պատերազմաւ և խրատու. Նոյնպէս և կնքեաց
զկեանսն արեամբն 'ի մարտի, առ դրան քաղաքին Դըւ֊
Նայ, անցեալ զոլով զութսնամենիւք ( յամի 1043–4 ).
զոր և արժանապէս ողբովք և Ներբողիւք յեղյեղէ 'ի
Թուղթս իւր իմաստասէրն Գրիգոր Մագիստրոս՝ եղբօր֊
որդին իւր, տալով ծանօթս ինչ և զկերպարանաց վեհ֊
ագինն. « ամենայարմար հասակաւ, գեղեցկապարանոց
» և չքնաղադէմ տեսլեամբ, որպէս Արայն մեր և Անու֊
» շաւանն ». և ապա յիշէ « զգեղաչիտակ դաստակ եր֊
կայնաձիգ մատանցդ ». և 'ի վերայ բազմապատիկ լա֊
ւութեանցն, « Ձեռն յօրինիչ և կերտացող և առատա֊
» ձիր 'ի գանձուց բաշխումն. յոգնարուն վկայից կազ֊
» մեաց խորան, և աստուածային խորհրդոյն կանգնեալ
» սեղան և միանձանց բնակութիւն, և կենդանի վկայից
» և խաչակրօն դասուց և անմարմնոցն համեմատեալ միա֊
» ղինաբար ստացեալ վարս:..(Բնակութիւն Նորա) կար֊
» ծեցեալ էր ամենեցուն ապաստան, որ և ոչ իսկ հար֊
» ցեալք՝ որպէս ախորժէին՝ այնպէս պատրաստէր. և այս
» ոչ միայն մերոյին սեռի և համազանց, այլ և Իվերիա֊
» ցւոց և Պարսից... Այսպէս սփռեալ բարեացդ քոց
» համբաւ ընդ տիեզերս տարածէր. որ և որք ոչ են ժա֊
» մանեալ տեսութեան քո՝ 'ի հրեշտակաց քոց հարցեալք
» պատուէին զնոսա, իբրու տեսութեան քո արժանա֊
» ցեալք՝ զմիմեամբք ելանէին, և զգիր գեղեցիկ տառի
» քո՝ մարգարէական մատենից համեմատեալ՝ համբու֊
» րէին, և հայցէին այնմ արժանանալ միայն. և այս
» յաշխարհին Քաղդէացւոց և Մարաց և Պարթևաց, և
» պարգևօք պատուէին զքեզ. որ և Յունաց իսկ ինքնա֊
» կալացն պատուեալ մեծագոյն իշխանութեամբ, և այն
» 'ի քում իսկ բնակութիւնդ առաքեալ... Եւ Իվերիա֊
» ցւոցն հզօրաց և արիական զօրաց Նոցա՝ բազում ան֊
» գամ մարտակցութեամբ, և արեամբ և վաճառմամբ
» որդեացդ և քոյդ ազգի՝ գնեալ զաշխարհդ. և երբեմն
» 'ի Նոսա արի երևեալ և հրաշից հիացման արժանի և 'ի
» վեր քան զմտածութիւն, որ և Նոցա իսկ զքոյդ հան֊
» դիսի մրցութիւն՝ տաղս և առինչս յօրինեալ՝ անպատ֊
» կառաբար աղատագունդն պարէին, և 'ի հրապարակս
» զռեհից և քաղաքաց իբրու զդիւցազանցն երգէին. իսկ
» աննախանձոտք և առաքինասէրքն՝ մինչ տակաւին էիր
» կենդանի՝ մատենագրել ոչ դանդաղէին ». և այլն:
Եւ յետ յիշելոյ զնահատակօրէն կատարումն 'ի մարտի,
յաւելու. « Եւ 'ի վերայ շիրմի քո լոյս եօթնօրեայ արժա֊
» Նապէս և առանց յերկուանալոյ ճշմարտեալ սրբոցն և
» աստուածազգեաց միանձանցն՝ որք յայնմ վանս ճըշ֊
» գրրտատեսիկ և հրեշտակակրօն դասուն »: Եւ 'ի Թըղ֊
թին առ Սանահնեցիս՝ այսպէս բովանդակէ զյարգ «Ծայ֊
» րագոյն ծերունւոյն, և աստուածային և ամենայն բո֊
» լոր բարեաց պարառեալ օթեվանին. կամ եթէ՝ ան֊
» Նման իսկ մարդկային այժմու սեռի, զանազան և աս֊
» տուածապարգև շնորհօք սրբութեամբ և մաքրութեամբ,
» և հասակաւ գեղայարմար, և չքնաղ տեսլեամբ, հե֊
» զութեամբ և հանդարտութեամբ, առատութեամբ և
» լրջմտութեամբ, խոնարհութեամբ, քաղցրութեամբ,
» արդարադատութեամբ և իրաւամբք, կրօնաւորասի֊
» րութեամբ և աստուածասիրութեամբ, ողջախոհու֊
» թեամբ և արդարութեամբ, աղքատասիրութեամբ և ա֊
» ռատաձիր բաշխմամբ: Եւ զի՞նչ ոք զնորայն կարասցէ
» պատմել բանիւ կամ գրով՝ զստարասիրութիւնն, զհիւր֊
» ընկալութիւնն, զերկրագործութիւնն, զմարտիցն յաղ֊
» թութիւն, զպատուասիրիլն 'ի բազմաց, զաղօթիցն ըզ֊
» գաստութիւնս, զտօնախմբութեանն զհանդէս, զեկե֊
» ղեցեաց զյարդարումն և զկերտութիւն. և զդղեկաց՝
» սքանչելի և ամրապատ պարսպօք և աշտարակօք յարա֊
» մանեալ. որ 'ի մահարձանաց ոք այժմ եթէ հայեսցի՝ ոչ
» 'ի բնաւ բնակութեան արամեան գտցէ ոք այսպիսի. և
» զբազմութիւն անապատականաց և մայրաքաղաքաց
» յօրինեալ. և եթէ այլ ուրեք՝ ոչ առանց ընծայաբե֊
» րութեան և պատարագաց 'ի Նմանէ մնացեալ այսպիսի
» աստուածայնոյ և ողջախոհի առն. յիրաւի այնպիսի
» հանդիպեալ բախտի, որ և զկնի ութսուն ամաց մար֊
» տիրոսականն հանդիպեալ և արժանացեալ պսակի. որ
» և 'ի վերայ շիրմի իւրոյ լոյս յայտնապէս ամենեցուն
» երևեալ »:

Յիշատակեալն 'ի յետին բանս Մագիստրոսի Դղեակ
ամրապատ և աշտարակազարդ՝ թուի յաւէտ ամրոցն որոյ
մեծամեծ քարինք կոփածոյք և անկուռք թշնամօրէն քա֊
կեալք երևին՝ 'ի սարահարթ բլրի, յերի Վերին գեղջն, և
Վահրամաշէն անուանի: — Առ երի աւերակին 'ի Հր.
Մ. կողմանէ 'ի վիմի՝ երեք չափ բարձու յայտնեցաւ բևե֊
ռաքանդակ արձանագիր մի հնգատող[1]: Այս ամենայն
յիշատակք Մարմաշինու, մանաւանդ մեծ մենաստանն
և հանգստարանք Պահլաւունեաց, փափագելի առնեն
զմանր խուզարկութիւն չուրջ վայրացն, ուր հաւանելի է
թէ և բնակարանք և ապարանք եղեալ իցեն մեծոգի իշ֊
խանացն. և ամրապատ պարիսպքն և դղեակք և աշտարակք
յիշեալք 'ի Մագիստրոսէ, խնդրելի են առ երի յետին
կայից Նոցին: — Թուին արդարացուցանել զայս և բանք
այլազգի հին պատմչաց, որք 'ի գործս Ալփ-արսլանայ

[1] Յորում ամ 'ի մերազգի բանաստեղծաց ընթեռնու զանուանս Մինասայ, Երան, Իսքենդեր, Շոփողան: — Առ հիմամբք միոյ յեկե֊ղեցեաց Մարմաշինու համարի հնախոյզն Աղեքսանդր Երիցեան՝ գտեալ տաճար հեթանոսական: — Փորձ, Ե. Ա. 87:

յիշեն, յառաջ քան զառումն Անւոյ՝ առաքել Նորա զորդի իւր Մելիք-շահ 'ի վերայ վանաց միոյ, զոր Մերիեմ-Նէշին مريم نشين կոչեն, և թարգմանեն բնակութիւն Մարեմայ. որ ոչ միայն քաջ ամրապատ էր պարսպօք, այլ և շրջապատեալ ջրովք որպէս 'ի լճի. վասն որոյ Նաւակս բերեալ՝ մատեան 'ի Նոսին սանդղօք և մեքենայիւք. բայց ոչ ինչ կարելով ստնանել, Նաև 'ի վտանգ ըմբռնման անկեալ Մելիք-Շահի՝ կամէր ձեռնթափ յետս դառնալ. այլ դէպ եղև յայնժամ մրրիկ մեծ և ահեղ 'ի պակուցումն երկոցուն ևս կողմանց, և յետ այնր սասանութիւն երկրի սաստիկ յոյժ, յորմէ անկաւ մասն մի պարսպացն, և այնպէս մատնեցաւ տեղին յաւեր և 'ի կոտորած բնակչացն, ուր այնքան բազմութիւն էր, ասեն, միանձանց, քահանայից և իշխանաց, որպէս թէ ոչինչ պակաս 'ի քաղաքէ [1]:

Ի սկիզբն դարուս (1801) 'ի ժամանակս պատերազմին



70. Բեւեռաքանդակ արձանագիր մերձ 'ի Մարմաշէն. (տես յէջ 153):

Պարսից և Ռուսաց՝ Հայք գաղթեալք յԱյրարատայ՝ դադարեցին առ Մարմաշինիւ աւուրս ինչ, ուր Յովհաննէս վ. Ոսկերչեան գաղափարեաց զարձանս մեծի եկեղեցւոյն, ընդ որում յիշէ և չորս այլ փոքունս և աւերս:

Սակաւ ամօք յառաջ (1870) Մկրտիչ Ջալալեան 'ի բնակչաց մերձակայ քաղաքին՝ եւ ըստ կարի Նորոգել զմասն ինչ հնոյ մենաստանիս Մարմաշինու, և հաստատեաց 'ի Նմա դպրոց, որ յետոյ փոխեցաւ 'ի բնակութիւն ուխտաւորաց և քահանայից:

38. ԱԼԵՔՍԱՆԴՐԱՊՈԼ. — Հինգ կամ վեց մղոնաւ 'ի հարաւոյ Մարմաշինու, մղոնաւ և կիսով հեռի յափանց Արփայ, յեզերս վտակին որ ընդ Քէյթի և Օրթագիլիսէ իջեալ գայ, կայր հին գեօղն Կումայրի, 'ի 1548 Զ. բարձու. ուր յամի 771 Արտաւազդ Մամիկոնեան՝ Նեղեալ 'ի հարստահարութենէ Արաբացւոց, միաբանեալ ընդ իւր զոմանս 'ի Նախարարաց Հայոց, « սպանանէր զհրամանատար հարկին, և որ ինչ գտանէր 'ի ձեռին Նորա » առեալ, համբառնայր ամենայն տամբ իւրով, գնայր 'ի » կողմանս Վրաց աշխարհին [2] »: Մինչև 'ի մերս դար՝ կայր անդ ամրոց մի հին [3], Նշանակ կարևորութեան տեղւոյն, որ յայլազգեաց Կիւմրի կամ Գիւմրիւ կոչիւր, իբրև 70 տամբք, զոր վասն դիւր և դիպան դրից և առատութեան ջուրց՝ գաղթականք Հայոց 'ի կողմանց Կարուց և սակաւք 'ի Կարնոյ և 'ի Կոգովտէ, յամս 1828-30 ընտրեցին 'ի բնակութիւն իւրեանց, 'ի սպառուածոյ դարավայրի գետաձորոյն առ եզերբ դաշտին ցմեծ սահման, ըստ օրինի քաղաքաց ձևելով փողոցս և թաղս, թևարկութեամբ պետութեան Ռուսաց, որով ընկալաւ պատիւ քաղաքի. և առաւել ևս բարգաւաճեաց ամենայն մասամբք, յորժամ յամի 1834 հիմն արկաւ մեծի և հզօր բերդի ընդ մէջ քաղաքին և գետոյն, հակառակորդ կայ Կարուց և դիմահար զօրութեան Օսմանեանց. և երկոքին միանգամայն կոչեցան յանուն կայսրուհւոյն Աղեքսանդրապոլիս: Փայտք 'ի Սօղանլը լերանց և քարինք սեաւ և կարմիր 'ի լերանցն Նախայիշեցւոց և յաւերակաց հնոց՝ օժանդակեցին 'ի կառուցումն Բերդին, զորով պատէ և խրամ խոր. և ամրութեամբն և ճարտարարուեստ յօրինուածով՝ մի 'ի կարի Նշանաւոր զինուորական շինուածոց դարուս եղև, Նոյնպէս և ընդարձակութեամբն. զի են 'ի Նմա մթերանոցք զինուց, և ամբարանոցք և բնակարանք 'ի պէտս իբրև 16,000 արանց, թէպէտ և 4 կամ 5000 բնակեն 'ի Նմա. բանտ մեծ, հիւանդանոց առանձինն, բազում կամարակապ և գետնափոր տեղիք. ապարանք բերդապահ զօրավարին, եկեղեցի Ռուսաց խաչաձև և կապարապատ, լայնանիստ գմբեթաւ. և սշտարակ մի կարմիր անուանեալ 'ի հիւսիսոյ կողմանէ. և ամենայն որ ինչ վայել է մեծի զօրանիստ քաղաքի և պատուարի պետութեան. որ թերևս արդ յետ Նուաճման Կարուց՝ հակառակորդին իւրոյ՝ ոչ այնքան պիտանացու լիցի որպէս երբեմն: Քաղաքն անպարիսպ տարածեալ է 'ի դաշտակողմն. իսկ յարևմտից՝ երկայնաձիգ ծառափողոց յարակցէ 'ի բերդն, որ և տեղի զբօսարան է բնակչաց քաղաքին. և Նշանաւոր է 'ի Նմին շուկայն երկարաձիգ կամարակապ՝ երկուստեք կրպակօք, և հրապարակ 'ի միջակի. են և երկարաձիգ ջրանցք կամարակապք: — Թիւ բնակչաց Աղեքսանդրապոլի համարի արդ 25,000, յորս Հայք աւելի քան 3000 տուն. որոց են չորք եկեղեցիք, երկուք հին և երկու Նոր. մին 'ի յետնոցս, Ամենափրկիչ, համաձև կաթողիկէին Անւոյ կերտեցաւ (յամս 1859-1873). միւս՝ Ս. Աստուածածին, ուրում մերձ է Առաջնորդարանն. և մին փոքր՝ կոչի Ս. Գէորգ. չորրորդն է Ս. Նշան, շինեալ ծախիւք Արղու-

1 Հերպլս. 'ի բառն Ալփ-արսլան, և Սէն Մարդէն, բ. 26:
2 Ղևոնդ Պատմիչ:
3 Ի միում 'ի մարտկոցաց Նորին գտաւ արաբագիր տապանաքար Պապաճանի ուրումն՝ որդւոյ Պէքիրայ, անստոյգ թուականաւ:

թեան իշխանաղին: Ունին և Հռովմէական Հայք, (ոգիք իբր 320), եկեղեցի մեծ յանուն Ս. Աստուածածնի, շինեալ ջանիւք Անանիկեանց Աղէքսանդր վարդապետի Արարատով, և օծեալ յամի 1855: Ունին և Յոյնք՝ որ են թուով իբր 100 տուն և հայերէն խօսին, յատուկ եկեղեցի: Ռուսք են իբրև 100 տուն, և սակաւ Մալականք աղանդաւորք. այլ և Վ իրք, և Թուրքք և Պարսիկք իբր 100 տուն: Եկեղեցին Ս. Աստուածածնի նշանաւոր ուխտատեղի համարեալ է վասն Ճօրճ-խուցից անուանեալ պատկերին, զոր համարին նկարեալ 'ի Ղուկայ աւետարանչէ և բերեալ 'ի Հայս 'ի Գրիգորէ Մագիստրոսէ. Նուէրք ուխտաւորացն կարգեալ են 'ի հասոյթ հոգևոր ուսումնարանին. զատ յայսմանէ են դպրոցք Հայոց աւելի քան զտասն, յորս գլխաւոր՝ Արղութեանն, և Սահականուշեան՝ վասն օրիորդաց, և մեծ վարժարան գաւառական՝ յուսումն յոյն, լատին, հայ և ռուս լեզուաց: — Արուեստաւորք գոն ըստ չափու քաղաքին, այլ առևտուր վաճառականութեան ոչ է բարգաւաճեալ, զի տակաւին Երևան հին կենդրոն՝ ձգէ յինքն զշահավաճառ կողմանցս. բայց 'ի բերս երկրի առատ են արմտիքն, և պտուղք, թէ և սակաւ, վասն բարձրութեան երկրին, յոր սակս և ոչ բազմազան ծառք, այլ բարտիք և ուռենիք. բայց պատուականագոյն քան զբնաւս է արգաւանդութիւն հողոյն, և յստակութիւն օդոյ և ջրոց հանդերձ առատութեամբ սոցին, որ երբեմն և ըստ չափ անցեալ 'ի յորդութենէ անձրևաց՝ զեան մեծ գործեն քաղաքին՝ որպէս յամին 1862, (23 յուլ.) և 1878:

Կիսաժամու հեռի է 'ի քաղաքէն, առ Ախուրեան գետով, և իբր երրորդ մասն նորին համարեալ՝ Մաքրատուշնն (գարանջիլն) և մաքսատուն և սուրհանդականոց 'ի վերայ արքունի ճանապարհի, որ զառ 'ի թափ իջանէ 'ի հարաւ կոյս: — Վ տակ փոքրիկ իջեալ 'ի հիւսիսոյ կողմանէ և




71. Աղէքսանդրապօլ *:

անցեալ ընդ մէջ բերդին և քաղաքին ընդ հարաւ կոյս և դարձեալ յարևմուտս՝ խառնի 'ի գետն. ձորակ նորին կոչի Ջէրքէզի-ձոր, յորոյ ափունս տնկեալ է Ռուսաց ծառս և պարտէզս. և 'ի պեղելն զձորափն՝ յայտնեցաւ եկեղեցեակ մի աւեր չորիւք փոքրիկ մատրամբք յանկիւնսն, և գերեզմանք առ նովաւ. 'ի միում 'ի մատրանցն կամ աւանդատանց գոյր հայ թուական « ԹՎ. ՄԵ » (756). և 'ի միում տապանաքարի սակաւ բառքս.

**Ի պետութեան ..... Քրիստոս, Հասարակաց ողորմես .....**

39. Իբր փարսախաւ բացագոյն 'ի հարաւոյ կուսէ մաքրատանն կայ միւս ևս պահականոցն և ամրոց Ռուսաց, վանեցոպա ?. կոչի և յանուն Արփայ գետոյ, յոր խառնի անդ գետակ մի, անծանօթ անուամբ, եկեալ 'ի լերանց արևելեան սահմանի վիճակիս, ( Թէրգիգըլլագ, Թէկին-գայա, և այլն), 'ի բազում առուաց յօրացեալ, այլ ոչ

* Բէտղներէ Գերմանացւոյ է հանեալ զվարկպարազի պատկերս այս Աղէքսանդրապօլի, տափարակ տեսակօքն, յամի 1855:

բուսական և յուռթումն ամարանի։ — Առ աղբերօք վտակացն 'ի լեռնային կողմանն կան գեօղք Խաւնվէրի և Չըրախլու 'ի Հր. Թէլլինգայա լերին. իսկ յարևմտից նորա երկոքին Քէփէնէկ գեօղք, Մեծն 'ի Հր., Փոքրն 'ի Հ։ Ի նոյն սահմանս են հանգրուանն Թէրզի-գըշլաղ համանուն լերինն, և 'ի Մ. սորա Ցիրէկլէր գեօղ, առ որով ասի գոլ և վանատեղի։ Փարսախաւ հեռի 'ի Հր. Մ. սորա, և նոյնպէս յԵ. կուսէ քաղաքին՝ Ցիւզքէնտ գեօղ մեծ հայաբնակ, որ գոլով 'ի դիւր վայրի՝ ճահապէս ունի զանունն։ — Ի Հր. սորա երկու մղոնաւ 'ի ստորև և ոչ հեռի 'ի գետակէն՝ Թէփէտէօլէկ կամ Թէփէտէլիկ գեօղ, բնակեալ 'ի հռոմէական Հայոց գաղթելոց 'ի կողմանց Բասենոյ և Ալաշկերտի յամս 1829-30. եկեղեցի նոցա քարաշէն Ս. Գրիգոր կանգնեալ է յամի 1862։ — Կիսով փարսախաւ 'ի Հր. Թէփէտէօլէկի է Իլխի-ապի գիւղ. յորոյ արևելից կուսէ նշանակին ամայացեալ գիւղք կամ հանգրուանք Լապաճ-տօրոսուաճ?, Ջաղալու, և Փօրտուխլու։ Իբր չորիւք կամ հինգ մղոնօք 'ի Մ. Հր. Թէփէտէօլէկի, և նոյնպէս հեռի 'ի Հր. քաղաքին՝ յանկեան գետակին և միւսոյ ևս որ 'ի հարաւոյ կուսէ խառնի 'ի նա, և իբր փարսախաւ հեռի յԱրփայէ, 'ի 1500 Զ. բարձու կայ գեօղաւանն հայաբնակ փոքր կամ Խըլլի-Գարագիլիսէ 250 և աւելի տամբք, յորս և կաթոլիկ Հայք. մեծ և գմբեթաւոր է եկեղեցի աւանին. իսկ կաթոլիկացն փոքր և անշուք, շինեալ յանուն Ս. Աստուածածնի յամին 1852։ Ըստ գրիցն և յաւերակ վանացն որ առ երի նմին՝ նշանաւոր իմն շինավայր լեալ 'ի հնումն վկայի։ — Կայ մերձագոյն ևս 'ի գետն միւս Գարագիլիսէ Իլլի կոչեցեալ. որպէս և այլ Նոր Գարագիլիսէ 'ի հիւսիսակողմն վիճակին։



72. Աւերակ եկեղեցի մերձ 'ի Կումայրի։

60. Գետակն զոր յիշեցաք՝ հանգոյն զուգակցին 'ի բազում վտակաց իջելոց յստոց Արագած լերին՝ յորանայ և յորդէ. 'ի վերին կողմանն Գարանկա կոչի և 'ի Հայոց Կարկաջ։ Ի Գարագիլիսեայ՝ ընդ գետակս այս 'ի վեր գնալով, իբր երկու մղոնաւ յԵ. Հր. նորին կայ Ճլօֆիսաճ կամ Ճալովխաճ գիւղ. և 'ի սմանէ նոյնպէս հեռի և ըստ նոյն դրից (յԵ. Հր.) Թալիպ-օղլի, և մղոնաւ հեռի 'ի սմանէ՝ յԵ. Խմիրխանը։ Առ սովաւ սկսանի լեռնասահման ստոց Արագածու, առ որ ուղղելով ընդ ՆԼ. ըստ ընթացից Կարկաջ գետակի, կիսաժամաւ հեռի յԽմիրխանէ յԵ. կայ Գուրբլու-Գըշլաղ կամ Ղուրբլի գեօղ. յԵ. Հ. ունելով զԱշգուլէ հանգրուան, և 'ի Հր. իբր մղոնաւ տարանջատ՝ Հոռոմ մեծ գիւղ հայաբնակ և հին կիսաւեր եկեղեցաւ յանուն Ս. Հռիփսիմեայ. և հուպ յԵ. կուսէ բերդ համանունն։ — Սակաւուք հեռի յՆԼ. սոցա խառնուրդք են երկուց վտակաց, Կարկաջոյ որ 'ի Հ. Ն. և ջրոյն Հառիճայի հուպ 'ի խառնուրդսն կայ Թօմարդաշ գիւղ. յորոյ հիւսիսոյ Գազանճի. իսկ յՆԼ.

իբր երկու մղոնաւ հեռի 'ի մէջն երկուց վտակաց Քեաֆթարլու գիւղ հռոմէական Հայոց գաղթելոց յԱխալցխերտէ. որոց գլխաւոր՝ տուն Նահապետեան, որ և առաջնորդ գաղթականին, և հիմնարկու եկեղեցւոյն Ս. Աստուածածնի՝ Տէր Պետրոս, զոր յաջորդեաց եղբօրորդին՝ Պօղոս վարդապետ Փուլթաջեան 'ի բարգաւաճանս տեղւոյն, յոր սակս և ձեռն արկեալ է հաստատել դպրոց, 'ի պէտս այլոց ևս գիւղից: — Իբր երկու մղոնաւ հեռի յԵ. սորա Ղուշիճան կամ Գուշիճան, և 'ի սմանէ սուղ ինչ ևս բացագոյն յարևելս 'ի Հ. Մ. սորին Արագածու՝ Նորաշէն: Ի Մ. Հ. սորա և յԵ. Հ. Ղուլիճանայ՝ Ղօշղար[1] կամ Ճանկա որ և Ճանկի բէկի փոքրիկ գիւղ. յորոց սակաւուք հեռի յարևմուտս կոյս աւերակք Զրքայիղու և Գարաղաշղակ? գիւղից: — Ի Հր. Նորաշինի և մերձ նմին Արխվէլի Մեծ, և Արխվէլի փոքր 'ի Մ. առաջնոյն. երկոքին ևս հայաբնակք, և իւրաքանչիւր Ս. Աստուածածին եկեղեցեօք: Բնակիչք սոցին գաղթականք են եկեալք 'ի Զէմիրմէ գեղջէ Խնուսի (25 տունք). յորս յայտնեցաւ աղանդ նման իմն Թոնդրակեանց, յամի 1837, յայցելութեան Կարապետ եպիսկոպոսի Բագրատունւոյ, և կարծի ոմանց տակաւին 'ի գաղտ ունել զաղանդն[2]: Ի մօտոյ սոցա և 'ի Հր. Ղուլիճանայ իբր կիսով փարսախաւ հեռի՝ Ղաառում-Ալի գիւղ. և մղոնաւ 'ի Հր. Մ. սորա Պէկքէնտ, և ըստ Հայոց Պարնի գիւղ, այսինքն Պարոնի:



73. Սահմանախաչ մերձ 'ի Կուռնայրի:

61. Ի Հր. կուսէ յետին յիշեցելոց գիւղիցս և 'ի Հ. Մ. ոստոց Արագածու, հովիտ վտակին խառնելոյ ընդ Կարկաջայ՝ հանգոյն Արագածոտան որ յարևելից Շիրակայ, երևի շինաշատ և արքակերտ եղեալ 'ի հնումն, և վկայս ունի ցարդ զվանս Հառիճայ և զայլ աւերակ վանորայս և եկեղեցիս: Ի գլուխ վտակին և հովտին կայ Պաշքէնտ, որ է ասել առաջին գիւղ վիճակին յայնմ կողմանէ. յորմէ իբր քառորդաւ ևեթ ժամու 'ի բացեայ կայ 'ի Հր. Խաչագիլխէ փոքր գիւղ, Ս. Գէորգ եկեղեցեաւ Հայոց. և նոյնքան հեռի 'ի սմանէ 'ի Հր. առ վտակաւն՝ Ղըրքչաղ գիւղ, որ է հինն Հառիճա, հռչականուն մենաստանաւն յանուն Ս. Աստուածածնի: Գիւղն 'ի բարձրաւանդակի կայ, ձորակս յութիս ունելով յարևելից, 'ի հարաւոյ և յարևմտից, առողջասուն օդովք և զուարճալի տեսլեամբք. վասն որոյ և այժմեան կաթողիկոս Էջմիածնի (Տէր Գէորգ Դ) ընտրէ իւր երբեմն զայս յամարանոց,

[1] Գեղջոյն ըստ Արարատ Օրագրի (ԺԲ. 402):

[2] Երկար գրէ զայսմանէ Աշ. Երիցով 'ի փորձ օրագրի, (Դ ամ, Թիւ Ժ, 91-150) վաւերական թղթովք, և վկայութեամբք մոլորական գրոց նոր հեղինակի նոցին Յովհաննու ուրումն քահանայի, (յետոյ սաւճկացելոյ) դարու յառաջ, շարադրեալ (յամի 1782) և կոչեցեալ Բանալի ճշմարտութեան:

պատրաստեալ սենեակս ինչ 'ի վանսն, որ կայ յարևմտից հարաւոյ գեղջն և յարակից նմին. և է ըստ շինութեանն և բնակութեան՝ այժմ գլխաւոր ամենայն վանօրէից արևելեան Շիրակայ։ Սկիզբն հաստատութեան ուխտին Թուի յառաջին դարս քրիստոնէութեան Հայոց, հանգոյն մեծամեծ վանօրէիցն որ յայնկոյս լերինն Արագածու. այլ ոչ վանքն և ոչ գեօղն յիշին առ հին պատմիչս, և ոչ ընդ վանօրայս յիշեալս 'ի Ժ դարու 'ի կրօնաւորաց հալածելոց յերկրէն Յունաց. բայց հնագոյն քան զնոսա Թուի հին եկեղեցեակ մի տակաւին կանգուն Ս. Գրիգոր կոչեցեալ և կից 'ի մեծ եկեղեցին, որ շինեալ է 'ի սկիզբն ԺԳ դարու 'ի Զաքարիայէ Սպասալարէ։ Շինող այնր եկեղեցւոյ այսպէս արձանագրէ յարևմտեան ճակատուն.

**Ես Սարգիս Ճոն շինեցի զեկեղեցիս, եւ ի քրտանց իմոց ետու այլ ընծայ ի սուրբ ուխտս. Եւ Հայր Համազասպ սահմանեաց որ ի Սարգսի եւ ի Բագոսի տաւնի ը̅ աւր պատարագեն զՔրիստոս յիմ անուն.**



74. Հառիճայ վանք։

Թէպէտ չիք Թուական արձանիս և բանքն չտան հաւաստիս շատ հնութեան, այլ փոքրկութիւն և խրթնութիւն իսկ շինուածոյն՝ առաւել յայն ձգնի. և մարթ է թէ շինողն Սարգիս Ճոն իցէ, նոյն զոր Վարդան պատմագիր յիշէ զոյգ ընդ Բարսղի Ճոնի, ԺԲ դարու[1]։ Եկեղեցիս այս հին՝ անսիւն է և բոլորշի, այլ խաչաձև կարճ կիսաբոլոր Թևօք, ունելով մի մի լուսամուտս 'ի նոսին. բաց 'ի սեղանոյն ունի և երկուս աւանդատունս կամ մատրունս փոքրկունս 'ի հարաւակողմն աստի և անտի. 'ի ներքուստ ամբողջ է եկեղեցին, այլ արտաքին գտակ գմբեթին վերին կիսովն անկեալ է, և փոխանորէն՝ Ղահրաման ոմն Պարսիկ՝ 'ի պարգևի ընկալեալ զկողմանքս յանցեալ դարու, շինեալ է աշտարակ դիտանոց։ Ի հարաւոյ կուսէ եկեղեցւոյն կայր և ժամատուն, որոյ մեծ մասն անկեալ քայքայեալ է, և մասն մի հիւսիսային որմոյն հանդերձ կամարօք և երկու սիւնք 'ի միաստանի կարմիր քարէ կանգուն կան. այլ արձանագիր ոչ գտանի 'ի մնացորդս անդ. բայց 'ի վերայ եկեղեցւոյն գոն յարևելեան որմնն արձանք 1192 և 1196 Թուականօք, գրեալք 'ի հայրութեան Պետրոսի, յորոց մին է Տուտէորդւոյն.

**Ի ՈԽ Թուականիս ես Գրիգոր վարդապետս որդի Տուտայ ետու զսուրբ նշանս լուսոյ կրկին պահարանով երիս մասն զգրաւականս հոգւոյ իմոյ ի սուրբ Աստուածածինս Հառիճայու. պարտական են ինձ զմիաբանու-**

[1] Աբէլ Վարդապետ երկար ստորագրող վանացս Հառիճայ առանձին տպագրով, համարի շինող տեղւոյս զՍարգիս առաջնորդ Հոռոմոսի վանաց, որ վախճանեալ է յամի իբր 979, 'ի վկայութիւն ածեալ զարձանագրութիւն Գզըլգիլիսէի որ յայսկոյս Ախուրենոյ, Սարգիս Ճոն կոչելով. սակայն չիք ոչ յարձանի անդ և ոչ 'ի յիշատակս վանացն Հոռոմոսի Ճոն անուն, այլ միայն Հայր Սարգիս։ — Ի սմանէ գաղափարեցան արձանագրութիւնք վանացս, զորս և ստուգելոյ կարօտ համարիմ։ Իսկ զպատկերս այս (Թիւ 74) լուսատպութեամբ ընծայեալ՝ ոչ գիտեմ որոյ ճարտարի հանեալ իցէ։

թեան գ̅ քառասունս եւ զատկի ճրագալուցին ա̅ ժամարար ? որչափ ուխտս ի հաստատութեան է . եւ որ հանէ զսա ի սուրբ ուխտէս զինչ եւ իցէ պատճառանաւք նզոված է յԱստուծոյ եւ յամենայն սրբոց . Տուաւ ի ձեռն Հայր Պետրոսի . որք բնակէք ի սուրբ տեղիս եւ կարդայք զգիրս Պետրոսի եւ հոգոյ եւ մարմնոյ ծնողաց իւրոց եւ եղբարց թողութիւն մեղաց խնդրեցէք ի Քրիստոսէ . աղաչեմք .

Հնագոյն քան զսա և զսյլսն՝ է արձան յիշատակի Նորո- գողի վանացն՝ Հօր Գրիգորի, յամի 1185. և է այսպէս.

Ես Գրիգոր առաջնորդ սուրբ ուխտիս Հառիճայի շինեցի զտեղի սնընդեան իմոյ ի հարիւրամեայ կործանմանէն եւ կարգեցի արս ընտրեալս եւ խրատեալս աւրինաւքն Աստուծոյ եւ հաստատեցի կամակցութեամբ եղբարց . եթէ ոք յառաջնորդաց ի յընծայից եկեղեցոյս խորէ եւ զվաստակս բազմաց եւ տուրս հոգոց իւրն համարի որչափ Աստուած աւրհնած է՝ այնչափ նզոված է որ կաչառովք հայի (?) կրկին նզոված է [1] ։

Ջհարիւր ամի 'ի բաց գնալով 'ի Նորոգութենէն՝ կործանումն առաջին շինուածոյն եղանէ 'ի ժամանակս արշաւանաց Ալփարսլանայ ։ — Ի ժամանակի յորում յիշեալդ յարձանս Պետրոս առաջնորդ ուխտին՝ հաստատէր զկըտակս Նուիրատուաց և զնախորդին իւրոյ Գրիգորի Նորոգողի տեղւոյն, եհաս Նմա յօգնութիւն մեծ աշխարհաշէնն և աշխարհակալ Զաքարիա Սպասալար, և կանգնեաց եկեղեցի կաթողիկէ յանուն Ս. Աստուածածնի, յարեւելից կուսէ հնոյ և փոքու Ս. Գրիգոր եկեղեցւոյ, քառակուսի ձեւով հաւասար ընդ երկայնն և ընդ լայն, առանց սեան գմբեթաւորեալ 'ի վերայ կամարաց չորից որմասեանց, որոց խոյակք և խարիսխք հնգախորշք, երկուք 'ի կողմանց խորանին և երկուք դրանն յարեւմտից. առ որով են մատրունք կամ աղօթատեղիք կրկնայարկք ատի և անտի, երկու երկու փոքր միատասնի սեամբք, և գեղեցկազրուագ կամարօք, ոլորտապտոյտ քարեղէն սանդղօք վերելից, ունելով և պատուհանս բոլորշիս 'ի միջավայրսն. մի մի պատուհանք նեղք և երկայնք են 'ի չորեսին կողմանս եկեղեցւոյն, և երկուք 'ի Հ. և 'ի Հր. կողմանս՝ բոլորչիք, լայնք 'ի ներքուստ և անձուկք արտաքուստ ։ Ցաջմէ և յահեկէ խորանին՝ որպէս և յարեւմտակողմն են կրկնայարկ մատրունք կամ խորանք. 'ի ճակատ բեմին քարաշար քանդակագործ ծաղկաձեւ դրուագք են քառակուսի հատուածովք ։ Մի դուռն միայն է յարեւմտակողմն երրեակ կամարօք և սեամբք. յառաջնում միջոցի կամարացն գրեալ է հակիրճ.

## Շնորհիւն Աստուծոյ ես Զաքարէ Ամիր Սպասալար շինեցի զկաթողիկէս ։

Ի ներքնում կիսաբոլորին է արձանագիր Հօր Պետրոսի և միաբանից յամին 1214, սահմանելով պատարագս վասն հարց և եղբարց ուխտին, հանգոյն սահմանելոցն և յայլ վանորայս Շիրակայ, որպէս տեսաք 'ի կարգին.

[1] Են այլ ևս արձանագիրք 'ի նմին կողման եկեղեցւոյն, յորոց առաջինն յամի 1192 հաստատէ պատարագս վասն Գրիգորի Նորոգողի տեղւոյն.

Կամաւն Աստուծոյ մեք Հառիճեցիքս Հայր Պետրոս եւ այլ եղբարքս սահմանեցաք ի տաւնի Տապաւնակի ի մի մատուռն պատարագել զՔրիստոս յանուն Գրիգորոյ փոխանակ արդեանց իւրոց. որք կատարեն աւրհնեալ եղիցին եւ որք ոչ նզովս ժառանգեսցեն ի Քրիստոսէ . ի Թու. ՈԽԱ.

Ի Թվիս ՈԽԸ. եւ յառաջնորդութեան հաւր Պետրոսի կամաւն Աստուծոյ ես Աստուածատուր ետու զիմ հայրենի այգիս որ յԱրուճ ի վերին ի Թաղն խաչկանց այգին եւ զընծանն եւոու ի սուրբ ուխտս Հառիճայի ի սուրբ Գրիգորս եւ Սուրբ Աստուածածինս. եւ առաջնորդք սուրբ ուխտիս խոստացան ինձ ի տարւոջն բ̅ աւր ժամ զմէկ աւրն իմ հաւրն Շիկլին եւ ա̅ իմ մաւրն Նվարթին. եթէ ոք զլանայ եւ չառնեն ի տաւնի սրբոյն Սարգսի նզովեսցին յԱստուծոյ եւ որք կատարեն աւրհնին յԱստուծոյ ։

Ի վերայ սոցին կայ այս արձանագիր անթուական.

Ես Շատաղէկ միաբանեցայ սուրբ ուխտիս եւ հայր Համազասպ եւ այլ եղբարք հաստատեցին որ ի մահու իմ զիմ միաբանութիւնն առնեն անպատճառ ով լինի ։

**Ի Թուին ՌԿԳ. կամաւն Աստուծոյ մեք Հաւիճեցիք Հայր Պետրոս եւ այլ միաբան եղբարքս հաստատեցաք յաւիտենից կտակ անջնջելի մինչ ի գալուստն Քրիստոսի եւ եդաք սահման անխափան եթէ հայր ոք փոխի առ Քրիստոս գիշերապաշտաւն եւ Գ̅ քառասունք. եւ թէ երեց կամ կուսակրաւն աբեղա Գ̅ քառասունք. ապաշխարողի Բ̅ քառասունք ի մարդն? մէկ աւր ժամ հաւր եւ ամէն եղբարց. որք հաստատ պահեն աւրհնին ի Քրիստոսէ. որք հակառակին դատին ի յԱստուծոյ:**

Գմբէթն արտաքուստ լայնանիստ է և սրածայր հաւաքեալ, խաչ արծաթազօծ ունելով 'ի գագաթանն, Նուրբ սեամբք և սրանկիւն կամարօք բաժանեալ 'ի բազում կողմանս, ունի չորս պատուհանս և չորս ևս փոքրիկ բոլորչի լուսանցոյցս: Ցարևելեան ճակատուն ընդ մէջ քանդակազարդ շրջանակի պատուհանին և քուոյ տանեացն կայ խաչքանդակ և աղաւնի թևատարած 'ի վերայն, և երկուստեք տոնաձև զարդք քանդակաց բոլորեալ՝ հասանեն 'ի գլուխ լուսամուտ մատրանցն և դառնան ձգիլ 'ի Հ. և 'ի Հր. որմունս. իսկ 'ի վերոյ խաչին՝ յեռանկիւնաձևն միջոցի 'ի սևորակ վիմի քանդակեալ են պատկերք Զաքարիայ և եղբօր Նորա Իւանէի, մեծահասակք և փա-



75. Զաքարիա և Իւանէ:

ռաղէմք՝ կանգուն կալով, և մօրուեղք[1], խոյրս երկայնս ունելով 'ի գլուխ, և պատմուճան երկայն 'ի վայր քան զծունկս փոքրիկաց, այլ գօտեաւ զսպեալ. յորոյ վերայ ունի մին զաջ իւր և միւս զահեակ, իսկ միւսով ձեռամբքն յիրար կոյս ձգելովք՝ ունէին զքարեղէն պատկեր Տիրամօրն կամ զեկեղեցւոյն զաստակերտի իւրեանց. այլ փոխանակ նորին եղեալ են այժմ խողովակ հոսմանց անձրևոց, զի պատկերն անկեալ է. 'ի թիկանց միոյն՝ որ համարի Զաքարիա, կայ քանդակ թագագլուխ թևաւոր առիւծու, թերևս նշանակ Թամարայ թագուհւոյ՝ որոյ պաշտօնեայք էին. և յետուստ նորին 'ի ծաղկաքանդակ շրջանակի ծաղկագիր տառիւք գրեալ.

## Աշխատաւորաց եկեղեցւոյս Աստուած ողորմեսցի. ամէն:

Բովանդակ քարինք շինուածոյն են կարմիր գորշագոյն և սևակապոյտ, քաջ յեռեալք յիրար և յղկեալք, միապաղաղ երևմամբ. և համօրէն շինուածն նման է տաճարի Գեղարդայ վանից՝ որ նորին Զաքարիայի հրամանաւ է շինեալ, և համարի միոյ ճարտարապետի գործ. զոր և կարծեն թաղեալ 'ի մատրանաձև փոքու դարանի կամ տապանի՝ 'ի գլուխ սիւնաձև ստուար վիմի միոյ յարևմըտից հարաւոյ տաճարին, բացագոյն 'ի ձորամիջի անդ:

1 Ի խոշորագիծ պատկերիդ (որ ըստ Պրոսեայ) ոչ մօրուք երևին և ոչ այլ նշանք՝ ըստ նախագրեալ ծանօթութեան այլոց քննողի:

— Արձան յիշատակի Զաքարիայի գրեալ է 'ի հիւսիսային որմն տաճարին արտաքուստ, յամի 1201, ընծայելով ոչ սակաւ կարեւոր ծանօթութիւնս զստացմանց վանիցն և զիւրոց նոր շինութեանց.

*Շնորհիւ եւ ողորմութեամբ մարդասիրին Աստուծոյ ես Զաքարէ Մանդատորթա խուցէս Ամիր սպասալար Հայոց եւ Վրաց որդի մեծին Սարգսի, գանձագին արարի զհռչակաւոր սուրբ ուխտս Հառիճայի յիւր բնական հայրենատէրացն յաղագս կենդանութեան տեառն իմոյ բարեպաշտ Թամար թագուհո եւ փրկութեան ինձ եւ հարազատ եղբաւր իմոյ Իւանէի եւ զաւակաց մերոց Շահնշահի եւ Աւագին եւ ծնողաց մերոց. շինեցի ի սմա ամրոց եւ զկաթողիկէս բազում ծախիւք եւ զարդարեցի ամենայն սպասիւք եւ սրբութեամբ. եւ զիմ գեղս որ էր մերձ ի սուրբ ուխտս զՄոկորիսն ընծայեցի սուրբ Աստուածածնիս բոլոր ամեն հողահատովս սարովս եւ ջրովս զոր բնական լեալ է. եւ ետու ջաղաց մի ի Գետիկ որ Դիւաղաց կոչի. ջաղաց մի յԱնի Գլիձորին եւ պարտէզ մի ի Ծաղկաձորին, այգի մի յԵրեւան եւ այգի մի ի Թալին. Եւ զառաջին սահմանքն որ բուն լեալ էր հաստատեցի ի Սահմանախաչէ ի Հառիճա գետն կոռ մարգով, գեբրովս, Ցամաքձորով, Ձինարին հարով, Գոմցեց ձորովս, Արենադբերով, Հին Հառիճաով. եւ եդի սահման զայս որ յաւագ խորանն պատարագել զՔրիստոս յիմ անուն հանապազ. Արդ որք հաստատ պահեն զյիշատակս մեր աւրհնին յԱստուծոյ եւ յամենայն սրբոց. իսկ ոյք հակառակին եւ հանել ջանան փոքր ինչ կամ մեծ զանէծս Կայէնի եւ զՅուդայի ժառանգեսցեն եւ կրկին նզովեսցին յԱստուծոյ. թէ ոք բռնութեամբ եւ ուժով տանի ՅԺԸ հայրապետացն եւ յամենայն սրբոց եղիցի նզովեալ. Նա եւ գրեցաւ հաստատ ի թուիս ՈԾ.*

Դժուարին է արդ ստուգիւ գտանել զնշանակեալ սահմանսդ, այլ մեզ կարեւորագոյն է նշանակել զգետն Հառիճայ որ է անշուշտ ջուրն առ որով կայ վանքս, և զՀին Հառիճա՝ որ թուի յարեւմտակողմն այժմու գեղջս լինել: — Այլ եւս արձանքն են 'ի վերայ արեւմտեան որմոյն որ հայի 'ի ժամատունն, և են նուիրատուաց, Վաչէի և կնոջ նորա Մամախաթունի յամի 1221 [1], Տուտկայ՝ առ հայրութեամբ Յովհաննու, որ թուի հայր կամ եղբայր Գրիգորի (Տուտէորդւոյ) [2], Ասլանի ուրումն որ շինէ զմարագ վանացն [3]. և յետ դարու միոյ՝ Եօլխութլու կամ Իշխութլու ուրումն, որոյ և ընտանեացն անուանք՝ յայտ առնեն զի Թաթարք են ազգաւ, նաև կրօնիւ կիսաքրիստոնեայք, զի զՓաղամբարն (Մահմէտ) յիշեն, թէպէտև նուիրաբերք լինին առ Ս. Աստուածածին, անշուշտ առ երախտեաց ինչ. Նշանելի է և թուական գրութեանն 1304, այնու զի յետին ամ է ինքնակալութեան Ղազան Ղանի, որում անգիտակ գոլով ընդօրինակողին՝ զՁԾԳ թիւն՝ ընթերցեալ է ՁՁԳ.

1 Ի ՈՀ. Ես Վաչէ որդի Սարգսի եւ ամուսին իմ Մամախաթուն տուաք բ̅ այգի սուրբ Աստուածածնիս ի փարպի եւ ի Տաճատագեղ մեծ յուսով եւ միջնորդութեամբ Գրիգոր վարդապետի եւ սուրբ եղբարց հաստատեցին կամաւն Աստուծոյ. ընկալաք եւ զայլ արդիւնսն. եւ սահմանեցաք զծառազարդարն Վաչէի եւ զՂազարու տաւնն Մամախաթունին ամէն եկեղեցիքն անխափան. եթէ ոք խափանէ պարտական է (մեր) մեղացն…

2 Կամաւն Աստուծոյ ես Տուտիկս մեծ յուսով միաբանեցայ ի սուրբ ուխտս եւ ըստ իմ կարողութեանս ետու ընծայք սրբոյ Աստուածածնիս. Հայր Յովհաննէս եւ միաբանքս հաստատեցին վկայութեամբ տէր Համազասպայ ի տաւնի Վարդաւառին զամենայն եկեղեցիքս յիմ անուն պատարագել զՔրիստոս. ով խափանէ իմ մեղացն տէր է. կատարիչք աւրհնեալ եղիցին. ամէն:

3 Ցանուն Աստուծոյ ես Ասլանս միաբանեցայ սուրբ Աստուածածնիս, եւ շինեցի յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց զմարագն:

Կամաւն Աստուծոյ եւ յաշխարհակալութեան Ելլունայ Ղան Ղազանին ես Իշխութլու՞ որդի Զաղանին եւ իմ որդի Աբաշէս եւ իմ խաթունս Խոդլու միաբանեցաք ի սուրբ Աստուածածինս, եւ զմեր բաժին գանձով չինած ձիթահանքն տուաք եկեղեցուս լոյս լուսով ընի՞ ոչ իմ որդու ոչ իմ եղբաւր ոչ իմ ազգի մարդոյ դաւի չկայ. ով դաւի անէ յԱստուծոյ եւ ի Փէղամբարայ նալաթ է. կատարիչք աւրհնին յԱստուծոյ. ի թուին ՉԾԳ։

Միւս ևս արձանագիր առանց թուականի կայ 'ի վերայ դրան աջակողման մատրանն, այսպէս.

Ես Արտեւան ծառայ Քրիստոսի եւ ամուսին իմ Նուրսթի մեծ յուսով ստացաք՞ զվարագոյրս ընծայ սուրբ եկեղեցւոյս. եւ սպասաւորք սուրբ ուխտիս սահմանեցին մեզ յամենայն ամի չորս աւր պատարագ. բ̅ աւր ինձ եւ երկու Նուրսթին.. կատարիչք աւրհնին յԱստուծոյ։

— Ժամատուն կաթողիկէիս՝ յոր մուծանէ դուռն սորա որ յարևմուից, ըստ ձևոյ նորին քառակուսի է, այլ կրկին մեծ քան զայն, ամբարձեալ 'ի վերայ չորից միաստանի բոլորշի սեանց, յորոց երկուքն արևելեանք՝ 'ի սեաւ քարանց են կարմիր խարսխօք, իսկ արևմտեայքն 'ի կարմիր քարանց սեաւ խարսխօք. 'ի սոցանէ և յանկեանցն կամարք ձգեալք 'ի խորշս խորշս տրոհեն զձեղունն, և 'ի գագաթանն գործեն բոլորակ լուսանցոյց փոխանակ գըմբեթի. են և պատուհանք երկու յարևմտեան կողման, մի մի 'ի Հ. և 'ի Հր. բայց յետինս փակ է, քանզի կից է հին եկեղեցւոյն Ս. Գրիգորի. և մի դուռն յարևմուից կուսէ. իսկ խորանն կայ 'ի հարաւոյ կողմանէ, և 'ի մէջ արևելեան որմոյն սանդուղք ելից 'ի վերնատունն. ձեղունն ողորկեալ և գունագոյն քարամբք իբրև յախճապակ միապաղաղ յեռեալ է, 'ի միջոցս անդ կամարացուցեալ... տեացն, որով պաճուճագեղ յոյժ երևի, հակառակ արտաքնոյ պարզ և անսեթևեթ տեսլեանն։ Թէպէտ պակասէ թուական շինութեան ժամատանս՝ այլ յայտ է ոչ յետ բազում ամաց կաթողիկէին շինեալ. զշինողն յայտնէ արձանագրութիւնս յորմն արևելեան 'ի ներքուստ.

Աստուածասէր եւ արդիւնաւոր Պատրոնն Հիջուբ Վահրամ շինեաց ըզվայելուչ ժամատունս եւ եբեր զմիւս ջուրս յիշատակ հոգո իւրո եւ զաւակաց իւրոց եւ ամուսնո իւրո Թամարին. Եւ տէր Համազասպ եւ Հայր Յովհաննէս միաբանաւքս ի խնդրոյ դստերն իւրո Խաթունին հաստատեցին ի տաւնի Թէոթոս թագաւորին զամենայն եկեղեցիքս յանուն Թամարին պատարագել զՔրիստոս անխափան. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ. Թվ...

Են և յերկուսին կողմանս որմոցն 'ի հիւսիսի և 'ի հարաւ՝ այլ արձանագիրք նուիրատուաց [1]։

[1] Ի հարաւային կողման.

Կամաւն Աստուծոյ ես Մխիթար գնեցի յերեւան զեւագրի որդոյն այգին յարդեանց իմոց եւ ետու Հառիճայ ուխտիս. եւ տէր Յովհաննէս եւ միաբանքս սահմանեցին ի տարին գ̅ աւր պատարագ. ճ̅... եւ բ̅ աւր ինձ առնեն անխափան. կատարիչքն աւրհնին յԱստուծոյ որք խափանեն դատին ի Քրիստոսէ. խաչգիւտի շաբաթ աւրն առնեն ըզժամն. ի Թվ. ՈՀԳ. (1224)։

Ցարևելակողմն վանացս 'ի բարձրաւանդակ տեղւոջ կայ հին մատուռն Սուրբ Ցարութիւն կոչեցեալ, անգիր և

Ես Գրիգոր մնուցած մեծին Սարգսի դստերն Նրջիսին տուի աւետարան զուգաւք ի սուրբ եկեղեցիս ողորմութեամբ... իմոյ եւ հաստատեցին ի տարին գ̅ աւր պատարագ. բ̅ աւրն ինձ եւ ճ̅ աւրն Բանուհաշին ? ի Թուիս ՈՁԳ. (1234)։

Ես Արսէն մնուցած Պարոն Նրջիսին ընծայեցի արդիւնս ի սուրբ ուխտս. բ̅ աւր պատարագ ինձ եւ ճ̅ Խուշուշին կատարեն զյիշատակս մեր։

անթուական, և շուրջ զնովաւ գերեզմանք միաբանիցն. յորոց մին է Գրիգոր՝ երկրորդ շինող տեղւոյս, վախճանեալ յամի 1185, որպէս գրի 'ի վերայ տապանին, և թուի գործակից կամ վերակացու շինութեանց Զաքարիայ.

Այս է հանգիստ երջանիկ ծերունի սուրբ հաւր Գրիգորի առաջնորդի երկրորդ շինութեան սուրբ ուխտիս որ էր ուսուցիչ եւ աւրինակ բարի ամենեցուն. աղաչեմք որք երկրպագէք սրբոյ խաչիս ասացէք. Աստուած յիշեսցէ զՀայր Գրիգոր յողորմութեան իւրում եւ զգրիչս. եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ. ամէն. Ի թուին Հայոց ՈԼԴ:

Բայց հնագոյն ևս գերեզմանս 'ի Զ դարէ ասեն լինել անդ՝ Սարգիս Ջալալեան և Աբէլ վարդապետ, եթէ չիցէ վրիպեալ յաչաց նոցա հարիւրանիչն թուական. և է մին ԻԱ թուական Հայոց, որ է 572 ամ Քրիստոսի, ճգնաւորի միոյ, և միւս ևս հնագոյն ԺԷ թուականաւ, որ է ամն 568, այսու բանիւ.

## Թուին ԺԷ. Այս է շիրիմ հանգիստ եւ բնակարան Երեմիայ երաժշտի:

Այս յիշատակարանք (համարելով ստոյգ զթուականսն) և միւս ևս բան պատմչաց՝ եթէ Քոթենաւորն Թէոդորոս, վարդապետ Օձնեցւոյն Յովհաննու, աստ ուսուցանէր յելս Է դարու[1], յայտ առնեն զնախանշանակեալ հնութիւն հաստատութեան վանաց տեղւոյս: Բայց որպէս ասացաքս, ոչ գտաք ուրեք առ պատմիչս զանուն տեղւոյս կամ զառաջնորդաց նախ քան զԺԲ դար. բայց եթէ Սարգիսն ձոն շինող եկեղեցւոյ Ս. Գրիգորի՝ էր յ'Է դարու կամ՝ 'ի Ժ[2], նմին ժամանակակից է և Հայր Համազասպ. այլ ստուգագոյն ժամանակաւ և առաջին վանահայր 'ի նորոգութեան տեղւոյն է

| | |
|---|---|
| Գրիգոր | ց'1185 |
| Պետրոս | 1185 — 1220 |
| Գրիգոր Բ | 1221 |
| Յովհաննէս | 1224 |
| Համազասպ (Բ) | 1234–5 |

Զկնի սորա ոչ ոք յիշի, քանզի և թուականք արձանագրացն ժամանեն ցամն 1235, որ է նախընթաց ամ յարձակման Թաթարաց, առման Անւոյ և աւերման Շիրակայ. յետ որոյ գրեաթէ ցմերս դար անյիշատակ և անայցելու մնայ տեղիս մեծանշան. բայց միայն զի վերջին Հերակլ թագաւոր Վրաց յ'անցեալ դարու տուեալ էր զայն Սուլդան Ղահրիմանայ ումեմն Պարսկի հզօրի, որ նստէր յԱրդիկ, զեկեղեցի նորա և զՀառիճայ յամրոց և յաշտարակ փոխելով. այլ Մահմատ Խան Երևանայ աւերեաց զամրութիւնսն, ընդ նմին և զՍ. Յարութիւն փոքրիկ եկեղեցի հանգստարանացն[3]: Յետ այնր ասի Սարգսի ուրուք երիցու բնակեալ աստ և ջնջեալ զմասն մի արձանագրութեանցն, և դարձեալ ամայի մնացեալ մինչև 'ի գալ գաղթականին Կարուց (1829–36). որոց առաջնորդ Ստեփանոս եպիսկոպոս Խաժակն 'ի Հոռոմոսի վանաց՝ այսր փոխադրեաց զմիաբանսն և նորոգեաց զտեղիս. ուր եկն և Պօղոս Ջալլադեան առաջնորդն վանաց Բասենոյ, բերեալ ընդ իւր զհրաշագործ պատկերն Աստուածածնի, որով ուխտատեղի եղև Հառիճա. և ինքն յաջորդեաց Ստեփանոսի 'ի մեկնել նորա այլուր, նոյնպէս և Գրիգորի վարդապետի Ճամկոչեան, որ առ ժամանակ մի կարգեցաւ վանահայր. և կեայր ծերունին

Ի հիւսիսակողման.

Կամաւն Աստուծոյ ես Սանասարս եւ Բաղդասարս որդիք Խուպասարին ի յառաջնորդութեան Հայր Համազասպայ ընծայեցաք ի սուրբ ուխտս զմեր հայրենի դրամագին այգին որ ի Նորաշինիկ սրտով. ով հակառակ կայ կամ ի խըսմի մերոյ կամ յաւտարաց նզովս առցէ ի Տեառնէ Յիսուսէ. եւ հայրս եւ միաբանքս հաստատեցին որ յեսւ Աստուածածնի Ժ աւր պատարագ, Բ աւր Խուպասարին, Բ աւր Կիմայթին, Բ Յովհաննէսին, եւ Դ Սանասարին. ով զյիշատակս մեր խափանէ դատի ի Քրիստոսէ. ամէն. Հաստատեցաւ կտակս ի կամս Աստուծոյ ի Թուիս ՈՁԴ. (1235):

Ես Տրիտուր մեղուցեալ ծառա Քրիստոսի ի քըրտանց իմոց գնեցի զԽուպասարենց այգոյն չորիցն մին եւ ետու ի սուրբ ուխտս. եւ Հայր Համազասպս սահմանեաց որ ի տաւնի Անդրէի առաքելոյն Գ աւր պատարագ առնեն. ով խափանէ դատի ի Քրիստոսէ:

Ես Սիմէոնս արդիւնք ետու ի սուրբ Աստուածածինս, եւ Հայր Յովհաննէս եւ միաբանքս տուաք Բ աւր պատարագ ի տաւնի սուրբ Անտոնի Ա Սիմէոնի, Ա Գրիգորոյ. կատարիչքն աւրհնեալ եղիցին. ամէն:

1 Զայս յիշէ Շահխաթ. (Բ. 270), և թուի առեալ 'ի Ներբողենէ Վարդանայ յՕձնեցին, Ստեփանոս կոչելով զՔոթենաւորն:

2 Որպէս համարի Աբէլ վարդապետ:

3 Այսոքիկ ըստ Աբէլ վարդապետի:

Ջալալեան 'ի վանահայրութեան և յամին 1856. առ որով յամի 1850 եօթն ազգասէր բնակիչք Ալեքսանդրապօլի ընկերացան վերանորոգել զվանսն և բարեկարգել, առաջնորդութեամբ Տեառն Յովսեփայ Կոստանեանց. և յայնմհետէ սկսաւ առաւել վայելչանալ, մանաւանդ սատարութեամբ և խրախուսանօք այժմեան Կաթողիկոսին, յօթևանելն անդ յամարանի։

62. Ի հարաւակողմն վանացս 'ի փոքու ձորակի 'ի սեպացեալ քարաժեռի ուրեմն՝ որ 'ի սաստանութենէ խմբէ երևի անջատեալ 'ի մերձակայիցն, կայ մատուռն փոքրիկ անգմբէթ, դուռն 'ի հիւսիսոյ կուսէ ունելով, յորոյ վերայ երևի սաեն և արձանագիր, այլ գի անմատչելի է տեղին՝ անծանօթ մնայ և չինուածն։ — Անծանօթ մնան և տեղիք ինչ յիշատակեալք յարձանին Զաքարիայ, և ամրոցն, որ թերևս քաղաքորմն իսկ մենաստանին էր. իսկ սեփական գիւղ իւր Մոկորին՝ այժմ կոչի Մեծ Պարնի (Պարոնի) գիւղ, և մերձ է 'ի Հառիճա, 200 հայարնակ տամբք. զի կայ վերագոյն 'ի հիւսիսոյ Արդիկայ և փոքր Պարնի գիւղ, Ս. Գէորգ եկեղեցեաւ, Պէկքէնտ կոչեցեալ յայլազգեաց։ — Առ գետակաւ և ձորով Հառիճայ երկումղոնաւ 'ի Հ. Մ. վանացն կայ Արդիկ գիւղ Հայոց իբր 200 տանց գաղթելոց 'ի Կարնոյ և 'ի Կարուց։ Ունի և սա հնաշէն եկեղեցիս գեղեցիկս երկու. մին մեծ Ս. Գրիգոր խաչաձև կիսաբոլոր թևօք [1], անսիւն, կամարօք բարձեալ զձեղունն, որոյ գմբէթ անկեալ է. միւսն փոքրագոյն, յանուն Ս. Աստուածածնի, նոյնպէս անսիւն է. որոց չինողացն անուանք անծանօթ մնացին առ 'ի չգոյէ արձանագրութեան 'ի ստորին կողմանսն, և ոչ կարելոյ քննողին ընթեռնուլ զբարձրայինս։

Յարևմտից հարաւոյ Արդիկայ գեղջ կայ աւերակ մենաստան Լմբատայ, որ հաւանաբար առեալ է զանունն 'ի գեղջէ՝ այժմ անբնակ և անյայտ եղելոյ. երևին մնացորդք ինչ բնակութեան վանականացն, կոփածոյ քարամբք, և եկեղեցին փոքր յանուն Ս. Ստեփանոսի, խաչաձև 'ի ներքուստ և արտաքուստ [2]։ Ոչ ժամանակ չինութեանն է յայտ և ոչ այլ դէպք տեղւոյս, բայց որչափ է ընթեռնուլ յարձանսն, որ յելս ԺԲ և 'ի սկիզբն ԺԳ դարուց. յորոց միակ թուականն որ 'ի ստորև գմբեթին, յամի 1191, յայտնէ զամայանալն յառաջ քան զայն, վասն որոյ և հնագոյն զոլ չինութեամբ.

Ոխ. Կամաւն Աստուծոյ ես տէր Բարսեղ որ գնեցի զվանքս յանաւրինաց եւ ետու զՑիցքն վանիցս եւ զջուրն որ իւրեան էր ի հնոց եղեալ յիշատակ ինձ եւ բարեխաւս առ Քրիստոս. եթէ ոք զյիշատակս մեր խափանեսցէ նզովի յԱստուծոյ եւ յամենայն սրբոց։

Ի ճակատ սեղանոյն արձանագրեալ է Մեծին Զաքարիայ սպասալարի հաստատելով զվերոգրեալ տուրս տեղւոյն.

Կամաւ բարերարին Աստուծոյ ես Զաքարէ Ամիր Սպասալար Շահնշահ եւ Մանդատորթա խուցէս ետու զՑիցքն իւր հողովն (եւ) ջրովն լեռնականաւ եւ դաշտականաւ ի Ս. Ստեփաննոս եկեղեցիս յիշատակ ինձ եւ եղբաւրն իմո Իվանէի եւ ծնողաց մերոց... կատարեսցեն Սարգսին. զկնի կենաց իմոց ինձ. ի հայրութեան....

Կարևոր են և արձանք Գրիգորի արքեպիսկոպոսի Անւոյ, որոյ և տոհմի նորա սեփական ժառանգութիւն էր տեղին, և այլոցն ևս նուիրատուաց. բայց ընթերցուածք արձանացն ստուգութեան և լրման կարօտին, ևս առաւել ներքոյ գրեալքն [3]։ Յարևելեան որմն գրեալ են երկոքին արձանքս.

[1] Ջալալեանն 30 կանգուն առէ զերկայնն, 44 զլայն։ Միւսոյն 26 երկայն, 22 լայն։

[2] Ըստ Ջալալենի՝ 13 կանգուն ընդ երկայնն, 10 ընդ լայն։

[3] Շնորհիւն Աստուծոյ ես Սիմէաւն Ծուպուլիս որդիս որ ետու զիմ այգին Մաւխաենցն է զիմ բաժինն (ի) Լմբատայ սուրբ Ստեփանոս եւ բարեխաւս ինձ առ Քրիստոս. արդ թէ ոք հակառակ կայ այսմ բանիս Քրիստոս Աստուած նզովէ զիւր մահն եւ զիւր կեանքն. եթէ ոք հակառակաբար ջնջել ջանայ՝ ջնջեսցի անուն նորա յաւիտենից։

Շնորհիւն Աստուծոյ ես Գրիգոր եւ իմ եղբարքս տվաք զմեր հայրենիս... ի սուրբ Ստեփաննոս ի հայրութեան Մաւսէսի իւր սիրելի եղբարց Աւաքէլի եւ Վարդանայ յիշատակ մեր ծնողաց եւ մեզ. սոքա սահմանեցին ի սուրբ խաչի շաբաթ աւրն (ի) մատուռն պատարագել ա̄ աւրն Մխիթարայ......

Ի հիւսիսային որմն.

Կամաւն Աստուծոյ ես Կարապետս եկի ի սուրբ Ստեփաննոսի դուռն եւ տեսայ որ ջուր ոչ կայր ի

Կամաւն Աստուծոյ ես Տէր Գրիգոր որդի Ապուղամրի Անւոյ եպիսկոպոս տուի զորդ․ք եւ զԲուրբենց երիցութիւն Լմբատա իմ հայրենեաց եւ նոքա տարին ա̅ պատարագ ինձ տուին հաստատ պահաւդք աւրհնին յԱստուծոյ․ եթէ ոք հանել ջանայ կամ առնուցու բռնութեամբ զԿայէնի եւ զՅուդայի (անէծս) առցէ․ յժ̅ը̅ հայրապետաց նզովեալ եղիցի եւ մեր մեղացն պարտական եղիցի ։

Կամաւք բարերարին Աստուծոյ այս մեր արձան անջնջելի եւ յիշատակ մշտնջենաւոր Տեառն Գրիգորոյ արհիեպիսկոպոսի մայրաքաղաքին Անւոյ եւ նահանգին Շիրակայ ժառանգորդ եւ սեփական մերոյ աթոռոյս որ եաոււն? որ էր հաւրեղբայր աստուածապատիւ Տեառն Բարսղի, հալալ արդեամբք ստացեալ ի սուրբ ուխտս Լմպատ զնորին գանձագին գեղն մերձ ի յԱրգիկ, որ կոչի յանուն Հայրենեաց թաղք ընծայեցի զսա սուրբ Ստեփաննոսի հայրենիք մինչ ի կատարած յաւիտենիս յաղագս յիշատակի մերոյ (եւ յ) արեւշատութիւն եղբաւր իմոյ Ղարփին եւ հայր Գրիգորի եւ Բարսղի ստացողի սոցա եւ ծնողաց մերոց․ եւ եդի լուծ սպասաւորաց սոցա ի տարին (գ̅) պատարագս փոխարէն հաստուցանելոյ ի տաւնի Ղազարու․ զերկուսն Տէր Բարսղի եւ զերկուսն իմ հաւր զերկուսն իմ մաւր Մահմլքին․ կատարիչքն աւրհնին ի գալստեան Քրիստոսի․ մի ոք իշխեսցէ հակառակել եւ զյիշատակս (մեր խափանել)․ եթէ ոք յանդգնի եւ զդեղս յայս վանից հանել կամենայ հանցէ զնա Աստուած ի կենացն անվախճանից հոգւով եւ մարմնով․ իսկ որք հաստատուն պահեն զգրեալս մեր աւրհնութիւն Աստուծոյ եղիցի ի հոգիս եւ ի մարմինս նոցա․ ամէն ։ — Ջերջանիկ հայր զԱռաքեալն եւ զտանուտէր զարդինարար տանս զԻուբէն յիշեցէք ի Քրիստոս ։

Անծանօթք են, այլ մերձ Լմբատայ գուշակին՝ տեղիքն յիշեալք յարձանում, Ցիցք և Հայրենեաց թաղք գիւղ, որ և յայտնապէս ասի մերձ լինել յԱրգիկ, և նկարայելին Բուրբենց։

63․ Իբրև փարսախաւ ՚ի Մ․ Հ․ Արգիկայ և երկու մղոնաւ ՚ի Մ․ Հր․ Քեաֆթարլուի և մերձագոյն եւս ՚ի Հոռոմ, առ եզերբ Հաւրճայ վտակին և ՚ի լեռնոտին՝ կայ Մէչիտլի (մզկթաւոր) գիւղ, յորում հին եկեղեցի յամրոց փոխեալ, որպէս Հաւրճայն և Արգիկայն, այլ զի արդն ոչ է ինձ յայտ։

սմա եւ բնակչաց սորա Թախամձեալ զիս ի բերել ջուր․ եւ ընկալայ գ̅ պատարագ ի տաւնի Ստեփաննոսի։

Ի վերոյ արձանի Տեառն Բարսղի․

Կամաւն Աստուծոյ ես իշխանս որ իմ կամաւս

Ի ամին ձորակի Հաւրճայ գետոյ և կիսաժամաւ անդ հեռի ՚ի վանացն, յարևմտից Հր․ նշանակի աւերակ Սաքիս (կամ Սօվուզ) – պուլազ գեղջ, թերևս և աղբիւր անուանի։ — Նոյնչափ հեռի ՚ի սմանէ և ըստ նմին դրից ՚ի Մ․ Հր․ կայ Մահմուտձուգ գեօղ, յորում եկեղեցի հին․ և իբր մղոնաւ ՚ի բացէ ՚ի Հր․ Մ․ Նորին՝ յատ մի Արագածու՝ հին և աւերակ վանք Մակարայ որ և կարմիր քեն։ Մի և սա ՚ի հին վանորէից երևի ՚ի ծնացորդաց արձանացն, զի բնակարանքն քայքայեալ են, եկեղեցին փոքր և վայելչակերտ գմբեթաւ կանգուն կայ [1],

եւ իմ սրտի յաւժարութեամբն զիմ ընձամն ծախեցի Լմբատայ սուրբ Ստեփաննոսի ի փուր? (ճաւր?) խաչատրոն որ ծախեցի զվճար առի ոչ ում տավայ [2] չկայ հետ սուրբ Ստեփաննոսի ոչ իմոց եւ ոչ աւտարաց․ Ես Մայր? Անեցի․ ես Վայեցի Գէորգս գրեցի զհրամանս իշխանի։

1 Ասի 19 քայլ ընդ երկայնն, 12 ընդ լայն։

2 Ջալալեանն ընթեռնու կամ գրէ տղայ։

երկոքումբք մատրամբք, յաջմէ և յահեկէ բեմին. իսկ ժամատունն նոյնպէս փոքր՝ կործանեալ է, հիւսիսակողման որմոյն միայն կանգուն կալով. 'ի ճակատ աջակողմեան մատրանն արձանագրեալ է յամի 1001.

**Ի ՆԾ Թուականութեան Հայոց ի հայրապետութեան Տեառն Մարգսի Հայոց կաթողիկոսի եւ ի թագաւորութեանն Գագկայ Շահանշահի ես Սահակ հայրապետ . . .**

— Ցորմն արևելեան արտաքուստ գրեալ է, սակաւ մի խանգարեալ և անթուական արձանս այս.

**Կամաւն Աստուծոյ ես հայր Վարդան եղէ . . . . (պատճառ վերանորոգութեան) հին շինութեան սուրբ ուխտիս եւ բազում աշխատութեամբ շինեցի զվանքս . աղաչեմ ընթերցողդ զիս եւ զծնողս (իմ) յիշեցէք ի Տէր ։**

— Եւ 'ի ճակատ դրանն միւս այլ արձան նոյնպէս անթուական, յորում և յիշի Աղին գիւղ.

**Կամաւն Աստուծոյ ես Եղբայր անուն ետու զիմ հայրենի այգին զԳանիէլեանց հողն որ յԱղին տան ի սուրբ Սիաւն Մակարավանից յառաջնորդութեան Վարդանայ եւ տէրութեան տեղւոյս Յովհաննէս միակեցի . եւ սպասաւորք սուրբ ուխտիս սահմանեցին յամէն տարի պատարագել Գ̅ աւր նոր կիւրակէին շաբաթ աւրն Գ̅ ինձ եւ Աչաղուանն (?) աւր Գ̅ . եթէ ոք ի մերոց կամ ի յաւտարաց խափանէ պատժին յԱստուծոյ . կատարիչքն աւրհնին ի Քրիստոսէ ։**

— Ի հարաւոյ վանացս իբր մղոնաւ և կիսով 'ի բացեայ 'ի ստորոտս Ջիարէթ լերին (իբր 10,000′ բարձու) որ մի է յոստոց Արագածու, կայ Շիրվանճուղ գիւղ, և 'ի սմա ևս հին մենաստան աւերեալ, այլ որպիսութիւնն ոչ է ինձ յայտ։

64. Հաւիճայ գետն անդր քան զՄէչխալի՝ դարձեալ յարևմուտս և ընկալեալ գետակ մի ուղղակի 'ի հարաւոյ եկեալ, 'ի սահմանակցութեան Թալնոյ Արագածոտան, ոռոգէ զարևելեան հարաւային մասն Արևելեանս Շիրակայ, յորում 'ի գլուխ գետակին և ոչ հեռի յԱտիեաման և Մաստարայ գեօղից Թալնոյ, նշանակի փոքր տեղի մի աւերակ Պուղուրքլու անուն. 'ի Հ. սորա իբր փարսախաւ, և նոյնքան 'ի հարաւոյ Շիրվանճուղ գեղջ Սեօկիւտլիւ գիւղ (Ուռենուտ), Ս. Յակոբ եկեղեցեաւ 'ի ստորոտս ոստոց Արագածու և առ ձորակի միոյ, կարի ընդարձակ խոտամարգօք. 'ի վերոյ գեղջն 'ի լեռնաբլրի կայ քարայր մեծ կարմիր վիմօք, յորոց խոխոջանօք ելանէ աղբիւր ականակիտ 'ի գիւղն և 'ի ձորակն, զոր հանդերձ այրիւն անուանեն Ս. Լուսաւորիչ, իբրու թէ նշմարին 'ի քարինսն անձեռագործ ձևք խաչից, և ի մէջ այրին կանգնեալ է վէմ սիւնաձև բոլորշի վեց թզաչափ, յորոյ վերայ վառեն մոմեղէնս և խունկ ածեն, համարելով անդ ճգնեալ զԼուսաւորիչն, և խաչ կանգնեալ է 'ի գլուխ սիւնակին և 'ի նորքոյ դրեալ՝ Սուրբ Գրիգոր։

Իբրև քառորդաւ ժամու 'ի Մ. Հ. գեղջն նշանակի փոքր չէն Կիւռեքլեանի ? չգիտեմ որպիսի. և նոյնքան կամ սուղ աւելի հեռի 'ի սմանէ նովին դրիւք Մ. Հ. Գըրմըզը գիլիսէ ըստ այլազգեաց, փոքրիկ չէն, առ ձորեզերբն. և առ նմին աւերակ Հոգեվանք կոչեցեալ, որոյ կանգուն կայ հոյակապ եկեղեցին գմբեթաւոր, անսիւն, ամբարձեալ 'ի վերայ կրկնակ կամարաց չորից որմաւեանց. 'ի ներքուստ անթերի և անաղարտ է գոգ գմբեթին, արտաքուստ սակաւ մի խախտեալ, կարմրերանգ վիմօք սալարկեալ, և 'ի խորշս խորշս ձևակերպեալ, 'ի ստորին եզերսն միայն ունելով քանդակս սևաւ քարաշարիւ. յաջմէ և յահեկէ սեղանոյն են մատրունք կամ խորանք, և յամենայն կողմանց մի մի լուսամուտք, լայնք 'ի ներքուստ, նեղք և երկայնք արտաքուստ. և յարտաքին որմունսն յամենայն կողմանս երկու երկու դատարկք կամ գոգք, որպէս կաթողիկէին Անւոյ և այլոց ոմանց եկեղեցեաց. անկեալ է երեւս հարաւային որմոյն արտաքուստ, այլ ներքինն ամբողջ կայ. երկու են դրունք 'ի Մ. և 'ի Հ. այլ դերբկօք խցեալ կիսով չափ, որպէս և մէջ եկեղեցւոյն, այնպէս զի ծնգովք հարկ է մտանել 'ի մատրունսն. յորոց ճակատս 'ի կիսաբոլորի սեմոյն կան երկար արձանագիրք, նոյնպէս և յայլ կողմանս ուրեք, այլ մեծաւ մասամբ եղծեալ և քանդեալ թշնամութեամբ և ոչ հնութեամբ, թէպէտ և հնութիւն տեղւոյն յայտնի

'ի ձեռն, և Թուականաւն 'ի վերայ հիւսիսային մատրանն, Թ. ԾԳ. որ է 604 ամ Քրիստոսի եթէ չիցէ վրիպեալ յընդօրինակողէն հարիւրաւոր Թուանշանն: Ցարձանագրի արևմտեան դրանն ընթերցան բանքս,

**Ի Հոգեվանքս . . . . յաւաջնորդութեան հաւր Գէորգայ տարին գ̅ պատարագ . . .**

Ցայլում արձանագրի վերծանի Վարդան անուն[1]:

65. Երեք մղոնք 'ի վերոյ, 'ի Մ. Շիրվանձուգի կայ Փօղազ-քեանճ գեօղ Հայոց իբր 40 տանց, ուր ագաւ երբեմն Ճիլ գրապետ կայսեր Ռուսաց (յ'8 հոկտ. 1856). ունի նորաշէն եկեղեցի վայելուչ յանուն Ս. Աստուածածնի: Ցորմէ կիսաժամաւ հեռի 'ի Հ. Մ. Մօլլա-կեօկչէ. իսկ 'ի սմանէ երեք մղոնք վերագոյն 'ի Հ. Սիվրիպաչ (կամ Սարիպաչ). իբր քառորդաւ ժամու 'ի Հ. յետնոյ Մուճկուրլու առ գետակաւն. և իբր երկու մղոնք յաբևելս կոյս երկոցուն յետնոց գիւղիցս կայ աւերակ գեղջ միոյ Աշաղալի կոչեցեալ. յորոյ Հր. և իբր երեք մղոնք յարևմտից Արդիկայ՝ Արմուտլու (Տանձուտ) գիւղ, և Աշաղը աւերակ, յընդարձակ միջոցի երկոցուն գետակացն, որք սակաւուք 'ի ստորև Սունկուրլեայ 'ի հիւսիսոյ կուսէ միակցին. և խառնուրդն խաղացեալ ընդ արևմուտս հիւսիսախաւն՝ անկանի յԱրփա ըստ վերոյգրելոցս: Մերձ 'ի բերան անդր 'ի հարաւոյ կուսէ հպագոյն ևս յԱրփա՝ կայ Դահարըլը գեօղ, ուր և պահականոն Ռուսաց, երկու մղոնաւ յարևմտից Գարագիլիսէի:

Խաղալով արդ ըստ ընթացից գետոյս Արփայ և Ախուրենոյ 'ի վայր, ընդ հարաւ արևմտախաւն, առաջին գիւղ և պահականոն յետ Դահարլեայ է Փայաճուղր, որ կիսաժամաւ ևեթ հեռի կայ 'ի Շիրակաւանէ կամ յԵրազգաւորաց յայնկոյս գետոյն, ուրանօր 'ի սկիզբն պատերազմին ընդ Օսմանեանս յամի 1877 յամսեան ապրիլի, Ռուսք արկեալ կամուրջ անցին յարևմտեան Շիրակ, առաջնորդութեամբ Լոռիս Մելիքով զօրապետի: Ի Հր. սորա և սակաւ մի հեռի 'ի գետոյն՝ Քէլալի, յորոց Մ. Հ. կայ միւս ևս պահականոն Ռուսաց. իսկ յարևելից կողմանէ մղոնաւ հեռի՝ Գափուշլու: Երկու մղոնաւ 'ի Հր. Քէլալեայ առ գետեզերին՝ Թավշան-ղըշլախ, ուր իբր 100 տունք Հայոց: — Երկու մղոնք ևս 'ի Հր. սորա՝ Ղազարապատ, ուր դարձեալ պահականոն: Ցարևելից կուսէ երկոցուն սոցա, միոյն ընդ Հր. և միւսոյն ընդ Հ. իբր փարսախաւ հեռի 'ի Նոցանէ 'ի ստորոտս լերին միոյ՝ Սուֆանվերտի գիւղ, կամ Սրվանվերտի. յորոյ Մ. Հր. ամբառնայ Գզըլ տաղ լեառն 5550': — Մերձ 'ի Ղազարապատ յՆ. Հր. իբր կիսաժամաւ ևեթ



76. Կամուրջ առ Ջըրփըլու գիւղիւ:

հեռի կայ ամայացեալ գիւղն Գարապուլաղ (Սեաւ աղբիւր). և 'ի սորա Հր. երկու մղոնաւ հեռի Պապուրլու գիւղ հայաբնակ, Ս. Աստուածածին եկեղեցեաւ. Նոյնքան ևս 'ի Հր. Պապուրլեայ 'ի ձորամիջի լերանց Խորխ կամ Ղօրաղ գիւղ, յոր անուն կոչի ևս շուրջ սահմանն ամայի, յորում ամբառնան լեռնակք և բլուրք, և մին 'ի Հ. Մ. Խըրըխայ՝ կոչի Գըրք կամ Խորխ բէփէ: Մղոնաւ հեռի 'ի լեռնակէս 'ի Հր. Մ. կուսէ և մերձ յԱխուրեան՝ Աղին գիւղ յիշեալն յարձանագրի Մակարայ վանից, ուր Դանիէլեանց այգիքն էին. այժմեան եկեղեցին Հայոց կոչի Ս. Ցակոբ: — Ի սմանէ մղոնաւ և կիսով հեռի հանդէպ խառնրդոց Մաւրիկայ գետոյն յԱխուրեան՝ կայ Ղէղաձ գիւղ. Նոյնքան և 'ի սմանէ հեռի առ գետեզերբն Ջըրփըլու մեծ գիւղ Հայոց, Ս. Սարգիս եկեղեցեաւ, և պահականոն. առ որով կայ կիսաքանդ կամուրջ հնաշէն միակամար 32 Ջ. լայն բացուածով[2], 'ի վերայ բարձրաբերձ գետափանց Ախուրենոյ, յանդըգնօրէն արկեալ, ոչ ինչ ընդհատ յՆրաստայնոյն՝ անհա-

1 Ըստ տեղագրողին (Արարատ, Գ. 46) «Ի Տէրութեան . . . Տէր Վարդան . . . Տէր Եծ»:

2 Սարգիս Ջալալեան՝ որ զԱ հատոր ճանապարհորդութեանն տպագրեալ է յամի 1841, տակաւին իբր կանգուն յորոգէ զկամուրջս զայս, զոր այլք կործանեալ ասեն, Խամթուն Օղլի տերանց կողմանցս:

ւստալոյն Վիրգիլեայ. կայ առ նմին և հին և ընդարձակ քարաշէն իջևանատուն, զորոյ մասն մի յեկեղեցի յարդարեալ է Հայոց. իսկ 'ի վերայ կամրջին գործեալ էր և հուն անցի ջրոյ կամ ագուգայս, որոյ երևին և 'ի պատկերիդ պատուարք ամբարձիկք աւելի քան զ'125 Ք. երկայն, ցարևմտեան ծայր կամըրջին, յորոյ և յերկոսին գլուխսն սենեակք էին պահապանաց։ — Ցարևելից գեղջս սակաւուք հեռի ամբառնայ Ջալրէփիէ լեռնաբլուր. և յԵլ. նորա և 'ի Մ. Հր. Խըրխայ՝ Պօգտօղան գիւղ, յորում նշանակի եկեղեցի հին։ Եւ բացագոյն յարևելս առ սահմանօք Թալնոյ վիճակին Արագածոտան՝ Դաշգալէ գիւղ. և ևս 'ի հարաւոյ առ նովին սահմանակցութեամբ Պազարխանէ, առ որով և լճակ մի փոքրիկ։

66. Ցարևելեան հարաւային սահմանաց աստի մինչ 'ի գետն Ախուրեան և մինչև 'ի հարաւային ծայրս Արևելեան Շիրակայ, յընդարձակ միջոցի իբրև 100 մղոն տարածութեան չիք բնաւ գիւղ չէն, այլ աւերակք և ամայք և երկիր խոպան, յոր յարեալ և որ յայն կողմն Ախուրենոյ համանման երկիրն՝ որ ընդ մէջ Բագնայրի և Ալամանայ, 'ի միջակին ունելով զմենանիստ Անի, ահա կերպարանի տրտմահաղորդ դաշտն այն կամ Ագարակ Հռովմայ (Campagna di Roma), յոր 'ի դէպ է սաւառնել խորհրդածութեամբք՝ մինչև իցէ հետախուզութեան յայտնեալ զվաղնջուցն յիշատակարանս։ Ընդ այս սահմանս անցանելով յամի 1691 (23 փետր.) Հայր Վիլլոտ Ցիսուսեան 'ի գալն յԷջմիածնէ, և առ Գըներք գեղջ



77. Գզըլ գիլիսէ։

ընդ Ախուրեանն, զոր կարծեմ Գինեկ՝ յիշեալ յարձանս Բագնայրի (յէջ 123), զողջոյն զճանապարհայն ոչ ինչ այլ տեսանել՝ բայց աւերակս գիւղից և քաղաքաց և եկեղեցեաց նախնեաց, վկայս զօրութեան և բարեպաշտութեան Հայոց 'ի ժամանակս Թագաւորութեան նոցին [1]: — Իբրև 'ի միջավայրի ամայութեանցն արևելեանս Շիրակայ չորիւք մղոնօք՝ յարևմտից հարաւոյ Պազարխանէի և վեց մղոնաւ յԵ. Ախուրենոյ՝ կան աւերակք Ջարըճձի գեղջ, 'ի զուարճալի խոտաւէտ սահմանի, զոր ոռոգէր երբեմն վտակ ջրոյ եկեալ 'ի Մաստարայ Արագածոտան, և կոչէր յանուն Ս. Նախավկայի, վասն մատրան միոյ 'ի բլրի 'ի սահմանակցութեան երկոցուն վիճակացս։ Իսկ 'ի գեղջն կիսականգուն կայ եկեղեցի փոքրիկ խաչաձև, անսիւն, գմբեթաւորեալ 'ի վերայ կամարաց, որոց մասն մի անկեալ է. վեց լուսամուտս ունի, երկու երկու 'ի Հ. և 'ի Հր. և մի մի յարևելս և յարևմուտս. յաջմէ սեղանոյն կայ մատուռն կրկնայարկ, երկու են դրունքն 'ի Մ. և 'ի Հր։ Վայելուչ է յոյժ կերտուածն արտաքուստ և Թևքն խա-

1 On ne voit sur cette route que des ruines de villages, de villes et des églises anciennes; et tous ces restes font voir quelle a été autrefois la puissance et la religion des Arméniens du temps de leurs rois. — Voyage d'un Missionaire (Villotte). 195.

չանեաք, որոց մէն մի պատուհանք են, զատ 'ի կողմնակա֊ նացն. գմբէթն ութանկիւնի կամ ութամասն տրոհեալ, սիւնակս ընդ մէջ ունելով մանուածոյս: Բովանդակ չի֊ նածն կարմիր կոփածոյիւք է, և 'ի քարինսն երևին տառք Մ. Ս. Գ. Ո. իսկ արձանագիր ոչ ծանուցաւ ցարդ, բայց այս դոյզն ինչ 'ի հիւսիսային թև եկեղեցւոյն.

## Ես Թամար ծառայ Աստուծոյ որ ագա . . . . . յաղաւթս յիշեցէք:

Ցարևմուից Հր. Զարընձեայ' 'ի սահմանակցութեան Թալնայ վիճակին' կայ ամայի գիւղն Տէրքքենտ (Զորա֊ գիւղ). իսկ 'ի Մ. Հ. իբր երիւք մղոնօք յՆՆ. Ախուրենոյ առ Հոռոմոսի վանօք' Նիւենքոյա գեօղ ամայի. յորոյ Մ. կուսէ մերձագոյն ևս 'ի գետն ամբառնայ Քիւրտ֊բէյիկ լեռնաբլուր. յորմէ իբր մղոնաւ և կիսով հեռի 'ի Հ. նոյնքան և 'ի Հոռոմոսին վանաց' առ գետեզերբն կայ Գզըլգիլիսէ, ըստ Հայոց Կարմիր վանք [1], պահակատուն և գիւղ մեծ Հայոց 100 տանց' գաղթելոց 'ի Խօշավանից. յորոց Մարգար Տէր Պետրոսեան հաստատեաց բազում ջրաղացս յեզեր Ախուրենի: Նշանաւոր է Ս. Գրիգոր հին եկեղեցին' կարմրաքար, յորմէ գիւղն առնու զա֊ նունն, և տակաւին կանգուն կայ հոյակապ գմբեթաւն, ամբարձեալ 'ի վերայ չորից սեանց, գեղանկար պասկե֊ րօք 'ի ձեղուանն. շինեալ է, որպէս արձանագիրն հա֊ րաւակողման որմոյն ցուցանէ, յամի 985, 'ի վանահայրց Հոռոմոսի' 'ի Սարգսէ և 'ի Սողոմոնէ, 'ի ձեռն Սամե֊ հանի արեղայ ճարտարապետի[2].

Յանուն Աստուծոյ եւ ի թագաւորութեան Սմբատայ Բագրատունոյ Շա֊ հանշահի կանգնեցաւ . . . ս այս անուն անուանագրութեամբ Ս . . ի զոր հիմնա֊ դրեաց այրն Աստուծոյ հայր սորա . իսկ (յետ) ելից նորա հայր Սողոմոն հարազատ եւ ժառանգ սուրբ ուխտիս աւարտեց . . . Սարգիս Հոռոմոսի վա֊ նաց առաջնորդ . . իա փոխի յաշխարհէ նախ քան զաւարտումն . Շնորհիւն Աստուծոյ զկնի: ե: ամի (փոխ)ման ծնողի իմոյ . ի ՅՆԶԶ (լինելո)ւթեան աշխարհի . . . գալստեանն Քրիստոսի, ՈԶԴ լուսաւորու(թեան) Հաոց ՆԼԴ . Սուրբ Երրորդութեանն որք մտանէք ընդ դրունս . . փառս Քրիստոսի Աս֊ տուծոյ խոստ . . Եւ զաշխատողս սորա . եւ Տէր Քրիստոս հասարակաց ո֊ ղոր . Ի ձեռն Սամէհանի ճարտարպետի աբեղայի . յիշեսջիք ի Տէրն մեր Յի֊ սուս Քրիստոս . որում փառք յաւիտեան:

Ցաջմէ և յահեկէ խորանին են փոքրիկ աւանդատունք. 'ի վերայ դրանն' որ յարևմտակողմանն' բոլորաձև խաչ մեծ, նոյնպէս և աստի և անտի լուսամուտին' որ 'ի վերոյ նորին' խաչվէմք երեք: — Ցերի հին արձանագրին գոյ և հակիրճ յիշատակ տրից աշխարհաշէն առն' Մեծին Զա֊ քարիայի Սպասալարի.

Շնորհիւն Աստուծոյ ես Ամիր Սպասալար Զաքարիա ետու զԿարմիր մար֊ գին Բ դանկն Սուրբ Ուխտիս:

[1] Բեցհոլտ. Petzhold, Der Kaukasus, եcc. I. 278.

[2] Ուրեք ուրեք խանգարեալ է արձանդ, զորոյ նմանագիր օրի֊ նակ Գերմանացի ճարտարին' ընկալեալ 'ի ճեմարանէ Պետրպուրկի' եդաք 'ի կարգին. Ջալալեանն (Ա. 222-23) յույժ այլայլէ զգրուածդ, յայանի վրիպակօք և զեղչմամբ. այլ յարմարէ 'ի դիւրին իմա֊ ցուած, այսպէս. « Յամս աստուածպաշտութեան և թագաւորու֊ » թեան Սմբատայ Բագրատունւոյ Շահնշահիս կանգնեցաւ վէմս » այս անուանագրութեամբ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին. զոր » հիմնադրեաց այրն Աստուծոյ Սարգիս Հոռոմոսի վանից առա֊ » ջնորդն. իսկ յետ ամի միոյ փոխի յաշխարհէ նախ քան զաւար֊ » տումն սորա. իսկ յետ ելից նորա ես Հայր Սաւղոմոն նորին հա֊ » րազատ եւ ժառանգ սուրբ ուխտիս աւարտեցի շնորհիւն Աստու֊ » ծոյ զկնի հինգամեայ փոխման ծնողի իմոյ . . . . . եւ 'ի թուոջս » Հայոց ՆԼԴ 'ի փառս Քրիստոսի Աստուծոյ. Խոստովանաւղք Սրբոյ » Երրորդութեան որք մտանէք ընդ դրունս սրբոյ եկեղեցւոյս յի֊ » շեսջիք զիս եւ զծնաւղս իմ զՀայր Սարգիս եւ զաշխատողս սորա » եւ Տէր Քրիստոս հասարակաց ողորմեսցի . . . 'ի ձեռն Սամէհանի » ճարտարապետի աբեղայի. յիշեսջիք 'ի Տէր մեր Յիսուս Քրիս֊ » տոս. որում փառք յաւիտեանս. ամէն »:

Այնքան այլայլութիւն է յերկոսին ընթերցուածսդ' զի մարթ էր համարել երկւիցս արձանագրեալ յայլ և այլ կողմանս տաճա֊ րին: Եղծմամբ վիմին ջնջեալ է թուականն Քրիստոսի, այլ յե֊ րիցն այլոց աներկբայ հաւաստի լինել 985-6 ամն, յորում թագա֊ ւորէր Սմբատ միջին զոռողն: Այրն Աստուծոյ' անշուշտ է հայր սուրբ Աշոտ ողորմած հիմնադիր եկեղեցւոյս, և որոշակի տեսանին ան֊ եղծք բառքդ նոտարագրեալք, որոց փոխան Ջալալեանն ընթեռնու Հայր Սարգիս. և ըստ այսմ թուականի հնագոյն է շինուած եկե֊ ղեցւոյս քան զԱնւոյ եկեղեցեաց, և գաստակերտ սիրելագոյն թա֊ գաւորի: Բայց անկ է և լուսագրութեամբ ճշգրտել զընթերցուած կարեւոր արձանիդ:

Մարթ է համարել զտեղիդ զայդ լինել սոյն իսկ գեղջս և անուանել Կարմիր մարգ։ Գոյ և յարևելեան որմն եկեղեցւոյն արձանագիր մի Քարիմատեանն Ուքանայ, ոչ քաջ ստոյգ ընթերցուածով, յամի 1271. և է այսպէս.

Ի թվին Ջի. Շնորհիւն Աստուծոյ Ես Ուքան Քարիմատինս եւ եղբայր իմ Պապքան Վախրատինս որդիք Սարգսի Թոռն[1] .... հոգեւոր (?) ամենայն սահմանաւքս հողով եւ ջրով եւ շինեցաք ի կորդոյ եւ զարդարեցաք սպասիւք եւ գրենաւք եւ ընծայեցաք եկեղեցւոյս զմեր գանձագին հայրենիքն զԽԱՃԱՊԻՆ դանկն որ միջաւրէն էր Շահապին, զվերեւն եւ զներքեւն եւ զհարաւ կողմանն կուղպականոմն եւ այգի մի ի Բագրան զԱյգեհարն եւ զԱքստին ? կապն եւ զԽաչխիտուոյ դ̅ դանկն եւ զՋաղացս։ Հայր Սարգիս եւ այլ եղբարքս փոխարէն հատուցին յամենայն շաբաթն աւր գ̅ խորանն մեր հաւրն Սարգսի. եւս եթէ եւ մեր չէ ?. պատարագն. եւ դ̅ աւր Սարգիս արքաւունին. Որք հակառակ կան ընծայիցս դատին ի Քրիստոսէ. ամէն։ Մխիթար գրիչ.




78. Երերուք (Գզըլ գուլէ)։

— Կայ և Նոր Գզըլ-Գիլիսէ գիւղ Հայոց, Սուրբ Աստուածածին եկեղեցեաւ։ — Մերձ է 'ի Կարմիր վանս Համզաքերէկ գիւղ փոքր։

67. Երիւք մղոնօք 'ի Հր. հին գեղջն՝ հանդէպ աւերակաց Անւոյ հաստատեալ էր Ռուսաց պահակատուն յանուն քաղաքին. յորմէ երկու մղոնաւ 'ի ստորև առ գետեզերբն կայ միւս ևս հանգոյց Աչպոխաանեանն անուն. և ընդ մէջ երկոցուն՝ Գըավուզ-բէփէ լեռնաբլուր։ Երկու մղոնաւ ևս 'ի Հր. Ե. հանգրուանին առ գետեզերբն կայ աւերակ հին եկեղեցւոյ, այլ ոչ գիտեմ որպիսի և որոյ գեղջ։ Աստի ևս իբր երիւք մղոնօք 'ի խոնարհ առ գետեզերն՝ հանգրուան մի Թաւըըգ կամ Թամնիկ անուն, և պահակատուն յանուն Գզըլ-գուլէ հանգրուանի, որ կայ 'ի ստորև բացադոյն. և կոչին սոքա այսպէս (Կարմիր բուրգն) ըստ գունոյ կոփածոյ քարանց և ձևոյ գմբէթի հոյակապ եկեղեցւոյ միոյ՝ որ 'ի հիւսիսոյ կողմանէ պահակատանն, իբր մղոնաւ հեռագոյն կայ 'ի սարահարթի ուրեք բարձու, քառակուսի, 23 Ք. երկայն 14 լայն[2]. ունելով 'ի չորեսին ևս անկիւնան մատուռնս կամ սենեակս փոքունս, և բաց յարևելից յայլ կողմանս գաւիթս իմն սիւնաբարձս, որոց ձեղունք կործանեալ անկեալ են. և երևի անսիւն որոցաձև եղեալ տաճարին, ունելով զկէս լայնութեան բոլոր եկեղեցւոյն. խորանն և որ առ նովաւ մատուռնքն կանգուն կան. երևին և պատուհանք տասն

1 Ցիշէն երկոքին եղբարքդ յարձանագրի միում Նշխարատան Հոռոմոսի վանաց, յամի 1274, որպէս տեսցի 'ի մօտոյ՝ յԱնդրադարձմունսն 'ի տեղագրութիւնքս, յէջ 173։

2 Շահխաթունեան, Բ. 45, առէ 36 և 22 գազ պարսիկ։

'ի հարաւոյ և յարևմտից. յայսմ կողման է աւագ դուռնն, և այլ երկու դրունք 'ի հարաւոյ կուսէ: Ի կողմանէ միոյ 'ի հարաւային դրանցս արտաքուստ արձանագրեալ կայ կարևոր յիշատակս, յամի 1038 [1]: Գիտանի քան զամենայն յարձանագրիս' է Երերուք կամ Երերուաց կոչուածն գեղջս, յոր անուն գտանին և այլք յայլ գաւառս. արձանագրող Թագուհին կին Ցոլհան-Սմբատայ' յայտնի դուստր գոլ Աբասայ ուրումն, և երրորդ որդւոյ նոցա

✝ՅԱՆՈՒՆ ԱՅ Ի ԹՎԱԿԱՆԻՍ
Ն·Ձ·Է·ԱՐԷՊԱՇՏԹԱԳՈՒՀԻՍ
ԴՈՒՍՏՐԱԲԱՍԱՍՄԲԱՏՇԱ
ՀԱՆՇԱՀԻԿԻՆՍԵՒԱՇՈՏՈՅ·Մ
ԱՐՍՈՐԱԶԱՏԷՑԻԶԵՐԷՐՎԱՑԹԱՍՏ
ԱԿԱՍՅՈՐԴԷՑՅՈՐԴԻՍՍՄԲԱՏՇԱՀՆ
ՇԱՀԱՆԻՀԶՕՒՐԻԵՒԱՐՔԱԻԱՐԵՒՇԱՏՈՒԻ
ՍԳՐՈՅՍՀԱԿԱԷՀԱՄԻՄԻԾ
ԱՑԿԱՄԻՓՈՔՐԱՆ:Ց:Ժ:Ը:ՀԱՐԱՊԵՏԱՑ
ՆՆԶՈՎԵԱԼԷԲԱԺԻՆԸՆԴՅՈՒԴԱԾԻԼԿ
ՃԱՌԻՆՍԻՄ ԿԱՀԱՐԴԻՆ....

79. Արձանագիր եկեղեցւոյն Երերուաց:

կոչիլ Աշոտ, զոր այլուստ ոչ գիտէաք, բայց Երկաթ անուն որդի մի, և սոյն սա թուի, 'ի յիշատակ գոռ թագաւորին Բ Աշոտ Երկաթոյ' այնպէս անուանեալ. միանգամայն յայտնի զի յայսմ թուականի (1038) տակաւին կենդանի էր թագաժառանգն այն պայազատ, և յետ սակաւուց վախճանեալ առաջի հօրն: — Միջոց գեղջս և գետեզերն լի է աւերակօք քարաշէն բնակութեանց, գերեզմանաց և խաչվիմաց, յորս ցանկալի է հետախուզել:

Կիսով ժամու 'ի ստորև 'ի վերայ քարափան գետոյն կայ աւերակ քառակուսի շինուածոյ սևորակ մանր քարամբք, և թուի հին պանդոկ կամ փուտկոյ. հիւսիսային որմն միայն կանգուն կայ մէն կիսաբոլոր բրգամբք յանկիւնսն: Նոյնչափ ևս բացագոյն 'ի հարաւոյ է Թիւռնիկ այսինքն Գմբէթ անուանեալ տեղի, և մատուռն վեցանկիւնի 'ի մանր կարմիր քարանց, իբր 20 Ք. շրջապատութեամբ. գմբէթն կղմնտրաւ ծածկեալ' 'ի չորից կողմանց ունի պատուհանս, իսկ որմունքն' երեք. վէմ ճակատու դրանն 'ի բաց բարձեալ է, յորում թուի թէ կայր արձանագիր յայտնիչ անծանօթացելոյս այժմ տեղւոյ: Նման իմն նմին և 'ի հանդիպոյ (յարևմտից) գետոյն երևի կիսաւեր բրգաձև շինուած քառակուսի: — Իբրու փարսախաւ 'ի ստորև կայ Որգուն-քէնտ պահակատուն, առ որով 'ի փուլս ձորագետոյն են քարափոր բնակարանք ձմերանոցք Քրդաց: — Աստի հինգ մղոնաւ չափ

[1] Ցանուն Աստուծոյ. ի Թվականիս: Ն: Ձ: Է: (բ)արէպաշտ Թագուհիս դուստր Աբասա Սմբատ Շահանշահի կինս եւ Աշոտո մա(յ)րս որ ազատեցի զԵրէրվաց Թաստակաս յորդէց յորդիս Սմբատ Շահանշահանի հզուրի եւ արքաի արեւշատութեան. որ այս գրոյս հակա(ռակ)ի կամ ի մեծաց կամ ի փոքրա(նց): Ց: Ժ: Ը: հարապետաց նզովեալ է բաժին ընդ Ցուդաի աստուածավաճառին Սիմ(ոնի) կահարդին Գ? եւ քահան(աի)ցն....

Ի հարկէ պահանջի ընթեռնուլ բարեպաշտ, որպէս և գրէ Շահխաթուն. Բ, 44. այլ զի, ոչ միայն օտար իմն թուի անձամբ զանձն բարեպաշտ կոչել, և 'ի նմանագիր օրինակի պատկերահանին չկայր նշան Բ տառի, այնպէս թողաք:

'ի ստորև կայ վերջին պահակատուն կողմանս արևելեան Շիրակայ, Քէրփանսէրայ, կարաւանատուն կոչեցեալ յատկապէս, զի էր իսկ այնպէս, և կարի ընդարձակ, այլ այժմ քայքայեալ. որպէս և սակաւուք 'ի բացեայ այլ աւերակք բնակարանաց և գերեզմանք հանդերձ խաչ-վիմօք. բայց գիր յիշատակի ցարդ ոչ յայտնեցաւ անդ:




80. Աղէքսանդրապօլ:

68. Յառաջ քան զելս մեր 'ի յաւերժայիշատակ գաւառէս Շիրակայ, մի՛ մոռասցուք և քանի ինչ տեղիս յանուանէ աւանդեալս 'ի նախնեաց, որք արդ անծանօթ ինան. որպիսի մարթ էր առել զգիւղն Ըշտէ կամ Ըշտեայ, զոր Ուապելեանն առէ 'ի Շիրակ գոլ, և անդ չարամահ լինել ուրացողին Գդաիհօնի. և արդարև ոչ կարի հեռի 'ի Շիրակայ, 'ի կողմանս Ջաւախաց՝ այժմեանս Ախալքելէքի, յայտնի է այս անուն գիւղ. սակայն Ղազար Փարպեցի՛ որ նախ զայս պատմէ, Շտեայ կամ Շտեղ գիւղ կոչելով, երևեցուցանէ յարևմտակողմանս աշխարհիս Հայոց՝ յԱրշամունեաց գաւառի լինել, զի բնակչաք Երիզայ գեղջ այնր գաւառի՛ մարտեաւ ընդ Պարսից, և 'ի նոյն կողմանս եղև մահ կամ մահարեր խոցումն Գըդաիհօնի. և յետ մարտին՝ զօրավարն Պարսից մեկնեցաւ 'ի Բասեն, որ մերձակից է Արշամունեաց քան Շիրակայ:

Գիւղ մի ևս Որմոանի կամ Որմոան անուն, և ըստ այլ և այլ գրչութեանց՝ Որմնի, յիշէ Յովհաննէս կաթողիկոս Պատմիչն՝ 'ի սկիզբն Ժ դարու, ուր եկեալ Աշոտ Բ Երկաթն 'ի սկզբան թագաւորութեանն, և հանդիպեալ եղբօր իւրում Աբասայ՝ իշխանաց իշխանի և աներոյ նորա Գուրգենի Վրաց իշխանի, « մեծապատիւ » զնոսա առնէ ըստ օրինի թագաւորաց բազմապարգև » բարութեամբք ». մինչ նոքա դաւաճանել խմն զնա խորհէին, և « ոչ լինէր յաջողեալ նոցա յայնմ տեղւոջ » բանալ զգուռն կորստեան. ըստ երկնային այցելու» թեանն յուղարկի 'ի նոցանէն . . . յՆրազգաւորս »: Ըստ ձայնին մերձաւոր գտանի արդ ծանօթ գիւղ Որթնու գրեալ: — Իսկ յիշեալն յԱսողկայ Բեռնաւս գիւղ Շիրակայ, մարթի լինել Բեռնա գիւղ Վանանդայ:

Զրեակ[1] վանք, յիշի յելս կոյս Ը դարու, յորում ժամանակի Սողոմոն Հայր հարանց Մաքենոցաց վանից՝ զոր աւերէր Բարսն բռնաւոր Պարսիկ, խոյս տուեալ, մատամբ միով միաբանիցն եկն այսր, ընդ որս և միւս Սողոմոն (կաթողիկոս) Գառնեցին. որ « և անդ 'ի միայնակեցի կարգ » եղեալ՝ լինէր 'ի խրճիթ, բազում ճգանց և աշխատու» թեանց զանձն տուեալ: Եւ մինչդեռ 'ի խրճթէ անտի » արտաքս հանեալ՝ չուեալ ածէին յաթոռ հայրապե» տութեան, հարցաւ ապա յումեմն ադատաց, թէ՝ վասն » զի ծեր ես և յանհնարին ճգնական վարուց յոյժ ան» ւագեալ, ընդէ՞ր յօժարեալ երթաս 'ի հայրապետու» թիւն. առ որ պատասխանեալ նորա՝ ասէր. Երթամ, » զի գեղապաճոյճ նկարողաց սեւել զիս ընդ այլ հայրա» պետսն՝ տամ, յորմ եկեղեցւոյն: Եւ ըստ սմին այսմիկ » գործն կատարէր. զի ոչ աւելի քան զմի ամ կեցեալ՝ » փոխի յաշխարհէ աստի (յամի 788-89), և դնի ընդ » հարս իւր. և կենդանագրի 'ի քաւարանի սրբում[2] »:

1 Յօրինակս ինչ գրոց Յովհաննու կաթողիկոսի գրի Շրեւ:

2 Յովհաննէս կաթողիկոս:

